# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

# ԵՐԿԱՄԵԱՅ ԱՆՑԻՑ

Chilinkirean, Hakobos

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Patmutiwn azgayin erkameay..

## ԱԶԳԱՅԻՆ

# ԵՐԿԱՄԵԱՅ ԱՆՑԻՑ

751



156+160 p.

ԳՐԵՑ

ՅԱԿՈԲՈՍ Վ. ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

ՆԱԽԿԻՆ ԱՒԱԳ ԹԱՐԳՄԱՆ Ս. ԱԹՈՌՈՅՆ ԵՐՈՒՍԱՂԻՄԱՅ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1866

Ով որ չար կ'գործէ՝ անիկայ լոյսը կ'ատէ, և լոյսին քովը չը գար, որ իր գործքերը չ'յանդիմանուին. բայց ան որ ճշմարտութիւն կ'գործէ՝ լոյսին քովը կուգայ, որ իր գործքերը յայտնի ըլլան՝ թէ Աստուծով գործուեցան:

ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ.

*յԱւետ. Յովհ. Գ. 20.*

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յուշ լիցին քեզ աւուրքն անցեալ. իմացարուք զամս ազգաց մինչեւ յազգս.
Բ. Օրի. ԼԲ. 7.

Պատմութիւնը կամ պատմագրական տեղեկութիւնը ի սկզբանէ հետէ մարդկային սեռի մեծ կարևորութիւն, օգուտ և շահ ունենալուն համար՝ համայն լուսաւորեալ ազգաց առջև մեծ համարում, յարգ և պատիւ ստացած է։

Նա կաւանդէ ապագայ սերունդին՝ մարդկային ընկերութեան անցելոյն մէջ կատարած գործողութիւնները կամ արարքը։ Նա հայելի մ'է անցեալ դէպքերու, որոն մէջ պայծառ կտեսնուին ազգի մը բարեկարգութեան և յառաջադիմութեան համար ձեռք առած փորձառական միջոցներն ու գործքերը, ցուցուցած յարատև ջանքը և բռնած ընթացքն ու վարմունքը։ Նորա մէջ կտեսնուին շատ մը ազգերու անկումը և այլոց կանգնումը։ Նա կ'անմահացնէ մարդկային ընկերականութեան բարեկեցութեանն ու երջանկութեանը համար աշխատողներու անուններն ու բարի գործքերը, և կմահացնէ նորա եղծմանն ու ապականութեանը համար ջանացողները, իրենց ապիրատ և գարշելի ու զզուելի արարքով։ Մէկ խօսքով՝ նա է աշխարհիս վրայ մարդկային զանազան ցեղերու կամ ազգերու և լեզուներու բարեկարգութեան, յառաջադիմութեան և երջանկութեան մէջ ընթանալու մէկ հատիկ փորձաքարն ու առաջնորդը։ Մեր այս բառերը երկար ապացոյցներու կարօտ չեն։

Դարուս զանազան ազգաց կամ սերունդներու ներկայ դրութիւնն ու վիճակը լիապէս կհամոզեն զմեզ, որ նոցա սեպհական պատմագրութեանց մէջ յիշատակուածները իրենց անժխտելի ստուգութիւնը ունին։ Նոյն իսկ մեր ազգին այժմեան դրութիւնը, վիճակն ու կրած փոփոխութիւնը կենդանի վկայ մ'է մեր ազգային պատմութեան ստուգութեանը։

Տիեզերքի. արարիչն անգամ ուսոյց՝ պատմութեան մարդկ[…]-յին ազգի ունեցած կարևորութիւնն ու օգուտը Մովսէսի պատմագրութեան միջոցաւ. և հետզհետէ պատմական տեղեկութեան կարևորութիւնն ու օգտակարութիւնը այն աստիճան զգալի եղաւ բոլոր ազգաց մէջ. որ այս օրուան օրս մեծ ընդարձակութիւն, յարգ ու արժէք ստացած է համայն քաղաքակիրթ և լուսաւորեալ ազգերէն։

Այսու համոզմամբ և ազգասիրական պարտականութենէ իսկ շարժեալ՝ կարևոր և պատշաճ համարեցինք ի լոյս ընծայել սոյն փոքրիկ և համառօտ Երկամեայ ազգային անցից պատմութիւնը. պատմութիւն մը՝ որուն մէկ ամենաչնչին կէտն անգամ մոռացութեան փոշիին ներքև թաղուած մնալը չէինք յօժարէր՝ եթէ համառօտութիւնը ներէլու ըլլար, թէև նորա շատ պարագաները արդէն ազգային լրագիրները ժամանակին հրատարակած են։

Սոյն ստիպողական և ամենակարևոր ձեռնարկութեան նըպատակն ուրիշ բան չէ, բայց միայն բանալ այն ազգուէր ճիզվիթ մեքենականութեան գաղտնածածուկ դուռը և իմացնել անաչառապէս համօրէն լրութեան ազգիս՝ այն ազգակործան դարանակալութիւնը, որ դժբաղդաբար բաւական տարիներէ հետէ մեր Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյն կործանումը փութացնել կջանայ, և Ազգին ամբողջութեանը մահ կսպառնայ և նորա գոյութիւնը աշխարհիս երեսէն իսպառասպուռ ջնջելու նպատակաւ ամեն ջանք ի գործ դրած է ու կդնէ։

Եթէ մեր սիրելի ազգայինք սոյն փոքրիկ աշխատութեան մէջ պարունակուած և ազգերնիս այս վատառողջ և վտանգաւոր վիճակէն՝ կենաց ապահով, ողջապահիկ և երջանիկ վիճակի մը փոխարկուելու զարման ցուցուած դիտողութիւնները, առաջարկութիւնները և խորհուրդները՝ (որոնք արթնութեան. լուսաւորութեան և բարեկարգութեան շաւղին մէջ ընթանալ ուզող ազգի մը կենսական տարերքն են,) անկողմնասէր ոգւով և ուշադրութեամբ կարդան, և միաբան սիրով ազգին յառա-

ջ[illegible]իմութեան հետևելու համար ամեն ջանք, փոյթ և աշխատանք չխնայելը իրենց վրայ անհրաժեշտ պարտք մը զգան և ճանչեն և Անոր հոգ Տանին, գոյզնաքեայ գործոյս աշխատողն ալ իւր ըղձին հասած կըլլայ. որոց ամենեցուն բարօրութեան և յարատև երջանկութեան միշտ փափաքող ըլլալով ի սրտէ՝

Մնամ անձնուէր պաշտօնեայ սիրելի Ազգիս։

Յ. Վ. ՁԻԼԻՆԿԻՐԵԱՆ
Նախկին Աւագ թարգման
Սրբոյ Աթոռոյն Երուսաղէմի



# ԲԱՆԱԼԻ
## ԱԶԳԱՒԻՆ
# ՄԵՔԵՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ

*Մեր բուն նիւթը դեռ չ՚սկսած, պատշաճ կըհամարիմք հոս փոքր ինչ տեղեկութիւն տալ ընթերցողաց, նախ՝ Ճիզվիթութեան ինչ ըլլալուն վրայօք, որուն գաղտնիքն ու ոգին թէպէտ շատերուն ծանօթ է, բայց կան որովհետեւ այնպիսիք ալ՝ որ այս աշխարհակործան ընկերութեան սոսկալի չարութեանց եւ մնասուց վրայ տեղեկութիւն ստանալ կուզեն, հարկադրեցանք վճիտ եւ պարզ գաղափար մը տալու համար, սոյն համառօտութեան մէջ պէտք եղածին չափ ալ անոր վրայօք խօսիլ ըստ կարի, որով դիւրին ըլլայ ամէն Հայու անցած օրերուն մէջ ծագած Ազգային դժբաղդ խռովութեան պատճառն ու շարժառիթը տեղն ի տեղօք իմանալ.*

*Ասիկայ յայտնի եւ պարզ ճշմարտութիւն մ՚է նախ եւ յառաջ թէ՝ բոլոր քրիստոնեայ Ազգաց եւ Տէրութեանց միանգամայն երկպառակութեան եւ աղետից եւ շատերուն իսկ թշուառութեան եւ հեծեծանաց էն առաջին եւ գլխաւոր պատճառ Պապականութիւնը եղաւ (1), որն որ խել մը դարերէ 'ի վեր*

---

(1) Վասն զի քահանայապետութեան միակ պայմանն եղող « բաժանեա. զի տիրեսցես », չոր սկզբունքը ձեռք առնելով, 'ի նպաստ դժոխային անյագ բաղձանքի մը. այն է Քաւաչխարհային Ցինզերայ'յաղութեան. (որն որ միայն Ամենակալին Աստուծոյ վերապահուած ըլլալով, աշխարհիս եւ ոչ մէկ կայսրը անգամ կարող չէ զանի յափշտակել երբէք.) եղծեց ապականեց Աւետարանական ճշմարիտ սկըոյն վարդապետութիւնը, լուծեց քրիստոնէական սիրահաղորդ բարոյական միութեան կապն ու դաշինքը. եւ յաջորդաբար տասներկու Առաքեալներէն սերեալ՝ տասներկու

խոնարհութեան Աստուծոյն երկնաչու շաւիղէն խոտորելով հոգւոր և մարմնաւոր խառն ԱՆԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ մը ճամբայ բռնած ըլլալուն, քանի մը հարիւր տարի կայ՝ որ մեր Ազգին մէջ ալ սպրդելու հնարը գտաւ :

Մոլեռանդ եկեղեցականաց և համանման իշխանաւորաց բիրտ և բռնաւոր վարմունքը Պապականութեան զօրանալուն պատճառ եղաւ : Համայն Ազգիս գլխուն անթիւ չարիք հասնելէն ետքը, դժբաղդաբար Ազգին մէջէն մաս մը անջատելով զատ ժողովուրդ մը ձևացաւ :

Այս ափսոսալի եղելութիւնը բոլոր Ազգայնոց ծանօթ ըլլալուն, անոր վրայօք խօսիլն աւելորդ կըսեպենք : Սակայն ժամանակէ մը 'ի վեր Ազգին մէջ ճիզվիթական զաղտնի ընկերութիւն մը կը նշմարուի. որ աննշմարելի մնալ կը ջանայ ալ նէ, Լօյօլայի (1) սկզբանցը քաջ տեղեկութիւն ունեցողներուն հետայոյզ դիտողութենէն չը կարէր խուսափել :

---

Քրիստոնեայ ազգաց եկեղեցեացը մէջ խռիր ու բաժանում ձգելով նախանձութիւն և ատելութիւն սերմանեց և պառակտել փորձեց անգթաբար Քրիստոսի բարոյական անդամները, յորմէ հետէ և ցարդ ի նախատինս Ս. հաւատոյ, կ'հալածէ կ'արհամարհէ ու կ'դատապարտէ զանոնք լի անարգանօք և Թշնամանօք, և միանգամայն կործանել և իւրաքանչիւրոց իրաւունքն ու անկախութիւնը յափշտակել կ'ջանայ՝ աշխարհային տիրապետական և իշխանասիրական ոգւով, հակառակ Ս. պատուիրանաց և Ոգւոյն Քրիստոսի. որուն արդէն երկար բացատրութիւն տալը՝ համառօտութեանս չներեր :

Մինչև ցարդ Հայաստանեայց Լուսաւորչական Ս. Եկեղեցին Ս. Աւետարանին սկզբանցը հաւատարիմ մնալով, անխտրութիւն քարոզեց ամէն ուրեք և ամէն պարագայի մէջ. և իբրև ճշմարիտ քրիստոնեայ՝ իրեն դէմ եղած յարձակմանց, զըրկանաց և տարապարտ ատելութեանց տարաւ և փոխարէն սէր և միաբանութիւն մաղթեց և կ'մաղթէ համայն քրիստոնեայ եկեղեցեաց ճշմարիտ հաւատացեալ եղբայրակիցը համար, և բացարձակ կրնամք ըսել թէ՝ մինչև ցայսօր նոյն իսկ բարեսիրտ ոգւով հաստատուն կեցեր է և կ'մնայ մի և նոյն եղբայրական սիրահաղորդ միութեան Ս. ուխտին վրայ ըստ պատուիրանի և աւանդութեան ընդհանրական Ս. Եկեղեցւոյ ճշմարիտ Գլխոյն Քրիստոսի:

(1) Լօյօլայ, սպանիացի ազնուականներէն կրօնաւոր մ'է. որ ճիզվիթ անուանեալ ընկերութիւնը հիմնադրեր է:

*Առանկ մնասակար և ազգակործան խմբակի մը վրայ կարող եղածնուս չափ բոլոր հասարակութեան ուշադրութիւնը գրգռելը սրբազան պարտք մը ճանչնալով, կը փութանք նախ ճիզվիթութեան վրայ համառօտ նկարագրութիւն մը ընել, և ապա վերոյիշեալ ընկերութեան ազգաւէրասա գաղտնիքներուն զզալի արդիւնքներէն մէկ քանին կարճ 'ի կարճոյ գրի առնուլ, որով միայն կրնայ ազգային երկամեայ տխուր և ցաւալի անցից խորհուրդը հասկցուիլ թէ ինչպէս և ուրկից յառաջ եկած է, Ազգին ապագայ* ԱՐԹՆՈՒԹԵԱՆ ԵՒ ՋԳՈՒՇՈՒԹԵԱՆ *համար:*

---

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ՃԻԶՎԻԹՈՒԹԵԱՆ

*Ճիզվիթութիւնը, որուն ոգին վերջին ծայր փառամոլ և ընչասէր է, կեղծաւորութիւնը իբր անզծելի զրահ իր վրայ հագած և զրպարտութիւնը իբրև հատու զէնք ձեռքն առած կը մղէ՝ որ Աստուածապարգև ազատ կամքը մեռցնելով մարդկային սեռը իբրև շարժուն մեքենայ ուզածին պէս գործածէ, և անոր քրտնաթոր աշխատութեան արգասիքը ձեռքէն խլէ: Իրեն համար ամէն միջոց սուրբ և բարի է. հերիք է որ իր նպատակին ծառայէ:*

*Աշխարհականներէն ալ այր և կին բազմաթիւ հետևողներ ունի, որոնք գնոյ առնուած գերիի նման անոր որ և է ակնարկութիւնը ամենայն հնազանդութեամբ կատարելու պարտաւոր են: Ամենափոքր ընդդիմութեան փորձ մը անգամ ընելու չեն համարձակիր: Անոնցմէ ոմանք անխիղճ չարագործներ և բնածին կեղծաւորներ ըլլալով, կամ շահասիրութեամբ ճիզվիթական դրօշակին տակ զինուորէր, կամ իրենց եղեռնային գաղտնիքը ճիզվիթութեան անխոնջ հետազօտութենէն չը կրնալով պահել՝ կամայ ակամայ անոր ճանկին ինկեր է:*

*Վա՜յ այն մարդուն որ Լօյօլայի ընկերութեան անճողոպրելի ցանցին մէջ բռնուելէն յետոյ, անկէ զերծանիլ կամ ճիզվի-*

Թական գաղտնիք մը երեւան հանել ուզէ, ճիզվիթութիւնը իսկոյն իւր սատանայահնար մէքենաներուն աներեւոյթ հարուածովը՝ այն Թշուառ ուխտադրուժը սոսկալի աղէտներու և անմխիթարելի վիշտերու անդունդը կը գլորէ. և Թէ որ հարկաւոր դատէ, անգութ դահճի ձեռօք ալ 'ի մահ մատնելու՝ խիղճ չըներ:

Ճիզվիթութիւնը ըստ պահանջման պարագայից իր անիծեալ շահերուն ծառայեցնելու համար իր մտերիմներուն ձեռքովը պետք եղածին չափ պարզամիտ կրօնամոլներ կամ անգութ չարագործներ ալ կ'որսայ, առաջինները կեղծաւորութեամբ և վերջինները զօշաքաղութեամբ, որոնցմէ և ոչ մէկը չը կրնար իմանալ Թէ ինք ճիզվիթութեան գործիք եղած է: Թշնամեացը դէմ ուղղակի յասպարէզ չը խիզախէր: Խաւարը սիրելով միշտ լոյսէն կը փախչի: Բնաւին չ'ուզեր որ կեղծաւորութեամբ շաղախեալ ոգին յայտնուի: Ամէն ոճիր գաղտագողի կը գործէ. օձի նման սողոսկելով պարզամիտ արանց մանաւանդ դիւրահաւան կանանց խիղճին մէջ կը սպրդի, և կրօնամոլութեան մահաբեր Թոյնը կաթիլ կաթիլ անոնց սրտին մէջ ծորելով. այն ազնիւ բանական էակներուն ազատ կամքը կը մեռցնէ, և մինչև վերջին շունչերնին օձիքնին չը Թողլով՝ անոնցմէ ամէն տեսակ օգուտ կը քաղէ. և 'ի վերջոյ անշարժ և շարժական ստացուածքնուն գոնէ մէկ մասին ալ կտակաւ կը տիրանայ:

Ասանկ դժոխային ճամբաներով և ուրիշ բիւրաւոր քստմընելի հնարքներով ճիզվիթութիւնը իր ամէն ուզածն ըրաւ, և միանգամայն անբաւ ճոխութիւն և հարստութիւն յափշտակեց: Առաձգական վարդապետութեամբը ազնուատոհմ և ընչաւէտ տիկնաց արքայութեան ճամբան խիստ դիւրացնելով, անոնց հոգևոր առաջնորդութիւնը ձեռք բերել յաջողեցաւ, և կատարեալ վստահութիւննին գրաւելով բոլոր գաղտնիքներնուն տէր եղաւ, որով և զանոնք իր կամացն ու հաճոյիցը հլու հպատակ յարդարեց: Հռովմէական ազգաց մէջ ամէն

տեղ մանչ և աղջիկ տղայոց դպրոցներ բանալու արտօնութիւնը ստանալով՝ այն մատղաշ մանկունքը ուզածին պէս կրթելու և յարդարելու փոյթ տարաւ իր նպատակը յառաջ տանելու համար (1):

Այսքանով ալ գոհ չ'ըլլալով իր վախճանին աւելի դիւրութեամբ հասնելու համար Եւրոպայի թագաւորաց և իշխանաւորաց մանաւանդ թագուհեաց և իշխանուհեաց կիրքերը շոյելով խոստովանահայրնին կամ հոգևոր առաջնորդնին ըլլալու ճամբայ գտաւ և անոնց ալ խղճմտանքը իր ճանկն անցունելով քաղաքական խնդրոց մէջ խառնուելու դուռ բացաւ իրեն, որով Եւրոպայի մէջ իր մասնաւոր օգտին համար կրօնական աշխարհաւէր հալածումներ և արիւնահեղ պատերազմներ յարուցանելով ամէն ազգաց անթիւ և անհամար աղէտներ և վնասներ պատճառեց: Ի վերջոյ այնքան յանդգնեցան որ Եւրոպայի Տէրութիւնները ալ ակն յանդիման տեսնելով անոնց եղեռնական գործերը, ստիպուեցան ճիզվիթութիւնը դատապարտելու և ճիզվիթները իրենց երկիրներէն դուրս վռընտելու:

Ճիզվիթութիւնը բնաւին չը վհատեցաւ. և ինչու պիտի վհատէր, չէ որ ինք Պապականութեան միակ նեցուկը և գուցէ Հռովմայ աջ բազուկն ըլլալով անոր հզօր պաշտպանութիւնը կը վայելէ և իբրև քաղցկեղ ճարակուած աշխարհի ամէն կողմը խիստ գործունեայ ճիւղեր և զօրեղ կուսակցութիւններ ունի. և ինչպէս վերը ըսինք իր նպատակին ծառայող ամէն միջոց լաւ և սրբազան կը համարէ, ուստի շատ չ'անց-

---

(1) Ճիզվիթութիւնը տղայոց դաստիարակութեան մէջ առաջին համարը այնպիսի սկզբանց վրայ հիմնած է, որով միայն կը սորվին կուրօրէն հնազանդիլ. իրար լրտեսել ու բանսարկել. օրը հինգ վեց ժամ երկար երկար աղօթքներ ընել. և նողկալի աւելորդապաշտութիւններով խիղճերնին ծանրաբեռնել. և վերջապէս խղճահարութեամբ ապուշ անզգայ ըլլալ: Ահա այսպէս Ճիզվիթութիւնը գրէթէ բոլոր ճիգը անմեղ տղայոց ըղեղը նոյն սկզբունքներով զանգելու և բնաւ սրտերնուն մէջ բարոյական սկզբանց տեղի չը թողլով, լոկ շարժուն մեքենայ մը ընելու կը վատնէ:

նելով այլ և այլ անուններով և տեսակ տեսակ հանդերձներով դարձեալ ապրեցաւ իր վռնտուած երկիրները և առաջուան պէս ամէն կողմ իր վնասակար Թոյնը Թափելէն բնաւ ետ չը կեցաւ:

Ծիզվիթութիւնը նոյն և այսօր իր հոգեկորոյս սկզբունքը զրէթէ համայն աշխարհի վրայ տարածելու և իր անօրէն նը-պատակին հասնելու շարունակ անձանձիր կ'աշխատի(1):

Ծիզվիթականութեան վնասակար և եղերելի ըլլալուն բա-ցարձակ ապացոյցն այս է, որ բուն իսկ Հռոմէական ժողո-վըրդոց մեծագոյն և ողջամիտ մասը ճիզվիթութիւնը փոխա-նակ Հռովմայի Եկեղեցւոյն նեցուկ և Քրիստոնէական սուրբ կրօնքին օգտակար սեպելու (որն որ ասոր հակառակն եղաւ) բոլորովին Քրիստոնէականութեան ամենավնասակար և քար գայթակղութեան և Հռոմէական Եկեղեցւոյն ապականիչ և կործանիչ ճանչնալով մէկէն 'ի մէկ արթնցաւ, թէ և շատ ուշ. և նոյն ժամանակէն ազատիլ ուզելով Եւրոպիոյ տէրութեանց հետ բոլոր ուժով այն անազնիւ զօրութեան յաղթեց և ինչպէս վերը ըսինք, իր սահմաններէն ալ դուրս վռնտեց: Ցիրաւի այն ժողովուրդը մինչև ցայսօր իր Քրիստոնէական կրօնքը անոր ճանկերէն թէպէտ ազատ կը կարծէր, բայց դեռ Հը-ռովմայու դահլիճին նոյն չար սկզբանց ճանկերուն ներքև հե-ծելը տեսնելով, և չը կրնալով զանի յաղթել, կը զանգատի

---

(1) Ով որ ճիզվիթական ոգւոյն եւ և սկզբանցը՝ հայլն. կատարեալ տեղեկութիւն առնել կ'ուզէ. Թող Բասիլ անուն գաղիացի հեղինակին Գաւառական Թուղթեր ըսուած հռչակաւոր գործը, Թարգմանեալ Հրէայէ. և Յ. Մ/շ.էին Քահանայ կին եւ Ընտանիք կոչուած գիրքը կարդայ, ուր պիտի գտնէ ճիզվիթ հեղինակներուն գրեանց անունները և գլուխները. երեսներն ու տողերը և պիտի տեսնէ միանգամայն որ վերը ըսածներուս ճշմարտութիւնը նոյն ճիզվիթ հեղինակներուն գրուածներէն բաւական աւելի կապացուցուի: Եւ յիրաւի ճիզվիթներուն մէջ մարդկութեան կարեկից անձինք ալ գտնուէր են, բայց և այնպէս խեղճերը ճիզվիթական նպատակին չծառայելնուն համար, հաւատաքննութեան (էնքիզիսիոն) ատեաններուն և տանջարաններուն մատնուած են. առանց ազատուելու ճիզվիթական դատապարտութենէ:

միշտ. գիտնալով թէ՝ անոնք որ կուսակից կը գտնուին ճիզվիթութեան և զանի կը յարգեն ու կը պաշտպանեն. բուն իսկ Հռովմայ Եկեղեցւոյն ալ քակտիչն ու կործանիչը կը համարուին, ինչպէս որ իրօք ալ այնպէս է:

Ճիզվիթութեան վրայօք այսքանը հերիք սեպելով, դառնանք մեր ազգին մէջ սպրդած ճիզվիթական գաղտնի ընկերութեան ուրկէ յառաջ գալուն վրայօք խօսիլ և անոր ազգավնաս գաղտնիքները յայտնելով, անցնինք Ազգային երկամեայ անցից ճշգրիտ նկարագրութեան, որն որ մեր գլխաւոր նիւթն է:

---

## ՏԱՆՕԹՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ-ՃԻԶՎԻԹ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ.

Հռովմ (1) իր անսառակ փառամոլութիւնը գոհ ընելու համար միջին դարու մէջ նախնի Ս. հարց Եկեղեցւոյ առաքելական ուղիղ շաւիղէն բոլորովին շեղելով, սիմոնականութիւնը ամենայն զօրութեամբ արձակ համարձակ գործադրելու և բուն իսկ Հռովմայի Եկեղեցւոյն մէջ շատ մը մոլար վարդապետութիւններ մուծանելու ետեւէ ըլլալուն համար՝ ժողովուրդը խիստ գայթակղեցնելով յուսահատեցուց. և բողոքականութեան ծագմանն ու հաստատութեանը առիթ տուաւ:

Եւրոպայ և Ամերիկայ գտնուող Պապականներուն կէսին չափը Բողոքականութիւնը ընդունելնուն համար, Հռովմէական Եկեղեցւոյ ԸՆԴՀԱՆՐՈՒԹԻՒՆԸ խնդրոյ ներքև ինկաւ:

Հռովմ, այս ահագին կորուստը տեսնելով՝ սարսափեցաւ սասանեցաւ և անոր գոնէ մասամբ իւիք դարման մը ճարելու համար, ճիզվիթական հնարագիտութեան գիրկը դիմելուստիպուեցաւ:

---

(1) Պապականութիւնը:

Քրիստոսի Եկեղեցւոյ այս ինքնակոչ ԳԼԽՈՅՆ չարահնար ԴՈՒՍՏՐԸ՝ նոյն կորուստին տեղը ըստ կարի լեցնելու ամենադըժուար պաշտօնը յօժարութեամբ յանձնառու ըլլալով, ունեցած ամէն ազդու միջոցներովը անխնայ աշխատիլ սկսաւ:

Ինչ օգուտ որ՝ այս նպատակին հասնելու համար, ճիզվիթութեան ըրած երկար և անխոնջ ջանքերը զրէթէ 'ի թերև ելան և մեծ մեծ զոհերը իբր ապարդիւն եղան. վասն զի Եւրոպայի և Ամերիկայի մէջ ճիզվիթական սկզբունքը բաւական ճանչցուած ըլլալով, այն կողմերէն մարդ որսալը խիստ դըժուար եղաւ. պէտք էր ուրեմն իր աչքը դէպի այն ազգերուն կողմը դարձնել, որոնք սոսկ պարզամիտ Քրիստոնեաներ ըլլալնուն, ճիզվիթականութեան վրայ բնաւ գաղափար մը չ'ունէին:

Այս ազգերէն մէկն ալ դժբաղդաբար Լուսաւորչական Հայն ըլլալով՝ հարկ կըլլար որ անոր մէջ գործունեայ ճիւղ մը կամ կեդրոն մը ունենար. մանաւանդ որ այս անգամ ալ Բողոքական քարոզչաց Արևելեան երկիրները յորդելը տեսնելով, չ'էր կարեր ինք անտարբեր հանդիսատես ըլլալ, և պարզամիտները որսալու մասին անոնցմէ ետ մնալ. ուստի իր սովորական միջոցներուն արդեամբը Կ. Պօլսոյ նման Հայ ազգի բազմութիւն պարունակող մայրաքաղաքի մը մէջ իր բաղձածէն աւելի ուխտեալ և գործունեայ ՀԱՅ-ՃԻԶՎԻԹ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆ մը ձեռք բերել յաջողեցաւ:

Այս կեդրոնը խիստ ընչաւէտ ըլլալուն և իր արժէքէն շատ վեր մեծ անուն ունենալուն, հաւանական չ'երևիր՝ որ զօշաքաղութիւնը անոր շարժառիթն եղած ըլլայ. այլ իր եսական ինքնահաւանութիւնն է զինքը այս ախտին հրապուրող. և կրնայ ըսուիլ թէ՝ իր ամենածանր մէկ տկարութիւնը ճիզվիթական անպարտելի յաղթութեան աչքէն ծածկելու կարող չ'ըլլալով, սաստիկ վախէն ստիպուելէ խեղճը իբրև Թշուառ գերի մը կամայ ակամայ ճիզվիթութեան ձեռքը անձնատուր ըլլալ և իբրև գործիք խաղալիք գաղտնի ազգաւեր մեքենայա-

Եւրեան չահախնդիր ճիզվիթ խմբակին քսու, բանսարկու, և շողոքորթ Թելադրանացը հետևիլ:

Ճիզվիթութիւնը սասանկ կեդրոն մը ստանալէ անմիջապէս ետքը, անոր գործակիցներ ալ կը ճարէ. որոնք սոյն ապիրատութեան խիստ յարմար բանի մը չարամօլ աշխարհական և եկեղեցական անձինք ըլլալով, յիշեալ կեդրոնին կրթնած Ազգին հորը փորող, Ազգը մերկացնող, ճիզվիթական գաղտնի ընկերութիւնը կը կազմեն, և ինչ որ ուզեն մթագին խաւարի մէջ աներևութապէս կը գործեն, իրենց անօրէն շահուն համար ի վնաս Ազգին:

Այս ճիզվիթ խմբակը՝ իր կարծիքին չհետևող ազգասիրին՝ անհաշտ թշնամի է, և մեծամեծ չարիք կը հասցնէ. իսկ իր կամքին յարմար և օգտակար գտնուողին մեծ համարմունք տալով, մինչև Ազգային պաշտօններու վրայ դնել կը ջանայ իր նպատակին դիւրաւ հասնելու համար:

## ԿԵԴՐՈՆ

### ՃԻԶՎԻԹ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ՀԱՅՈՑ ՄԷՋ

**ի Կ. Պօլիս**

ԵՒ

*Անոր ազգաւէր գաղտնի դաւաճանութեանց զգալի արդիւնքները.*

Այս կեդրոնը անյապաղ իր մերձաւորներէն և մտերիմներէն բաւական եղածին չափ կողմնակիցներ որսալով ճիզվիթական հրահանգներու համեմատ Ազգը որ և է կերպիւ Պապականութեան անտանելի լուծին մտնելու գործը գլուխ հանելու համար, ատոնք ամէնքը մէկէն կ՚սկսին բոլորով սրտիւ աշխատիլ և Ազգին բարոյական և նիւթական յառաջադիմութիւնները արգիլելու անանկ խորամանկ հնարքներ կը բանեցընեն, որ նոյն իսկ ճիզվիթ վարպետներուն մեծ համարմունքը կ՚ստանան:

Ով չը գիտեր որ այս նոր և գուցէ հինէն աւելի վտանգները երբ իրենց շահուն և նպատակին դէմ Ազգին մէջ խաղաղութեան և միաբանութեան նշոյլ նշմարեն, կարևէր խոցոտելով և չափազանց վշտանալով իսկոյն ուր կ'ելլեն ու երկպառակութեան հուրը վառելու և բորբոքելու միջոցները ձեռք կ'առնեն. եւ կեղծաւորութեան դիմակաւ մերթ հասարակութեան կրօնամոլութիւնը և մերթ անկիրթ հարուստներու իշխանասիրութիւնը գրգռելով և միանգամայն Կղերին տգէտ ու շահասէր մասը որսալով՝ միշտ Ազգը անդուլ եւ անդադար կը վրդովեն (1):

Այս կեդրոնը՝ որ դժբաղդաբար գաւառաբնակ Հայոց մէջ մեծ անուն և մեծ ազդեցութիւն ունի, դրսերն ալ իր բանին եկող որքան Եպիսկոպոս, Վարդապետ, Քահանայ և երևելի աշխարհական կայ նէ, գրեթէ ամէնուն հետ՝ երբեմն ինք անձամբ և երբեմն իր արբանեակներուն ձեռօք Թղթակցութիւն ընելով, Կ. Պոլսոյ Պատրիարքարանէն և Ազգային կեդրոնական Վարչութենէն զանոնք պաղեցնելու և անոր պաշտպանութենէն և ձեռնտուութենէն խապառ յուսաբէկ ընելու ջուն կը գործէ. որպէս զի անոնց աչքև Պատրիարքարանին պատիւն ու ազդեցութիւնը կոտրելով, և Բ. դրան համարումն ալ վերնալով, կարող ըլլայ իր շահախնդիր արբանեակներուն կամքըն ու նպատակը յառաջ տանիլ . . . ահա հոս է բուն խնդիրը և դիտողութեան արժանի կէտը:

Սահմանադրութենէն յառաջ մէկ կողմէն ինքըզինք անոնց ջերմ պաշտպան և կարեկից կցուցունէր և միւս կողմէն հոգեւոր և գերագոյն ժողովոց մէջ ունեցած կողմնակիցներուն միջոցաւ անոնց գործերը յանչափս երկարել և 'ի վերջոյ անպիտան որոշումներ ընել կուտար, ինչպէս մինչև ցարդ:

---

(1) Ասոնք կարող եղած են պարզամիտ խղճմտորները խաբել (ինչպէս շատ անգամ իրենց բերնէն լսած ենք) ըսելով թէ՝ « մենք որ չըլլանք, ազգը անհաւատութեան տարտարոսին մէջ պիտի սահի » և այլն:

Նոյն կեդրոնը խեղճ պարզամիտները առ հասարակ Հայ Կղերէն զզուեցնելու և ակամայ Պապականութեան դուռը բաղխել տալու համար, երբեմն ժողովուրդները և երբեմն առաջնորդները գրգռելով, և միշտ յանցաւորները թէ Եկեղեցական ըլլան և թէ աշխարհական և մինչև անգամ եղեռնագործները պաշտպանելու և արդարացնելու ինչ հնարք որ պէտք է նէ գործածելով, և միշտ տգետները յառաջ քաշելով, ամէն տեղ Ազգայնոց մէջ խռովութեան և ատելութեան հրդէհը սաստկացընելէ և անոնց ցանկալի ներդաշնակութիւնը եղծանելէն դեռ չը դադրիր (1):

Իսկ ընդ հակառակն՝ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ անձնուէր ընտիր և գիտնական Կղէրը գոյն զգոյն զրպարտութիւններով արատաւորել և չարաչար հալածելը, և ազգասէր աշխարհականներն ալ «բողոքական և անհաւատ» տիտղոսներով առանց խղճի վատահամբաւելը անհրաժեշտ պարտք կը սեպէ իրեն (2), և ազգակործան և կրօնազեղծ վատ խորհուրդ-

---

(1) Դժբաղդաբար այս ցաւալի կէտին մէջ Նպաստաւոր գտնուած է և կ'գտուի մեր համազգի պապական Հայ կղերին ալ մոլեռանդութիւնը, և Թող ներուի մեզ ըսել, և արդարև սրտի ցաւօք կըսենք. Թէ՛ պապականութեան ձեռքը լոկ իբրև գործիք մը նախապաշարեալ կերպով և քստմնելի վատութեամբ ազգավնաս և ազգակործան ըլլալու կ'տքնին անդադար, և այն միայն անձնական շահու և սնափառութեան մը համար, և այս տափական կամ մոլեկան ճգանց դաւաճանութեանց մէջ զոհել կ'ջանան նաև կուրօրէն Հայաստանեայց մայրենի Ս. Եկեղեցւոյն անկախութիւնը և բուն գլուխ Ազգին միակ միաբանութիւնն ու պարծանքն եղող Հայ Ազգութիւնը, որն որ ազգասիրաց փափուկ զգացմանն ու քմաց միայն քաղցր է և ախորժելի: Անհաւատալի իրենց կողմէն իբր հրապարակական խոստովանութիւն նամակի մը պատճէնը ընդարձակ ծանօթութեանց մէջ դնել պատշաճ սեպեցինք՝ ընթերցողաց ուշադրութեանը համար: տես. Թիւ (Ա):

(2) Ինչպէս իրենց անդամակիցներէն Չամուռճեան տէրոյենց Պատուելիին անցածները «խորհուրդ գաղտնի ընկերութեան» վերնագրով հրատարակած տետրակին մէջ ալ իրենց վատ և դժպհի ձեռնարկութիւնը պախարակող քանի մը ազգայնոց պատիւն ու համարմունքը կոտրելու դիտմամբ, յակամէ յանուանէ իբրև հերետիկոս անհաւատ դատապարտել չամաչեցին. որպէս զի բաքե-

ները գործադրելու մասին՝ ճիզվիթութեան քակէն անխնայ դրամական զոհեր ալ կընէ. և Ազգին դէմ ամէն տեսակ դաւաճանութիւն և չարիք կը նիւթէ:

Ցիրաւի մեր Ազգին մէջ ալ ուրիշ Ազգաց մէջ եղածին պէս ժամանակ ժամանակ երկպառակութիւն ծագելով խռովութիւն կը պատահէր. և կանուխ կամ անազան կը վերջանար: Ո՛չ միայն կրօնափոխութեան նման ծանր յանձանք մը չ՛էր գործուէր, այլ և այն մասին սպառնալիք մ՛անգամ չէր պատահէր. բայց քանի որ ճիզվիթական կեդրոնը մեր դժբաղդ Ազգին մէջ արմատացեր է, գրեթէ ամէն Հայաբնակ երկիր շարունակ յուզման և վրդովման մէջ կը տատանի, և կրօնափոխութեան վատթար ախտէն չարաչար կը տանջուի:

Եւրոպայի Բողոքական Եկեղեցիները ճիզվիթութեան ուժը քաւական կոտրեցին. և մեր Ազգին ազդու գրիչներն ալ կրօնափոխութեան ախտն ու եռանդը կարի տկարացուցին: Ինչու որ անփկայ ակն յանդիման ասպարեզ ելլելով դէմ առ դէմ կը մարտընչի. և ուր որ իր զինուց վրայ վստահութիւն ունի, կարէ մաքառիլ և յաղթանակել (1) :

---

մեր հաւատրակութիւնը յիշեալ ազգայնոց խօսքերուն չանսալով, կարող ըլլան միութեամբ իրենց նպատակին հասնիլ:

Սակայն արդէն իրենց ինչ նպատակի ծառայելը բոլոր ողջամիտ հասարակութեան յայտնի ըլլալով. յիշեալ տետրակին ինչ ոգւով հրատարակուած ըլլալը բացատրել հարկ չենք սեպեր, վասն զի իր ազգութիւնը զգացող ամէն ճշմարիտ Հայ գիտէ՝ թէ յիշեալ պատուելին որ աստիճան ջերմ պաշտպան և ջատագով է ճիզվիթութեան, որուն այս ապացանենգ յատկութեան 'ի վկայութիւն Մասիս լրագրի միջոցաւ հրատարակուած շրջաբերական կոնդակն ալ կապացուցանէ, տես 1836 և 1861, մարտ և յուլիս ամսաթերթերը :

(1) Ըստ մեզ կարենք ըսել թէ՝ բողոքականութիւնն ալ ճիզվիթութենէ կամ պապականութենէ տարբերութիւն մը չունի, միևնոյն ընթացքի ծառայելուն համար· վասն զի սոր ալ նպատակը չէ թէ Աւետարանը պաշտպանել կամ ծառայել և մարդկութեան նպաստել, ինչպէս կուզէ երեւցնել. այլ անոր նպատակին և վարպետութեանը դէմ կենալ ուզելով որսացուելիքները ձեռքէն խլել:

Սա տարբերութիւնը կ՛տեսնենք Սրիցական քարոզչաց վրայ, որ յանուն իրենց մոլորեցուցած որսերուն, զիրենք զրկող ընկերութեան սնտուկին հարստութիւնը

Աստ հակառակ ճիզվիթութիւնը ինչպէս որ յայտնի է Լօյօլայի սկզբանց տեղեակ եղողներուն, դարան կը գործէ, և իբրեւ փառասիրտ հուղկահար աներևոյթ հարուածներ կուտայ, և մինչև անգամ առ. երեսս վշտակից բարեկամ ձևանալով, իր տուած վէրքերն անձամբ դարմանելու փառութեանը յանձնառու կ՚ըլլայ, որպէսզի թէ որ այն վէրքերը վտանգաւոր չէն նէ, թունաւոր սպեղանիներով զանոնք մահացուցիչ յարդարէ: Ո՛հ. կրնանք ըսել թէ սատանայական դասն անգամ

---

կողոպտել ու քաշկինին լեցնել կը ջանան: Իսկ ճիզվիթները, իրենց որսացած ժողովրդեան քսակը պարպել ու հարստութիւն դիզել կաշխատին իրենց չար կիրքը յագեցնելու համար որոց եկամուտը 380 միլիոն ֆրանք է:

Պապականաց կամ որ նոյն է ճիզվիթներուն մէկ տարբերութիւնն ալ սա է՝ որ իրենց յափշտակած որսերէն ամէն տեսակ օգուտ և պտուղ... քաղելու համար՝ վերջին ծայր նախապաշարելով կոյր և ապուշ կրօնամոլ կընեն և վերջապէս խեղճերը հաւատաքննութեան խարոյկին մէջ այրելով անթիւ կորուստներուն հետ հոգեկորոյս անհաւատութեան փոշիով կխեղդեն: Իսկ բողոքականք իրենց յափշտակածները թէպէտ խարոյկներու չեն մատնէր, բայց և այնպէս անոնք ալ անհաւատութեան սառնամանեաց մէջ կխեղդեն:

Ցիրաւի Բողոքականութիւնը հազ ուրեմն կրցաւ մազապուրծ ազատիլ Հռովմայի ճանկերէն. բայց բոլորովին անհաւատութեան ովկիանու մէջ իբր չընկղմելու համար, անոր սատանայինար որոգայթներէն և դժոխային մեքենաներէն և կրած դառնաղէտ հարուածներէն սաստիկ վշտանալով յանչափս հեռացաւ խակութենէ մինչև անհաւատութեան անյատակ անդնդին եզրը հասաւ:

Ըսել կուզենք թէ երկուքն ալ երկու ծայր գացին խարդախութեան կամ լաւ ևս է ըսել ճիզվիթութեան, ինչպէս երկու մարդ՝ մէկը լեռան մէկ ծայրը և միւսն ալ մէկալ ծայրը կայնած ըլլան, որ եթէ դալչիս, դէպ ի ձոր կամ ի վիհ գահավիժելնին անշուշտ է, ուրկէ թերեւս ողջ մնալով հնարաւոր ըլլայ ազատելնին. սակայն անհաւատութեան զառ ի վայր յուսահատական խոր անդունդը սահելու գլտորիլը մահաբեր է. ուստի և ազատիլն ալ երկբայելի և գրեթէ անհնարին. անոր համար կ՚ըսէ Ս. Աւետարանը «Վայ որ գայթակղեցուցանէ:»

Ահա անկողմնապահ ոգւով հոս դարձեալ կ՚համարձակիմք ըսել թէ վերստին Հայկայ սերունդը ախոյեան կկանգնի այս մասին ալ Ս. Աւետարանին սկզբանցը միշտ հաւատարիմ և հաստատուն մնալուն համար, ուրկէ շեղիլ անհնար է. մակաղելով բարոյապէս այն ճշմարիտ Քրիստոնէութեան դաշտավայր բանաւոր արօտին մէջ ի ծոց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ. որուն դէմ դժոխքին դռներն անգամ կարող չեղան և պիտի չըլլան զանի երբէք յաղթահարել:

Ես ճիզվիթութեան չափ մարդկային ազգին աղէտներ և չա-րիքներ չէ հասուցած :

Սոյն կեդրոնն էր որ քսան տարիի չափ յառաջ Կ. Պոլսոյ մէջ բազմաթիւ պարզամիտ արհեստաւորները՝ Ազգին սեղա-նաւորներուն դէմ գրգռելով, անոնցմէ ազգային հաշիւ պահանջել տուաւ: Այս եղաւ պատճառ որ Լուսաւորչական խեղճ Հայերը շատ ամիսներ տակն ու վրայ ըլլալէն և Պատ-րիարգի մը փոփոխութեան տեղի ունենալէն զկնի, ճիզվիթու-թեան քանի մը չարաճճի արբանեակներուն հետ խել մ'ալ անմեղներ աքսորուելով յետին թշուառութեան մէջ ինկան. և անտէրունչ ընտանիքնին 'ի խոր սուգ համակեցան: Նպատա-կըն էր որ բոլոր Ազգը իր ճանկն անցունելով՝ իբրև մեքենայ ուզածին պէս շարժելու կարող ըլլայ: Ինչպէս այս անգամ ալ նոյն նպատակաւ Ազգին իրաւանց դէմ կենալով խեղճ քեռնակիրները ոտք հանեց: Մէկ կողմէն արհեստաւորներուն մէկ մասը որսալով իրարու դէմ գրգռեց. և միւս կողմէն եաֆաւր եաղըը եսնաֆըըն վէ պիր թագըմ չափգընլարըն սէօզիւ մի օլաճաֆ, միլլէթ պարասըն, սէօզիւմիւզ իլէրի վարսըն. ըսել չամաչեց և իր կիրքը յագեցնելու համար՝ Ազգը մինչև Բ. դրան կասկածելի ցուցնելու սոսկալի վատութեան զիջաւ. որովհետև Սահմանադրութիւնը Ազգին ամէն մէկ անհատին իրաւունքն ու պարտքը ճանչցնել կծառայէ. պէտք էր ուրեմն անոր անհետ ըլլալուն ամէն հնարք գործածել. որպէս զի Ազգին ղեկը իր ճանկն անցնելով, իր շահախնդիր արբա-նեակներուն միանաւոր շահը հայթայթել կարող ըլլայ:

Սոյն կեդրոնն էր որ Ախթամարայ Թէմին ռամիկ և պարզա-միտ ժողովուրդը դրդելով ոտք հանեց (1). և 2500 Եպիսկո-

(1) Սոյն խղճմալիներէն արդեօք որչափ սուտ շահեցան և որոնք որչափ ոսկի քաշեցին նէ՝ չ՚ատերը գիտեն, մինչև Եպիսկոպոս և Քահանայ ևայլն ձեռնադրուիլ ուզողներէն ալ. օրինակի համար բաւական կ՚սեպենք դէպք մը յիշել հոս:

Այն ինչ ժողովի օր մը՝ Սեթեանն ու տէր Գէորգ քահանայն կանուխ սենեակ

պոս և Վարդապետներու և Կաթողիկոսի մը նզովքին տակն եղած Ախթամարայ խափանեալ Կաթողիկոսութիւնը Յակոբ Պատրիարքին օրովը վերստին հաստատել տուաւ. և Ներսէս Ա. Կաթողիկոսին սիրտն ալ դառնութեամբ լեցուց:

Զարմանալ հարկ չէ ամէնևին թէ այս կեդրոնը որ ան ատեն ոչ իրական նզովքէ երկիւղ ունէր, և ոչ ալ զարդ Հայրապետի մը դէմ անիրաւաբար հակառակելը և զանի չարաչար վշտացնելը խիղճին կը դպչէր. սակայն Երուսաղեմի վանուց Պատրիարքական ընտրութեան խնդրոյն մէջ ինքզինք անգոյ նզովքէ մը չափազանց վախցող և կասկածելի, և զաւանցեալ Եպիսկոպոսի մը անտեղի խօսքերն անգամ իբրև պատգամ ընդունող ցոյց տալ ուզեց. վասն զի այն ժամանակ բանը անանկ ընել կը պահանջէր. «նպատակն է՝ որ կարդարացնէ գործածուած միջոցները» կըսէ ճիզվիթական առածը:

Նոյն կեդրոնն էր՝ որ Սկիւտարիոյ մէջ երկպառակութեան հրդեհը կը բորբոքցնէ, (առաջնորդի մը պատճառաւ) և երկու երեսի գերդաստաններ իրարու դէմ կը զրգռէ. որոնք մէկզմէկ փշրտելէ զատ, այլև իրենց հետ խեղճ Ազգայնոց տունն ալ քանդելէ դեռ չեն դադրիր անմտաբար: Թողում ըսել գաւառաց մէջ պատահած զրգիռ և հարստահարութիւններն, որոնք ազգակործան խակ շարժառիթներ են: Ահա այսպիսի պառակտմանց աւելի ուժ տալու կնպաստեր նաև այն վճիռը թէ՝ «Առաջնորդները իրենց վիճակին հետ պը-

---

մը կգտնուին 'ի Պատրիարքարան; Խարսի Առաջնորդ Ռշտունի Յ. Վարդապետէն եպիսկոպոս ըլլալու վկայական մը ուզելու համար նամակներ եկած ըլլալով, գրաբերը՝ յիշեալ անդամոց նամակնալ միամտաբար կ՚բերէ իրենց կ՚յանձնէ. Մէթեանը երբ անհամբերաբար իր նամակը կ՚բանայ. յանկարծ մէջէն հինգ ոսկի դուրս կ՚ցաթկէ. Թէ և կ՚այլայլի կ՚այլագունի և «բերողին գրպանը ոսկի կայ եղեր» ըսելով ծածկելու կջանայ ալ նէ, ոսկիներուն՝ հետ Թղթի կտոր մ՚ալ փաստերային քովն ինկած ըլլալը, ներկայ գտնուողներէն մէկը կ՚տեսնէ և կտրիպուփ զանի գետնէն վերցնել ու կարդալ. ուր գրուած էր «յիշեսջիր զմեզ ուր հարկն է»:

սակուած են, զատել չ՚ըլլար »։ Ուրկէ ծագում առաւ նաև այն մեծ զժտուԹիւնը Անդրիանուպօլսոյ մեր Ազգայնոց մէջ, և քիչ մնաց որ Պապականութեան լափիւրինդոսին մէջ գլորէին. Թէ որ առաջնորդը չը փոխուէր ։

Նոյն կեդրոնն էր որ ՍամաԹիոյ յառաջաքայլ դպրոցին մէջ իբր Թէ հերետիկոսութեան և անհաւատութեան ուսմունք կը նշմարէ և հաւատաքննութեան ատեան բանալ տալով դպրոցը Թաւալ գլոր ընել տալու կ՚աշխատի. ինչպէս մինչև ցարդ իր արքաննեալներուն ձեռօք անոր յառաջադիմութեան արգելք ըլլալէն զատ, այլ և տարաձայնութեանց և երկպառակութեանց ալ պատճառ եղած է. և դեռ նոյն հրդէհն է որ կը շարունակէ այն մեծ Թաղի Ազգայնոց մէջ։

Իւսկիւտարու ճեմարանին ալ խափանմանը ամէն ճիգ ՚ի գործ կ՚դնէ, և Ազգին բաւական ալ այնքան դրամոց ընդ վայր վատնուելուն պատճառ կըլլայ ։

Նոյն կեդրոնն էր որ երբ Խասգիւղի Ս. Ներսէսեան վարժարանը Ազգասէր առատաձեռնութեան մը Աստուածահաճոյ նպատակը ամենակարևոր ուսմանց և գիտելեաց ասպարէզին մէջ հսկայաքայլ կը յառաջանար, խոյն իր ուսումնատեաց ոգիէն գրգռեալ անոր պայծառութեան լոյսը աղօտացնելու փորձ կը փորձէ. և անգութ սրտէն դրդեալ քանի մ՚ալ անմեղ անձինք անհիմն բարուրանօք աքսորել կուտայ (1)։

Նոյն կեդրոնն էր որ Շահնազարեան Կարապետ Վարդապետի նման գիտնական եկեղեցական մը հալածել ուզելով, զանի զրպարտել ոտք ելաւ. և երբ չը յաջողեցաւ, իր սովորական յամառութեամբը այնքան եռանէն ինկաւ, որ վերջապէս խեղճ վարդապետը Փարիզ քաշուելը խոհեմութիւն սեպեց. սակայն

(1) Աղաւնի Ստեփան Պատրիարքը այն աքսորեալներէն երկուքին վրայ յանցանք մը չգտնելով, « չար ինչ ոչ գտի» ըսելուն համար, երեք օրէն ետքը Պատրիարքութենէն վար կը ձգուի. և սաստիկ անձրևոտ օր մը ածուխի նաւով Նիկոմիդեայ կը քշուի։

անով ալ չը կրցաւ անոր դժոխային կիրքը զիջուցանել. քանզի ճիզվիթ թշնամութիւնը ուր ըլլայ ետևէն կրնայ հասնիլ:

Նոյն կեդրոնն էր՝ որ միշտ Ազգը յարատև վրդովմամբ ալեկոծելու համար, քսան տարւոյ մէջ ութը անգամ Պատրիարքի փոփոխութեան սկզբնապատճառ կըլլայ: Պահ մը Աստուածատուր Պատրիարքին, պահ մը Աղանի Ստեփան Պատրիարքին կողմը կը բռնէ. և Յակոբ Պատրիարգին կողմնակցութիւն ընելով՝ Մատթէոս Պատրիարքին դէմ կը զինի. երբ նոյն Սրբազանը Պատրիարքութենէ կը ձգուի, շուտ մը հետը հաշտուելով, ատելութիւնը Յակոբ Պատրիարքին դէմ կը դարձնէ, և ձեռքէն եկածին չափ ետևէն իյնալով և դէմը ելած դժուարութիւններուն հուսկ յետոյ յաղթելով, զանի ալ նկուն կընէ (1):

Նոյն կեդրոնն էր որ Ազգը աղմկելու միշտ իրեն գործիք եղող քանի մը եղջերուաքաղ խռովարարներ ոտք հանելով, Գէորգ Պատրիարքին ալ հօրը փորել կ՚սկսի (2). բայց վախնալով որ չ՚ըլլայ թէ այս անգամ ալ Ազգին արդար ընդդիմութիւնը առաջն ելլելով դաւաճանութեան արգելք ըլլայ և զինքը խայտառակ ընէ: Ինչպէս քանի մը տարի յառաջ Յակոբ Պատրիարքը աթոռէն վար ձգել ուզած ատենը յանդիպէր էր(3), կ՚ստի-

---

(1) Ֆրէնկեան Կարապետ Աղայն (Քօրանեան Սարգիս Աղայի փեսայ) այն ատեն տասներկուքներէն ըլլալով, ժողովի մէջ «Յակոբ Պատրիարքը կուզենք» ըսողներուն ձայնակից ըլլալուն համար կեդրոնին ճիզվիթական անգութ ապտակին հանդիպելով, խելաթափ յերկիր կ՚Թաւալի, յաղետ իւր ընտանեաց:

(2) Գէորգ Եպիսկոպոսը՝ Պատրիարք եղած ատեն, 200,000ի մուրհակ մը կը ներկայացնէ Թիրեաքին վաւերացնել տալու: Իսկ յիշեալ Սրբազանը՝ ժողովը գիտէ ըսելով՝ ըստ օրինի պատասխանելուն համար, աչքէ կ՚ելլէ և սիրելութիւնը իսկոյն ատելութեան կ՚փոխուի: Վասն զի ազգային որ և է գործի գլուխ եղողը, չէ թէ Ազգին շահը մտածելու կամ անոր գործը յառաջ տանելու, այլ անկէ իր անձին շահ և օգուտ մը քաղելու նպատակին կը ծառայէր, (ասիական վատ բնաւորութիւն): Ուստի ով որ Ազգը հոգար ու մտածէր կամ անոր օգուտն ու վնասը փնտռել ուզէր, այնպիսեաց առջև՝ ատելի ու թշնամի Ազգին համարուելով՝ աչքէ կելլէր, ինչպէս մինչև ցայսօր ալ այնպէս է:

(3) Վասն զի Յակոբ Պատրիարքը երբ ՚ի պաշտօնէ կ՚հարկադրուի Սահմանադրութիւնը ի գործ դնել և կ՚ստիպուի կեդրոնը համոզելու, կամք և հաճութիւն

պուի Ազգին ողջամիտ և ուսումնական մասին հետ առերեսս կեղծ միաբանիլ և Սարգիս Եպիսկոպոսը Պատրիարք ընտրելու պայմանաւ կը խոստանայ հետևապէս և Սահմանադրութիւնը գործադրել տալ։ Ցիրաւի Սահմանադրութիւնը իրեն խիստ ատելի ալ էր նէ, վստահութիւն ունէր տարի մը չ'անցած ուժգին հարուածով զանի շնչասպառ գետին փռելու։

Գէորգ Սրբազանը թէպէտ անհրեւոյթ թշնամւոյն ուր և ով ըլլալը աղէկ գիտէր, բայց Ազգին ողջամիտ և արթուն մասին հետ Սահմանադրութեան հաստատութիւնը, և Ազգին անդորրութիւնն ու ներդաշնակութիւնը ուզելուն համար, իր Պատրիարքական պաշտօնը զոհել յանձնառու կ'ըլլայ։

Սարգիս Եպիսկոպոսը Պատրիարք ընտրուելով, երբ առաջին անգամ Սահմանադրապէս Ընդհանուր ժողով կը գումարուի (1860 Մայիս 24), առանց ժողովին ներկայանալու, իր ստորագրութեամբը ընդունած Սահմանադրութեան դէմ գրաւոր բողոք մը կը ղրկէ [1]. որուն մէջ կըսէ «Ցիրաւի Սահմանադրութիւնը ստորագրեցի. բայց աղէկ մը չը կարդացի զանի. ուստի չ'եմ ընդունիր որ աշխարհականք Եկեղեցականաց ընտրութեան մասնակից ըլլան[2]. իմ խղճիս կը դպչի... (առաջին որոգայթ [3])։

Երանելին շատ խիղճ ունի ... Սահմանադրութենէն յառաջ շատ անգամ իրեն անդամ գտնուած Գերազոյն ժողովը չ'էր'

---

չ'տալէ զկնի, կ'յարձակի բարկութեամբ խեղճ Սրբազանին դէմ ալ, «սէն մանսուպ տէլլիսի օլմուշուն, Սահմանադրութեան տակէն անհաւատութիւն պիտի ելլէ» ըսելով, ուրկէ Սրբազանը վիրաւորուելով դուրս կ'ելլէ և անմիջապէս իր հրաժարականը Բ. Դուռը կ'ղրկէ, բայց հասարակութիւնը ոտք կոխելուն համար վերստին Պատրիարքութիւնը յիշեալ Սրբազանին վրայ կ'հաստատուի։

(1) Պատգամաւոր Պ. Աբիստղոմ Աղայ։

(2) Անիրաւ խտրութիւն, իբր թէ Եկեղեցականք բուն Ազգին անդամները չ'են, այլ ուրիշ էակ մը կամ տարբեր մարմին, (պապական դրութիւն)։

(3) Ուրկէ սնունդ առնուլ սկսաւ աղմուկ Ազգային գժտութեան, վասն զի յառաջուց թելադրուած 13 անձինք երեսփոխաններէն' պատգամաւորին հետ բարկութեամբ ժողովէն դուրս ելլելով առին քալեցին . . . ։

որ Հոգեւոր ժողովոյ անդամները կ՚ընտրէր, և առաջնորդաց, եայլն, ընտրութեանը մասնակից կ՚ըլլար, ուր էր այն ատեն այս խնդիրը. արդեօք խոր քունի մէջ էր ընկղմած: Միթէ չ՚էր գիտէր՝ որ Սահմանադրութիւնը կրօնական ժողովոյ անդամոց ընտրութեան գործը համեմատաբար աւելի Եկեղեցականներէ քան թէ աշխարհականներէ բաղկացեալ՝ Ազգային Ընդհանուր ժողովոյ յատկացուցած և Քաղաքական ժողովէն նախադաս բռնած է: Միթէ չ՚էր գիտէր որ Լուսաւորչական Հայը ասանկ կղերական ընտրութեանց մասնակից եղած է միշտ և ամէն աստիճանի եկեղեցականաց ձեռնադրութեանը անգամ իր հաւանութիւն տալը Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ զաւակաց վաղեմի և ազատ իրաւունքն է և թէ այն իրաւունքը մինչև ցայսօր ալ անխախտ պահուած է: Այո, շատ լաւ գիտէր, բայց որովհետև Սահմանադրութիւնը Ազգը բարեկարգելու և Ազգային իրաւունքները ՚ի լոյս հանելու կ՚առաջնորդէ, անշուշտ ոխերիմ թշնամի է ճիզվիթութեան. անոր յոտին կալը իր խղճին կը դպչի. պէտք է ուրեմն որ կործանի անհետ ըլլայ:

Ո՜հ, որքան լաւ կը ղեկավարուէր անկէ առաջ Ազգին նաւը . . . որովհետև ինքնակոչ Ընդհանուր ժողով մը ունէր Ազգը (խոր քունի մէջ թմրած ատեն). ուր հրաւիրեալներուն չորս բաժինէն երեքը շահասիրաբար ճիզվիթական կեդրոնին յարուողներէն կը բաղկանար. և այն ժողովոյ «հարազատ զաւակ, գերազոյն» անունով ժողով մ՚ալ կար, որուն անդամոց մեծագոյն մասը՝ ինչպէս վերը յիշած ենք, հոգւով եւ մարմնով նոյն կեդրոնին կամացը ծախուած ակնառուներէ և ամենափոքր մասն ալ՝ իբր կասկածի տեղի չ՚տալու համար ողջամիտ ազգասէրներէ կընտրուէր. Հոգևոր ժողովին ընտրութիւնն ալ այս եղանակաւ կ՚ըլլար: Ըսել է որ յիշեալ կեդրոնը այս երեք ժողովոց վրայ կատարեալ վստահութիւն ունէր. և ինքը ինչ որ ուզէր՝ անոնց ընել կուտար. առանց երևնալու և խոնջելու:

Նոյն կեդրոնն էր որ Երուսաղէմայ վանուց հանգուցեալ Յ. Պատրիարքին ազգայնաս ընթացից և արարմանցը դէմ բար-

կանալով, ժողովին հետ կը միաբանի. և Կ. Պօլիս բերել տալու համար՝ Բ. Դռնէն յատուկ հրամանագրով մը երկու պաշտօնատար Երուսաղէմ կ'ղրկուի: Երբ Յակոբ Պատրիարքը Աթոռէն վար ձգելու համար ըրած ճիգերը պարապ կ'ելլեն, այն ժամանակ 'ի հակառակութիւն ժողովոյն անոր հետ կը հաշտուի, և ամէն միջոց ձեռք առնելով. անոր Կ. Պօլիս գալը կ'արգիլէ. յիշեալ վանքին ալ խել մը դրամական վնասներ պատճառելէ ետև (¹):

(¹) Որովհետև յիշեալ Պատրիարքը այս մասին բաւական ստակ վատնեց և որոց ինչ ղրկեց նէ, շատերուն ծանօթ է. վասն զի խորհրդականաց ձեռքէն վանքին բոլոր գործերը, ստակ, հաշիւ տոմար, տնտեսութիւն, ասոնց բոլորն ալ յափըշտակած՝ միապետական դրութեան ներքև ամէն բան ըստ քմաց տակն ու վրայ ըրած ըլլալով, հարցնող՝ քննիչ չըլլալուն համար 'ի նպաստ իւր յամառ կրից զաղտագողի Պօլիս ղրկած հրիտակին ուժովը Ազգային ժողովը պառակտել յաջողեցաւ և յաղթութիւն կանգնեց 'ի վնաս Ազգին: Ինչպէս իր բերնէն անգամ շատերը լսած են, որ իբր պարծանօք կըսէ եղեր թէ՝ «Իքի պին քէսէ աքճէի տէնիզէ աթտըղըմ կիպի, իշիմի պիթիրտիմ, շաշքընլար, Ստամպօլտա օլան քիմսէլէրի պանմ մը էօյրէտէճէքլէր:

Վասն զի Ազգային ժողովոյ անդամներէն, որոնք որ յիշեալ Պատրիարքը Պօլիս բերել տալու որոշման վրայ հաստատ կենալ և անոր գործադրութեանը հըսկել կ'ջանային, վհատեցան, ձանձրացան, և ետ քաշուելով, դարձեալ Ազգին սանձը ճիզվիթ խմբակին ձեռքը մնաց ուզածը տնօրինելու համար: Եւ իբր թէ հասարակութեան բերանն ալ գոցելու դիտմամբ, վանքին մէջ նոր շինուած ուսումնարանէն զատ Աշնանեանի գրութեան միջոցաւ կրկին ուսումնարանի մ'ալ ձեռք զառնուելով, 2 հազար քսակ ալ այդ մասին ընդ վայր մսխուեցաւ, և այլն: Խեղճ մարդ՝ եթէ իր գործադրած Պատրիարքութեան վրայ վստահ էր, թող աներկիւղ ելլէր Պօլիս գար. չէ թէ խղճալի Ազգին ստակը այնպէս ցրուելով փախուստի ճամբայ բռնէր: Բայց ահա խարդախութիւնը այսպէս իր սատրիկ վախէն վատ միջոցներու դիմելով, արդարութեան երեսէն փախչտիլ գիտէ միշտ:

Ահա սնոտի վատնում և զուր տեղ Ազգին հասած վնասները, որոնք Ազգին անտարբերութեան, անհոգութեան, կուսակցութեան և անկանոնութեան դառն պտուղն է: Վասն զի թէ որ Պատրիարքին (ինչպէս նաև համայն Եկեղեցականաց ալ) ամսական թոշակ կապուած և կանոնաւոր հաշիւ. տոմար հաստատուած ըլլար, վատնիչ և յափշտակիչ ձեռքեր չէին պատահէր Ազգին մէջ 'ի վնաս Ազգայնութեան, սակայն Ազգը իր ստացուածքին ու իրաւանցը տէր չըլլալուն համար մինչև ցայսօր կեղեքիչ ու կողոպտիչ ձեռքերու մատնուելով ցաւալի վիճակի մէջ կը տառապի, որով տգիտութիւնը հարկաւ իր վրայ պիտի թագաւորէ, և հետև

Ազգը իբր Թանձր քունէ մը ստափած իր Ազգային գործերուն առ հասարակ անկանոն և յետախաղաց ընթացք ունենալը տեսնելով, և իր բոլոր հաստատութեանց անկարգ և խառդախ մատակարարութեան մը ենթակայ ըլլալը իմանալով, նոյնպէս Ազգային եկամտից անխնայ և չարաչար վատնուելուն պատճառաւ հանապազ ամէն բարեմասնութենէ ետ մնացած դէպ ի աղքատութեան և Թշուառութեան ճամբայ բռնած ըլլալը հասկնալով, և որ աւուր իր վիճակին վատթարանալովը, իր միակ սիրելի Ազգութիւնն ալ ի կորուստ մատնուելու վտանգի մէջ գտնուիլը զգալով, և հետևաբար օրինաւորութեան և կանոնաւորութեան ամենակարևոր և խիստ ըստիպողական ըլլալը ճանչնալով, քանի մը տարի յառաջ Եկեղեցեաց, Վանորէից, Դպրոցաց, Հիւանդանոցաց, և առ հասարակ որ և է Ազգային կալուածոց և հաստատութեանց կանոնաւոր տեսչութեանն ու մատակարարութեանը, և Պատրիարքաց, Առաջնորդաց, և այլն ընտրութեանը պէտք եղած և Օսմանեան բարեխնամ Տէրութեան կողմէն 'ի նախնեաց անտի շնորհեալ արտօնութիւններուն համաձայն գտնուած Ազգային ցիրուցան կանոններէն քաղելով, իր արդի վիճակին պատշաճ իբր Ազգութեան իրաւանցը վրայ հիմնեալ Սահմանադրութիւն մը կը յօրինէ. (այս բառը նոր գործածուած չէ, տես 'ի հին մատեանս և 'ի խորենացին:) Ժամանակին Պատրիարքը, Ս. Էջմիածնայ Մայր Աթոռոյն ներկայ Ս. Կաթողիկոսը. Կ. Պօլիս գտնուող Եպիսկոպոսունք և Վարդապետք, երևելի սեղանաւորք և արհեստաւորք և այլն և այլն սիրով և ուրախութեամբ կընդունին և կ'ստորագրէն նոյն յիշեալ Սահմանադրութիւնը:

Ծիզվիթութիւնը այսպիսի Սահմանադրութեան մը շնորհիւ Ազգը բարեկարգ վարչութիւն մը ունենալուն և հետևաբար

---

քարաղքատութիւնն ու Թշուառութիւնն ալ մահ կ'սպառնայ: Ահա այս է պատճառ, որ Ազգը այսօր զուրկ մնացած է նիւթական և բարոյական յառաջադիմութենէ. ամէն ամէն կըսեմք, որ եթէ այս ընթացքը չ'փոխէ կամչուզէ փոխել, քիչ ատենէն Ազգայնութիւնն ալ կորսնցնելու Թող չ'տարակուսի:

ամենայն օրինաւորութեամբ որ քան զօր յառաջ դիմելուն երբէք չ'տարակուսելով, անոր դէմ իսկ և իսկ զաղտնածածուկ մատնութեան, քսութեան և հակառակութեան պէս ինչ գարշելի և վատ միջոցներ կայ նէ գործածելով, զանի գլխովին անգործադրելի ընել տալու ջանքը կ'սկսի ձեռք առնուլ:

Խրիմեան Մկրտիչ Վարդապետը Վասպուրական գաւառին մէջ ազգասիրաբար գիտութեան լոյսը ծաւալելու առաջարկութիւն կընէ: Երբ որ մէկ կողմէն Ազգին լուսաւորեալ ողջամիտ մասը եռանդուն ազգասիրութեամբ պետք եղած ձեռնտուութիւններն ու նպաստներն ընելու գուն կը գործեն, միւս կողմէն ալ յիշեալ կեդրոնը նոյն Աստուածահաճոյ գործոյն յաջողելուն դէմ որքան վատ միջոցներ կայ նէ կ'գործածէ, և յիշեալ վարդապետին դէմ նոյն գաւառին քանի մը ԵՐԵԽԵԼԻՆԵՐԸ ի Թշնամութիւն զրգռելու համար՝ անոնց զաղտնի թուղթեր ալ կը գրէ. տպարանին առ ժամանակեայ զոցուելուն պատճառ կըլլայ. մինչև անգամ անոր կեանքը վտանգի մէջ ձգուելու կ'աշխատուի. բարեբաղդաբար այն Թուղթերուն մէկը ձեռք անցնելով դաւաճանութիւնը կիմացուի, և աներևոյթ սատանան երևան կելլէ . . . :

Վենետկոյ Մխիթարեան ուխտէն չորս Վարդապետք սիրով իրենց մայրենի Եկեղեցին կ'վերադառնան և Ազգին պատշաճ և յարմար զտած տեղ գիշերոթիկ դպրոցի մը մէջ անձնուիրաբար ծառայել յանձնառու կըլլան, բայց Ազգային որ և է բարեյաջողութեան ոխերիմը ասկէ ալ զայրանալով ճիզվիթաբար զանոնք կը քայքայէ յերկիր կը տապալէ և անոնց վրայ ալ բարուրանքներ տեղացնելով խեղճերը ցիր ու ցան կընէ, ինչու համար, վասն զի նախ՝ իրենց հարազատ մօր գիրկը վերադառնալ ուզողներուն աչքը վախնալով այն տեղէն չ'շարժին. երկրորդ խեղճ Հայերը ստիպուին իրենց զաւակը Փարիզ Մուրատեան վարժարանը ղրկել, որ այն անմեղ մանկունքը պապական սկզբանց համեմատ դաստիարակուին:

Նոյն կեդրոնը որ Ազգային լրագրի մը ինչ արդիւնք և ներ-

*գործութիւն ունենալը սովրելու բնաւ կարօտ չէ, ինչ կընէ չ'ընէր Հայաստան Ազգային լրագրոյ խմբագրութիւնը ճանկն անցունելով, կ'սկսի Ազգին ականջը սակաւ առ սակաւ Պապական սկզբանց ընդելացնել:*

*Զ'ամաչէր Հայաստան մականուն տալ անանկ Հայատեաց ճիզվիթի մը, որ արևելք եկած է արևելեան Եկեղեցեաց' և մասնաւորապէս Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ հիմը տապալելու պաշտօնով. և իր Հայաստան օրագրին միջոցաւ զրպարտած է անխնայ Լուսաւորչական Ազգն ու Եկեղեցին: Արդարև նոյն լրագրոյ Արգոյ խմբագրին այս ըրածը ուրիշ բան չէ, եթէ ոչ ջերմ գործակցութիւն մը իւր Ազգին և մայրենի Եկեղեցւոյն կործանմանը, բայց խեղճը կարեկցութեան արժանի է, որովհետև վարձատրութեան համար ինք ուխտիւք ճիզվիթ եղած է. և ուխտին մէջ հաւատարիմ մնալու համար պատւոյ մինչաւ ընդունած է, պէտք է ուրեմն որ ամէն բան անոր օգտին զոհէ. մինչև անգամ Ազգն ու կրօնքը: Ո՞վ գիտէ, կարելի ալ է որ' այն ատեններն ուխտը ամէն բանէ նախապատիւ համարելով' խիղճը չ'էր ներէր ուխտազանց գտնուելու: Ափսոս, որ կրիւք եղած երդման, մեղք չը համարուիլը վճռող, 1861 Օգոստոս 2, Եկեղեցականաց համագումար անուանեալ Ս. Ժողովը նոյն միջոցին չ'է պատահած: Ի՞նչ աղէկ պիտի ըլլար, գուցէ Արգոյ խմբագիրը իր շահասիրաբար ըրած ուխտը հանդարտ խղճիւ զանց ընելով, ոչ Ազգը մատնելու, և ոչ կրօնքն լլկելու պէս աններելի ոճիր գործելու, և ազգուրաց տխտղոսով պսակուելու չ'էր ստիպուէր: Կերևայ թէ ինքն ալ նոյն միջոցին ճիզվիթական հոգեշահ սկզբանց առաձգական կարողութեանը բաւական հմտութիւն չունենալուն. չէ կրցէր անանկ փրկարար թելադրութիւն մը ընել Հայ կղերին:*

*Հայաստանը իբրև Ազգային Պաշտօնական լրագիր, իր խարդաւանութեան չափը կ'անցնէ. և վերջապէս իրաւացի ամբաստանութեանց տեղի տալով, իր անունն ու խմբագիրն*

ալ փոխել հարկ կ'ըլլայ։ Ասոր վրայ ճիզվիթութիւնը առանց յապաղելու, իր սովորական հնարագիտութեամբը ուրիշ արդիւնաւոր միջոցի մը ձեռնամուխ կ'ըլլայ. այն է Հայերէն գրով և Տաճկերէն լեզուաւ գրուած Ջօհալ անուն տետրակին հրատարակութիւնը, որն որ իրեն մեծ դիւրութիւն կուտայ Պապական սկզբունքը տարածելու այն Լուսաւորչականաց մէջ, որոնք Ռումէլի և փոքր Ասիայ կը գտնուին. և բնաւ Հայերէն չեն գիտէր. և հետևաբար կրօնի ալ տեղեկութիւն չ'ունին։

Նոյն տետրակն ալ Հռովմայ Եկեղեցւոյն նորահնար վարդապետութիւնները արձակ համարձակ քարոզելէն ետ չ'կենալով, Ազգին մէջ մեծ գայթակղութիւններ և բողոքներ երևան ելլելու պատճառ կ'ըլլայ (¹)։ Ուստի Յակոբ Պատրիարքը Եկեղեցական համագումար ժողով մը ընել կ'ստիպուի, երեք Եպիսկոպոսներէ, չորեքտասան Վարդապետներէ, քսան Քահանաներէ, և երկու Աստուածաբան պատուելիներէ բաղկացեալ(²)։ Ժողովը Ջօհալն իբրև մոլար վարդապետութեան աղբիւր, և խմբագիրն ալ, որ Պատրիարքին հրամանին դէմ կենալով՝ ոչ ժողովին ներկայանալու, և ոչ գրութեամբ պատասխան տալու կը գիջանի, իբրև անհնազանդ և գայթակղեցուցիչ կը դատապարտէ։ Վարդապետ մը միայն չ'հաճիր ստորագրութիւն տալ (³)։ Յակոբ Պատրիարքը սոյն ժողովոյ վճիռը ամէն կողմ հրատարակելու դիտմամբ շրջաբերական կոնդակ մը հանելով, երբ՝ Թէ Կ. Պօլսոյ Եկեղեցիները և Թէ բոլոր Հայաբնակ գաւառները ցրուել կ'պատրաստուի, յիշեալ կեդրոնին արբանեակներէն մէկ երկու աշխարհական անձինք արգելք կըլլան այն կոնդակին ցրուելուն (⁴)։ Սոյն աշխարհա-

---

(¹) Այս մասին կ'գովենք մեր Զմիւռնիաբնակ Ազգայնոց ալ աչալրջութիւնը. որոնք Ազգին ամբողջութեան և մայրենի Եկեղեցւոյն ազատութեանը նախանձախնդիր ըլլալով բողոքեցին յայնժամ առ Պատրիարքն։

(²) Գէորգ Զափրաստճեան Մխաչեայ և Գրիգոր Միրզայեան։

(³) Այս այն Սեթեան կոչուածն է, որուն ոգին չճանչցող չ'կայ Ազգին մէջ։

(⁴) Յիշեալ կոնդակներէն մէկը՝ Միհրդատեան Պ. Թադէոսին ձեռքը անցած ըլլալով, Մասիս լրագրի միջոցաւ անցածները հրատարակուեցաւ, Թիւ. 515։

կաններուն ալ ով ըլլալնին և ինչ ոգի ունենալնին․ Ազգին ողջամիտ մասը արդէն աղէկ կը ճանչնայ ։

Զօհալը դատապարտուելէն ետև, Պատուելի խմբագիրը իր սովորական խորամանկութեամբը անոր նոր կերպարանք մը տալու համար, անունը և լեզուն հայերէնի փոխելը խոհեմութիւն կը սեպէ ։ Եւ դեռ նոյն անխիղճ ոգւով իր մայրենի ուղղափառ Եկեղեցին հիմնահատակ ընելու անիծեալ գործը կը շարունակէ Երեւակ անուն հանած տետրակին միջոցաւը(1) ։

Երբ քանի մը տարի առաջ Կարդինալ Ֆէրիէրին Հռովմայէն Կ․ Պօլիս պատգամաւոր եկաւ, ճիզվիթական կեդրոնը ամէն հնարք 'ի գործ դրաւ, որ անոր միջնորդութեամբը Թերեւս կարող ըլլայ իր նպատակին հասնիլ ։ Յիշեալ Կարդինալը Հայոց Պատրիարքարանը կուգայ, ուր երկար խօսակցութիւններ ըլլալէն ետքը, որչափ որ Հայաստանեայց Եկեղեցւոյ ուղղափառութիւնը չը կրնար ուրանալ ալ նէ, Պապին գերագոյն գլուխ ճանչցուիլը և մեր Կաթուղիկոսին ընտրութիւնն ու վաւերացումն ալ նորին անմիջական իշխանութենէն կախում ունենալը, իբրև միակ պայման առաջարկելուն, և այս մասին

(1) Յիշեալ խմբագիրը' ինչպէս ճիզվիթ մեծաւորին հետ յարաբերութիւն ունի, նոյնպէս իր գաղափարին մօտ և նոյն սկզբանց ծառայօղ մաս մը անգէտ կղերին ալ . . . վասն զի դժբաղդաբար կան այնպիսի Եկեղեցականներ Թէ Եպիսկոպոս' Թէ Քահանայ, որոնք պապական սկզբանց և դրութեանց կը հետևին, և Թաքուն միալ կ'ուզեն Ազգին մէջ, նաև անոնք' որ Ազգին բարձր պաշտօններու ալ գլուխ անցած են ճիզվիթական հնարիւք, զորոնք խնայեցինք յականէ յանուանէ յիշել հոս, ուստի Թէ սանց և Թէ խմբակին անդամոց և իրենց արբանեակներուն անունն ալ ուրիշ առԹի կը Թողունք ։ Զանց կ'ընենք հոս նաև զանոնք' որոնք գրիչնին շահասիրութեան մը գործիք ընելով շողոքորթութեամբ ճշմարտութիւնը աքսորել և Ազգին իրաւունքը օտարին սեփհականացնել կ'ջանան ։

Սակայն չենք ուզէր մոռնալ, Երուսաղէմի վանուց Յ․ Սրբազանին ընԹացից նկատմամբ' Միհրդատեան Պ․ Թադէոսին հրատարակած տետրակին դէմ անցածները իբր դատաքննութեան սպարէզ իջնող և զանի սուտ հանելու փորձ ընող Երևակին մէկ գրիչը, որուն 'ի պատասխանի ահա յիշեալ Միհրդատեանէն առած տեղեկութիւններս ընդարձակ ծանօԹութեանց մէջ դրինք, Թիւ Բ ։

զոնէ առժամանակեայ զիջում մ'ալ չ'ընելուն համար, բարեբաղդաբար գործը բոլորովին եւ ձգել հարկ կըլլայ (1):

Ժամանակէ մը ետքը Տաճկաստանի արք Եպիսկոպոսներէն մէկին Արարատեան Ս. Աթոռոյն նոր Կաթուղիկոս ընտրուելու խնդիրը երեւան կելլէ, ճիզվիթական կեդրոնը դարձեալ ինչ կընէ չ'ընէր ուզածին պէս լուծել կուտայ (2), և այս առթիւ բովանդակ Ազգին մէջ սոսկալի զժտութիւն և երկպառակութիւն պատճառելու համար, դիտմամբ անանկ ձեռնարկութիւն մ'ընելու ոտք կ'ելլէ . . . որ կրնար իբրև ահռելի անդունդ Ազգն ամբողջ կլանել, և իր գոյութեան հետքն անգամ չը թողուլ. սակայն Վերին նախախնամութեան ամենաբարի կամեցողութեամբը դաւը իմացվելով առաջը կ'առնուի:

Փարիզ անուն Հայ լրագիրը ասոր վրայ բաւական տեղեկութիւններ տուաւ ալ նէ, դիտողութեան արժանի քանի մը պարագաները կամ չը գիտնալով չէ յիշեր. կամ լռութեամբ անցնիլ ուզած ըլլալուն, խիստ կարևոր կը համարիմք ընթերցողաց յայտնել զանոնք, որոնցմով կրնայ միայն աղէկ հասկըցուիլ նոյն իրողութեան մէջ նշմարուած ճիզվիթական դաւաճան ոգին:

---

(1) Արեւելեան Եկեղեցեաց և մասնաւորաբար Հայոց մէջ պապականութեան ճարակուիլը, և օր ըստ օրէ Ասիաբնակ Քրիստոնէից ճնշման ենթական ըլլալը տեսնելով, և այդ մասին դարման մը ճարուելու նպատակաւ Անգղիոյ Եպիսկոպոսական Եկեղեցիին կողմէն պաշտօնական նամակ մ'ալ յատուկ պատգամաւորաւ Արարատայ մեր Ս. Կաթուղիկոսին ղրկուիլը կ'լսենք . որպէս զի անխտիր քրիստոնէական սիրոյ յարաբերութեամբ բարոյապէս միմեանց կարեկցելու և ուսմանց ու գիտութեանց լոյսը ծաւալելու մասին ալ տնօրէնութիւն մը լինի:

Նոյնպէս 1860 ին դարձեալ պաշտօնական նամակ մ'ալ կ'յանձնուի ի Պատրիարքարան՝ յանուն Մատթէոս Ս. Կաթուղիկոսին: Եւ յիշեալ Թուականին Փետրվար 25, Անգղիոյ Քեամբրիճ Քրօնիգլ օրագրին միջոցաւ կ'հրատարակուի:

(2) Անցածները «Դաշանց Թուղթ» վերնագրով տետրակ մալ հրատարակուեցաւ, որուն դէմ Շահնազարեան Կարապետ Վարդապետը գաղտնեաց վարագոյրը կիսով չափ բանալ պարտաւորուելով, անմիջապէս բողոքեց «Փարիզ» հայ օրագրին միջոցաւ:

Իբր թէ անտէրունչ Ազգի մը պաշտպանուելու և անանկ հզօր պաշտպանութիւն մը ձեռք ձգելու համար, Ռուսիոյ Եկեղեցւոյն յարելու կարևորութիւն մը համարուիլը յիշեալ կեդրոնին կողմէն քանի մը երևելի Ազգայնոց իմաց կ'տրուի․ որոնց համոզուելովը Բերայ մասնաւոր ժողով մը կ'գումարուի, և առաջարկեալ գործին որոշումը ըլլալով պայմանագիր մը կ'ստորագրուի: Իսկ ոմանք յԱզգասիրաց, որոց միակ բաղձանքն էՀայաստանեայց Ս. Եկեղեցւոյ ազատութիւնն ու Ազգին ամբողջութիւնը, բանը իմանալնուն պէս, նոյն միութեան գործը արգիլելու համար՝ վերոյիշեալ պայմանագրին մէջ կարևոր եղած փոփոխութիւնները ընել կուտան:

Նոյն կեդրոնը՝ որ միշտ և հանապազ Թագուն մնալ կ'ուզէ, առանց ինք երևնալու կը խրատէ իր հաւատարիմ արբանեակները որ առ երեսս հաւանութիւն տան այն փոփոխութեանց, և ձեռքի տակէ գործը քալեցնեն:

Մեծ շնորհակալութիւն այն արթուն Ազգասիրաց անխոնջ հսկողութեանը՝ որ անոնց մեքենայած հնարքները յաջող վախճան մը չ'են ունենար, և խեղճ Ազգը կ'ազատի առաջը ելած սարսափելի վտանգէն ([1]):

Ծիզվիթական կեդրոնը իր նիւթած այս դաւաճանութեան անյաջող ելք մը ունենալուն բնաւ տարակոյս չունէր, բայց իր խնդրովը սանկ կը հաշուէր թէ՝ երբ Ազգը միահաղոյն այնպիսի երկպառակութեան Ազգակործան փոթորկէ մը բռնուի․ անշուշտ պիտի կտրէ բոլորովին յոյսը իր սեպհական Մայրենի Աթոռէն, և Ազգին մեծագոյն մասը պիտի զզուի գլխովին իր կղէրէն, և հուսկ յետոյ զոնէ իր սիրելի Ազգութիւնը և լեզուն պահպանելու համար (սնոտի կարծիք), Պապականութեան ծանր լուծին պիտի զիջանի պարանոց երկնցնելու: Ինչպէս երբեմն ալ Ռուբինեանց աղէտալի ժամանակները պատահե-

([1]) Ահա Գէորգ Պատրիարքին դէմ Թշնամանաց ատելութեան և մինչև Պատրիարքութենէ հրաժարուելուն անգամ գլխաւոր պատճառ, նոյն պայմանագիրը չը վաւերացնելն եղած է:

ցաւ. որուն հետեւանքը որչափ սուղի նստած է մեր Ազգին նէ, պատմութեան տեղեակ եղողներուն յայտնի է (1): Տես ընդարձակ ծանօթութեանց մէջ. Թիւ Գ.

Շատ լաւ կըլլար եթէ յիշատակաց արժանի մեր հանգուցեալ Ներսես Կաթողիկոսին փափաքները լցուած ըլլային յօգուտ Ազգին. ինչպէս իւր 1851 ի նամակէն կրնայ հասկցուիլ. որուն պատճէնը Միրզէխանեան Աւէտ Պէյին ձեռքը անցած ըլլալով՝ անոր թարգմանութիւնը արժան դատեցինք ընդարձակ ծանօթութեանց մէջ դնել. Թիւ (Դ):

Նոյն կեդրոնը թէև Սարգիս Եպիսկոպոսը Պատրիարք ընտրել տուած էր, սակայն քանի մը ամիս ետքը ջնջին պատճառանօք անկէ ալ դժգոհ ըլլալ կը ձևանայ. նախորդ Պատրիարք Գէորգ Սրբազանին մտերմութեան ցոյց մը կուտայ, ետքը անկէ ալ խորշիլ և դարձեալ մտենալ կը ցուցնէ, որպէս զի մէջերնին սաստիկ նախանձութիւն ծագելով, իրարու անհաշտ թշնամի ըլլան: Գուցէ ընթերցողք հարցնեն թէ ինչու համար այս բաները կը գործէ. վասն զի Ազգ Սահմանադրութիւնը իւր աչքին դաժան փուշ մը ըլլալով, անոնցմէ գոնէ մէկը իրեն ազդու միջոց մը ընել կուզէ, որով՝ որպէս թէ Սահմանադրական իղձն ու եռանդը Ազգին սրտէն տարագրէ և իսպառ սպառ ոչնչացնէ: Քանզի լաւ համոզուած էր որ, եթէ Ազգը շարունակ Սահմանադրապէս ընթանայ, սա նեղ պարագայից մէջ ալ, այն առաջին անկարգութեան ժամանակէն մնացած միլիոնէն աւելի պարտքը վճարելէն զատ, Ազգ. հաստատութիւնները և եկամուտները բարեկարգելով, Ազգին դրամագլուխ մ'ալ ճարելու կարող պիտի ըլլայ և բարի դաստիարակութեամբ իւր զաւակները կրթելով և աղքատութիւնն ալ իր վրայէն թո-

(1) Չ'մոռնանք յիշել հոս նաև այն Բոլոնիացիները, որոնք պապական ըլլալով իրենց պապականութեամբը հանդերձ դարձեալ կարող չեղան իրենց կրած նեղութեան... Տիրաններէն ազատիլ: Նեղ պարագայի մէջ անգամ անպաշտպան գըտնուեցան: Թողունք ըսել որ նոյն իսկ պապականութիւնը այսօր այն ոյժը չ'ունենալէ զկնի, մահուան անկողնի մէջ ալ արդէն ոգեքաղ կ'խռայ մերձ ի մահ:

Թուելով ամենայն մասամբ նիւթապէս և բարոյապէս յառաջադէմ պիտի զարգանայ, և ուրիշ ազգաց ալ գովելի և սիրելի ըլլալու, մանաւանդ իւր ազնիւ Ազգութիւնը ամբողջ և անդրդուելի և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյն անկախութիւնն ու ուղղափառութիւնն ալ անխախտ և անարատ պահելու կարող պիտի ըլլայ:

Ծիզվիթական կեդրոնը կրնայ հանդուրժել երբ իւր նպատակին և շահախնդիր արբանեկաց անձնական շահուն խիստ հակառակ և բարելաւ կանոնաւորութեան մը գոյաւորիլը ակն յանդիման տեսնէ:

Ծիզվիթութիւնը միայն խաւար տգիտութիւնն ու կոյր կրօնամոլութիւնը տածող և պաշտպանող ըլլալուն, բնականաբար ամէն ճիգ պիտի թափէ, որ արթնութեան և լուսաւորութեան պատճառ եղող ամէն բարեկարգութիւն անողորմաբար ի կորուստ մատնէ, և ահա Սահմանադրութիւնն ալ բարեկարգութեան աղբիւր մը ըլլալուն, պէտք էր որ լռիկ մնջիկ անոր անելանելի փոս մը փորելու զբաղելով՝ դիպող առիթ մը ձեռք անցնելուն պէս, Ազգին ներկայ և ապագայ բարեկեցութեան միակ յոյսը՝ այն փոսին մէջ գահավիժէ, և իւր ազգակործան մեքենականութիւնը անարգել յառաջ տանի որուն համար. ինք երդում ըրած է ճիզվիթ մեծաւորին առջև (1), ուստի իւր սաստիկ վախէն չ'կրնար երդմնազանց գտնուիլ:

Ազգային Ժողովները ըստ կանոնի հաստատուելէն ետքը, նախապէս Ազգին վրայ դիզուած ու ծանրացած միլիօնէն աւելի պարտքը զիրենք կ'ողջունէ. և Ընդհանուր ժողովոյ· Երուսաղէմայ վանքէն փոխառութիւն մը ընել և կամ յառաջուց կապուած 120000ղուրուշ տուրքին քանի մը տարեկանը մէկտեղ պահանջել կ'որոշուի (2):

---

(1) Միւսիւ Էօժէն Պօրէ:

(2) Ժողովը խաբուելով սխալեցաւ այս որոշման մէջ, վասն զի նախ բարեկարգութիւն մուծանել պէտք էր. որով Ազգին վստահութիւնը գրաւելով կարող ըլլար այն ատեն ապահովապէս փոխառութիւն մը ընել, երբ ուզէր:

Իսկոյն այս որոշման դէմ յիշեալ գաղտնի մեքենականութիւնը կսկսի դարան գործել (որոգայթ երկրորդ) . վասն զի Երուսաղէմայ Պատրիարքին գացած գաղտնի նամակներուն տըրուած հրահանգին համաձայն ստակ չ'կայ կ'պատասխանուի, որպէս զի ժողովականք անկարող ըլլալով Ազգին գործերը յառաջ տանելու, ձանձրանան, վհատին, և բոլորովին ետ քաշուելով' Ազգին կառավարութեան սանձը իրենց ձեռքը մնայ' ուզածնին գործադրելու համար: Ահա Սահմանադրութեան դէմ ձեռք առնուած միջոցներուն նկատմամբ 1861 Օգոստոս 8 Սահմանադրութիւն և Մ'էճմուա վերնագրով տըպեալ տետրակն ալ ճշդիւ կ'բացատրէ:

Երուսաղէմայ Պատրիարքը 1860 Դեկ. 24 կը վախճանի և հետևաբար ուրիշ մը ընտրել կ'հարկաւորի: Ծիզվիթական կեդրոնը այս դէպքը իբրև յաջող առիթ' մը ձեռք կառնու և կ'սկսի իւր անագորոյն կամացը համեմատ մեքենայել:



ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ

# ԵՐԿԱՄԵԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑԻՑ



Ս. Զատիկը մօտ ըլլալուն, ուխտաւորները շահելու և Ս. տեղեաց Ազգային ժառանգութեանց պահպանութեանը վրայ հսկելու համար, Ազգային Վարչութիւնը անմիջապէս ժողով գումարելով՝ Եպիսկոպոս մը հոն խրկել կ'որոշէ։

Նոյն կեդրոնը ճիզվիթ խմբակին հետ այս որոշման դէմ իսկոյն մէկ քանի հակառակորդներ յարուցանելով վերոյիշեալ որոշման գործադրութեանը արգելք կըլլայ։ Բայց այս ընդդիմութիւնը՝ Ազգին արթուն և ողջամիտ մասին առջև, իրենց գաղտնի դարանը կը յայտնէ՝ Յակոբ և Սարգիս Եպիսկոպոսներուն վրայ միայն վստահութիւն ունենալ ցուցնելովնին, որով միւս Եպիսկոպոսաց պատուոյն դպչելէն զատ, իրենց հնարած նզովքին ալ անհիմն ըլլալը իրօք կապացուցանեն. վասն զի Յակոբ Եպիսկոպոսը, երբ իւր ծերութիւնը պատճառելով «չեմ կրնար Երուսաղէմ երթալ» ըսելով. ետ կայնեցաւ (կեղծիք, վասն զի յետոյ ուխտի գնաց) այն ատեն կ'սկսն ամենայն զօրութեամբ պոռալ կանչուըռտել «Եզովֆ կայ դրուկն մարդ ղրկել չըլլար» ըսելով։ Եւ յիրաւի յիշեալ երկու Եպիսկոպոսներէն մին թէ որ երթալու ըլլար՝ նզովք չ'կար։

Այն օրերը միաբան անուանեալ քանի մը նորահաս աբեղայից կողմէն Տիգրանակերտցիի Յակոբ (1) անուն Վարդապետ

(1) Ծերակոյտ անդամներէ զուրկ քանի մը ԵՐԿԱՐԱՄԻՏ աբեղայից մէջ իբր թէ ամենէն քանիբունը այս վարդապետը գտնուելով պատգամաւոր ընտրուած էր։ Աւեղծ միաբանութիւնը շատ աղէկ կընէր եթէ զանի չի ղրկեր. քանզի Ազգ. Վար-

մ'ալ Երուսաղէմէն Կ. Պոլիս կ'հասնի իբրև պատգամաւոր՝ առանց սպասելու Ազգին ընելիք տնօրութեանը :

Վարչութիւնը մէկ կողմէն կ'պատրաստուի միաբանութեան օրինաւոր ցուցակ մը պատրաստել տալ և Պատրիարքի ընտրութեան մասին անոնց կարծիքն ալ առնելով Ընդհանուր Ժողովոյն ներկայացնել, միւս կողմէն ճիզւիթական պատրուակաւ նախ կանոն մը յօրինել կ'առաջարկուի, որպէս զի Եպիսկոպոսի մը առ ժամանակեայ Տեղապահ երթալէն կամ չերթալէն կռիւ մը չ'ծագեցաւ նէ, գեթ իրենց այս առաջարկութիւնը առիթ ըլլայ խռովութեան, ուսկից ցաթկեց երկպառակութեան կայծը Ազգին տունը հրդեհելու, և սկսան այնուհետև ռամկութիւնը գրգռել Ազգին ողջամիտ մասին դէմ, ըմէլով թէ վանքին գանձը պիտի կողոպտէ Վարչութիւնը, որն որ Սահմանադրապէս Երեսփոխանական դրութեան ներքև ամբողջ Ազգը կը ներկայացնէ, որով թէ թէ Ազգը իր քսակին կողոպտիչն ըլլալու էր (ճիզվիթական կարծիք), թէպէտ հասարակութեան ողջամիտ և արթուն մասը արդէն գիտէր թէ որոնք էին և են վանքին ցեցն ու կողոպտիչները, բայց ինչպէս կսէ առածը « կտրուկ գողը, տանը տէրը կախել կուտայ » ահա այնպէս ալ ասոնք իրենց շահախնդրութիւնը դարուս երիտասարդութեան վրայ ձգելու փորձ փորձեցին :

Խեղճ Ազգը այսչափ դարերէ ի վեր համարէ թէ իւր օրական պարէնը զոհած է և կը զոհէ իւր Ազգային ժառանգութիւնները և ստացուածքը անկորուստ և հաստատ պահելու(1)

---

չութեան անդամները և ժողովրդեան ողջամիտ մասը այն բերտ Վարդապետը տեսնելով և իւր, հանգուցեալ Դաւիթ Եպիսկոպոսին ինչքը անյայտ ըրած ըլլալը լսելով, մնացեալ Աբեղայից վրայ խիստ տխուր գաղափար մը ունեցան:

(1) Զէ թէ քանի մը անմիտ աբեղաներուն կիրքը զոհել, վատնել, ծոյլ և անպիտաններ կշտացնելու համար հոն, որոնք բաց ի վնասէն Ազգին շահ մ'ալ չունեցեր են և չունին. ափսոս. Ազգին, երբ այսպիսի ազգային հաստատութեան մը արդի տիրապետող միաբանութիւնը եղծման մէջ է. և անոր նորոգութիւնը Ազգին արթնութեանը կարօտ . . . :

մտօք. մանաւանդ Ս. Երուսաղէմայ վանուց մասին, որուն համար իր թերնին պատառն անգամ կտրելով՝ հոն տանել աւելցնել կ՚ջանար, անշուշտ անկից ազգօգուտ պտուղներ քաղելու և շահաւետ արդիւնքներ վայելելու փափաքով. միթէ կարելի էր մեղսակար ընթացք մը բռնել իւր արդար տառացուածքին դէմ, քաւ լիցի. այլ ինչպէս որ նոյն վանքին ազգօգուտ յառաջադիմութեանը և հայրենաժառանգ Ս. տեղեաց հաստատութեանն ու պայծառութեանը համար իւր պարտքը կ՚ճանչնար, այնպէս ալ անոր բարեկարգ տնտեսութեան և կառավարութեան վրայ հսկելն ալ իւր սեփհական իրաւունքներէն մէկն ըլլալուն տարակոյս չունէր, ասի անուրանալի ճշմարտութիւն մ՚է, որուն առջև ամէն անիրաւ լեզու լռել կ՚հարկադրէր: Բայց ծիզվիթական կեդրոնին արբանեակները, որոնք մի միայն իրենց անօրէն շահը կ՚մտածեն և նոյնը ձեռքէ չ՚հանել կաշխատին, հնարեցին ըսել թէ « Երուսաղէմայ վանքն ու անոր Պատրիարքութիւնը Ազգէն կախում չ՚ունի » (պապական դրութիւն). քանի որ ամէն Հայ գիտէ ի բնէ թէ՝ Ազգին բոլոր Եկեղեցիները, վանքերը, դպրոցները իրեն բուն տռացուածքն ու սեփհականութիւնը ըլլալով, Ազգ. կեդրոնական վարչութենէն կախում ունեցեր են, ունին և ունենալու են միշտ՝ Ազգ. ներկայացուցիչ իրաւամբ. ահա այսու պարտաւորեալ էր Ազգը մինչև ցարդ հոգ տանել իւր բոլոր սեփհականութեանցը, մանաւանդ Ս. Երուսաղէմայ մէջ ունեցած անգին ժառանգութեանցը. ինչպէս նոյն իսկ Ամիրայապետութեան ժամանակին անգամ, վանքը պարտքի ներքև ինկած ատեն նախկին Պատրիարք Կ. Պօլսոյ Պօղոս Սրբազանը Ազգին կողմէն ընդհանուր կառավարիչ ղրկուեցաւ, և ստակ հաւաքելով այնքան պարտքը վճարեց կայլն. որն որ յայտնի ապացոյց է Ազգին անմիջական հսկողութեան և իրաւատութեան: Տես և ընդարձակ ծանօթութեանց մէջ. Ե:

Եւ արդարև եթէ Ազգը տէր չըլլար իւր հաստատութեանց և տռացուածոց, մինչև ցարդ մեծաւ մասամբ ի կորուստ մատ-

նուած էր, ինչպէս որ ցաւօք սրտի կըսենք թէ՝ Ազգը երկար ատեն անհոգ և անտարբեր կենալով իւր Ազգ. տնտեսութեանը և իրաւանց, դժբաղդաբար շատ կալուածներ ձեռքէ ելած են, և հետևաբար նիւթական և բարոյական շահերէ ձեռնթափ, յետադիմութեան և թշուառութեան անյատակ անդունդին եզերքն եկած հասած է: Ինչ և իցէ առ այժմ խօսքերնիս համառօտելով դառնանք մեր պատմութիւնը շարունակելու:

Վարչութիւնը խառն ժողովով Ս. Երուսաղէմայ վանուց համար կանոն մը կ՚յօրինէ և Ընդհանուր ժողովին վաւերացնել կուտայ, և Պատրիարքի ընտրութեան մասին միաբանութեան կարծիքն ալ առնելու համար, ըստ օրինի գաղտնի՝ քուէարկութեամբ ցուցակ մը պատրաստել տալու կարևոր եղած հրահանգը շինելով Երուսաղէմ կ՚խրկէ: Միաբանութիւնը փոխանորդ ընտրած Իսահակ Վարդապետին ձեռօք ծածկաբար գրուած թուղթերուն միայն ուշադիր ըլլալով, ապօրինաւոր ընթացք մը կ՚բռնէ և կանոնագրութեան մէջէն Ազգին վստահութիւնը գրաւող, և վանքին բարեկարգ և ազգօգուտ յառաջադիմութիւնը նպաստող ու զանոնք ապահովցնող յօդուածները ի բաց կը հերքէ: Նաև Վարչութեան դէմ շատ մը ափեղցփեխ և անտեղի յայտարարութիւններ կը հրատարակէ և այնուհետև յանդգնութիւնն ալ իւր նատիրը կը հասնի:

Ազգային Վարչութիւնը ներողամտաբար նորէն յորդորական նամակ կը գրէ, և կանոնագրութիւնը ընդունել (1), և

(1) Մեծ նուաստութիւն մ՚էր ասիկայ ընդհանուր ժողովոյն պատւոյն և ազդեցութեանը, որ ապօրինաւոր տեղէ մը օրինաւորութիւն սպասեց և զեղծեալ ընկերութեան մը(միաբանութեան) պատիւ տալ ուզելով քանի մը աբեղայից կարծիքն ալ առնել ուզեց, ուսկից յիշեալ աբեղաները երես առնելով՝ իրենց չափը կորուսին, և լրբութեան աթոռ բազմելով Ազգին իրաւանց դէմ մրցեցան. մինչև առանց Ազգին գիտութեան կնքուած Պատրիարքարանը և գանձատունը բացին, որ հաւատարմութեան դէմ էր, և նախորդ միաբանութեան ոգւոյն և ընթացիցը հակառակ վարուելով Ազգին դէմ մեղանչեցին և Վանքին ստակը իրենց չար կրիցը զոհելով և ըստ հաճոյից բաւական ոսկի վատնելով ի վնաս Ազգին ծանր պատասխանատուութեան ներքև մնացին աշխարհի առջև:

օրինաւորութիւնը յարգել տալու համար յատկապէս Կրօնական ժողովոյ անդամներէն Քահանայ մ'ալ իբրև պատգամաւոր Երուսաղէմ կ' խրկէ (1): Յիշեալ Քահանային Կ. Պօլսէն մեկնելէն օր մը ետքը, Երուսաղէմայ վանքին պատգամաւորը կոչուած Յակոբ վարդապետը՝ առանց Պատրիարքին և Ազգային Վարչութեան իմացնելու, գաղտագողի շոգենաւ անձապարելով ետևէն ճամբայ կելլէ, որպէս զի Երուսաղէմ հասնելով համոզէ այն խեղճ աբեղաները, որ յիշեալ Քահանային խօսքերուն ականջ չ'կախէն: Մոռցանք ըսելու թէ Երուսաղէմայ առաքինաշխայլ փոխանորդը իւր անշահասէր կողմնակիցներուն ձեռօք կրցածին չափ ջանք կընէ՝ Ազգին կողմէն Երուսաղէմ գացող պատգամաւոր Քահանային ճանապարհորդութիւնը խափանել տալ:

Ասոնք մինչև Ղալաթիա կ'վազեն, ու « Ախբրտանք ինչ էք կայներ, Վարչութիւնը Ս. Յակոբայ վանքը կողոպտելու համար այսօր Երուսաղէմ յատկապէս Քահանայ մը կը խրկէ » ըսելով և ասոր նման ուրիշ սուտեր ալ կլլեցնելով, տեղւոյն խեղճ բեռնակիրները ոտք կը հանեն, որ զանի շոգենաւ մըտնելէն արգիլեն, սակայն այս խարդախութիւննին ալ չ'յաջողելով՝ այն ատեն պատգամաւոր Վարդապետին նամակներով ու հրահանգներով Երուսաղէմ վերադառնալը որոշել կ'ճարկադրին. ան ալ բաւական չ'համարելով նաև Երուսաղէմայ ճապի ըսուած Մալղարացի Յովհաննէս անուն անձը (2) կրկին նամակներով յիշեալ Վարդապետին ետևէն մինչև Երուսաղէմ կհասցնեն:

Երուսաղէմայ եղծեալ Միաբանութիւնը յիշեալ նամակներուն և հրահանգներուն համեմատ առջի ապօրինաւոր ցուցա-

---

(1) Հինքեար-պէյէնտեան տէր Յովհաննէս քահանայն, որն որ իւր գովելի ազգասիրական յատկութիւններովը ծանօթ է Ազգիս:

(2) Անոր ին ցեց մ'ալ այս եղած է. երբեմն խաղքախը և մրդ ճեպի, որ խիստ պարարտացած է անոր ին կալուածոց սննդարար օդովը ... կսուի թէ արդէն երկու հազար քսակի չափ հարստութիւն մը ձեռք անցուցած է:

կը վաւերական ըլլալը և հերքած յօդուածներուն ընդունելի չըլլալը կ՚պնդէ. և եԹէ ինքը (միաբանուԹիւնը) ներողի, Պատրիարքին և Ազգային վարչուԹեան դէմ ապստամբելով, Արարատեան ՄայրԱԹոռին դիմելու սպառնալիք կ՚ընէ: Այսօր վաղը պատասխան տրուելու անհիմն խոստմունքով պատրաստուոր Քահանան ամիս ու կէս ծառրուելէն և վանքին մէջ Ազգին դէմ լրբաբար շատ մը անարգանաց խօսքեր ըսելէն ետև Կ. Պօլիս կ՚վերադառնայ:

Ազգային վարչուԹիւնը ցաւօք սրտի կիմանայ այն տղայաբարոյ կարճամիտ աբեղաներուն խեռ և թերտ վարմունքը. և անոնց յարգանք ու պատիւ տալուն կ՚ստրչանայ. և կ՚ստիպուի խառն ժողով գումարել, ուր այն խեղճ աբեղայից անանկանպատկառ եղանակաւ կանոնազրուԹիւնը հերքելուն և օրինաւոր քուէարկուԹեամբ ցուցակ մը չպատրաստելուն և յամառ ապստամբուԹիւն մ՚ալ ձեռք առածը ինչ ոգիէ յառաջացած ըլլալը քննուելով, մանաւանդ Ազգին պատիւն ու իրաւունքը ճանչցող նախկին միաբաններէն ծերակոյտ խորհրդականն մ՚ալ մնացած չըլլալը ստուգուելով, և անոնց մէջը ազգը ներկայացնող Ս. Երուսաղէմայ վանուց ՊատրիարքուԹեան նման հոգևոր և միանգամայն մարմնաւոր ամենածանր և փափուկ պաշտօնի մը արժանաւոր, քաղաքագէտ վարդապետ մ՚ալ չըգտնուիլը իրօք հասկնալով. նաև այս անգամին պէս ՚ի պահանջել հարկին ազգին պաշտօնը վարող, տաղանդաւոր Արք Եպիսկոպոսներէն հասուն և բանիբուն Եպիսկոպոսի մ՚ալ Պատրիարք ընտրուիլն ընդդէմ հաւատոյ և կրօնի չըլլալը խառն ժողովով կորոշուի և Սարգիս Սրբազանին հետ ի միասին կստորագրեն զայն որոշումը:

Թէ և ազգին իրաւանցը և օրինաւորուԹեանը դէմ հակառակողներուն բերնէն կեղծ նզովք մը պոռԹկալով երևան կելլէ՝ սակայն վերստին միաբանուԹենէն դուրս Պատրիարք չնտրուելու մասին քալեցնել ուզած այս նոր և անհիմն նզովքն ալ բոլորովին սուտ ու մտացածին և անտեղի ըլլալը անաչառ քննու-

Թեամբ հաստատուած ի. 1861 Յուլիս 11. (1): Եւ ըստ կանոնի երեք Եպիսկոպոս ալ քուէարկութեամբ կ՚ընտրուին(2):

Առջի բերան թէ՛ և ժողովները նզովքի խնդրոյն նկատմամբ վարանեցան, սակայն Միհրդատեան Գ. Թադէոսին քովը գտնուած Հաննէ Վարդապետին բուն ձեռագիրը տեսնան ելլելով՝ խնդիրը պարզուեցաւ՚ի մեծ զարմանս հակառակորդաց:

Ընդհանուր ժողովը խառն ժողովոյ սոյն որոշումները ընդունելէն զատ՚ այն երեք Եպիսկոպոսներուն վրայ քուէարկութիւն կընէ, և քուէները զալով քուէտուփին մէջ կը փակուին: Ժողովին մէջ նախկին Պատրիարք Յակոբ Սրբազանը՝ ճառը հատած « Նզովք չկայ ալ նէ՛ ես կայ պիտի ըսեմ » և ջրի գաւաթ մը ձեռք առնելով « սար մէջ մուկ ինկած չէ ալ նէ, անգամ

(1) Հաննէի պատմութեանը մէջ թերևս յիշուած նզովքն անգամ, որն որ իրենց ձեռքը զանի խոր թէ փասա մը ցըցընել կուզէին, բնաւ երբէք Ազգին չեր վերաբերէր, այլ միայն (Խաչհակ Վարդապետի նման) մարդահաճոյութեան և փառամոլութեան համար թէ Պատրիարքութիւնը և թէ վէքիլութիւնը յափշտակելու ետևէ իյնող և կուսակցութիւն յարուցանելով Ազգին սոակը իւր քմացը վարող յանդուգն ոգէտ և անարժան եկեղեցականին. և ահա այս մասնաւորի համար եղած նզովքը ընդհանուրին վերածել չամաչեցին. Ազգին անբռնաբարելի իրաւանց դէմ մրցելու համար կրօնքը իբրև գործիք, անտեղի անիծից և նզովքի շանթերով արգոյ հասարակութիւնը ահացուցանել յանդգնեցան: Վասն զի յիշեալ նզովքը անհատի մը համար էր, և արդարև այնպիսի չար ոգիէ գրգռուած եկեղեցականին համար է նզովքը « Թէ ներսէն ըլլայ և թէ դրսէն » ինչպէս կըսէ Հաննէ պատմագիրը. և ահա այս ճշմարիտ ու գործին խօսքերն ալ յայտնի կցուցընեն թէ՛ Ազգին իրաւունքը ազատ է, և երբէք նզովքի շղթաներով չկրնար կապուիլ ու կաշկանդուիլ: Ազգը միայն այս մասին լրջմտութեամբ միշտ արթուն գտնուելու պարտաւոր էր և է. արժանաւորն ու Ազգին հաւատարիմը ընտրելու:

Ո՜հ, որչափ յանդուգն ու անմիտ է այն եկեղեցականը և կրկին նզովքներու արժանի թէ ներսէն ըլլայ թէ դուրսէն, որ առանց իւր կարողութիւնը չափելու, միայն իւր չարամոլ կիրքը յագեցնելու համար կյանդգնի կը ժպրհի իւր վրայ առնելու այնպիսի մէկ ամենափափուկ և ծանր պարտաւորութիւն մը որ իրեն կարողութենէն շատ հեռու է, և անդրադարձաբար Ազգն ալ որչափ կոյր և անմիտ կհամարուի իւր ընտրութեանը մէջ երբ կ՚սխալի (ինչպէս շատ անգամ); և չկրնար ըստ օրինի արժանաւորը ընտրել, որով իւր ազգութեան յարգն ու պատիւը և միանգամայն ազգեցութիւնն ալ կ՚կորսնցընէ ի վնաս ինքեան:

(2) Պօղոս Եպիսկոպոս առաջնորդ Զմիւռնիոյ, Պետրոս Եպիսկոպոս Պրուսայու և Արիստակէս Եպիսկոպոս Անդրիանուպոլսոյ:

մը ինկաւ ըսին, անոր համար կ՛քանիմ ասկէ ջուր խմելու » ըսելով՝ այս ցնորական խօսքերը իբրև անդառնալի վճիռ բերնէն դուրս տալովը, մէկ երկու ամիս առաջ ենթակայ եղած կամուած ախտէն խելքին պակասութիւն եկած ըլլալը ստուգիւ կ՛հասկցուի: Պատրիարքի ընտրութեան մասին Երուսաղէմայ միաբանութիւնը իրաւունք ունէր միայն ցուցակաւ մը իր կարծիքը յայտնել Կ. Պօլսոյ Պատրիարքին. սակայն Ազգը ազատ էր միշտ այն ցուցակին հետևելու կամ ոչ [1]:

Այս մասին համաքսկութեան մէջ ծագած տարաձայնութենէն ստիպեալ Երուսաղէմայ նախկին միաբաններէն Կեյիպօլցի Զիլինկիրեան Յակոբոս Վարդապետը, որ վանքին բարեկարգութեանը համար արդէն Պօլիս դիմած էր. կարեկցաբար ներկայ միաբանութիւնը Ազգին հնազանդ և Ազգային իրաւունքը ճանչցող ցոյց տալու նպատակաւ և Երուսաղէմայ Պատրիարքական ընտրութեան մասին ալ Ազգին ազատ իրաւունքը շղթայել սպառնացող նորահնար անգոյ նզովքին անհիմն ըլլալը յայտնելու համար Յուլիս 15 Թուականաւ յայտարարութիւն մը կ՛գրուէ, (որն որ Մասիսի միջոցաւ հրատարակուած է:)

Իսահակ Վարդապետը յիշեալ Վարդապետին դէմ կ՛զինի և անոր պատիւը կոտրելու փորձ փորձել ուզելով, անոր յայտարարութեան դէմ իբր պատասխան մեծամեծ հանրագրութիւն մը կ՛հրատարակէ. (իւր նպատակին այն ատեն հասած կըլլար, երբ անոր յայտարարութենէն առաջ հրատարակած ըլլար ինքը . . . :) Բայց միշտ իրաւունքը արդարութիւնն ու ճշմարտութիւնը յաղթող կ՛հանդիսանայ [2]:

---

(1) Ն. անա ի ժամանակին նախկին միաբանութենէ եկած մէկ ցուցակին պատճէնը Մասիս լրագրին մէջ երևցաւ. ուստի ինչպես ըսինք՝ Պատրիարքական ընտրութեան մասին սոսկ մասնակցութեան մը միայն իրաւունք ունէր միաբանութիւնը ցուցակաւ մը իւր կարծիքը յայտնելու. ուստի և ԿԱՐԾԻՔ ըսելն ալ ԿԱՄՔ ըսել չը լլալը արդէն ինքնին յայտնի էր:

(2) Սոյն վարդապետը Սահմանադրութեան դեռ նոր հաստատուած ատեն Վանքին ազգօգուտ բարեկարգութեանը փափաքով Երուսաղէմէն Կ. Պօլիս առ Ազգն կը դիմէ. և Վանքին մէջ կանոնաւոր վարչութեան վերահաստատութեանը

Ճիզվիթական կեդրոնը որ Ազգային որ և է հաստատութեան և մասնաւորապէս Երուսաղէմայ վանքին բարեկարգութեանը անհաշտ թշնամին ըլլալուն, այն խեղճ աբեղաներուն մէջէն Պատրիարք ընտրուիլը իրօք կուզէ, իւր գործունեայ աբբանեակները, Երուսաղէմայ հաշուետումարներուն պահանջակողմը անուններնին արձանագրուած քանի մը պատուաւոր ձեռնածուներուն և շուկէ շուակ երկու տող աշխարհաբար գրելու անկարող և որ և իցէ կերպիւ Երուսաղէմայ Պատրիարք ըլլալու անկարգ բաղձանքին հասնելու համար մինչև անգամ երդումն ու հոգին զոհող, երբեմն Պօլիս հողակիր Սարգիս եղող Իսահակ Վարդապետին և անոր կաշառակուլ կողմնակիցներուն գործակից ըլլալով Ազգին մէջ արդէն բռնկցուցած հրդէհը բոլոր ուժովը հրահարելով կ՚բորբոքէ: Աստուած կարողութիւն տայ . . . ինչ պատեհ առիթ Ազգին տունը մոխիր դարձնելու:

Նոյն կեդրոնը թէև յետին ծայր կատէ Սարգիս Պատրիարքը, սակայն աղէկ ալ համոզուած էր որ Սահմանադրութիւնը եղծելու և անգործադրելի ընելու համար անի միայն կրնայ ըլլալ իրեն յարմար գործիք մը:

Սրբազանին չափէ դուրս ագահ, ընչասէր և փառամոլ ըլլալը և իր յամառ ու անզուսպ կրիցը ամէն բան Ազգ, պատիւ, և մինչև անգամ հաւատքը չ՚խնայելը արդէն կրահած, և սոյն

---

և անոր խղճալի վիճակին դարման մը ճարուելու նպատակաւ 1860 հոկտ. 9 խնդիր մը կներկայացնէ Ս. Պատրիարքին. նոյնպէս Ազգ. Վարչութեան անդամոց և ոմանց մէկ մէկ օրինակ ալ մատուցանելով կվերադառնայ. (որոց մէկը ձեռքերնիս անցած ըլլալով ընդարձակ ծանօթութեանց մէջ դրինք (Զ). Որուն թէ այս մասին և թէ այս պարագաներուն մէջ իր վանքէն կրած ատելութիւնը զրկանքն ու տառապանքը շատերուն յայտնի է և ահա ցարդ իր այս վշտացը Ազգէն տակաւին դարման կ՚սպասէ . . . : Ցիշեալ Վարդապետը 1832 ին իւր ծնողաց կողմէն յիշեալ Վանքին նուիրուելով Պօղոս Սրբազանին 12 տարի սպասաւորութեամբ աշակերտած և քարտուղարութեան պաշտօնով Զաքարիա Պատրիարքին ալ ծառայած է մինչև Կիրակոս Սրբազանին վախճանը. և Ցովհաննէս Պատրիարքին մինչև վեցերորդ տարին ալ Վանուց արտաքին գործոց տեսչութեան պաշտօնը կ՚վարէր:

չնաշխարհիկ յատկութիւններէն մեծամեծ օգուտներ քաղելը միտքը դրած ըլլալուն, որքան որ անոր Երուսաղէմայ Պատրիարք ընտրուիլը իրօք չէր ուզէր. և չ'յաջողելուն ևս տարակոյս չունէր այնէ, Երուսաղէմայ նման փառահեղ վանքի մը Պատրիարք ընտրուելուն նպաստելու խոստումնները և Երուսաղէմատան կողմէն ցուցուած բարեկամական հաւաստիքը իբրև հրապուրիչ խայծ անոր աչքին առջևը կ'դնէ (ոտոգայր չորրորդ). սա մտօք որ սահմանադրականք Սրբազանին վրայ դեռ խիստ վստահ ըլլալով և հետևաբար Կ. Պօլսոյ Պատրիարքութիւնը ձգելուն չ'հաճելով, Երուսաղէմայ Պատրիարք ըլլալուն քուէ չ'պիտի տան, և հեզահոգի Սրբազանն ալ ասկէ վիրաւորուելով, ինքզինք իրեն սովորական ամեհի բարկութեանն ու անյագ վրեժխնդրութեան ձեռքը թողլով, իսկոյն պիտի բաժնուի կանոնաւէր երամէն և օրինաւորութեան ոսոխ բիմ թշնամեաց խմբին անձնատուր պիտի ըլլայ:

Այս նենգուպատիր հնարքը ճիզվիթական կեդրոնին ակնկալածէն աւելի արդիւնաւոր կըլլայ: Վասն զի Սրբազանը երեք Պատրիարքցու Եպիսկոպոսաց համար խառն ժողովոյ տուած քուէներուն արդիւնքէն անմասն մնալը տեսնելունպէս, խիստ կայլայլի, երեսին գոյնը կ'դառնայ, նախանձոտ և վրէժխնդիր ոգին մէկէն ի մէկ կարթննայ, օրինասիրութեան դիմակը իսկոյն երեսէն վար կառնէ, և դէմքին վրայ Անդրիանուպօլսոյ նախկին բռնաւոր առաջնորդը աւելի դաժան և անագորոյն տեսլեամբ կը պատկերանայ:

Սրբազանը նոյն միջոցին կ'մոռնայ իւր ստորագրութեամբը ընդունած Ազգ. Սահմանադրութեանը համար Մ. Եկեղեցւոյ մէջ առաջի անխաբելոյն Աստուծոյ և առաջի ամենայն ժողովրդեան ըրած հանդիսաւոր ուխտը, ևս և Արքեպիսկոպոսութեան սրբազան կոչումը: Կ'զինի նոյն հետայն Սահմանադրութեան դէմ և Ազգին կորուստը փութացնող դժնեայ ատելութիւն մը կ'ուխտէ զինքը, իբրև ճշմարիտ հետևող Քրիստոսի և իբրև հայր հասարակաց պատուող և պաշտող օրինասիրութեան:

Նորին սրբազնութիւնը յիշեալ օրինաւոր բուէարկութիւնը եղծելու կարեւոր եղած միջոցները ձեռք առնելու չափ իւր սիրելի համախոհներուն ժամանակ վաստկցնելու համար, բուէտուփին բացուիլը անհիմն պատճառանօք չորս օր ետ ձգելով, արտաքոյ կարգի Ընդհանուր ժողով կը գումարէ: Ժողովոյ սրահէն դուրս վեր, վար, հազարէն աւելի բանւոր (ռէնչպէր) բռնակիր եայլն կ'լեցնէ և իւր թոյլտուութեամբը անանկ պատկառելի ժողովի մը մէջ քանի մը օրինատեաց երեսփոխաններ դուրսի խաժամուժ ամբոխէն վստահացեալ, օրինաւորութիւնը սիրող եւ յարգող 130 ի չափ երեսփոխանաց և անոնց անդամակցաց վրայ կատաղաբար յարձակումներ ընելու, բողոքական և անհաւատ տիտղոսներով անարգելու և մաքուր ականջները պղծող ամենաքարշ լրբենի հայհոյանքներ ընելու կ'յանդգնին: Դուրսը սպասող խեղճ ռամիկներուն կողմէն ալ սարսափելի գոռում գոչումներ և վայրենի սպառնալիքներ կը լսուին:

Իրենց չար կիրքը յագեցնելու համար կրօնքը (յիշել կուգենք նաև հոս յիշեալ կեղակարծ նզովքը) իրենց ձեռքը գործիք ընող շահասէրները յաջողեցան խղճահար Քրիստոնեաները և կարեկցութեան արժանի խեղճ պարզամիտներն ալ իրենց կողմը որսալ. ահա անոնցմէ խաբուած յարգի անձ մ'ալ (1) որուն կրօնասիրութիւնը իր պարզութեանը հետ միացած, խեղճը եղածները Ազգին և միանգամայն կրօնքին վնաս կարծելով, Սրբազանին աչքին առջև գազանաբար բուէտուփին վրայ կը յարձակի, և երկու երեք անգամ վրան կ'թքնէ, և ոտքին ներքև առնել խորտակելու անգամ սպառնալիք ընել կը յանդգնի:

— Ի՜հ, Սրբազան, ինչ գորովագութ սիրտ ունիս եղեր . . . քու հոգեւոր որդիքդ տակն ու վրայ կ'ըլլան, դուն իբր անհոգ անզգայ լոկ հանդիսատես կ'ըլլաս. ոչ միամիտներուն խաբուած ըլլալնին իրենց ճանչցնել. և ոչ յանցաւորները զսպել և

(1) Գէորգ աղա Գարամանեան:

անմեղները պաշտպանել կ՚ուզես . քու միտքդ ան է որ օրինաւորութեան կողմն եղող երեսփոխանաց և անդամակցաց այս զզուելի տեսարանէն աչուընին փախնալով ետ քաշուին , և դու ալ համախոհներուդ հետ ամէն բան ուզածիդ պէս տնօրինես , անանկ չէ Սրբազան — կըսէ անդամակիցներէն մէկը ։

Ինչ և իցէ ժողովոյ սրահին մէջ սուղ ինչ հանդարտութիւն մը կ՚ըլլայ ։ Ատենապետը — Սրբազան, սա դրսի ամբոխը ցրուել տուր , որ ատեանը բանամ — կըսէ , այն ատեն Սրբազանը խոր քունէ մը արթննալու պէս սթափելով հրաման կընէ երկու քահանայից որ երթան խուժանը ճամբեն . բայց անոնք յառաջուց իրենց տրուած հրահանգին համեմատ — ինչ կայնէր էք օրհնեալներ , բանը բանէն անցաւ . Ներսը միաբանութենէն դուրս Պատրիարք կ՚ընտրեն կոր — ըսելով , աւելի գրգիռ կուտան ։ Աղմուկը ևս առաւել սաստկանալով զառանցեալ Յակոբ նախկին Պատրիարքը դուրս կ՚ելլէ , և բերնէն թափթըփելով քանի մը խօսք կը զուրցէ . խօսք տալով , թէ « Միաբանութեան մէջէն Պատրիարք պիտի ընտրուի » ։ Սոյն միջոցին քանի մը ամիս առաջ Երուսաղէմ Վանքին դրան առջև յոգնախումբ ուխտաւորաց ներկայութեան , բարոյականութենէ զուրկ մէկզմէկ բզկտող լկտի Աբեղաներէն վշտացած ատենը վեղարը գետին զարնող վարդապետ մ՚ալ(1) Պօլիս գտնուելով ,

(1) Յիշեալ միաբանը՝ Եօզղատցի Աբրահամ անուն վարդապետն է , որն որ Յ. Սրբազանին խելքին փչած ատենները, ցորէն ժողվելու համար (իբր թէ Երուսաղէմ սով է ինկեր) Եօզղատ խրկուած ըլլալով , Վանքը դարձած ժամանակ , Պատրիարքը վախճանած , Վանքն ալ Վանքութենէ բոլորովին ելած , ճանապարհի և այլն ծախուցը մասին անգամ զլացումներ տեսնելով , սաստիկ կ՚վիրաւորի . և իրեն դէմ եղած այս անզգամութեան , զրկանաց ու տմարդութեան չ՚կարենալով տանիլ . երբ առ Ազգն դիմել կ՚որոշէ , Վանքին սանձը յափշտակող յիշեալ Աբեղաները — Ազգն ծով է — ըսելով կ՚յարձակին դռան առջև զանի գազանաբար գիշատել . . . ։ Յիշեալ Վարդապետին Պօլիս հասնիլը սոյն այս Երուսաղէմի խնդրոյն յուզուած միջոցներուն պատահելուն , իսկոյն Սահակ Վարդապետը կ՚փութայ շնթել համոզել զանի . որուն ետքէն հակադարձը գործեց արհամարհանօք Երուսաղէմատնէն դուրս նետելով , վասն զի Ազգին ստակը Ազգին դէմ խօսեցնել տուած ատեններին այնուհետև մարդու կարևորութիւն մը մնացած չէր ։ . . .

Երուսաղէմայ տան կողմէն այն խաժամուժին մէջ տեղը կե-ցած « Ես ալ Աթոռին միաբանն եմ, Աթոռը պիտի կողոպտեն, արիւն կը Թափեմ » ըսելով՝ իբրև այսահար կը պոռչտէ:

Վերջապէս Ընդհանուր ժողովոյ դիւանը և խաղաղասէր Երեսփոխանները և անդամակիցները յուսակտուր ըլլալով կը ցրուին: Խաղաղասէր Սրբազանին ուզածն ալ այս ըլլա-լուն, նոյն յետոյն իրեն համամիտներէն խել մը Եկեղեցական-ներ և աշխարհականներ հաւաքելով անոնց հետ գաղտնի խոր-հուրդի կը նստի:

Յետագայ օրը Ազգային Վարչութիւնը կը պատրաստէր Պատրիարքին հետ ունեցած յարաբերութիւնները առժամա-նակեայ կերպիւ կտրել: Նոյնօրը նաև Ընդհանուր ժողովոյ Դի-ւանը Պատրիարքարան կերԹայ ու Երուսաղէմայ փոխանորդ Իսահակ, և Տիգրանակերտցի Յակոբ վարդապետները դուրս հանելու և Երուսաղէմայ կանոնագրութիւնը ամբողջ ընդու-նուելու պայմանաւ, միաբանութեան մէջէն Պատրիարք ընտ-րուիլը իսէր խաղաղութեան իր կողմէն կ՚առաջարկէ: Հինգ եպիսկոպոս միայնակ կը խորհին ու առաջարկութիւնը Թարց բացառութեան ընդունելով որոշում կընեն, Պատրիարքը այն որոշումը ստորագրութեամբ Դիւանին տալու չը հաճիր:

Ազգային Վարչութիւնը միշտ խաղաղութեան և օրինաւո-րութեան վերահաստատութեանը ցանկալով, քանի մը պաշ-տօնական նամակներ կը գրէ Պատրիարքին, բայց անկէ այո կամ ոչ պատասխան մը չը կրնար առնել: Նորին Սրբազնու-Թիւնը ընդհակառակն խռովայոյզ կողմնակիցներուն անսալով, իր Աստուածային հօտին ողջամիտ մասին դէմ լիրբ ստու-Թիւններով. և ժպիրհ բարուրանքներով լեցուն հետզհետէ յայտարարութիւններ հրատարակել կուտայ. և ռամիկներն ու պարզամիտները «Սահմանադրութեան տակէն անհաւատու-Թիւն պիտի ելլէ, Խաչերը, պատկերները եկեղեցիներէն դուրս պիտի ձգեն» ըսելով, գայԹակղեցնելու ջանք կընէ: Ասով ալ չը շատանալով գաղտնաբար խել մը եկեղեցական և աշխար-

հակառակ կաշառաբեկ քուրմերու ձեռքով խեղճ հասարակու-Թիւնք պատրելու կաշխատի և անոր խիղճն ու կիրքը աւելի գրգռելու համար՝ շուայտեալ, խաւարեալ անուններ տալով, և «լուսաւորեալները անհաւատ են ըսելով, եղբայր եղբօր դէմ թշնամութիւն կը գրգռէ: Մէկ կողմէն «Սահմանադրու-Թենէն մազի չափ չը պիտի շեղիմ, անոր ջերմ պաշտպանը ես եմ» ըսելով, դիւրահաւան պարզամիտները առանց խղճի կը խաբէ. և միւս կողմէն Սահմանադրութիւնը եղծելու ազդու միջոցներու վրայ իր կողմնապահներուն հետ շարունակ կը խորհրդակցի: Մէճմուայը Հաւասիս անուն պապական լրագիրը և Արևելեան Դար անուն այլանդակ Թերթը Սահմանադրութեան դէմ չարախօսելու գործիք կընէ: Երևակ կոչուած ճիզվիթ ամսաթերթին մէջ Սահմանադրութիւնը Բ. Դրան կասկածելի ցուցնելու համար ուզած գոյներովը կը ներկէ: Իւսկիւտար և Պէշիքթաշ ապօրինաւոր ժողովներ գումարելով, Սահմանադրութիւնը ողջ ողջ խողխողելու անագորոյն միջոցներ կ'որոշէ:

Ազգին մէջ ճարակուած երկպառակութեան պատճառաւ՝ որ Սրբազանին ուխտազանցութեան ու ապօրինաւորութեան դառն պտուղն էր, Ազգային կարևոր գործերը. մանաւանդ գաւառաբնակ Ազգայնոց օրինաւոր խնդիրները անխնամ երեսի վրայ մնալուն համար, երեք հարիւր Լուսաւորչական Հայ յուսահատելով կրօնափոխութեան անձնատուր կ'ըլլան. և ուրիշ հինգ հարիւր տուն ալ նոյնպէս կը պատրաստուէին ըլլալու: Որուն վրայ հասարակութեան ողջամիտ մասին գրգիռը երթալով կը զայրանայ:

Վերոյիշեալ Ընդհանուր ժողովը դիտմամբ խափանելու պատճառ եղող բանւոր և բեռնակիրներուն ևայլն, վայրենի բռնաւորութենէն զերծ մնալու համար, Ազգային Երեսփոխանք և Անդամակիցք՝ Քաղաքական ժողովոյ հրաւիրանօքը Թէրայի վարժարանի մեծ սրահը կը գումարուին. Պատրիարքին ալ երկու օր առաջ հրաւիրանաց տոմսակ կը ղրկուի.

որպէս զի իբրև նախագահ ներկայ գտնուելով, Սահմանադրութիւնը մօտալուտ վտանգէ մը ազատելու կարևոր եղած միջոցներու վրայ միասին խորհուի:

Բայց Սրբազանը ոչ կուգայ և ոչ ալ չգալուն պատճառը բանիւ կամ գրով կ՚իմացնէ, հապա անոր հետևեալ օրը որ էր կիւրակէ, Իսկիւտար գումարուած ապօրինաւոր ժողովին մէջ յիշեալ կեդրոնէն առած բարձրագոյն հրամանին համեմատ. ստորագրութիւններն անգամ գրել չը գիտցող շատ մը ազգէտ Տէրպապաներ. և ճշմարտութիւնը անձնական շահերնուն զոհելու բնաւ խիղճ չընող խել մը իմաստակ Վարդապետներ զը-լուխը ժողուելով, նախկին Պատրիարք զառամեալ Յակոբ Սրբազանին հետ միաբաններով Օգոստոս 2 համագումար կրօ-նական ժողով անուամբ, ապօրինաւոր ժողով մը կը կազմէ, և իբր սուտ քայլեցնել ուզած անտեղի նզովքը պատճառ բռնե-լով, միաբանութեան մէջէն Պատրիարք ընտրուիլը միայն ըն-դունելի, և խնդրոյ ներքև ինկած որ և է կրօնական նիւթերու վրայ գաղտնի քուէարկութիւն ընելը անընդունելի ըլլալը, և իբր թէ այս ընտրութեան գործը կրօնական նիւթերու կարգն անցնելու գիտմամբ կրօնական խնդիր մը ձևացնելով գաղտնի քուէարկութեան ենթակայ չըլլալը կ՚որոշէ. և վճիռ ալ կուտայ թէ՝ Հոգևոր Իսահակ Վարդապետը չէ թէ միայն պատրիարք՝ այլ մինչև Եպիսկոպոս անգամ ըլլալ չ՚ուզելը՝ որչափ ինք Խառն Ժողովոյ ներկայութեանը մեծ երդումով հաստատեր է, և Տիգրանակերտցի Յակոբ Վարդապետն ալ՝ որ քանի որ առաջ ժողովոյ գիտութեան իբրև ապստամբ գաղտնի ճամբայ ելլե-լով, Երուսաղէմ դարձեր ալ նէ, առաջինին երդումը կիր-քով եղած ըլլալուն, և երկրորդին ըրածը սուտ անքաղաքավա-րութիւն մը համարուելուն, չ՚են կրնար մեղապարտ սեպուիլ, և Պատրիարք ընտրուելու սրբազան իրաւունքէն զրկուիլ (1):

(1) Իսկ առ յաւ. սուտին ցրուած կամ առ. Ազգն Կ. Պոլիս դիմած միաբանները՝ որ իրաւամբ կամ օրէնքով, կամ որ դատաստանաւ ախտադրուած կամ մերժուած և իրաւունքէ զրկուած կ՚համարուին. (անօրէն Ծիզվիթականութիւն):

Յիրաւի ով որ կ'ուզէ իրեն հետ զրաւ կրնամք դնել, թէ Ծիզվիթութեան փառքն ու պարծանքը եղող երևելի Աստուածաբաններէն և ոչ մէկը ասկէ աւելի մոլար վարդապետութիւն մը չ'է հնարած: Անտեղի չ'ըլլար ըսել նաև թէ' Հայ-Ծիզվիթները մեծ բաղձանք ունին գերազանցելու այն Աստուածամարտ Ծիզվիթները. վասն զի այս անանկ սոսկալի վարդապետութիւն մ'է, որ գլխովին կ'եղծանէ այն սրբազան բարոյականութիւնը, զոր ամէն կրօնք իրեն հիմ կը ճանչնայ:

Նորին Սրբազնութիւնը Մայր Եկեղեցւոյ լուսարարապետ Սուքիաս անուն տէրտէրի մը ձեռք Թուղթ մը կը յանձնէ, ուր նախկին պատրիարք Յակոբ Սրբազանին ստորագրութեամբն ուկնքով գրուած էր թէ' Երուսաղէմի պատրիարքի ընտրութիւնը կրօնական խնդիր մ'է, և նզովք կայ' որ միաբանութենէն դուրս պատրիարք չ'ընտրուի եայլն, եայլն: Երուսաղէմայ տան կողմէն վարձուած տէրտերը Կ. Պօլսոյ մէջ Թաղէ Թաղ և շրջակաները շրջելով, կ'ստիպէ ամէն եկեղեցեաց Քահանաները' որ այն Թուղթը ստորագրեն:

Անոնցմէ ոմանք փիլոններին առնուելէն և մօրուքնին ածիլուելէն վախնալով, և ոմանք ալ իրենց եղած կեղծ խոստմանց կուրօրէն հաւատալով, անոր կամացը կը զիջանին. բաց ի քանի մը Եկեղեցեաց Ազգասէր և ողջամիտ Քահանաներէն, որոնք բնաւ զիջում չ'են ըներ: Միջագիւղի Քահանաներն ալ քաջութեամբ ընդդիմութիւն ընելով, ստորագրութիւն չ'են տար. բայց Սրբազանը իր սովորական խոնարհութեամբը անձամբ հոն երթալով անոնցմէ բռնի ստորագրութիւն կ'առնէ (1). Նաև Երուսաղէմի փոխանորդին կողմէն խեղճ Վար-

(1) Սոյն միջոցին « ստորագրութիւննին յետս կոչող եկեղեցականաց կողմէն բողոքագրեր երևցան, ուր ակամայ իրենց խղճին դէմ և կամ առ ահին մեղանչած ըլլալնին խոստովանած էին: Նաև յիշեալ ժողովին ներկայ չգտնուող եկեղեցականաց կողմէն ալ օգոստ. 8 յորդորական յայտագիր մ'ալ առ դասս եկեղեցականաց ձրուեցաւ: Թէ այս և թէ անկէ առաջ յուլիս 25 Սkr անուն օրագրի յաւելուածով, նմանապէս ազգային երեսփոխանի մը կողմէ ալ յուլիս. 28, երևցած յայտարարութիւնները հետաքրքրական և ուշադրութեան արժանի էին:

դապետ մը և մէկ քանի քահանայ պանդոկներն ու տուները կ՚զրկուին պարզամիտները համոզելու համար, որպէս զի այն Թուղթը ստորագրութեամբ լցուի:

Ահա այս այն մրոտած Թուղթն է՝ որ Սրբազանը ինք իր ձեռօք Բ. Դրան կըմատուցանէ և բանիւ ալ իր ամբարիշտ բմացը համեմատ սոյն եղելութեանց տարբեր ձև և գոյն տալով Սահմանադրութիւնը իր սրտին նման սև ու տգեղ անիրաւաբար կընկարագրէ. և օրինաւորներուն վրայ տեսակ տեսակ զըրպարտութիւններ բեռցնելով, իբրև ապստամբ և յեղափոխական կը մատնէ: Ափսոս, որ Ս. Աւետարանին «Չիք ինչ ծածուկ որ ոչ յայտնեսցի» անդառնալի վճռոյն հաւատք չ՚ընծայէր. չէ նէ անշուշտ այն օրհնած լեզուն չը պիտի առաջ երթար անանկ սոսկալի և քստմնելի ազգամատնութիւն մը ընելու և կայսերական բարեխնամ կառավարութիւնը անամօթաբար խաբելու: Էհ՛, Թող զան Յուդան, Վասակն ու Վեստ Սարգիսը, և ջուր Թափեն անոր արքագործ ձեռքերուն:

Այս ազգամատնութենէն կանոնաւոր հասարակութիւնը բոլորովին անտեղեակ, հազարաւոր ստորագրութեամբ ձեռքերնին յայտագիր ունեցող ազգային պատգամաւորներ Սրբազանին ներկայանալով, Սահմանադրութեան անթերի գործադրութիւնը խոնարհաբար կը խնդրեն: «Ես ամէն բան սահմանադրապէս պիտի տնօրինեմ, դուք ապահով եղիք» ըսելով, այն ազնիւ Սահմանադրասէրները անխղճաբար կը պատրէ, և վախնալով որ չ՚ըլլայ Թէ Ազգային Վարչութիւնը անյապաղ Բ. Դուռը դիմելով եղելութեանց և դարձուածոց իսկութիւնը երևան հանէ (1), և իր ուզած Պույրույցին ձեռքը չ՚անցած նիւթեալ դաւաճանութեան կատարումն արգելք ըլլայ:

Սրբազանը առանց ինքը երևնալու, իր համախոհները իբրև խաղաղարար յառաջ քշելով և անոնց ձեռքովը Ազգին

---

(1) Ինչպէս որ յետոյ Ազգ. Վարչութեան կողմէն բուն գործին էութեան ճիշտ տեղեկագիրը Բ. Դրան ներկայացաւ (որովհետև կանուխ տալը իբր Թէ անխոհեմութիւն սեպէր էին):

քանի մը չէզոք բարեսիրտ հարուստները որսալով. Ազգային Վարչութեան խաղաղասիրական առաջարկութիւններ ընել կը փութայ: Երկու կողմէն քանի մը անգամ մեծ Նոր Խանը Ազգասէր Փափազեան Միհրան Ամիրային սենեակը կը ժողվըվին, կը վիճին, իրարու զիջումներ կ'ընեն. վերջապէս համաձայնելով վերջին որոշումին սա կըլլայ թէ, Երուսաղէմայ համար շինուած ու վաւերացուած կանոնագրութիւնը ամբողջ ընդունուի. Պատրիարքը միաբանութեան մէջէն ընտրուի, ի բաց առեալ Իսահակ և Յակոբ Վարդապետները, Ազգ. Սահմանադրութիւնը անխախտ պահուի. և Ընդհանուր Ժողովէն դուրս մնացած երկոտասանի չափ պատուաւոր անձինք Ազգ. խորհուրդներուն մէջ պակաս եղած անդամոց տեղը ընտրուին: Ասոր վրայ Ազգային Վարչութեան խօսք կը տրուի որ սոյն որոշումը արքունի ճարտարապետ Կարապետ Ամիրային փե-ռօզապետ Յովհաննէս Պէյին և նախկին Պատրիարք Յակոբ Սրբազանին ստորագրութեամբը վաւերացուի:

Միւս օրը որ էր ուրբաթ, Սրբազանը Ազգ. Քաղաքական ժողովոյ անդամներուն հրաւիրանաց տոմսակներ կը խրկէ. որ հետևեալ օրը Պատրիարքարան իջնան կարևոր իրողութեանց վրայ խորհելու համար: Նոյն անդամներէն ութը հոգի կ'երթան. որոնց չորսը միայն օրինաւորութեան պաշտպաններէն էին: Սրբազանը Բ. Դռնէն եկած պույրուլտի մը ցոյց կու տայ. և մեծ Նոր Խանը եղած որոշմանը վրայ բնաւ բան մը չը խօսելով, Ընդհանուր Ժողով կազմելու և Երեսփոխաններէն և Անդամակցներէն զատ՝ քառասունի չափ ալ պատուաւոր անձինք հրաւիրելու խօսք կ'ընէ: Երբ իրեն կ'ըսուի թէ՝ «Մեծ Նոր Խանի որոշումը սանկ չէ». կը պատասխանէ թէ Բ. Դուռը չը ճանչնար Սահմանադրութիւնը, հետևաբար ինք ալ չը պարտաւորիր զանի ճանչնալ: Այն ատեն մերոյիշեալ կանոնապահ անդամները, Սրբազանին սանկ պաղ արիւն պատասխանով մը իր ուխտազանցութիւնը յայտնելուն վրայ խիստ զարմանալով, այնպիսի պարագայի մը մէջ

ինչ որ ըսել պէտք է նէ կըսեն. և քովէն շուտով դուրս կ՚ելլեն։

Սա է աւելի դիտողութեան արժանի կէտը՝ որ երբ Սրբազանը Քաղաքական ժողովին հետ կը խօսէր ընդհանուր ժողով գումարելու վրայօք, նոյն միջոցին շուկան ալ առաջիկայ երկուշաբթի օրուան համար Ընդհանուր ժողովոյ հրաւիրանաց տոմսակներ ցրուել կուտար. ասկէ աղէկ կը հասկցուի որ ինք ինչ կերպ Ընդհանուր ժողով կազմել կ՚ուզէր նէ, արդէն իր համախոհներուն հետ խորհելով որոշէր. և այս նենգութեանը օրինաւոր կերպարանք մը տալու համար՝ միայն Վարչութիւնը կանչէր էր։ Նաև այն խաղաղութեան խօսքն ալ անուղղակի առաջարկելուն նպատակը սա էր՝ որ օրինապահները սուտ յուսով մը զբաղեցնելով ժամանակ չը տայ անոնց. որ իր դէմ որ և է արգելք մը հանելու կարող չ՚ըլլան։

Խղճալի Սրբազանին այս խաբեբայութիւնն ալ անպըտուղ մնաց, ինչու որ Սահմանադրականք յետախաղացներուն ամէն մէկ շարժումը արթուն հսկողութեամբ դիտելնուն համար, դաւաճանութիւնք շուտով իմացան, և մեծագոյն մաս մը ունենալու դիտմամբ, Ազգային Երեսփոխանաց և Անդամակցաց հազիւ թէ երրորդ մասին հրաւիրանաց տոմսակ գրել տուած, և փոխան անոնց՝ դրսէն հարիւր յիսունի չափ իւրեանց համախոհ մարդիկ հրաւիրած ըլլալնին սուրացեցին։ Սուտի երկուշաբթի օրը օգոստ. 21 անուրանալի իրաւունքնին պաշտպանելու, օրինաւորութիւնը ոտնհար ընել չը տալու, և այն ուխտը դրժող և Ազգը մատնող և միանգամայն մոլար վարդապետութիւն մը հնարող պատրիարգէն հրաժարականը պահանջելու համար պատրիարգարանը գացին. ուր տեսան ոչ միայն հրաւիրեալներ, այլ և հազարէ մօտ բանուոր և ջրկիր հուրջիչ (Թուլումպաճի) և բեռնակիր նաև խել մնալ ոստիկանութեան զինուորներ։

Յետախաղացներուն միտքն այն էր՝ որ Սահմանադրականները այն խուժանը տեսնելով կամ անոր զազանութենէն վախնալով տեղերնին դառնան. և կամ գրգռուելով ապօրինա-

ւոր շարժումներ ընեն ։ Բայց այս չար խորհուրդնին չը յաջողիր, որովհետև Սահմանադրականներն ոչ խուժանին վայրենի սպառնալիքներէն երկիւղ մը ունեցան, և ոչ օրինաւորութեան և պատշաճողութեան սահմանէն դուրս ելան․ այլ իրաւամբ պահանջեցին՝ որ Սահմանադրապէս Ընդհանուր ժողով գումարուելով, Բ. Դռնէն եկած պաշտօնագրին համաձայն (1) Երուսաղէմի Վանուց համար արժանաւոր մէկը պատրիարք ընտրուի, սա պայմանաւ որ եԹէ այս կերպ չյաջողի, Սրբազանը իր հրաժարականը տալ պարտաւորի ։ Սահմանադրականաց այս իրաւացի խնդիրը Նորին Սրբազնութիւնը յօժար կամօք ընդունելով իր ստորագրութեամբը, և երկու Եպիսկոպոսի և երկու Ազգ. Երեսփոխանի ստորագրեալ երաշխաւորութեամբը անդորրագիր մը կուտայ ։ Այսու ամենայնիւ յետաղէմները խել մը աղէտ և շահախնդիր կղերաց հետ, որոց հաւատքը, կրօնքը, ծրէնքը և խղճմտանքը իբրև խաղալիք մը եղած է իրենց ձեռքը (2), այս անմեղ և օրինաւոր ընԹացքին ապստամբուԹեան կերպարանք մը տալու դիտմամբ, երկու երեք ազգատեաց ճիւաղներու միջոցաւ գոյժ կուտան Ոստիկանութեան և Բ. Դռան ։ Ոստիկանութեան կողմէն բաւական զինուորներով Փաշայ մը կը հասնի Պատրիարքարան, քիչ մը ետքը ոստիկանութեան պաշտօնեայն և ետևէն ալ պատերազմական պաշտօնէին կողմէն քանի մը հարիւր զօրքով Փաշայ մ'ալ կուգայ ։ Ասոնք ինչ կը տեսնեն — լոկ բազմութիւն մը, որ իր ստնակոխ եղած իրաւունքը օրինաւոր կերպիւ կը խնդրէ և ոչ միայն զէնք, այլ և ցուպ մը անգամ չ'ունի ձեռքը — ։ Նոյն միջոցին երեք անխիղճ անձինք

---

(1) Որով կը հրամայէր Թէ՛ արժանաւոր մէկը Պատրիարք ընտրուի Երուսաղէմի վանուց. ինչպէս արդէն Ազգին ողջամիտ մասն ալ նոյնը կը պահանջէր ։

(2) Խաւարասէրները իրաւունք ունէին կիրքերնուն հետևելու, որովհետև իրենց սիրած Սարգիս Պատրիարքը և իբրև Ս.. պաշտած նախկին Պատրիարք Յակոբ Սրբազանը կեդրոնէն մեղք չ'ըլլալը արդէն քանի մ'օր առաջ Միաբան խորհրդով վճռած էին ։

ալ (1) ոստիկանութեան պաշտօնէին ձիուն մօտենալով, այն անմեղ բազմութիւնը զրպարտելու մտօք կատաղաբար կոկորդնին պատռելու չափ ռռնալով, «Տէր, առնոք սուրերով եկան պատրիարքարան կոխեցին. ծերունի նախկին պատրիարքը մահուան դուռը հասուցին» կըսեն. և քանի մ'ալ յարգի անձինք թքրև գլուխ խռովարարաց մատնելու կը յանդգնին: Ոստիկանութեան պաշտօնեայն այս անօրէն կայէններուն լիրբ զրպարտութեանը չ'հանդուրժելով «Կորսուեցէք մէկդի լկտի կուսասներ, դուք հրդէհը բորբոքցնել կ'ուզէք» ըսելով, քովէն կը վռնտէ:

Օրինաւոր բազմութիւնը լռիկ մնջիկ քաշուիլ երթալէն ետքը, պատրիարքը ժողովատեղիէն պատրիարքարան երթալու առեն ի լուր ամենեցուն «Տէր, Ազգս սոտահակ եղաւ» կըսէ Ոստիկանութեան պաշտօնէին: Եւ ստորագրութեան համար ալ քըմ ծիծաղով մը «Քանիք կ'առնեն» խօսքը անամօթաբար բերնէն կը վիժէ:

Ամբաստանը եղելութիւնը ուզածին պէս վիպելու և սուտը իրաւի տեղ կլլեցնել տալու համար, Ոստիկանութեան պաշտօնէին հետ իւր սենեակը կառանձնանայ և Բ. Դռնէն եկած պաշտօնատարն ալ՝ որ եղելութիւնը վերջանալէն ետև հասէր էր հոն, նոյնպէս առանձնակի կնդունի: Նորին Երաշխոհ Սրբազնութիւնը Կայսերական արդարակորով կառավարութեան տուած անհիմն տեղեկութիւնները հաստատելու մտօք Ազգէն երկիւղ մը ունենալ ձևացնելով այն գիշերը և հետևեալ քանի մը օրերը պատրիարքարանի առջև բաւական զօրք ընդասեցնել կուտայ. և չորս հինգ օր ալ պատրիարքարանի անդաւիսին վարի կողմը ոստիկանութեան զինուորներ կ'կեցնէ, որպէս զի իւր չ'ախորժած մարդիկը վեր ելլելու արգիլէն:

Դուցէ ընթերցողք ըսեն թէ այս տնօրէնութիւններուն բոլորն ալ ծանր ծախքերու կարօտ ըլլալուն, Երուսաղէմայ փոխա-

---

(1) Զրաճեան Սարգիս, Մովսէսեան Գէորգ, և Ճէնազեան Մարտիրոս:

նորդ անուանեալ Իսահակ Վարդապետը (1). Կ. Պօլսոյ Սրբազան Պատրիարքը և գիրենք չարութեան գործիք ընող պարոնները մինչև ցայն վայր մեծ մեծ գումարներ մսխած ըլլալու են և անշուշտ մսխեցին ալ: Է՜հ, դուք ատոր հոգ մի ընեք, ինչու որ՝ եթէ բազմաց ձայնը ձայն Աստուծոյ է, յիշեալ Երուսաղէմայ փոխանորդը իւր տիրասպան ձեռքով Ծիսէկյի հողերուն մէջ ամփոփած հնդկաց նուիրակ Գաղատացի Իսահակ Վարդապետէն կարի մեծ ժառանգութիւն մը ձեռքն անցուցած . . . և փոխանորդութեան հաշիւներն ալ հանգուցեալ Պատրիարքին ցոյց տուած չըլլալով բաւական գումար մ՚ալ անկէ առակը դրած, և Սարգիս Պատրիարքին ալ բաւական դրամ ունենալը, նոյնպէս յիշեալ պարոններէն մէկին արտաքոյ կարգի ընչաւէտ և մէկ քանիին ալ գոնէ առ երևոյթս հարստութիւն ունենալը լաւ գիտցուած ալ է նէ, անոնք գործերնին լաւ գիտեն, տամ բայէն միշտ հեռու փախչելով միայն առնում բային խոնարհմունքը զոց ըրած են. Աստուած Ս. Յակոբայ վանքը չէն պահէ. հոն բաւական ոսկի կայ (2). մինչև այն՝ատեն 10000 ի մօտ կելլէր անկէ բերուածը (3). և երբ ուզէին

(1) Յիշեալ Վարդապետը (որ արդ Եպիսկոպոս ալ է) ինչ գազանաբարոյ մարդ և նշանաւոր յատկութեան տէր ըլլալը, Սեպ. 5, տպեալ Մեկուսիկչա անուն տետրակին մէջ նկարագրուած է:

(2) Մինչև 600000 լիրայ. ըստ արձանագրութեան մայր տումարի վանուց, որ Պօղոս, Զաքարիա, և Կիրակոս Սրբազաններուն ազգօգուտ տնտեսութեան բարեկարգ կառավարութեան, և արթուն հսկողութեան արդիւնքն է, Թողունք ըսել ի հնդիկս Անգղիոյ պանգան ձգուած հին կտակի մը գումարը (250000 լիրայ), որուն մուրհակը վերոյիշեալ հնդկաց նուիրակ Գաղատացի Իսահակ Ծ. Վարդապետին և Յովսէփ Աղաբեկեան իշխանի միջոցաւ նորոգուեցաւ հրամանաւ Զաքարիա Պատրիարքին: Աւելորդ կ՚համարենք յիշել հոս նաև վանքին տասնամեայ եկամուտը, որ հանգուցեալ Յ. Սրբազանի Պատրիարքութեան ժամանակ հարկաւ գանձուած է, որովհետև տարին 3000 ոսկի, վանուց տարեկան բովանդակ ծախսը (որ անկէ էվելին անկարելի է) զոցելէն զկնի 15—20000 եւս էվելնալու է անշուշտ. ինչպէս որ փորձով շատերուն յայտնի եղած է:

(3) Այդչափը արդէն շոգենաւի մանիֆէսթօներէն ստուգուած էր:

Կրօնային ալ բերել տալ (¹) որովհետև ապահով եղած էին Ազգին քննիչ ղրկելու կամ հաշիւ տեսնելու անկարող ըլլալուն և արդէն վանքին ստացուածքը իրենց ձեռքն էր . . . ինչ կըլլար միթէ շատ բան մ'էր Սահմանադրութիւնը եղծելու և Սահակի նման ճարտար և քանիբուն մէկը Երուսաղէմայ վանքին պատրիարք ընել տալու համար ստակի կ'խընայուէր: Թող վանքին բոլոր հարստութիւնը զոհ ըլլայ ասանկ Ազգօգուտ հոգեշահ գործերու: Թող անկասկած և վստահ ըլլան նաև այն ջերմեռանդ ուխտաւորները, որոնք ինչպէս առաջները նոյնպէս ասկէ ետքն ալ լիուլի պիտի վարձատրուին. վասն զի մշակ արժանի է վարձու իւրում: « Ճերմակ ստակը սեւ օրի համար է » կսէ առածը. այն պակասը շուտ կ'լցուի. աղօթք ընենք որ Աստուած օրհնէ այն բարեպաշտ ուխտաւորները որոնք տարիներով անձերնին և մինչև զաւկըներնին անգամ զրէթէ ամէն բարիքներէ զրկելով ստակ կեւեյըընեն և Երուսաղէմ ուխտի երթալով ունեցածնին չունեցածնին մէկէն հոն կ'թափեն (²). որպէս զի վանքին բարեկարգ յառաջադիմութեանը միջոցաւ, ազգօգուտ պտուղներ քաղեն ու վայելէն (ինչ կառնես չգիտեմ): Սակայն ասոր փոխարէն 30 տարիէ ի վեր է որ Երուսաղէմայ փոխանորդութեան պաշտօն վարող

(¹) Թող որ ուզած ատեն ասկէ անկէ ալ ստակ վերցնելու դիւրութիւն ունէր. և ամէն մարդ յօժարութեամբ կ'ուտայ, քանի որ մուրհակը յանուն Երուսաղէմի վանուց կամ որ նոյն Ազգին է, ինչպէս յիշեալ փոխանորդին Եպիսկոպոսութենէ ետ դարձած ատեն Մուսկոֆլու Ինճէեան անուն Յովհաննէս Աղայէն վերցուցած 250 ոսկին, միայն օրինակի համար կ'յիշենք հոս. Թողունք նաև մինչև ցարդ յանուն Երուսաղէմատան նիզվիրաբար դիզած պարտքերը, որն որ ինչպէս կ'լսուի արդէն 2000 քսակի հասած է: Շահով չէ, ինչ կըլլայ, վանքը պարտական է վճարել, ապա թէ ոչ պատրաստ է Ազգը. Վասն զի վանքին համար կ'վաստկի, թող անոնք որչափ ուզեն մսխեն . . . օր մ'ալ կ'փսխեն. Ազգին շահ եղեր, չէ եղեր, հոգին հոգն է (յիմար Ազգ, դուն և ստացուածքդ ծով. զայն չ'կըլլողը կով): Վասն զի ընդհանուրին շահը մասնաւորաց զոհելը արդէն սովորած է:

(²) Կարծեմք թէ այսուհետև Երուսաղէմ ուխտի երթալու և վանքին ոսկիտալու իղձն ու եռանդը Ազգին սրտէն պիտի վերնայ, թէ որ վանքին այս ազգավնաս ընթացքը շարունակուի և անկարող ըլլայ Ազգը զանի կարգի կանոնի ներքև դնել:

անձինք, ինչպէս ներկայիս, մի միայն իրենց անձնական կը-
րից ծառայել գիտնալովն որ և է կերպիւ . . . կռնակներն
քանի մը երեւելեաց տալով՝ որ մէկը Պատրիարք ըլլալու և որ
մէկն ալ հաշիւ չ՚տալու համար. Վանքին կալուածական հա-
սոյթներէն դիզուած և ուխտաւորաց տուրքերէն հաւաքուած
այնքան հարստութիւնը անխնայ և չարաչար կը վատնեն,
Տես է. երբեմն իրենք ուղղակի, և երբեմն ալ ուրիշներուն
կրիցը իբրև գործիք անուղղակի. խեղճ Ազգը միշտ տակն ու
վրայ ընելով. կարծես թէ Ազգին դրամին հետ Ազգին գոյու-
թիւնն ալ սպառելու ճիգ կը թափեն: Շատ աղէկ կ՚ընէր Ազգը՝
եթէ այսուհետև Պոլսոյ մէջ Երուսաղէմայ փոխանորդ նստե-
լու վնասակար սովորութիւնը (խօլթուխ եումուրճախին) վեր-
ցընէր. Թերևս խռովութեան և Երկպառակութեան գլխաւոր
մէկ պատճառը Ազգին գլխէն պակսած կ՚ըլլար. մանաւանդ
թէ Ազգը կամ որ նոյնն է յիշեալ Վանքը կողոպտիչ ու կեղեքիչ
ձեռքերէ և անտեղի ու ծանր ծախքերէ կազատէր: Թող որ
Ազգ. Վարչութեան դէմ ծիզվիթ խմբակին ալ ժողովատեղի
ըլլալէ կ՚դադրէր նոյն Երուսաղէմայ տուն ըսուած դժոխանո-
ցին: Թողուլ ըսել այն կաշառակուր շահախնդրաց ձեռքով
գործուած դարանները, և ազգավնաս դաւաճանութիւնները.
որոնք ոչ թէ միայն Վանքին, այլ և Ազգին թշուառութեանը
պատճառ եղած են և են. քանի որ Ազգը անտարբեր մնալով
իւր ստացուածքին ու ժառանգութեանցը, իր ազատ իրա-
ւունքն ու պատիւը և ազնուութիւնը կորսնցընելէ զատ, մեծ
մասամբ զինքը թշուառացնող պատճառները չէ տեսեր և
դժբաղդաբար զանոնք իւր վրայէն հեռացնելու միջոցները
չէ կրցեր մտածել ցարդ: Յիրաւի Երուսաղէմայ Վանքը որ
Ազգային գլխաւոր հաստատութիւններէն մին կը համա-
րուի, փոխանակ Ազգին կենցաղօգուտ և հոգեշահ ուս-
մանց և գիտութեանց ասպարէզ մը վառարան մը ըլլալու,
Ազգին միշտ վնասակար կամ կորստաբեր ըլլալու չար
բաղդին արժանացեր է. վասն զի ազգային հաստատու-

թիւնները. կալուածներն ու ժառանգութիւնները և անոնց բոլոր հասոյթները, որոնք Ազգին իւրաքանչիւր անհատից առատաձեռն արդեամբը կ'գոյանան, ընդ վայր վատնուելէն զատ, Ազգին օգտին և պիտոյիցը ծառայելու տեղ, միշտ անյագ որովայններու ճարակ և սրբապիղծ ձեռքերու որս ըլլալով. Ազգն ալ չար կերից գործիք ու խաղալիք եղած է, մի միայն իր անտարբերութեան և հոռի ու տարտամ կառավարութեան ու տնտեսութեան պատճառաւ ի վնաս ինքեան:.

Ինչ և իցէ այսքանը հերիք սեպելով դառնանք վերստին մեր պատմութեան թելը ձեռք առնուլ:

Սարգիս Պատրիարքը նոյն ապօրինաւոր ժողովին օրը ոստիկանութեան պաշտօնէին և Բ. Դռանպաշտօնականին տուած կեղծ ու պատիր տեղեկութիւնները հերիք չ'սեպելով, հետևեալ օրը Մեծ Եպարքոսին կը ներկայանայ, իւր հետն առնելով այն մեծահամբաւ Սեթեանը (1), որ մինչև Բ. Դուռը կրկնէ իրեն կառքին մէջ այն սոսկալի մատնութիւնները և զրպարտութիւնները, զոր պիտի ընէր Նորին վսեմութեան:

Ազգասէր Սրբազանին բարկութեան հուրը այսքանով չ'զիջաւ. երկու օրագրաց (2) առ ժամանակեայ խափանել տալովն ալ գոհ չեղաւ, իւր անյիշաչար ոգին նորանոր վրիժառութիւններ պահանջելով հետևեալ օրը բազմաթիւ պատուաւոր Սահմանադրականաց անուան ցուցակ մը Բ. Դուռը զրկելով, կը ճանչնէ այն անձերը իբրև յեղափոխական գրգռիչ և խռովարար և իբրև ապստամբ տէրութեան: Ասոնցմէ ինն հոգի ոստիկանութեան Դուռը կը կանչուին և եղելութիւնը ամէն մէկին զատ զատ կ'հարցուի, ամէնքն ալ անկեղծութեամբ

---

(1) Յիշեալ վարդապետը նախկին Պատրիարք Յակոբ սրբազանին ձեռնասուն ըլլալով, անոր օրովը որքան ճիզվիթ անօրէնութիւններ' որ կամեցեր է, նորին ազդեցութեամբը Հոգևոր ժողովին մէջ որոշել տուեր և գործադրութեանը հսկեր է: Յիշեալ Սրբազանէն զատ Սարգիս պատրիարքին ալ ձեռնասուն ըլլալով ամէն ուզած ազգակործան անօրէնութիւնները ըրել տալու չանց քրաւ:

(2) Մեղու և Մասիսի [illegible] անուն խմբագիրները:

ճշմարտութիւնը յայտնելէն անմիջապէս ետքը ամենայն պատուով տեղերնին կ'դարձուին:

Այս անլուր ազգամատնութիւնը գրեթէ համայն Ազգը այր և կանայք ծերք և տղայք Նորին սրբազնութենէն բոլորովին կ'զզուեցնէ, և Սարգիս անունը՝ Յուդայի և Վասակի պշգալի անուանց կարգը կանցնի: Ասկէ կ'հետևի նաև Միջագիւղի և Պէշիկթաշի եկեղեցեաց տնախմբութեան օրերուն այն յատուկ ազդարարութիւնը առ Նորին սրբազնութիւնը թէ պարապ տեղ չ'յոգնի, վասն զի Թաղեցիք չ'պիտի ընդունին իր գալուստը:

Այս միջոցին երեւան ելած վիմագիր յայտարարութեան մը օրինակը տես Թիւ Ը:

Յիրաւի ազգին մէջ պատահած այս ազգավնաս սոսկալի և միանգամայն քստմնելի ազգամատնութեան և խռովայոյզ երկպառակութեան պատճառաւ ազգային աղմուկը երթալով կը սաստկանար, սակայն այսու ամենայնիւ օրինասէր Հասարակութիւնը հաստատամտութեամբ իւր ազգային իրաւունքն ու օրինաւորութիւնը պաշտպանել երբէք չէր զլանար. քաջայոյս ըլլալով վերին Նախախնամութեան ամենաբարի գթութեան, թէ իւր ամենակարող օգնականութեան բազուկը խղճալի Ազգերնուս վրայ տարածելով ամօթապարտ կ'ընէ անշուշտ Ազգին մէջ գտնուած այն ազգատեաց վասակներուն խումբը. որոնք մոլեգնաբար տիւ և գիշեր առանց իրենց զաւակներն ալ մտածելու Ազգին վնաս հասցնելէ դադրիլ չեն ուզեր:

Արդէն ապահով էին օրինասէրք և վստահ միանգամայն և անկասկած Ազգութեան իրաւանց, մանաւանդ Մեծազօր Տէրութեան արդարասիրութեանը վրայ. ուստի և Նորին 'ի մասին հպատակաց ունեցած մարդասիրութեանը կրթնելով՝ կ'քաջալերուէին յանչափս. քաջ համոզուած ըլլալով թէ՝ Հայ Ազգը ինչպէս մինչև ցայսօր իւր հլու և հաւատարիմ հպատակութեամբը Օգոստափառ կայսեր առատագութ խնամոց արժանանալով իւր ամենասիրելի կրօնքն ու Ազգութիւնը կա-

րող եղեր է պահպանել, նոյնպէս այսուհետեւ ալ իւր օրինաւոր և գովելի ընթացքովը Նորին Բարձր հովանաւորութեանը ներքեւ նիւթապէս և բարոյապէս յառաջադէմ պիտի զարգանայ:

Այս Ազգամատնութեան վրայ. բազմաթիւ ստորագրութեամբ աղերսագիր մը կ՚պատրաստուի. և Եկեղեցականաց ողջամիտ մասին կողմէն ալ քառասունի չափ կստորագրեն և քանի պատգամաւորներով կը մատուցուի բարձրապատիւ Փոխարքային, որուն մէջ կամ Պատրիարքին զրպարտանաց դատաքննութիւնը և կամ անոր անմիջապէս հրաժարիլը կ՚խընդրուէր, վասն զի ալ այնուհետեւ անոր Պատրիարքական աթոռոյն վրայ կանգուն մնալը Ազգութեան և կրօնի պատիւ մը չըբերելը յայտնի կերեւար (1): Հետեւեալ շաբթուն հինգ վեց հարիւր պատուաւոր անձինք Բ. Դուռը երթալով յիշեալ աղերսագրոյն գործադրութեանը կ՚աղաչուի. և անոր քիչ օրէն կատարման խոստումն ըլլալով, կ՚վերադառնան:

---

(1) Անա ճարտար և իմաստուն ղեկավարի կամ նաւապետի մը արդիւնք. նորա պաշտօնակիցները որքան ջանան անօգուտ է. վասնզի նաւը գլխաւորապէս առաջին նաւապետէն կախում ունի, և նորա պատասխանատուութեան ճարտարութեան և հաւատարմութեան յանձնուած է, նաւուղիղ ցուցակին համեմատ վարել իւր պաշտօնը: Իսկ թէ որ ոգէտ ըլլայ միանգամայն և չուզէ հաւատարիմ կենալ, պաշտօնակցաց ճգունքը պարապը ելլելով, նաւն ալ վտանգէ չ՚կրնար ազատ մնալ:

Ըսածնուս ապացոյցն է յիշեալ պատրիարքը, որ Սահմանադրութեան հակառակ ազգին ղէկը դէպ ի ձախող կողմը դարձնել ուզելով, երեսփոխան Անդամոց մեծամասնութիւնը, որոց 160 էն, 130 ը, օրինապահ էին օգուտ չ՚կրցաւ գործել խռովայոյզ նաւաբեկութեան, քանզի Ազգին ղէկը վարող նախագահը անհիմն պատճառանօք քուէհամարը չորս օր միայն ետ ձգել ուզելով, Յուլ. 18, տոմսակաւ քուէհամարէն առաջ քանի մը դիտողութիւն կայ ընելիք, ըսելով. և Յուլ. 21, Ընդհանուր ժողով գումարելով, ամէն բան տակն ու վրայ եղաւ, և Սահմանադրութիւնն ալ պղծուեցաւ:

Թերեւս ըսողներ գտնուի թէ պատրիարքին ձեռքը ինչ կայ . . . յիրաւի թէ որ ոգէտ կամ ազգատեաց, մանաւանդ թէ անԱստուած և անձնամոլ մէկը ըլլայ, կրնայ շատ չարիք գործել Ազգին: Ուրեմն կամ այս ազգակործան և գահավէժ դիրքը փոխել, և կամ անկողմնասէր ոգւով ընտրելիին տաղանդն ու յատկութիւնը նախ փորձով քննել պէտք է, ապա թէ ոչ կուսակցութեամբ ասանկ միշտ ոգէտ և անփորձ մէկին ընտրութեան քուէ տալը այսուհետեւ վնասակար և կործանումն է Ազգայնութեան:

Իսկ յետադիմաց կողմէն Բ. Դուռը փացած աղերսագրոյն իմաստը առոք հանկասակը կ'ընդէր. այսինքն Սրբազանին իւր պաշտօնին մէջ հաստատ մնալը, Սահմանադրութեան խափան. ընելուիլը և սահմանադրականաց պատժուիլը կ'պահանջուէր, իբրև Ազգին խառովարարները ներկայացուելով:

Պատրիարքը ուզող կղերին ատորագրութիւնները շատկնել ըլլալուն համար, գործը շիտի կերպարանք մը առած կ'համարուէր Բ. Դրան պաշտօնակալաց առջև, զորոնք իրենց կողմը դրած կ'արքէին. ուստի հաղց փորձի մը ատեն օրինապահաց կողմէն պատուաւոր անձ մը (1) Բ. Փօխարքային կ'պատասխանէ ըսելով « Էֆէնտիմ սոֆուա մի կիդէյիմ միւսէրրիֆ մի » Փոխարքան « Էյլէյի միւսէրրիֆ » կըսէ. kojjk huk ազ կkorsh fljtrhkhiq միւսէրրիւ ehr, ևայլն. (2):

Այն օրերը Բ. Դրան հրամանաւ երկու կողմէն ալ քանի մը պատուաւոր անձինք կ'կանչուին իրողութեանց վերահասու ըլլալու համար. և օրինապահաց կողմէն Գէորգ (3) և յետադիմաց կողմէն Յակոբ նախկին Պատրիարքներն ալ ի միասին. որոնք նախ Ճէմիլ Պէյին (4) և ապա Գապուլի Էֆէնտիին առմարանոցները գումարեցան:

Իւսկիւտար և Գէշիկթաշ զաղտնի ժողովներ կըլլային ատէն,

---

(1) Նահապետ Էֆէնտի Ռուսինեան:

(2) Այս միջոցին չատ մը թաղերու յայտագրեր երևցան, ինչպէս, Մեղու. 3, Անմտութիւն թաւ. է և համառօտիւ Տէրութեան՝ վերնագրով և Մեղու. 7, յաւելուած ի վարդ. Թիւ 3. և Ազգ. Երեսփոխանաց կողմէն առ Վսեմութիւն ուղղեալ նամակի մը օրինակը յաւելուած ի Մասիս, Թիւ, 495:

(3) Զանի ալ մտնուած էին, թէ որ Սահմանադրութիւնը իր սրովը հնարուած ըլլայ:

(4) Ուր տեղ Միւպահեաճեան Յակոբ Էֆէնտի անուն անձը ի կրից յուզեալ Ճէմիլ Պէյին սա հետևեալ տսկալի խօսքը կ'ընէ, « Էֆէնտիմ պիզ ասլա Սահմանադրութիւնու զապուլ էտէմէիզ, զիրա հէմ Տէվլէթէ վէ հէմ մէսէպիմիզէ Թօգանըր պիզ սաադէ պէնտէլէրիզ:» Երբ կ'հարցուի իրեն առանձին Թէ ո՞ր խղճմտանքով լսիր այդ խօսքը նէ, կամքերնիս յառաջ տանելու համար, կ'պատասխանէ. (սպառսպելի վատութիւն այն խնամոց և համապրան ու պատուոյն դէմ, որ Տէրութիւնը մեր Ազգին վրայ ունի):

Սահմանադրականաց դէմ (¹), և միևնոյն աշխատութեամբ մասնութիւնք մասնութեանց վրայ դիզուելով որքան որ խնդիր Ազգը Տէրութեան կասկածելի ցուցունելու քան կ'զգուշանէր ալ նէ, այնչափ համարձակութիւնը արթուն հսկողութեամբ միշտ սպառապատ. կ'կենար ապօրինաւորութեանց դիմադրել. և արդէն գլխաւոր Թաղերու Եկեղեցեաց մէջ, Պատրիարքի անուան յիշատակութիւնն անգամ սկսեր էին դադրեցնել (²)։

Զմոռնանք յիշել հոս նաև այս դժբաղդ պարագաներուն մէջ Սարգիս Արբագանեան և Երուսաղէմայ Փոխ. Սահակ Վարդապետին անգոյ նզովքը հաստատելու դիտմամբ ի գործ դրած frsնաչաճ աշխատութիւնները. փառք զի յիշեալ Վարդապետին Յուսափայէլ Նազարեան անուն փոքրաւորը (³) որ շատ ծախքերով Թիֆլիզ գացած էր, այն միջոցին Պօլիս համնելով իբր Թէ Արբագան Կաթողիկոսէն նզովքը հաստատող կոնդակ մը կ'բերէ: Արբագանը յիշեալ կոնդակը տպագրութեամբ բազմաթիւ օրինակներու վերածելով երբ Եկեղեցիներըցրուել կու ճապարէ, դաճախ — գափուր Եկեղեցիէն ընդունելութիւն չ'գտանելով բացէ 'ի բաց կ'մերժուի. սակայն Արբագանը վերոյիշեալ կոնդակին օրինակները իբր ի նշան բնագրին ճշմար ընդարձակ խաբ կնքակը վաւերացուցած ըլլալով, և առաջիքն անկար-

(¹) Իրաւը ըսելով, շատ անգամ Սահմանադրական ժողովոյ անդամները անփորձ և անկարող անձինք գտնուեցան իրենց անհամեմատ և անգէտ ըլլալնուն պատճառաւ, վասնզի կէս մը խակ և անփորձ, շատերը տաղտկացեալ և բազմազբաղ անձինք էին: Փորձառու հասուն և իմաստուն, ծեր և արթուն հանճարեղ և խելահաս գլուխներ կ'պակսէր իրենց մէջ, եղածն ալ գրեթէ շատ քիչ, ուստի և անբաւական, և շատերն ալ զուրկ ըլլալով Ազգային գործոց ճիշդ տեղեկութենէ, շատ տեղ անխոհեմաբար վարուեցան և շատ տեղ ալ խաբուեցան ու սխալեցան, և շատ տեղ ալ անհոգ և անփոյթ նիրհեցին, և գէթ օր մը իրար քով ժողուիլ խորհիլ և մտածելով գործել մտադիր չեղան:

(²) Սոյն միջոցին Սահմանադրասէր Հայ հասարակութիւն, ստորագրութեամբ յայտարարէր երեւցան, ինչպէս Հոկտ. 11 ին, ալն:

(³) Յիշեալ Երիտասարդը Սահակ Վարդապետին մէնտորն ըլլալով միայն և ոսկի չ'պակսիր գրպանէն... և միլլիոնատէր, Նազար, Նազարեան խաղալով զբօսնուլ քաջ գիտէ:

տուութիւն մը մեծաւ մասամբ իւր պատրիարքական կնքոյն վերաբերիլը հասկնալուն համար չկրնալով հանդուրժել, կ՚ջանայ զանի հոն բռնութեամբ կարդացնել տալ. ուստի Մայր Եկեղեցւոյ Սուքիաս անուն ամուրի քահանան դարձեալ իւր քաջութիւնը փորձելու դիտմամբ կիւրակէ առաւօտ յիշեալ Եկեղեցին երթալով, երբ կ՚պատրաստուի կարդալ, յանկարծ սկսիլն ու բեմէն վար առնուիլը մէկ կըլլայ. որովհետև Թաղեցիք Ս. Կաթուղիկոսին կոնդակին բնագիրը տեսնել կ՚փափաքէին, առանց հաւատք ընծայելու անոր տպագրեալ օրինակներուն, ինչպէս և Թաղ. խորհրդոյն կողմէն ալ ի պաշտօնէ օր յառաջ ծանուցուած էր Նորին Սրբազնութեան: (1)

Սրբազանին այս աշխատանքն ալ պարապը ելլելով Երուսաղէմայ փոխանորդին հետ ճիզվիթական վատ միջոցներու դիմել կսկսին. որպէս. զի յիշեալ Թաղեցիքը Թէ Բ, Դռան և Թէ Ս. Կաթուղիկոսին, իբրև ապստամբ և խռովարար երևցնել կարող ըլլան. սակայն Օրինապահները՝ միշտ օրինաւորութեան հսկող և Ազգային անբռնաբարելի իրաւանց պաշտպան կանգնած ըլլալովնին՝ առաւել արթնութիւն գործել ջանասիրեցին անլքանելի կերպով, որ չըլլայ Թէ ճիզվիթական մեքենականութիւնը իրենց հոգևոր պաշտօնատեղին ալ սպրդի աղմուկ և շփոթութիւն մը հանելու, ի նախատինս Կրօնի և Ազգութեան:

Երբ իրենց այսպիսի աննիրհելի արթնութեան մէջ գտնուիլը պարտ անձին համարելով կզգուշանային, ահա հետևեալ կիւրակին յանկարծ արիւնռուշտ պատերազմի ասպարէզ մը կըբացուի նոյն Եկեղեցւոյն մէջ. որովհետև Գում-Գափուի ջըրհուրշիչ (Թուլումպաճը) և Չուքուր-Չեշմէի վարպետ և բանւոր Ազգայնոց կողմէն խումբ մը յիշեալ քահանային Թելադրութեան և տնօրէնութեան միջոցաւ օր յառաջ նախապատրաստուած ըլլալով Թաշկինակաւ մոխիր, և խարազան ի զօտիս

(1) Որովհետև խարդախուած ըլլալը ստուգած էին:

և ցուպ ի ձեռին կ'հրապուրին կոխել յիշեալ Եկեղեցին, և դիտմամբ կռիւը Պատրիարքի անունը յիշուելու կամ չ'յիշուելու կ'փոխարկուի. ոմանց գլուխ և ճակատ կ'պատռի, շատերուն աչքերը մոխրով կ'լեցուի, Սրբազան արարողութիւնը կ'խափանուի, Եկեղեցւոյ քշոցները և գաւազանները մարդիկ ջարդ ու փուրթ ընելու կը ծառայեն և վերջապէս սոսկալի տեսարան մը դառնալով Ս. Տաճարը կ'պղծուի:

Օրինասիրաց կողմէն 300ի չափ անձինք վէրք ստացող Ազգայնոց հետ Բ. Դուռը դիմելով եղելութիւնը կ'իմացնեն և տեղւոյն Թաղական խորհրդոյն կողմէն ալ տեղեկագիր մը կերթայ. միջոցէ մը ետքը Ոստիկանութեան զինուորներով Սէլիմ փաշան կ'հասնի հոն, և ձեռք ինկած վերոյիշեալ խռովարար խեղճ և պարզամիտ Ազգայինները բռնելով Ոստիկանութեան Դուռը կ'բանտարկուին. հոն գտնուող օրինասէրները անոնց անգիտութեամբ գործած այս Թշնամական չարեաց փոխարէն զանոնք մխիթարել կ'փութան. և վերջապէս Պատրիարքի և Երուսաղէմայ տան կողմէն հրապուրուած ըլլալնին խոստովանելով կ'արձակուին. Թողունք ըսել այս մասին այն օրը և Թէ հետևեալ օրը Երուսաղէմայ Փոխանորդին և Պատրիարքին մեքենայած խարդաւանացը դէմ բանտարկելոց կողմէն Պատրիարքարանի փողոցը լսուած բողոքոյ ձայներու գոռում և գոչումը:

Ցիրուի իրաց այս ցաւալի վիճակին մէջ արդարութիւնը և իրաւունքը օրինասիրաց կողմը եղած ըլլալը արդէն շատերուն յայտնի էր. որն որ ստութեան և զրպարտութեան ամպերուն ներքև Թաղուած ըլլալով հետզհետէ իւր ամպամած երեսը սկսած էր պարզել. բայց ճիզվիթ խմբակին կողմէն օր ըստ օրէ տրուած անհիմն ու կեղծ ու պատիր քարոզութիւնները տեղիք կուտային տակաւին գործին երկարելուն, և գրգիռը կ'շարունակուէր Սահմանադրականաց դէմ Թերևս Տէրութեան առջև զանոնք յանցաւոր երևցնել երազելով: Այս կերպ ցաւալի անցք մ'ալ Բերայի Եկեղեցին կ'պատահի հետևեալ շաբթուն

ուր Ոստիկանութեան զինուորներ հասնելով աղմուկը կը դադրի, և Քահանայի մը (1) Թելադրանացը կուրօրէն խաբուած ըլլալնին կ'յայտնէին․ որովհետև յիշեալ Քահանային գիշեր ի բուն համոզեր էր զանոնք Սահմանադրականաց դէմ գրգռելով, որպէս թէ Եկեղեցւոյն զարդերը և պատկերները նոյն վերցնել խորհած ըլլան (2): Նոյն գժբաղդ եղելութեանց տեղեկագիրը Ոստիկանութեան պաշտօնէին կողմէն Բ. Դուռը հասած օրը՝ Պատրիարքին կողմէն ալ Թաքրիր մը գացած էր, Սահմանադրականները պատուհասել տալու նպատակաւ, որպէս թէ իւր Սրբազնութեան կեանքը վտանգի մէջ եղած ըլլայ և թէ Պատրիարքարանին մէջ Թասլը ապահով եղած չըլլայ: Ուստի այն ատեն Ոստիկանութեան կողմէն հասած տեղեկագրին և Պատրիարքին այս դաւաճանութեան վրայ, կ'ստիպուի Բարձր. Փոխարքան իրողութիւնը հաղորդել Օգոստափառ Կայսեր, և անմիջապէս Սահմանադրութեան քննութեանը ձեռք զարնելով, որ յառաջ գործոյն վերջ տալ կ'որոշուի, և Պատրիարքին հրաժարականը առնել կ'հրամայուի: Հետևեալ օրը տասնի չափ անձինք երկու կողմէն Բ. Դուռը կանչուելով՝ երկար վիճաբանութիւններ կ'ըլլան (3): Երկու օրէն անմիջապէս ետքը Բարձր. Փոխարքային տնօրէնութեամբ՝ Բ. Դուռը Սահմանադրութեան քննութեանը համար յանձնաժողով մը կազմուեցաւ հոկտեմբեր 17. Արմաշէն ալ Ստեփան

(1) Տէր Գրիգոր Անէմեան;

(2) Ծիզվիթական մոլեգնութիւնը այնպիսի ախտ մ'է որ իր ստրուկին հոգւոյ աչքերը կուրացնելով ամենացած և վատ չարագործութեան կ'խոնարհեցնէ և այնքան սաստիկ կ'կատղեցնէ որ ալ այնուհետև պատիւ, Ազգ և մինչև ընտանիքը առաթուր կոխկռտելու խիղճ ընել չտար Թող որ կրօնքը իբրև կոյր գործիք ընել տալով. մինչև ամենուն պաշտելի Աստուծոյ վրան անգամ մուր քսել կ'յանդգնեցնէ, պարզամիտները միայն պատրելու և իր չար նպատակին հասնելու համար:

(3) Սոյն վիճաբանութեան մէջ այնչափ կիրքերը կ'յուզուին, մինչև հուր և որոտ, առջև եղած ըլլալնին կ'մոռցուի, ուստի Բ. Փոխարքայն կ'ստիպուի հետևեալ խրատը ընել սա յանդիմանական խօսքերով «Անապա հէր վազըթ սիզ պիր պիրինիզէ պէօյլէ մի սէօյլէնիրսինիզ, հայըֆ, պարէ միլլէթինիզի անըյըն, եազըգ տըր:»

անուն Եպիսկոպոսը բերուելով Թէ յիշեալ ժողովին նախագահ և Թէ Պատրիարքական Տեղապահ կարգուեցաւ ։ Ազգային գործերն ալ երեսի վրայ չմնալու համար առժամանակեայ Խառն ժողով մ'ալ կազմուելով, Սարգիս Պատրիարքն ալ հրաժարեալ հրատարակուեցաւ պաշտօնական ծանուցմամբ: (1)



ՃԻԶՎԻԹԱԿԱՆ ԱՆՑՔ ԵՒ ԴԱՐՁՈՒԱԾՔ

## Ի ՄԻՋՈՑԻ ՔՆՆՈՒԹԵԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ

Սահմանադրութեան քննութեան ատենը՝ որն որ 16 ամիս տևեց, ճիզվիթական փորձերէն յառաջացած դժբաղդ անցքերէն մէկ քանի գլխաւոր կէտերը չկրնալով զանց ընել, կարեւոր համարեցինք ընթերցողաց նկարագրել և զանոնք համառօտակի: Թողունք յիշել հոս ցաւօք սրտի Պատրիարքարանին շղթայակապ անգործ տկար և խղճալի կացութիւնը. հետևաբար և Ազգ. գործոց առ հասարակ կաղն ի կաղ ընթացքը և գաւառաբնակ Ազգայնոց ցաւալի վիճակը. Թէ ինչ աստիճանի հասաւ Թող ընթերցօղք երևակայեն. վասնզի ազգակործան մեքենականութեան շատերը ծանօթ չէին և չեն. և ճիզվիթ դարցուածքներուն վրայ գաղափար մը չունէին և չունին. ուստի շատերն ալ պարզմտաբար շատ անգամ խաբուեցան և դեռ կ'խաբուին: Ահա իրաց այս դառն վիճակի մէջ Ազգա-

---

(1) Յիշեալ տնօրէնութեան փոխարէն իբր երախտագիտական հաւատքը հաստատակութեան կողմէն հետևեալ օրը Հոկտ. 18, վիմագիր յայտարարութիւն մը երեցաւ, որուն մէջ մեծ գոհունակութիւն յայտնելէ զկնի, կ'զգուշացնէր նաև Քննիչ Յանձնաժողովին անդամները որ չըլլայ Թէ Սահմանադրութեան մէջ փոփոխութիւն մը ընել ուզելով, Ազգին սիրտը վիրաւորել փորձ փորձեն: Վասնզի ի նախնեաց անտի Տէրութեան առ Ազգն շնորհած արտօնութեանցը համաձայն ընդունուած և ազգովին հաստատուած Ազգային կանոն մը ըլլալով, երբ Բ. Դուռը պոյրուլտիով մը ուզեց զանի քննել և վաւերացնելով կրկին առ Ազգն վերադարձնելու պայմանաւ. վստահ և անկասկած յանձնեց զանի Ազգը իբր իր միակ հաւատարմութեան և հարազատ հպատակութեան նշան:

յին կառավարութեան սանձը ձեռք ձգել փորձելու նպատակաւ Օգնական անուամբ ընկերութիւն մը կազմեց ճիզվիթութիւնք. Հիւանդանոցի պատսպարեալ խղճալեաց օգնելու պատրուակաւ, որուն բարեաց իսկոյն միւս կողմէն ընկերութիւն մը Պահպան անուամբ, իբր հսկող Ազգային մատակարարութեանց. ուստի և շատ ջանցած յայտնուեցաւ ճիզվիթական խըլրտումներուն ինչ ըլլալը ([1]): Սամաթիոյ մեծ Թաղին Քահանայից կողմէն ([2]) ճիզվիթական շարժումներ կըլլայ, և ճիւաղ մը ([3]) գրգիռ յարուցանելու դիտմամբ Եկեղեցւոյ մէջ Սրբազան արարողութեան առեն ձայն կարձակէ ալ նէ, բարեպաշտաբար հետևողներ չունենալով իսկոյն Եկեղեցիէն դուրս կ՚ձգուի, բայց և այնպէս գէթ փոքր ինչ շփոթութիւն տալու և Ս. Պաշտամունքը խանգարելու չափ ժողովուրդը յուզուեցաւ: Տես Թիւ Թ.

Հետևեալ օրը՝ իբր Թէ յուզմանց առջևը առնելու պատրուակաւ, խաղաղասիրական անուամբ ընկերութիւն մը կազմուեցաւ հոն, որուն առաջարկեց ողջունել Հայկական անունով ընկերութիւն մը՝ որնոր օգտակար և ցարդ հաստատ կ՚մնայ:

Վերջապէս Ազգ. Սահմանադրութեան քննութեան և անոր վաւերացման յապաղմանը՝ մանաւանդ Ազգին այսպիսի երկպառակ ապարդիւն և ցաւալի ընթացիցը առթիւ հասարակութեան սիրտը կարեվէր վիշտերով ի խոր կ՚խոցէր. այսու ամենայնիւ Բ. Դրան մանաժողովոյն և երեսփոխանական Ընդհանուր ժողովոյն անհոգ և անտարբերութիւնն ալ եվելօք ցաւ կ՚պատճառէր բազմաց. ինչպէս այս մասին երևան ելած յայտարար բողոքները ևս և Սահմանադրութեան տարեդարձին արգելք և նորա խափանման ջանադիր

---

([1]) Սոյն ճիզվիթ դարձուածոց մէջ յանուն հիւանդանոցի հանգանակութեան առեն, տէր Պօղոսեան Գալուստ անուն անձին ալ մեծ գումար դրամով Սամաթիա Թաղին մէջ եղած տան ի հիմանց շինելու քաղդին հանդիպիլը երևցաւ:

([2]) Տէր Արիստակէս և տէր Փիլիպոս:

([3]) Տէր Փիլիպոսին եղբայրը:

եղող ճիզվիթական կնրիֆնկրուն դէմ ցրուած յայտարարութիւնները խիստ սրտաշարժ և ուշադրութեան արժանի էին:

Բաւական միջոց ալ անցնելէ ետքը, յանկարծ. Բ. Դռնէն պոյրուլտի մը կ՚հասնի ի Պատրիարքարան, որով կ՚հրամայէր՝ Ազգ. Երեսփոխանական Ընդհանուր ժողովը հրաւիրելով՝ Ազգին կողմէն քուէարկութեամբ եօթը արժանաւոր անձինք ընտրել և զանոնք ներկայացնել Բ. Դրան, որպէս զի քննութիւնք աւարտած կանոնը աչքէ անցնելով վաւերացուի:

Հասարակութիւնը թերևս ասկէ քիչ մը ոգևորուած երբ անհամբեր և ակնդէտ կսպասէր օր յառաջ Ազգային Սահմանադրութիւնը ողջամբ համբուրել՝ իւր առ տնին տնտեսութիւնը բարուոքելու համար, երկար միջոց և ժամանակ անցնելէն յետոյ, յայնժամ բողոքներ երևան կելլէ. որոնցմէ ճիզվիթական դելադրութեամբ Ազգային իրաւանց դէմ քանի մը յօդուածոց փոփոխութիւնն ալ իմացուելով, գժտութիւնը անդրէն կսկսի զայրանալ. մանաւանդ վաւերացման գործը ուշանալուն վրայ հասարակութեան համբերութիւնը կարճանալով աւելի սիրտ նեղ ըլլալէն զատ, մէկ կողմէն ալ այս մասին Ազգին մէջ ծագած տարաձայնութեան և Պատրիարքարանի խառն ժողովին ալ տարտամ ընթացիցը պատճառաւ նաև Ազգային գործոց խեղճ վիճակի մէջ երեսի վրայ մնացած. և որ աւելի ցաւալին էր, գաւառներէն եկած Ազգայնոց բողոքներուն բարձի թողլի և անգործադրելի ըլլալը տեսնելով, այլ և բոլոր աղքատաց և կարօտելոց կողմէն անպատսպար և անպաշտպան մնալնուն համար եղած աղաղակներուն ձայնը մինչև երկինք բարձրանալը ամէն օր լսելով, առ ցաւ սրտին սաստիկ կ՚վիրաւորի և կ՚սկսի յուսահատութիւնը ձեռք առնել. որովհետև լաւ համոզուած էր, թէ այս կերպ անկանոն երկպառակ և հոռի ու հետախաղաց ընթացք մը Ազգին վտանգ, կործանում, և կորուստ կ՚սպառնայ, ուստի բնականաբար չէր կարէր անտարբեր և լուռ հանդիսատես մնալ, սակայն այս մասին իւր ազգասիրական ջանքերուն ալ անյաջող ելք մը ունենալ երևա-

նայելով, կ՚ստիպուի իւր յարաբերութիւնը Պատրիարքարանէն կտրել, և հոգևոր պաշտօնատեղիներէն մանաւանդ թէ իւր կղերէն ալ ցրտանալ և զգուիլ. որոնք յիրաւի իրենց անհոգ և անփոյթ ընթացքով խիստ տխուր գաղափար մը կընծայէին հասարակութեան:

Իրաց այս ցաւալի պարագաներուն մէջ, Սահմանադրութեան յապաղման մասին թէպէտ շատ մը յայտարար թղթքներ երեւան ելան՝ թէ Բ. Դրան կազմած Քննիչ Ցանձնաժողովոյն, և թէ Պատրիարքարանի առ ժամանակեայ Խառն ժողովին և Ազգ. Ընդհանուր ժողովոյն անհոգութեանցը դէմ, սակայն ատոնց ամէնքն ալ անլսելի կըլլային: Վերջապէս հասարակութեան արդար զայրոյթը յուզուած և վերջին աստիճան հասած ըլլալով՝ 1862 Օգոս. 1. խառն բազմութիւն մը Մայր Եկեղեցին կ՚դիմեն, և Սահմանադրութեան վաւերացման վրայօք գոհացուցիչ պատասխան մը առնելու նպատակաւ Տեղապահ Սրբազանին պատգամաւորներ կ՚խրկուի: Ատենապետ Բարունակ Պէյը անձնովին թէև խօսք կուտայ Սահմանադրութիւնը Բ. Դռնէն խնդրելու, նա և ի հաստատութիւն իւր այս խոստման, ստորագրութիւն տալու պայմանաւ ամէն ջանք ի գործ դնելն ալ կիմացնէ, սակայն պատգամաւորները չեն կարեր համոզուիլ. որովհետև անոնք այս խոստմունքը միայն Ատենապետէն կ՚լսէին, զոր պէտք էր Տեղապահ Սրբազանէն լսել:

Տեղապահին մնանկ ապուշ և անտարբեր մնալը, մանաւանդ փախուստ տալէն անվստահութիւն մը նշմարելով, պատգամաւորները խիստ կայլայլին. ասդիէն անդիէն ձայներ աղաղակներ կսկսին, որոնց մէջ սա հետևեալ խօսքերը կ՚լսուէր թէ « Ազգին գործերը քանի որ կարող չեք տեսնել, ինչու էք նստէր » և այլն: Տեղապահին այնպիսի ապուշ շարժմանը վրայ հոն գտնուող Ցանձնաժողովն ալ բան մը չ՚կրնալով ընել, ժողովականներէն մէկ քանին Պատրիարքարանէն կառնեն կ՚զալեն. պատգամաւորներն ալ իրաց այս պարագաները ժողովրդեան իմացուցած ըլլալով, անոնցմէ մաս

մը զայրագին Եկեղեցիէն Պատրիարքարան կ'դիմէ և «Ազգին գործերը երեսի վրայ ձգուելէն ետքը մեզի Պատրիարքարան ալ պէտք չէ» ըսելով՝ զանի զոցելու պատրաստութիւններ կըլլայ: Նախապէս Տեղապահ Սրբազանին ձեռքէն բռնելով Պատրիարքարանէն Երուսաղէմատուն կ'փոխադրեն, և ապա Պատրիարքարանի մէջ գտնուող բոլոր Վարդապետներն ու պաշտօնատարները դուրս հանելով, և ամէն սենեակները աչքէ անցնելով (1), նաև վառարաններն անգամ պարպելով Պատրիարքարանին դռները կ'զոցեն(2) և բանալին այն խուռն բազմութեան մէջ անյայտ կըլլայ: Բազմութիւնն ալ հետևաբար յուսահատած երբ ցրուիլ կսկսի, և ահա յանկարծ ոստիկանութեան կողմէն Սկչիմ Փաշան կ'հասնի ի Պատրիարքարան, և դռները զոց տեսնելով կ'հրաւիրուի Մայր Եկեղեցւոյն Խորհրդարանը. քանի մը վայրկենէ ետքը ատենապետին հետ Եկեղեցին կուգան և ամպիոնը ելլելով հոն գտնուող սակաւաթիւ ժողովրդեան Պատրիարքարանին զոցուելուն պատճառը կը հարցնէ, և բանալին կ'պահանջէ, անոնցմէ մէկը (3) բանին իսկութիւնը կսկսի պատմել: Մանրա-

(1) Այս միջոցին զԹոց արժանի էր Զըրաճեան Սարգիս անուն անձին վիճակը, քանզի նոյն օրը հոն գտնուելով, երբ խնդիրը կ'ծանրանայ և Պատրիարքարանը զոցուելու պատրաստութիւններ կ'ըլլայ, յիշեալ աղայն իւր սաստիկ վախէն սրահին մէջ գտնուած նստարաններուն տակը կ'պահուըտի փոԹորիկէն ազատ մնալու յուսով, բայց ինչ օգուտ որ հասարակութեան աչքէն իր օձիկը չկրնալով ազատել ամենայն խայտառակութեամբ դուրս կհանուի:

(2) Երուսաղէմայ վանուց փոխ. Սահակ Վարդապետին աչքը այս դէպքէն վախնալով, այն օրէն կ'սկսի իւր բոլոր գրութիւնները և հաշուէտումարը ամփոփել ու պահել, որպէս զի չըլլայ Թէ օր մ'ալ հասարակութիւնը Երուսաղէմատունը յանկարծ զոցելով, զանոնք ձեռք անցնէ և իւր գաղտնեացը տեղեկանայ:

(3) Ցովսէփեան Գրիգոր էֆէնտի անուն անձը, որ նոյն օրը պատահմամբ անձնական գործով մը Պատրիարքարան գտնուելով և դիպուածներուն չկրնալով իբրև անզգայ լոկ հանդիսատես ըլլալ, այն ատեն Ս. Եկեղեցւոյն մէջ գտնուած հասարակութեան կողմէն կ'պարտաւորի կարեկցաբար և ազգասիրաբար պատասխանել ճշտիւ յիշեալ բաշայի հարցմանց:

մասն խուզարկութիւններէ և խել մը հարցափորձերէ ետքը յիշեալ Փաշան կըսէ թէ « Սահմանադրութեան համար Պատրիարքարան դիմելու տեղ, Բ. Դրան խնդիր մը ներկայացնել, կամ քննիչ մասնաժողովին հարցնել պէտք էր: Պատրիարքարանի առ ժամանակեայ յանձնաժողովէն բան մը որոնելու իրաւունք չունէիք, որով ժողովը ցրուէր և Պատրիարքարանն ալ գոցուէր, որն որ Տէրութեան ալ պաշտօնատեղի մ'է, ուստի դուք այժմ յանցաւոր և պատժապարտ գտնուեցաք» ըսելով՝ երբ խնդիրը ծանրանալու կըլլայ, իսկոյն յիշ'ալ անձը կ'պատասխանէ ըսելով « Բաւ լիցի տէր, մենք Տէրութեան հակառակ գործ մը չունինք, վասն զի Հայ Ազգը ի բնէ Օսմանեան պետութեան յարգն ու արժէքը ճանչցողներէն ըլլալով, իր հաւատարիմ և ազատ հպատակութեանը մէջ նաև վստահ և ապահով է թէ՛ Տէրութիւն ալ մեծ փոյթ և խնամք ունի, մինչև անգամ եթէ մեր ներքին ցաւերն ու վիշտերն իմանայ, որ դժբաղդաբար տիրած է Ազգին վրայ, անշուշտ ճար մը դարման մը ընելու իւր Թագաւորական շնորհքն ու այցելութիւնը չ'զլանար, բայց աւասիկ ցաւերնիս յայտնող մը չգտնուելով, ընդ վայր կ'տառապիմք, ցաւագին և վշտալի. ուստի պարտաւորեցաւ հասարակութիւնը դիմել այսօր ի Պատրիարքարան, որ Ազգին ներկայացուցիչն է Բ. Դրան առջև, անկէ պէտք եղածը հարցնել. քաջ համոզուած ըլլալով թէ՛ Տէրութեան մեզի շնորհած արտօնութեանցը համաձայն, մեր առտնին տնտեսական կառավարութեանը մասին ամենուս կողմէն ընդունուած ու հաստատուած Ազգային Սահմանադրութիւնը միայն կարող պիտի ըլլայ կառավարել Ազգերնիս. դարմանելով մեր սրտերը Թափանցած այն անտանելի ցաւերն ու վիշտերը .ուստի և Բ. Դրան կազմած քննիչ մասնաժողովին նախագահն ալ նոյն իսկ Տեղապահը ըլլալով, Սահմանադրութիւնը անկէ հարցնել հարկադրեցաւ Հասարակութիւնը, սակայն գոհացուցիչ պատասխան մը այո կամ ոչ չ'կրցաւ առնել անկէ, որով Թերևս մխիթարութիւն մը չգար իւր վշտացս

Այս խօսքերուն վրայ յիշեալ Փաշան Առենապետին կհարցընէ թէ « իրաւ տեղապահը Քննիչ մասնաժողովին ալ նախագահն է » Ատենապետը՝ այո կ՚ըսէ։ « Անանկ է նէ ձեր մէջէն քանի չափ անձինք Պատրիարքարանի բանալին ալ հետ առնելով, խնդրագրով մը վաղը Բ. Դրան ներկայացէք, որ գործերնիդ կարգի իյնայ » ըսելով, կձգէ կերթայ։

Հետեւեալ ժամնեկին Բ. Դռնէն երկու պաշտօնատար և քանի մը ոստիկանութեան զինուորներ հետերնին այլազգ դարբին մը առած Պատրիարքարան գալով դռները կբանան և Տեղապահն ու Խառն ժողովը վերստին իրենց պաշտօններուն վրայ հաստատելով կերթան, մէկ քանի օր ալ Պատրիարքարանի դրան առջև զինուորներ կսպասեն։

Իսկ ճիզվիթական խմբակը իւր խորամանկ խարդաւանաց ազգաններց մեքենականութիւնը անընդհատ շարունակելով, Ազգը հետզհետէ տարապարտ մասնութեանց դառն մրուրները կ՚սկսի քամել։ Վաճառաշահութեան համար կազմուած Ընկերութիւնները կ՚մասնուին իբրև յեղափոխական. Լանկայի Ընկերութեան սրճարանը եայլն կը լրտեսուի, գաւառական ազգայնոց աղաղակներու ձայները Պօլսէն կլսուին ի մեծ ցաւ սրտի ազգասիրաց։

Ճիզվիթ խմբակը այս տխուր անցից և դարձուածոց վրայ, իր մեքենայած ազգադաւ ճիզվիթութիւնը վարագուրելու դիտմամբ խաղաղասիրական միջոց մը ձեռք առնել ուզելով քանի մը Ազգայնոց միջոցաւ հաշտութեան ժողով մը կազմել առաջարկել կուտայ, թէև նորա ներքև դարանուած գաղտնիքը Թագուն չէր քաջարթուն սահմանադրականաց առջև. ուստի նախկին Ց. Պատրիարքը Իւսկիւտարու նորաշէն դպրոցին մէջ ժողով մը կ՚գումարէ, ուր առաջարկուած հաշտութեան վրայ հաշտարարական ատենաբանութիւն մը ընելէն զկնի, Սահմանադրութիւնն ալ Բ. Դռնէն ուզելու պատրուակաւ պատրաստուած աղերսագիր մ՚ալ հոն բարեմիտ Ազգայնոց ստորագրել տալով Պատրիարքարանի Խառն ժողովի միջոցաւ Բ. Դրան կ՚մա-

տուցուի ։ որուն դէմ երևան ելած բողոքոյ մը օրինակը տես ընդարձակ ծանօթութեանց մէջ (Ժ)։

Ցաւօք սրտի կ'յիշենք հոս Յակոբ Սրբազանին այս միջոցին Երուսաղէմ ուխտի երթալ ու հոն զիշեր մը մահճակալին քովը փունկելէն սաստիկ վախնալով հիւանդանալը և երկու օրէն յետոյ վախճանիլը ։

Վերջապէս Ազգին այս խղճալի վիճակին վրայօք ցաւ զգալով Եկեղեցականաց ողջամիտ մասը առ Տեղապահն կ'դիմէ, կ'բանակցին, կ'խորհրդակցին, և Տեղապահին կոչմէն հրաւիրանաց տոմսակներ երթալով Եկեղեցական Համագումար ժողով մը կ'գումարուի ի Պատրիարքարան 1862 Յունուար 26. և ըստ օրինի որոշումներ կըլլայ, և կատորագրուի, և երկոտասանի չափ Եկեղեցական վարդապետ և քահանայ կ'պատրաստուին իբրև պազամաւոր Բ. Դուռը երթալ Սահմանադրութիւնը խնդրելու համար ։

Այս որոշման ձայնը դուրս ելած առեն Աշնանեան անուն անձը առանձին յանկարծ Պատրիարքարան հասնելով « Սրբազան, ինչ կնես, մի թէ Ազգին տունը պիտի քակես, Եկեղեցականաց խելքը քաղաքական գործերու չ'հասնիր և այլն » ըսելով' խեղճ Տեղապահը կ'նախապաշարէ (ճիզվիթական ձևակերպութիւն), ուստի Տեղապահը նախապաշարեալ սաստիկ երկիւղէ մը բռնուելով կստիպուի յիշեալ որոշումը խափանել։ Խասգիւղի Ներսես Եպիսկոպոսը և քանի մը Եկեղեցականք Պատրիարքարան կ'հասնին բաւական կ'խօսին, կ'վիճին, և վերջապէս նախկին որոշման կրկին հաստատութիւն տալով[1]

---

(1) Իրաւունք ունէր և պարտական իսկ էր եկեղեցականաց ողջամիտ մասը կարեկցել Ազգին իբրև պաշտպան իւր Եկեղեցւոյն իրաւանց. և Բ. Դռնէն Ազգ. Սահմանադրութիւնը ուզելու նպատակաւ եղած որոշումը յարգել և ի գործ դնել, Թերևս եկեղեցական պաշտօնէից պատիւն ու համարմունքը վերստին ձեռք բերելու յուսով. զորս մեծ մասամբ հասարակաց առջև կորսնցուցած էին իրենց առ Ազգն և առ Աստուած ունեցած պարտականութեանցը անփոյթ, անզգայ և անտարբեր կենալնուն համար, նաև մանաւանդ ներկայիս իրենց հոռի և շահամոլ ընթ......

Տեղապահն ալ իբրև Եկեղեցական անհատ, իրենց հետ առած Յունուար 30. կ՚ներկայանան արտաքին գործոց Պաշտօնեայ Բ. Ալի Փաշային [1], ուրկէ յուսալիր պատասխանով դարձեալ կ՚վերադառնան ի Պատրիարքարան:

Համարակութիւնն ալ արդէն այս մասին յատուկ աղերսագիր մը պատրաստած էր առանձին, որն որ Բ. Փոխարքային կ՚մատուցուի, Փետր. 25, և քանի մը օրէն ետքն ալ կ՚երկրորդուի, որոց պատճէնը ձեռքերնիս անցած ըլլալով առաջինին օրինակը միայն ընդարձակ ծանօթութեանց մէջ դնել արժան համարեցինք (ԺԱ):

Արդեօք ինչ երջանիկ կամ որպիսի ուրախառիթ օր մը համարուեցաւ այն օրը բոլոր ճշմարիտ Հայերուն և ազգասիրաց սրտերուն ու փափուկ և ազնիւ զգացմանց իբրև տօն ցնծութեան և աւետեաց, երբ շնորհիւ Օգոստափառ Սուլթան Ապտիւլ—Ազիզ Կայսեր վաւերացած մեր Ազգային Սահմանադրութիւնը Բ. Դռնէն յանձնուեցաւ Ազգին 1863 Մարտ 19. օր երեքշաբթի ժամ 7 [2]:

Այս կէտին չէնք կրնար զանց ընել սա հետևեալ հարցմունքները ընել Թէ՛ արդեօք այս բերկրառիթ աւետեաց լուրը Ճ. խմբակին ականջը հասած ատեն ինչ ազդեցութիւն ըրաւ [3]:

---

ու եղծեալ դրութեամբ Ազգին և նորա Ս. Եկեղեցւոյն բարեկարգութեանը արգելք և խափանարար կերևէին. ինչպէս որ իրօք ալ այնպէս էր. վասն զի ոմանք իրենցմէ ճիզվիթութեան ոգւոյն և սկզբանցը ծառայօղներ, և շատերն ալ ագէտ և միամիտ Ըրգտուին ցարդ և սկզբունք և նպատակ չունին և չեն ալ ճանչնար:

[1] Գաղիարէն և տաճկերէն լեզուաց հմուտ Ներսէս Եպիսկոպոսը բաշային առջև իրաւացի փաստերով տրամաբանեց Ազգին և նորա եկեղեցական պաշտօնէից դառն ու Թշուառ վիճակը միապետական (տեսփոթիկ) դրութեան ճնշման ներքև, և զայն ամոքելու միակ միջոց և դարման մի միայն մեծազօր տէրութեան ի նախնեաց անտի շնորհած արտօնութեանցը համաձայն Ազգ. Սահմանադրութեան խիստ կարևոր ըլլալը ցուցունելով վաւերացման մասին Թախանձը յայտնեց:

[2] Որուն առաջին աւետիսը Պէճաւեան Թուչնիկ անուն Թերթը հաղորդեց հասարակութեան իւր մարտ. 6րդ Թուոյն միջոցաւ:

[3] Ճիզվիթութիւնը իւր սատանիկ Թշնամական մոլեգնութեամբը Ազգ. սահ-

Տէրութեան մեզի շնորհած սոյն ազգօգուտ ձիրն ու պարգևը զգալով յօժարամտեցման ընդհանուրին հետ Ազգին բարեկաւութեանը նպաստող այն փրկարար Սահմանադրութիւնը ուրախութեամբ սրտի ողջունել: Ազգին կորուստը փութացնող այն վատ ճիզվիթական չարագրգիռ մոլեգնութիւնն ու նպատակը կրցին արդեօք իրենց սրտէն արմատախիլ ընել: Հաւաստի եղան արդեօք թէ՛ իրենց ձեռօք նիւթուած այն գաղտնի նպատակներն ու դաւադրութիւնները և ճիզվիթական հրապուրանքները՛ ալ այսուհետև ապարդիւն պիտի մնան: Կամք ըրին արդեօք այս կերպ ազգամնաս երկպառակութեանց վերջ տալ, և այնուհետև Ազգին օգուտը նկատելով՛ ազգայնութեան իրաւունքները կոյր կրից զոհելէ դադրեցնել: Ազգին կորստեանը շարժառիթ այն ճիզվիթական գաղտնի մեքենականութեան պատմուճանէն մերկանալով և նորա ոգին ու գաղափարը փոխելով, ետ կեցան արդեօք ազգին դէմ մեքենայած այն խարդախ ընդացքներէն: Ընդհանուր հասարակութեան հետ միաբանութեամբ ձեռք ձեռքի տալով Ազգին ու անոր զաւակաց ապագայ բարեկաւութեան և ապահովութեան մասին հոգ տանող այն Սահմանադրութեան գործադրութեանը պէտք եղածը տնօրինել ջանասիրեցին արդեօք: Վերջապէս այն ազգային օրէնքը՛ որ գլխաւորաբար հաշիւ տոմար գիտնալ. ունենալ և հետևաբար իրաւունք և պարտիք ճանչնալ, աղքատաց օգնել և կա-

---

դէմ մրցեցաւ զանի իսպառ ջնջել տալու համար, մինչև ի գերեզման մահու մատնած և տապանաքարն ալ վրան դրած երազելով, բարեբաղդաբար իւր այս փափաքին չկրցաւ հասնիլ ալ նէ, ապագային գոնէ խռովութեան նիւթ մը ըլլալու դիտմամբ նաև Երուսաղէմի վանուց մասին հակառակ Ազգին իրաւանց, քանի մը յօդուածոց փոփոխութեանը յաջողեցաւ՛ բայց ժամանակը անշուշտ կարող պիտի ըլլայ օր մը թէ ուշ թէ կանուխ այն չարագրգիռ ճիզվիթ մոլեգնութիւնը նուաճել կամ ամօթապարտ առնել՛ ի լոյս հանելով այդ մասին Ազգին իրաւունքը, ինչպէս որ արդէն իսկ սկսած է ողջամիտ Հայ հասարակութիւնը արթնութեամբ իւր բոլոր Ազգ. հաստատութեանց վանքերուն կամ սեփհականութեանց նկատմամբ ունեցած ազատ իրաւունքները ճանչնալ. որոնք Բ. Դրան առջևը այս անգամ ալ առաւել եւս լուսափայլեցան:

բռնակալները պատսպարել կ'սովրեցնէ յօգուտ հանրութեան Ազգին, սիրեցին արդեօք իսպառ. և զանի անգործադրելի ընել տալու ճիզվիթական միջոցներու և հնարքներու դիմելը ալ այնուհետև անօգուտ և իրենց ալ պատիւ չ'բերելը հասկցան և համոզուեցան արդեօք . . . կ'Թողումք որ ժամանակը պատասխանէ այս ամէն հարցմանց :

Արդ՝ Ազգը մէկ կողմէն իւր այս հանդիպած պարգևին վրայ դեռ նոր ուրախացած ատեն, միւս կողմէն Երուսաղէմայ փոխանորդ Սահակ Վարդապետը կուսակիցներու միջոցաւ յանկարծ ճամբայ ելլել կաճապարէ և դեղնափետուր Թևերով (1)

---

(1) 3000 լիրայով՝ որուն ահանատես և ականջալուր վկաներն ալ դեռ կենդանի են: Մենք նորա եպիսկոպոս ըլլալուն կամ չըլլալուն վրայօք խօսիլը աւելորդ սեպելով, սա կուզենք միայն կարցընել և իմանալ Թէ « աստնկ սարսափելի մեծ գումար մը ծախք ընելով եպիսկոպոսութիւնը յափշտակելու հետևող անձէ մը և իւր նմաններէն վնասէ զատ ինչ օգուտ Ազգին : » Եւ Թէ ինչու Ազգը իւր գոյից և ընչից տէր չէ և չըկրնար ըլլալ, որ Ազգային արկղը առանց տոմարի, հաշուի և քննութեան անանկ երեսի վրայ Թողած ու աւազակներու և կողոպտիչներու ձեռք մատնած է և մէկ կողմէն իւր բաւական հարստութիւնը այդպիսեաց ձեռքով ի զուր կ'հալի և կ'փճանայ, և ինքը անտարբեր և անզգայ հեռուն կեցած լոկ հանդիսատես կըլլայ և չ'հարցըներ ու փնտռեր, և կ'Թողու որ Հայութիւնն անգամ յետին Թշուառութեան մէջ չարաչար ճնշուի, նիւթապէս և բարոյապէս տովամահ տանջուելով յիմարաբար: Եւ Թէ մինչև Երբ այս վտանգաւոր և խիթալի կացութիւն, ի կործանումն և ի կորուստ Ազգութեան . . . :

Այս հարցման պատասխանն ալ դարձեալ ժամանակին կ'յանձնեմք : Այս մասին յարմար կ'տեսնենք սա հետևեալ հին առածը դնել հոս Թէ « սնտուկդ գոց պահէ և սպասաւորդ գող մի բռներ . » արդար և ճշմարիտ . վասնզի քանի որ Ազգը իւր սնտուկը առանց կղպանքի ձգած է, և ինքը որ տան տէրն է, անհոգ և անփոյԹ կը մնայ իւր գոյից, անշուշտ պիտի գտնուին անանկ աննշան սպասաւորներ՝ որոնք իրենց անխիղճ և վատ բնաւորութեամբը յափշտակութեան և գողութեան և մինչև անգամ ոճրագործութեան ձեռք երկնցնելով իրենց չար կիրքը յագեցնելու և համարձակապէս իրենց փուճ նպատակին հասնելու համար Ազգին ստացուածքը ըստ քմաց շռայլաբար վատնելու պիտի յանդգնին. և անտարակոյս կրնայ ըլլալ որ Ազգին մէջ գտնուին այնպիսի լափլիզող շահամոլ և եղջերուաքաղ մարդիկ՝ որ անանկներուն իբրև գողակից նոցա բոլոր ակնարկութեանց հլու և հպատակ մնալով յանձնառու ըլլան զոհել մինչև անգամ Ազգ. պատիւ, և մաքառիլ ընդդէմ խղճի և Ազգային իրաւանց, շփոԹ և պառակտում յարուցանելով Ազգին մէջ: Ինքնին կա-

կ՚սպանայ դէպի Էջմիածին և Երուսաղէմի Պատրիարքութիւնը յափշտակել երազով կ՚Եպիսկոպոսանայ, և շուտ մը Կ. Պօլիս կը վերադառնայ: Այս մասին բազմաթիւ ստորագրութեամբ հասարակութեան կողմէն Պատրիարքարան գացած բողոքագրոյն օրինակը տես ընդարձակ ծանօթութեանց մէջ թիւ ԺԲ:

Աւելորդ չէ յիշել հոս դարձեալ Մէթեսնին նախորդ Պատրիարք Յակոբ Սրբազանին հետ Երուսաղէմ երթալով բաւական ատեն հոն մնալը, որուն տնօրէնութեամբ՝ քանի մը աբեղայից ալ Էջմիածին գնալը լսուեցաւ, որ Ազգին դէմ անկախութեան կամ լաւ ևս է ըսել ապստամբութեան ցոյց մ՚էր, վասն զի դէթ ի սէր խաղաղութեան Սահմանադրութեան մէջ քանի մը յօդուածոց փոփոխութեան զիջումներ եղած ըլլալով (1) իբր թէ Ազգը՝ այն անզօր նզովքը կրկնած կ՚համարուէր, հարկաւ օր մը Ազգին իրաւունքը վերանորոգելու յուսով, ինչպէս որ ժամանակն ալ պիտի բերէ անշուշտ, որ Ազգը իւր ազգայնութեան

---

պացուցուի հոս՝ թէ այս տեսակ եղծմանց պատճառ անկանոնութեան անկարգութեան մանաւանդ թէ տգիտութեան արդիւնքն է: Սակայն չենք ալ կրնար ուրանալ թէ այս ազգամնաս խանգարմանց ոյժ տուող կամ նպաստողն ալ այն աներևոյթ ճիզվիթական ազգաւեր մասն է, որ միշտ արդելք և խոչնդոտ ըլլալ կուզէ Ազգին բարեկարգութեանը, ինչպէս և ներկայիս երևցաւ Երուսաղէմայ վանուց մէջ եղած Ազգին արկղը առանց հաշուի և քննութեան և առանց կղպանքի կամ պահպանութեան երեսի վրայ ձգել տալու պատճառ ըլլալէն ի մնաս հանրութեան Ազգին:

Ահա այսպէս են և Ազգին բոլոր վանքերն ալ. որոնք՝ փոխանակ Ազգին մէջ ուսման և գիտութեան լոյսը ծաւալելով Ազգին բարօրութեանը նեցուկ ըլլալու. Ազգին թշուառութեան պատճառ և որջ աւազակաց եղած են, որոնց այս եղծումը մեծ մնաս և կործանում է Ազգին՝ եթէ Ազգը իւր անկանոն ընթացքը չուզէ փոխել և իրաւանց ու պարտեաց սկզբունքին ուղղութեան շաւղին մէջ գալել:

(1) Իրաւունքը երբէք զիջում չընդունիր. վասնզի ճշմարտութեան դէմ ամենացած վատութիւն մ՚է, և ուր զիջումներ կ՚ըլլայ կամ իրաւանց դէմ գծնիլ ու շնթիլ, հոն արդէն անիրաւութիւնը երես առած կ՚թագաւորէ իր խաղերը խաղալու, հոն արդարութիւնը փախուստ տուած ըլլալով, անվերջանալի վէճեր ու վիճաբանութեան դռներ կ՚բացուին Ազգին մէջ կարծեաց տարբերութիւն պառակտումներ արկած և թշուառութիւններ բերելով իւր հետ, ուստի իրաւունքը միշտ պաշտպանելու համար կամ համոզմունք կամ հնարք կամ ժամանակ և կամ Ս . . . կ՚պահանջէ:

*իրաւանցկատարեալ տեղեակ և տէրը և օրինաւորապէս իւր առ տնին տնտեսութեան սանձը ձեռք առածըլլալով՝ պիտի ճանչցուի ամենուն թէ բոլոր Ազգային հաստատութիւնները, ստացուածք և կալուածները և անոնց տնտեսական մատակարարութիւնը Ազգին կեդրոնական Վարչութենէն կախումն ունի, նմանապէս Եկեղեցական պաշտօնէից ալ կարգն ու սահմանը ընտրութիւնը նորա ձեռքն ըլլալը պիտի հասկցուի:*

*Ինչ և իցէ, Սահմանադրութեան այն երջանիկ գալուստը շնորհաւորելէ ետքը, Գործադիր Ցանձնաժողով մը կազմելով նախապէս Թաղական խորհրդոց կազմութիւնը սկսաւ, և վերջապէս Օգոստ. 10 Մայր Եկեղեցւոյ մէջ, առաջին անգամ Եկեղեցական Երեսփոխանաց քուէհամարը ըլլալով՝ դարձեալ ճիզվիթական կեդրոնին ինտրիքները շարժիլ սկսան (1). այլ և Երուսաղէմի վանքէն Եպիսկոպոսանալու գացող այն խեղճ աբեղաներուն անունն անգամ Պօլսոյ Պատրիարքական ցանկին մէջ դրուեցան. Թող զկանայս և զմանկտիս...:*

*Ջենք կարեր զանց ընել նաև Թաղական ընտրութեանց միջոցները յուզուած Գալատու Սալմաթօմրուքի և Խարակէօմրիւկի Թաղերուն միութեան խնդիրը՝ որուն մանրամասն նկարագրութիւնը համառօտութիւնս չ'ներելուն, ընթերցողաց կը թողունք միայն այս մասին Գործադիր Ցանձնաժողովոյն տըպեալ տեղեկագրին մէջ նշանակուածը աչքէ անցնել. որովհետև յիշեալ Թաղեցիք քանի մը տարիէ ի վեր իրենց փափաքած նախկին սիրոյ և միութեան վերանորոգութիւնը վերստին ողջունելու նպատակաւ Պատրիարքարան դիմելով՝ խնդրեցին, Թաղ. խորհուրդ կազմել միութեամբ, որոնք համահաճ հաւանութեամբ Գործադիր Ցանձնաժողովէն ընդունած հրահանգին հա-*

---

*(1) Անոր ճիզվիթ խմբակին փնտռած և ձեռք բերած կէտն այս էր, որպէս զի աշխարհականք, իբր թէ հոգևորական պաշտօնէից քուէ տալու իրաւունքէն զուրկ մնալով՝ կարող ըլլայ ինքը իւր շահամոլ և տգէտ կղերաց միջոցաւ իւր ուզածները ընտրել տալ (նման զնմանն սիրէ.) որպէս զի իւր գաղտնի մեքենականութիւնը անարգել յառաջ տանիլ յաջողի:*

մեմատ Երեւանեան ալ ընտրեցին, սակայն ճիզվիթական մեքենականութիւնը, անոնց այս ազնիւ զգացմանը դէմ ալ խոկոյն մէկ քանի խռովարարներ յարուցանելով, խեղճ Թաղեցիները՝ իրենց միութենէն զահավէժ ըլլալով, վերստին բաժանման ցանցին մէջ զտան ինքզինքնին, որոնք իրենց սիրած միութեան արդիւնքէն զրկուելէն զատ, այլ եւ այս մասին Պատրիարքարանին ալ պայտիւը կորսեցաւ Բ. Դրան առջեւ՝ եւ տակաւին այս ցաւալի վիճակին մէջ կ՚տատանին ալէկոծեալ. որոնց կողմէն այն ատեն երեւան ելած յայտարար թղթերը խիստ հետաքրքրական էին։ (Տես Թիւ ԺԴ)։

Վերջապէս բոլոր Ազգային ժողովոց ընտրութիւնները կատարուելէն զկնի, 1863 Սեպտ. 20 Ընդհանուր ժողովոյ առաջին նիստը ըլլալով՝ նախապէս Պօլսոյ Պատրիարքութեան ընտրութեան զբաղեցան եւ եղած քուէարկութեան արդեանցը համաձայն Զմիւռնիոյ Առաջնորդ Գեր. Պօղոս Արքեպիսկոպոսը Պատրիարք հրատարակուելով Պօլիս բերուեցաւ, եւ ըստ Սահմանադրութեան, Մայր Եկեղեցւոյն մէջ ի ներկայութեան Ընդհանուր ժողովոյն առաջի Աստուծոյ եւ այնքան բազմութեան իւր հանդիսաւոր ուխտը րրաւ։ Տէր Երկինք որ ուխտադրուժ չ՚զտնուէր։ եւ Նոյեմ. 14 Պատրիարքական շքով Բ. Դռնէն իւր պաշտօնատեղին զալով ժառանգեց այն Ազգային գահը՝ որ բաւական ատեն Թափուր մնացած էր Ազգային դժբաղդ խռովութեանց եւ ցաւալի երկպառակութեանց պատճառաւ։ Երանի Թէ սոյն Պատրիարքական ամենափափուկ պաշտօնին մէջ յիշեալ Սրբազանը հաւատարիմ մնալ փափաքէր եւ ըլլար Ազգասէր՝ քան անձնասէր. հոգեսէր, քան մարմնասէր ու շահասէր. իրեն նպատակ բռնելով միշտ ազգին օգտին անձնուէր ծառայելը. ինչպէս որ իր պարտականութիւնն է, եւ հաստարակութեան ալ փափաքը, զի մի զուցէ Ազգը սխալած զտնուելով իւր ընտրութեանը մէջ, վերստին անցեալ արկածից ցաւալի բաղդերուն հանդիպէր եւ մէկէն կրած վիշտերը դեռ չ՚մոռցած, մէկ ուրիշն ալ յաջորդեր նորա տեղ, որն որ ամէն

Ճշմարիտ Հայու սրտին խիստ տխուր ազդեցութիւն ըրած է, տես վերջին յայտարարութեան օրինակը, Թիւ. ԺԴ:

Մենք այս մասին քաջայոյս և վստահ ենք,որ հրամանաւ Օսմանեան տէրութեան կազմուած Ազգին ներկայացուցիչ Սահմանադրական ժողովներուն միջոցաւ՝ Ազգային խղճալի վիճակը բարւոքուելով ի յառաջադիմութիւն ազգայնութեան, մեծամեծ օգուտներ և արդիւնքներ պիտի տեսնենք ու վայելենք այսուհետև ի մխիթարութիւն ազգասէր սրտերու:

---

# ՎԵՐՋԱԲԱՆ

Ահաւասիկ այսքանս բաւական համարելով կ՚վերջացնեմք սոյն ազգային երկամեայ անցից պատմութիւնը, թէ և համառօտ, բայց ճշգրիտ նկարագրութեամբ, տեղեակ իրողութեանց և ճշմարիտ աղբիւրներէ քաղուած, որն ալ կարելի եղածին չափ պարզ, միանգամայն շատերուն գիտցած՝ Ազգին մեասուց շարժառիթն եղող այն ճիզվիթական զաղտնի ազգաւէր մեքենականութեան վարագոյրն ալ բանալով, որուն ընդհանուր Հայ հասարակութեան աչքէն Թագուն և ծածկած մնալը՝ չէ թէ միայն ճշմարտասիրութեան դէմ մեղանչել է, այլ և ազգասիրութեան սրբազան պարտաւորութեանը դէմ յանցանք գործել սեպուելով, պարտաւորուեցանք զանի ըստ կարի մերկել և բոլոր Ազգային ուշադրութեան և անաչառ դատողութեանը յանձնել:

Փափաքելի է մեզ յուսալ թէ սոյն համառօտութեամբ կարողացանք փոքր ի շատէ մեր ընթերցողները գոհացնել, յայտնելով նաև անոնց Ազգին մէջ սպրդած այն ճիզվիթական զարանակալութեան կճղճիկները, որոնք Ազգին բարելաւութեանը խոչնդոտ և Թշուառութեանը պատճառ եղած են: Այն ամբարիշտ մեքենականութեան ազգանենգ որոգայթները, որոնք մեր ամենազգիւ տոհմին քաղցր անունը ի կոզուստ մատնել կ՚տրքնին: Այն ազգատեաց վատ շահամօլութեան կոյր նախապա-

շարժումները, որոնք մեր Հայկայ սերունդը յետամնացութեան լաբիւրինթոսին մէջ գլորել կ'ճգնին: Այն զոռոզ եսականութեան և տիրապետական փուճ բռնակալ իշխանասիրութեան ու փառամոլութեան չար ոգին, և առ նախանձու իրար չը քաշելու, մէկզմէկ զրկելու հալածելու և հարստահարելու ամենացած բնաւորութեան, և միմեանց տունը քանդելու փլցնելու և կործանելու կոյր ատելութեան ոխակալ կրից գազանային ճիրանները, որոնք Ազգը միշտ գիշատել ջանացեր և կ'ջանան: Եւ վերջապէս այն ճիզվիթ մատը կամ որ նոյն է ճիզվիթութեան աշխարհաճարակ մահաբոյր ժանտախտը, որ իբրև քաղցկեղ իւծական ախտ՝ Հայ ազգին մահ կսպառնայ և զանի սպառեցնելու ճիգ կ'թափէ, և Լուսաւորչական Ս. Եկեղեցւոյն ազատութիւնն ու անկախութիւնը յափշտակելու նպատակաւ մեր Ազգին իրաւանց և շահուն դէմ թումբեր կանգնելով միշտ՝ նորա սէրն ու խաղաղութիւնը վրդովել կ'աշխատի:

Այս կէտիս կերպով մը օտարին համար ըսելիքնիս կ'կարճանայ, վասն զի նախապէս մեր Ազգը ընտանի թշնամիներէ կրած չարիքները՝ կրնանք ըսել թէ՝ մէկէ մը չէ կրած, կոյր ատելութենէ և նախապաշարմունքներէ ընդունած հարուածներն ու վէրքերը. օտարէն չէ ընդունած. ուստի և իդէպ զայ անդէն Ս. գրքին այն խօսքը թէ «Կորուստ քո ի քէն է, Իսրայէլ» եղուկ. վասն զի օտարը իր օգուտը ճանչնալով կը գործէ ինպաստ ինքեան,. իսկ ընտանիք ի վնաս անձանց և Ազգին կուրօրէն գործել գիտեն, ոչ սկզբունք և ոչ նպատակ, արդ մինչև ցերբ այս կուրութիւն նախանձ և ատելութիւն, բաժանում և երկպառակութիւն հակառակութիւն և կուսակցութիւն և անքակից յամառ կամակորութիւն.

Թողունք ընտանի թշնամեաց այն բազմադարեան հակառակասիրութեան ազգավնաս չարիքները յիշել հոս, ներկայիս հոգոց ազատութեան ժամանակ անգամ սոյն այս լուսաւորեալ դարը կարծես թէ մեր դժբաղդ Ազգին համար գիշերային մութ և խաւար է դարձեր: Յառաջադէմ քաղաքակիրթ ազգաց հա-

մար, երջանիկ. իսկ Հայուն համար, ապերջանիկ: Նոցա նիւԹական և մտաւորական զարգացմանը նպաստաւոր, իսկ մեզի համար վնասաւոր և վտանգաւոր, վասն զի փոխանակ բարի գործելու, չար գործել բնաւորուած ենք: Նոցա աշխատանաց փոխադարձ բարիք, իսկ մեզի համար հակադարձ չարիք, զուրկ ամէն բարեմասնուԹենէ և մխիԹարուԹենէ այս արԹնուԹեան ատեն, վասն զի տզիտուԹեան խաւարն է որ կառաջնորդէ Ազգիս, և կ'մղէ զինքը բռնի դէպի գերուԹեան ԹշուառուԹեան և յուսահատուԹեան անելանելի անդունդը, վասն զի կոյր կուրի, յորժամ առաջնորդէ՛ սխալի և երկոքեան ի խորխորատ անկանին, ըստ վճռոյ Ս. Աւետարանին: Առաջնորդք կոյր, շահամօլ, անխիղճ, կեղծաւոր և յափշտակող: Կղերն անզգայ, տգետ, անպիտան, ուստի և անփոյԹ, անհոգի, և անմիաբան. որոնց մեծ մասը իրենց խարդախ և գայԹակղական ընԹացքով խիստ տխուր գաղափար ընծայած են հասարակուԹեան: Հարուստք շուարած և անզէտ: Աղքատք անպաշտպան և գրէԹէ յուսահատ: Գիտնականք սակաւ, ուստի և ի պէտս Ազգին անբաւական, իսկ անոնք որ իրենց անձը առ իմաստունս համարին և ուսումնական կ'պարծին լինել, իմաստակ, անխոհեմ, տիտայ և կանացի բնուԹեան ենԹակայ: Իսկ վանականք անկիրԹ ստահակ յիմար և ոչ իմաստուն եղծեալ և ապականեալ եղեռնային խեղճ կացուԹեան և դրուԹեան ներքև գերի, զիրար հալածել հարստահարել գիտեն, քան ժողովել պատսպարել և շահել: Մէկ խօսքով Ազգին ամբողջ մարմինն ու կազմուածքը հիւանդ և խոԹացեալ, յոտից մինչև ցգլուխ չիք առողջուԹիւն, ուր իմաստուն և կատարեալ գիտուն որ չորս միլիոն ազգ մը կառավարելու կարող խելացի գլխի տէր անդամներ ըլլան, այնպիսի անձինք դեռ շատ կ'պակսին Ազգին մէջ. ափսոս . . . :

Աւաղ, որ զիրար սիրելու շահելու և խնամելու ընկերական և ազգասիրական ոգին կարծես Թէ սպառած և գրէ Թէ մոռցուած է, Թողունք ըսել՝ որ Ազգին գործերն անգամ կուսակ-

ցութեամբ կամ կողմնապահութեամբ և որ խղճալին է ոխակալութեամբ աչառանօք և կաշառօք կ'տեսնուին, և այլն և այլն: Ցիրաւի մեծ հրաշք և զարմանք, մանաւանդ թէ Աստուծոյ յատուկ խնամքն է, որ այսքան դարաւոր աղետներու հանդիպած չարաբաղդ արկածներու ալիքներուն բաբախմանց մէջ, սասկալի վշտաց և տառապանաց ենթակայացեալ ազգայնութեան նաւը առանց ընկղմելու. և որ ցաւալին է, ընտանի կոյր թշնամիներէ ընդունած հանապազօրեայ հարուածոց ներքև ճնշուած հարստահարեալ և վիրաւորեալ Ազգ մը, յետին ճգնաժամուն մէջ անգամ տակաւին կանգուն կենդանի ողջ գոնէ շունչն իր վրայ մնացեր է և կ'մնայ, Օրհնեալ է Աստուած, որ բարոյական մահը մեր լուսաւորչական Ս. Եկեղեցւոյն մէջ գէթ կարող չէ եղեր ասպնջականութիւն գտնել, թէ օտար և թէ ընտանի թշնամիներուն տուած վէրքերուն նկատմամբ: Թողունք այն ազգատեաց ճիւաղներուն և զանազան չարիքներու պատճառ խումբ մը վատակարբարոյ անձանց արարքները յիշել հոս, որոնք այսօր իրենց զաւկներէն անիծիւք և դառնութեամբ կ'յիշատակուին, Ազգին և նորա Ս. Եկեղեցւոյն դէմ իրենց նիւթած դաւաճանութեան՝ հասուցած մնասուց և զրկանացը համար, որոց պատմութիւնները տխուր կ'ներկայանան մեզ այսօր, ինչպէս դարուս պատմութիւններն ալ անշուշտ ապագային պիտի աւանդեն ի խրատ և ի յորդոր, եթէ ուշադիր գտուի, որպէս զի անցեալէն խրատուելով կարող ըլլան օրինաւորութեան շաւղին մէջ գալել յօգուտ անձանց և զաւակաց իւրեանց:

Մենք՝ ներկայիս անխրատ մնալուն և այսքան չարիքներու պատճառը՝ տգիտութիւնը կուզենք կարծել, վասն զի տգիտութիւնը գործիք է մեքենականութեան, վասն զի Ազգը տգիտութեան խաւարին մէջ ընդ խարխափս կ'ընթանայ, վասն զի մէկ խօսքով ընդհանուր դաստիարակութենէ իրաւունք և պարտիք ճանչնալ է, և այլն, և այլն, զուրկ է մնացեր, ուստի թող ներուի մեզ ըսել թէ՝ եթէ անցեալ և եթէ ներկայ մեր Ազգին կրած թշուառութիւնը տգիտութենէ յառաջ եկած է, որ է մայր

ամենայն մոլութեանց և թշուառութեանց կոյր կրից և մախանաց եւայլն եւայլն:

Զանց կընենք նաև յիշել հոս Ազգ. հին ժողովներուն խեղճ վիճակն ու տեսարանը և անոնց մէջ յուզուած ապարդիւն անօտի վէճերն ու անվերջանալի վիճաբանութիւնները և տղայամտական կարծեաց դիմահար բաքախումները և անտեղի ու ազգավնաս կռիւներու սոսկալի գոռում գոչումը, որոնք դըժբաղդաբար տգիտութեան կամ լաւ ևս է ըսել անխելքութեան արդիւնքներ են. վասն զի Ազգին բարեկաւութեանը և նորա օգտին նկատմամբ բարձր խնդիրներու վրայ ազնիւ խորհրդածութիւններ համոզում և միաձայնութիւններ ընելու տեղ, ամենաստորին կարգի սոսկական մարդկանց նման ունայն խօսքերով կ'տաղտապին ու կ'պատաղին, և որ ցաւալին է մեծ մասամբ եղած որոշման մը գործադրութիւնն անգամ անհնար ընել իսկ կաշխատին հակառակասիրութեան ոգւով, ընդդէմ խղճի և Ազգ. իրաւանց և պարտուց:

Այս սատանկ յետախաղաց և կո՛յր ընթացքով ընդ վայր ի զուր ժամանակ վատնելէն ի զատ. այլ և Ազգ. գործերն անգամ անձնական փոքր և վատ կրից զոհուած է և կ'զոհուի դժբաղդաբար ամէն ատեն և ամէն պարագայի մէջ ցարդ ի վնաս Ազգին. գրեթէ Ծիգվիթ դարանակալութեան մեր ազգին մէջ արմատ ձգած օրէն ի վեր: Եւ ժամանակաւ թէ որբարիք մ'ալ վայելած է ազգերնիս, կրնանք ըսել թէ այդ ևս դիպուածական կ'համարուի, երբեմն ունեցած իր ազնիւ տաղանդին և հանճարեղ իմաստութեան, բարոյական գիտութեան գրականութեան կամ ընթերցասիրութեան վառ և պայծառ ճըրագին միջոցաւ, որուն լոյսը արդէն շատ դարերէ ի վեր չըսեմ բոլորովին մարած, այլ խաւարած մթագին հազ ուրեմն ընդ աղօտ մնալով միայն՝ ներկայիս մէջ սոսկալի չքաւորութեան և վտանգաւոր թշուառութեան անդունդին եզերքն եկած հասած է ցրուելու և պանդուխտ խղճալի Ազգերնիս. և դեռ այն ճրագին լոյսը փարատելու անզօր և անկարող: Ինչ և իցէ թողունք մենք

այժմ այս ցաւալի կէտերն ու սահմռկելի անցքերը և դարձընենք մեր ուշադրութիւնը ներկայիս վրայ:

Անբաւ շնորհակալութիւն Օսմանեան վեհափառ Տէրութեան, որ մեր Թշուառ Ազգին իւր ամենամեծ շնորհքները խընամք և այցելութիւնները զլացած չէ և չ'զլանար ալ երբէք, յանցանքը մերն է, թէ որ մենք զմեզ կառավարելու և զանոնք բարուոքապէս գործածելու կերպը չ'գիտնալով կարող չըլլանք վայելել արժանապէս:

Նորին բարեխնամ Կառավարութիւնը կարեկցելով Ազգին, փութաց՝ ի վաղուց շնորհած արտօնութեանցը համաձայն մեր Ազգային Սահմանադրութիւնը վաւերացնել և յանձնել մեզ նորա անթերի գործադրութիւնը պահանջելով Ազգէն:

Ուրեմն աշխատինք Հայեր՝ Սահմանադրութեան գործադրութեանը հսկելու եթէ կուզենք մեր անձին մեր Ազգին համար անդորրութիւն ու բարօրութիւն գտնել, և մեր Օսմանեան Օգոստափառ կայսեր բարեհաճ կամքն ու հաւանութիւնը յարգել, և Հայ անունը փնտռեցնելով բառնալ այն նախատինքները, որ այսքան ժամանակէ ի վեր կրած է և կ'կրէ Ազգը տգիտութեան խաւարին մէջ՝ լուսաւորեալ ազգաց առջև: Եւ ահա այն ատեն պիտի ըլլամք երջանիկ և բարեկիրթ Ազգ ընդհովանեաւ Օսմանեան մեր տէրութեան:

---

# ՅՈՐԴՈՐԱԿ

Արդ՝ սիրողք օրինաւորութեան, Սահմանադրութիւնը թէև դուք ծնած եղաք, սակայն անոր մայրը ժամանակն է, անշուշտ նա պիտի տածէ ու խնամէ զանի, չկայ անանկ զօրութիւն մը աշխարհի վրայ, որ կարողանայ ժամանակին դէմ մարտնչելու: Մարդիկ՝ որոց Աստուածապարգև ազատ կամքը ճիզվիթական մահացուցիչ սկզբանց թիւնովը մեռած չէ, բնականա-

բար օրինաւորապէս ազատութիւն կ՚խնդրեն և իրաւանց լոյսէն բղխած արդար և անաչառ օրէնքներու կ՚ուզեն աւելի հնազանդիլ, քան թէ իրենց նման քանի մը տգետ և անկիրթ հարուստ մարդկանց յողդողդ կամացը խաղալիք և հաճոյիցը գերի ըլլալ։

Օրինաւորութեան սկզբունքը ամէն լուսաւորեալ մարդու սրտին մէջ խոր քանդակուած ըլլալուն, որ և է բռնական զօրութիւնք կարող չեն մինչև ի ներքս անդ թափանցիլ և զանի ջնջել. երբէք մի յուսահատիք, քանզի ձեր դէմն ելլող ամէն բռնական միջոցներն ու խոչնդոտները կարծուածին չափ ոչ զօրաւոր են և ոչ ալ տևողական, ժամանակը վաղ կամ անագան զանոնք կ՚սպառէ ու կանհետացնէ, բաւական է որ ամենայն արթնութեամբ Սահմանադրութիւնը յառաջ տանելու անցանցիր աշխատիք, և ահա այն ատեն անտարակոյս ձեր աշխատութեան արգասիքը պիտի կրնայ մեծամեծ բարիքներ յառաջ բերել Ազգին։ Իսկ ձեր անհրաժեշտ պարտքը և միանգամայն իսկական օգուտը կստիպէ զձեզ՝ նախ՝ ձեր նախնեաց զովելի շաւղէն չը խոտորելով՝ անձնուէր հպատակութեամբ սիրել Օսմանեան բարեխնամ տէրութիւնը, և նորա կենաց համար բարեմաղթել միշտ. և ապա հնարաւոր եղած ազգօգուտ միջոցները ձեռք առնելով, յառաջադէմ ազգաց նման՝ բարեկիրթ և սահմանադրական ազգ մը ըլլալու համար, կարևոր ուսմանց և գիտութեանց լոյսը ծաւալել և բարոյական ու մտաւորական զարգացման փոյթ և հոգ տանիլ, և կենցաղօգուտ արուեստները, երկրագործութիւնն ու վաճառականութիւնը ծաղկեցնել Ազգին մէջ, որոնցմով միայն կրնան փարատիլ Ազգին գլխուն վերև սպառնացող այն սոսկալի չքաւորութեան թանձր ու խաւար ամպերը. մանաւանդ տգիտութեան՝ որ մեր ազգին թշուառութեանը միակ պատճառն է։ Ո՛հ, տար երկինք, որ մեր ազգին տգիտութեան ու անկանոնութեան ձեռքէն կրած այն բազմավիշտ թշուառութեան սև ամպերը ուսման և գիտութեան լոյսին միջոցաւ փարատեալ ի բաց փարատէին, որպէս զի այսուհետև գէթ կարող ըլլայինք, մեր Օսմանեան

տէրութեան ի նախնեաց անտի մեզի շնորհած արտօնութեանցը համաձայն մեր ազգին առ տնին սահմանադրական կառավարութիւնը թաւուքել՝ Ազգ. Կեդրոնական Վարչութիւնը ըստ օրինի բարեկարգել՝ յօգուտ ընդհանրութեան ջանասիրելով։

Ո՛ օրինասէրք Ազգին գլխուն վրայ դիզուած արկածից ցաւոց ու տառապանաց նայելով չըլլայ թէ լքանիք և վհատիք երբէք, որովհետև ձախորդութեան ետևէն միշտ յաջողութիւն կ՚յաջորդէ անխոնջ աշխատութեանց միջոցաւ, ուստի ասկէ ետքն է ձեր աշխատութիւնը մինչև որ ազգային տնտեսութիւնը կարգի ու կանոնի ներքև դրուի. վասն զի բազմամեայ եղծում մը. խանգարեալ թիւր ընթացք մը՝ ի յուղղութիւն, և անկանոնութիւնը ի կանոնաւորութիւն՝ մանաւանդ ազգ մը անբարեկարգութենէ ի բարեկարգութիւն վերածելը մեծամեծ աշխատութեանց կ՚կարօտի. վասնորոյ այսուհետև պէտք ըլլալիք աշխատութիւններէ փախուստ տալ ու հեռանալը չէ թէ միայն փոքրոգութեան նշան, այլ և ցած վեհերոտութիւն և թերևս վատութիւն մը կ՚համարուի ի վտանգ և ի կրկին թշուառութիւն Հայ հասարակութեան կամ ազգայնութեան։

Արդարև ի զուր թշնամանուեցաք, յանիրաւի զրպարտուեցաք և բանբասուեցաք և մինչև անգամ սոսկալի մատնութեանց և վնասուց ենթակայացաք նէ ալ, Օրհնեալ է Աստուած՝ սնոտի կասկածանաց և ստութեանց այն սև ամպերը փարատուեցան, և նորա փոխարէն մեծազօր Տէրութեան շնորհացը արժանանալով՝ սահմանադրութեան վաւերացման առթիւ զէթ փոքր ինչ յառաջադիմութեան ասպարեզին մէջ քայլափոխ մը ընել կարողացաւ Ազգը, թէ և բաւական աշխատութեամբ։ Երանի ու փառք այն ճշմարիտ ազգասիրաց՝ որոնք յօգուտ Ազգին և ի փառս ճշմարիտ ազգասիրութեան իրենց աշխատութիւնը անձնուիրաբար տեսական և գործնական կերպով ցուցունելու չ՚խնայեցին և այսուհետև չեն ալ խնայէր։ Ամօթ անոնց՝ որոնք լոկ իբրև հանդիսատես, անտարբեր և անզգայ իրենց Ազգ. անհրաժեշտ պարտուց վճարման անփոյթ մնացին և կ՚մնան։

Ով կրնայ ուրանալ անձնուէր աշխատանաց օգտակար հետեւութիւնները և օրինաւոր ու հաւատարիմ տնտեսութեան (էքոնոմի) կամ առ տնին կառավարութեան երջանիկ արդիւնքները. ահա և ներկայիս մէջ ի գործ դրուած աշխատութիւնը, ապագային համար ալ յարատեւական բարեաց աղբիւրներ ըլլալով զԱզգը ամբողջ շարունակ կ'երջանկացնեն, որով կ'պանծան այսօր յառաջադէմ ազգերը. և աշխատութիւն ըսելով ընկերական կամ ազգայինն ալ անձնականով մէկ տեղ իմանալու ենք. ընդհանուրէն մասնաւորին և մասնաւորէն առ ընդհանուրն վերածելով. քանզի ամէն անհատի բարեկեցութիւնը մի միայն կեդրոնական տնտեսութեան բարւոքագոյն կառավարութենէն կախում ունի:

Իրաւ է որ մեր Ազգին մէջ աշխատութիւնը իր նշանակութիւնը և արժէքը դժբաղդաբար կորսնցուցած է. որովհետեւ ամէն ազգային պաշտօն, որ ծառայութիւն մ'է, թէ հոգևոր և թէ մարմնաւոր, սոսկ պատիւ մը համարուած ըլլալով, ոչ աշխատութիւն կենթադրէ և ոչ պատասխանատուութիւն. և ահա այս է' որ միշտ վնասակար եղած է մեր Ազգին: Մեր խօսքը իր նպատակը կամ նշանակութիւնը կորսնցուցած այդպիսի աշխատութեան համար չէ, և կ'մերժենք պաշտօնի նկատմամբ պատիւ անձնական փառք և շահ համարուած այդ' փտտած գաղափարը. և ձեռք առնուիլ կուզենք այն աշխատութիւնը որ նպատակ և հիմն ունի իրեն միշտ հասարակաց օգուտը' առանց անձնական շահամօլութեան, որ ոչ պատիւ կ'պարունակէ իր մէջ և ոչ զօշաքաղութիւն կամ սնափառութիւն և չարակնութիւն եւայլն. այլ համարձակ բարոյական և նիւթական վարձատրութիւն յօգուտ ազգայնութեան:

Արդ ուրեմն սկսինք աշխատիլ նախ' Ազգ. հաստատութիւններէն և կալուածներէն և ազգին բարերարաց կողմանէ եղած նուէրներէն և կտակներէն գոյացած բոլոր եկամտից համար Ազգ. արկղ (գասա) մը հաստատել և օրինաւոր հաշիւ բռնել ելեւմտից համար. ասի տնտեսութեան առաջին գործն է:

Երկրորդ՝ Ազգ. տնտեսական մատակարարութիւնները ապահովելու միջոցները ձեռք առնելով, հնար եղածին չափ ծախքը չափաւորել, ընդհանուր գանձուց պաշտօնէի մը հըսկողութեան տակ, և խնայողութեամբ տարուէ տարի էվելնալիքէն Ազգին բաւական դրամագլուխ մը հայթայթելով երևելի և հաստատ պանքաներէն մէկին մէջ շահու դնել:

Երրորդ՝ Ազգ. ելևմտից տարեկան հաշուեցուցակը (պիլանչօ) հրատարակութեամբ հաղորդել հասարակութեան, և միայն այն դրամագլխին շահովը ազգին ծախքերը գոցել: Վասն զի գուցէ անանկ ժամանակ մը պատահի, որ եկամուտը պահանջուելիք ծախքէն պակաս գալով՝ պարտաւորի վարչութիւնը հասարակութեան դիմելու, և հասարակութիւնն ալ այն ատեն —ստակ տուէքին վերջը չ՚պիտի գայ— ըսելով չօգնէ (ինչպէս ներկայիս) և այսպէս Ազգ. գործոց կարգադրութիւնը ընդհատի և խանգարի անշուշտ թշուառ և ի վտանգ հանրութեան:

Չորրորդ՝ Ազգային բոլոր գոյից և ստացուածոց տէր և բոլոր հաշիւներուն հսկող (օրէնսդիր) Երեսփոխանութիւնը (որուն գործադիրն է Քաղաքական ժողովը) պէտք է որ՝ խելացի և փորձառու ժողովական անդամներ և պաշտօնեաներ ընտրէ և անոնց ըստ արժանւոյն Թոշակ սահմանէ. որպէս զի ան ատեն միայն՝ նոցա յանձնուած պաշտօնը կատարեալ և ըստ օրինի հանապազօր վարել և առանց զանցառութեան գործադրել տալու կարող ըլլայ:

Հինգերորդ՝ Ազգ. բոլոր դպրոցները միակերպ դաստիարակութեան (1) ընթացքի մէջ դնել և իւրաքանչիւրին մշանջենա-

---

(1) Ցաւօք սրտի կ՚նկատենք՝ թէ Ազգին զաւկները միօրինակ չեն դաստիարակուիր մեր դպրոցներուն մէջ. ըսել կուզեմք թէ բոլոր դպրոցներուն մէջ տրուած դասերուն եղանակը (մէթօտ) իրարմէ տարբեր են:

Ուսանողք պարտաւորուած են ուսման անկանոն ընթացքին մէջ յարատևելու. որով քիչ մը սովրելիքնին ալ մեծամեծ դժուարութիւններով և տարիներ զոհելով հազիւ թէ ձեռք կրնան ձգել:

Բոլոր գիտութեանց հիմն եղող և մարդկութեան աշխարհին մէջ մարդս մարդ

ւոր բարեկարգութեանը համար մէկ մէկ գիտնական անձինք ընտրել և նոցա տեսչութեանը յանձնել. և տարեկան հաշուեցուցակին հետ ալ մանկանց ուսածը թիւն ու հասակը տեղեկագրով հրատարակել: Վասն զի գիտուն անձի մը հսկողութեան չ'յանձնուած դպրոց մը, բարեկարգ չէ և չ'կրնար ալ ըլլալ, ուստի և եղած ծախքը ի զուր և ապարդիւն. ինչպէս ցարդ:

Վեցերորդ՝ մայրաքաղաքիս մէջ միայն, կղերական գիշերօթիկ դպրոց մը հաստատել, և այն դպրոցին մէջ ուսմունքը աւարտողներէն և կրթուածներէն միայն Եկեղեցւոյ պաշտօնեայ ընտրել, և պէտք եղած տեղերը խրկել:

---

ճանչել տուող բարոյական գիտութիւնք բոլորովին դուրս ձգուած և անոր տեղ լոկ լեզուագիտութիւն մը (թէ և անկատար) ձեռք առնուած է, զոր աշակերտք ստանալով զանի՝ կ'մնեն ընկերականութեան մէջ զուրկ կրօնական և բարոյական գիտութենէ, որուն ստացմամբը միայն կրնան ըլլալ կատարեալ իմաստուն և մարդ երջանիկ. աւելի բացայայտ խօսելով, ճշմարիտ Աստուածապաշտ կամ Քրիստոնեայ մը ըլլալու համար, քրիստոնէական կրթութիւն. և քաղաքականացեալ կամ ընկերական մարդ մը ըլլալու համար ընկերականութեան վերաբերեալ բարոյականութիւն ուսանիլ անհրաժեշտ է. ուստի պէտք է որ մանկունք դպրոցին սեամը ոտք կոխած օրէն՝ գտնան հոն կատարեալ փիլիսոփայի և Աստուածաբանի պէս քաջագէտ կառավարիչ կամ տեսուչ մը, որ իրենց մանկական տիոց և հասակէն սկսին սնանիլ, աճիլ և զարգանալ միանգամայն հոգևորական և քաղաքական կամ ընկերական բարոյականութեան մէջ և դաստիարակուին մարդասիրական և ընկերսիրական կամ որ նոյն է ազգասիրական Ս. և ազնիւ սկզբունքներով:

Մենք մեր զաւկներուն որչափ գիտութիւն սովրեցնել ջանանք և չ'տանք անոնց ձեռքը բարոյական գիտութեան դասերը, լաւ գիտնալու ենք, որ զանոնք կատարելութենէ կ'հեռացնենք և մարդկութեան նախատինք կ'ընենք:

Թող ներուի մեզ ըսել թէ մեր դպրոցներուն, իրենց ներկայ դրութեամբը՝ ընդհանրապէս մարդկային ընկերութեան ներկայացուցած երիտասարդները՝ իսկապէս նման են գերեզմանաց փուելոց, որք արտաքուստ երևին գեղեցիկ և ի ներքուստ լի են ոսկերօք զարշելեօք ըստ ասացելոյ Ս. Աւետարանին: Ուստի պէտք է որ նախ քրիստոնէական և բարոյական կրթութիւնը բոլոր դպրոցներնուս մէջ, իբրև նախնական գիտութիւն ընդունինք, և լուսաւորեալ ազգաց դպրոցաց մէջ ընդունուած ուսման ընթացից եղանակը մտցընենք, և այսպէս ազգին զաւկները ճշմարտապէս կրթելով կարող ըլլանք այժմէն պատրաստել Ազգին ապագայ երջանիկ սերունդ մը, սերունդ կատարեալ մարդկութեան, սերունդ կատարեալ քրիստոնէութեան, օգտակար իրենց անձանց և Ազգին, և փառք և պարծանք Հայրենեաց:

Իսկ վանքերէն ոմանք անկելանոցի և ոմանք ուսումնարանի կամ դպրոցի վերածել նախնեաց դրութեանը համեմատ․ ըստ տեղւոյն և ըստ պատշաճի յօգուտ հասարակաց, որոց ներկայիս եղծեալ դիրքը խիստ վնասակար է ազգին։

Եօթներորդ՝ օրինաւոր Կրօնական ժողով մը ունենալ, և այն ժողովին համար օրինագիր մը պատրաստել նախնեաց ձեռագիր օրէնքներէն հաւաքելով, և զանոնք հրատարակել և Եկեղեցականաց կարգն ու սահմանը վերանորոգել։

Գաւառաց համար բանիբուն և փորձառու առաջնորդներ կարգել և բոլոր Կղերական դասուն չափաւոր Թոշակ սահմանել։

Իսկ Դատաստանական ժողովին համար դատաստանագիր մը պատրաստել և հրատարակել։

Երբ ասոնք գործադրուին՝ այն ատեն կրնանք ըսել թէ իրաւանց և պարտուց սկզբունքը ըստ արժանւոյն ճանչցուած է․ որն որ սահմանադրութեան առաջին և գլխաւոր կէտն է և միջոց յառաջադիմութեան։ Այն ատեն որբոց և այրեաց արտասունքները կ'սրբուին, աղքատներն ու կարօտեալները կ'խընամուին․ անկեալները կ'կանգնին, անտէրունչ հիւանդները կ'պատսպարուին, զրկեալները կ'պաշտպանուին, բողոքողաց ձայները կ'լըսուին և բարիները վարձատրուելով՝ չարերը կը պատժուին կամ կ'պակսին․ դատաստաններու մէջ իրաւունքն ու արդարութիւնը կ'թագաւորէ և վերջապէս ազգը մահուանէ յանմահութիւն կ'փոխադրուի և կըլլայ Ազգ սուրբ և սեպհական ժողովուրդ Բարձրելոյն Աստուծոյ։ Վասն զի ազգի մը մէջ եթէ օրէնք իրաւունք և արդարութիւն չկայ, այն ազգը մեռած կ'սեպուի, և անհնար է որ յառաջանայ, որովհետև ազգի մը կենդանութիւնը կամ լաւ ևս է ըսել հոգին բարոյականութիւն, հաւատարութիւն ճանչնալ եւ յարգել, օրէնք արդարութիւն և իրաւունք գիտնալ ու գործելն է։

Եւ ահա այս է սահմանադրութեան և Ազգին պահանջը և ասոնք են իւրաքանչիւր անհատից պարտքն ու իրաւունքը, վերջապէս այս է սահմանադրութեան ոգին և պէտք է այս ըլլայ

Ազգին բռնելիք ընթացքն ու առարկան, որոց գործադրութեանը հսկելու պարտաւորեալ է Ազգին ամէն անհատը։

Ուրեմն սիրողք օրինաւորութեան պէտք է այսուհետեւ ջանադիր ըլլաք, հաստատուն և անդրդուելի կամք և խոհեմ ու օրինաւոր ընթացք մը ունենալու։ Չկայ բան մը՝ որ արդիւնաւոր ըլլայ առանց կանոնաւոր և անխոնջ աշխատութեան. և Տէր է՝ որ յաջողէ զբարին յամենայնի։

Դառնանք ձեզի ո՛ Թշնամիք օրինաւորութեան. դուք կոյր զկուրայն կմարտնչիք օրէնքին և ազգային իրաւանց դէմ, դուք ազատ կամք ունիք՝ և բարին չարէն որոշելու կարող էք. ապօրինաւոր և անկանոն անձնական կամ մասնաւոր շահու մը համար, ազգին ներկայ և ապագայ յառաջադիմութիւնը և միանգամայն ձեր անունն ու պատիւը նաև Ձեր անմահ հոգին վտանգի մէջ մի՛ դնէք. ալ հերիք է, դադրեցէք չարութեան անզգայ գործիք մը ըլլալէ. չէ՞ք նշմարէր որ ազգին տունը քակելու, քանդելու և կործանելու գործակից կըլլաք. չէ՞ք գիտէր որ՝ թէ ազգային և թէ Տիեզերական պատմութեանց մէջ ձեր անունները վասակներու, մերուժաններու վեստ սարգիսներու անուանց շարքը կանցնի և այժմէն Ազգին ապագայ սերնդեան համար զզուելի և գարշելի յիշատակներ կպատրաստէք. չէ՞ք տեսներ որ ձեր ձեռօքը ձեր զաւակաց փոսը կը փորեք. չէ՞ք սարսափիր անոնց դառն անէծքները ձեր գլխուն տեղացնելու նախապատրաստութիւն մը ընելնուդ. ո՛ Եղբարք, դուք աւելի կարեկցութեան արժանի էք՝ քան թէ մեղադրանաց, Յիսուս փրկիչը ձեզի պէսներուն համար էր՝ որ խաչին վրայ աղաչեց իւր Երկնաւոր Հօրը՝ ըսելով «Հա՛յր թող դոցա, զի ո՛չ գիտեն զինչ գործեն։»

Եւ ահա կրկին կըսենք ալ զգաստացէք, ձեր օրինաւորութեան դէմ կենալը՝ ճշմարտութիւնը ուրանալէ զատ ուրիշ բան չէ, զղջացէք այսուհետեւ և ձեր օրինասէր եղբարցը հետ միաբանութեամբ ձեռք ձեռքի տալով Ազգին բարոյական և նիւթական շահուն և յառաջադիմութեանը միայն ջանք ըրէք։

Միզվիթական կեդրոն, և դուք նորա կուսակիցք, ձեր ճշմարիտ օգտին և պատւոյն համար, ինչ որ ձեզի ըսենք կարծենք թէ պարապ և անօգուտ պիտի ըլլայ, վասն զի դուք կամաւ մատներ էք զձեզ ճիզվիթութեան անճողոպրելի ճանկին, դուք չարը գիտնալով կ'գործէք: Ձեր խորամանկ հոգին էր' որ ամենաբարի Արարչին ձեռքէն նոր ելած նախամայրն Եւան խաբելու համար օձի կերպարանոք մինչև Եդեմական դրախտը սպրդելու համարձակեցաւ, ուստի անզեղջ և անխիղճ ու յամառ ըլլալնուդ համար, ձեր դարձին վրայ յոյս դնելը սատանան չը ճանչնալ ըսել է. մահը միայն կրնայ ազատել զձեզ այն Աստուածամարտ ճանկէն. ան ալ' նողկալի յիշատակնիդ համայն մարդկային սեռին մանաւանդ Հայկայ ներկայ և ապագայ սերնդին դառն արտասուաց և անիծիցը յանձնելու' ևս և հոգինիդ անել տարտարոսին զարհուրելի տանջանացը մատնելու համար, ուրեմն զոնէ ձեր հոգւոյն, ձեր անուանը, և ձեր գերդաստանին վրայ խղճացէք, ի զուր կաշխատիք և ընդ վայր կ'տագնապիք. չեք գիտէր թէ բարոյապէս նախ մեր խեղճ Ազգին տէրն ու պաշտպանը Աստուած է, որ կարող է զարդարս փրկել ի մահուանէ, և զանիրաւս պահել ի տանջանս յաւիտենից, և ահա ինչ որ կընեք. ձեզի, ձեր ընտանեացը, և ձեր հոգւոյն կընէք, արիւն ձեր ի գլուխ ձեր:

Սիրողք օրինաւորութեան, դուք ալ ամենայն ներողամտութեամբ աղօթք ըրէք անոնց համար, որոնք պարզամտաբար խաբուելով' ճիզվիթական կեդրոնին չարաշունչ թելադրութեանցը կ'հետևին, և իբրև մեքենայ նորա ձեռքը, անգիտաբար անմեղ ազգին և Լուսաւորչական Ս. Կրօնքին վնաս և չարիք կ'հասցնեն. ներեցէք նաև վեհանձնութեամբ այսքան չարեաց պատճառ ճիզուիթական կեդրոնին. թողէք որ Երկինք ըլլայ անոր դատախազն ու վրէժխնդիրը:

Սակայն յատկապէս կաղաչենք զձեզ որ Արգոսի նման հարիւր աչք ունենաք, օձի նման խորագէտ ըլլաք, ճիզուիթական հրապուրանաց և շողոքորդութեանց չ'խաբուելու համար, ճիզ-

ուխԹուԹեան ինչ ըլլալուն վրայ կատարեալ տեղեկուԹիւն ըստանալով, անոր երևելի և աներևոյԹ որոգայԹներուն և ազգադաւ խարդաւանացը մէջ ինկնալէն զգուշանաք։

Ազգին մէջ սպրդած ճիզուիԹուԹեան և նորա շահախնդիր կուսակիցները արդէն աղէկ կը ճանչնաք. գիտեմք Թէ քանի տարիէն աւելի է չարիք չմնաց, որ Ազգին գլխուն չ'բերէ. երկպառակուԹեան և խռովուԹեան որոմ չ'մնաց՝ որ ազգին մէջ չ'սերմանէ. վերջապէս Ազգը ճիզուիԹուԹեան ամբարիշտ ճանկը մատնելու համար՝ դարան չմնաց՝ որ չ'գործէ։

Ալ անզգուշուԹիւն և անզգաստուԹիւն կըլլայ, եԹէ այսուհետև մէկ մ'ալ անոր ուղղակի կամ անուղղակի ձեզի մատուցած դժոխային հրապուրանքէն խաբուելով, դարձեալ անոր գիշատիչ ժանեացը ճարակ ըլլաք՝ յետինն վատԹարագոյն չար քան զառաջինն լինելով յաղետ և ի ցաւ ազգասէր սրտերու. ալ այսուհետև ազգին, կամ որ նոյնն է Ձեր օգուտը դուք խորհեցեք, և Աստուած խաղաղուԹեան առաջնորդեսցէ Ազգիս ըզ բարին այժմ և առ յապայն։

ՎԱԽՃԱՆ



## ԸՆԴԱՐՁԱԿ ԾԱՆՈԹՈՒԹԻՒՆՔ

---

*Առ սարկաւագ Նիկողայոսն յաւուր ի Թէֆլիսայ։*

*ի 28, ապրիլ, 1822. ի Պէյօղլու Սարայը ժամը:*

*Ով սիրեցեալդ մեր տիրացու Նիկողայոս* (1)

*Ֆրէնկիստան այս խայրէթը ունի՝ որ բոլոր ազգերը և թագաւորութիւնները իր իշխանութեանը տակը անցունէ. և այս բանիս վրայ եօրմիշ կընէ իր միտքը։*

*Քօրթէս զօրքով Իսպանեայի թագաւորի կողմանէ գնաց Ամերիկայ, Մեքսիքօնի երկիրը իրեն համար քարոզեց թէ ես մեծ թագաւորի կողմանէ եկայ, որ իրաւունք ընեմ զրկելոց, և բռնակալներուն ձեռքէն ազատեմ նեղութիւն քաշողները. ատոր համար շատերը Մեքսիքօնցիներէն թարաֆ եղան անոր, պաշար տուին, և տասն հազար հոգի ալ անոր զօրական եղան և միաբանութեամբ Մեքսիքօնի փառաւոր թագաւորութիւնը տակն ու վրայ ըրին. ինչպէս կ՚գրէ մեր աբբա Հ. Ստեփաննոսը աշխարհագրութեան մէջ։*

*Ասանկ ըրաւ և Ինկիլիզը Հինտիստանի երկիրը, սոյն փառաւոր և բազմազանձ նապապները (հողը) քի իրենց նախնիքներէն մնացած էր, վար ըրին՝ վեր ըրին, ամմէնը իրենց ձեռքը անցուցին, հիմա Ինկիլիզներուն փարան ով շատ տայ նէ այն նստած կըլլայ, և ան ալ անունով միայն, ամէն դատաստան և ամէն կառավարութիւն Ինկիլիզներուն ձեռքն է։*

*Հռովմայեցիք ալ առաջուց, որ թագաւորութիւն ունէին, ասանկ կ՚նէին, ինչպէս շատ ազգերու ըրեր են, մինչև Անատօլու ասկէր անցուցին և մեր ազգին ալ ըրին. Միհրդատին և Տիգրանին օրը, և ուրիշ ատէններ ալ, կէս մը խաբէութեամբ, և կէս մը ճէնկով, հիմայ ալ Հռովմայեցիք նոյն մարմնաւոր թագաւորութիւնը ունին, լաքին չորս կողմի թագաւորները վարպետ են, թող չեն տար, որ դուրս տեղաւանք իր իշխանութիւնը տարածէ, լաքին բաբը՝ որ Հռովմայեցւոց թագաւորն է՝ տես ինչ կ՚ընէ, ասկէր կ՚հանէ՝ ոչ թօփով թիւֆէնկով և սիլահով, այլ անունով հոգեւոր իշխանութեան միսիօնարներ փօլիթիքայով,*

---

(1) *Միրիքէլամին եղբայրն է եղեր:*

որ բոլոր աշխարհ կերթան կերպ կերպ վարպետութիւններ կ'բանեցնեն ։

Եւ որպէս զի այս բանս ալ աղէկ առաջ տանի Հայոց Ազգին մէջ, և այս բարեպաշտ Ազգին մէջ իսիշկէն մը ձեռքը ունենայ, Հայու Ազգին մէջէն պիրէզ մը արդ գտեր է, և անոնց վոնքեր տուեր է, որ իրեն կեղծաւորութիւնը (ճիզվիթութիւնը) սորվին հոն, երթան ըսեն քի « Բաբը հաւատոյ գլուխ է, անոր չի հաւատացողը, քրիստոնեայ չէ. արքայութիւն չունի։»

Իշթէ մենք ալ այս բանիս խայրէթ կընենք և այս ջանքս կը բանեցնենք։ Պէլի գլուխնիս խալփախ կայ և Հայու չաթ կ'հագնինք, լաքին շափխալը Ֆրէնկէն առնա էվէլ այս բանիս մենք կ'հոգնինք։ Գրքերու մէջ բան գրելով խելացիին բան կիմացընենք, և շատ բաներով աչք պօյամիշ կընենք։ Որուն հետ տեսնուիք նէ, ամէն ճահտերնիս կ'բանեցնենք' որ վարախը հապերնիս եաւթտուրմիշ անել տանք։ Պզտիկին կըսենք քի' « Դուն մէծիդ ինչու կուրօրէն պիտի հնազանդիս, ազատ մարդ մընես. » անով կ'գրգռենք, ան ալ' վայ կըսէ. ասոնք ինչ աղէկ մարդիկ են, որ մեզի ազատութիւն կ'խոստանան, կուզան թապլայ թէալիմ կըլլան։

Ասանկով ինչ ժողովուրդներ որսացեր ենք, ինչ փոքրաւորներ վարդապետներուն քովէն հաներ ենք, և ինչ վարդապետներ' Եպիսկոպոսին և Պատրիարքին իշխանութեան տակէն հաներ ենք, շատ մարդիկ' որ կանոն (պահք) բռնել չեն ուզեր, խօլայցուցեր ենք, շատին բնութեանը կէօրէ' մեղքերուն կերպ կերպ հիլլէի չէրիով ազատութիւն տուեր ենք, ասանկով մեր Ազգէն որչափ մարդիկ Ֆրէնկի թարի ենք ըրեր, ինչ տներ ենք կործաներ. ինչ մարդիկներու գլուխ ենք կերեր նէ, ամէնուն պէլլի է, լաքին մօտ օրերս եղածներէն քանի մը բան պատմեմ տէ լըսէ։

Տիւզեանց օրերը միաբանութեան վէճէրը մենք հանեցինք քի զօլէշցւոց գլխուն զաանենք Պատրիարքին թօփուզը և մենք ըսուինք տէր, որուն, համար երկու երեւելի սառաֆներ քշեր տուինք, մենք տներուն քէօշէն նստանք զէֆք սէֆա ըրինք։

Մենք ըսուինք տէր, մտանք տիւզեանց միտքը փոհփոհով մեծցուցինք, Հռովմայ մարդ խրկել տուինք, շատ խարճէ՛ հանեցինք. ամէնը անոնց տիւշման ըրինք, թախ որ' այն երեւելի տունը սօյով սօփով միւճմիւհալ ըրինք, ան ատենը մենք ալ

տեսանք որ մեզի վտանգ կայ. վարպետութիւն մըն ալ հոն բանեցուցինք քի՛ վտանգէ ազատինք, ինկանք Հայոց Ազգին գոգը; Թարաֆկիր փէշտամ ըրինք անանց մեծերէն, խաբեցինք զանոնք փօլիթիքայով քի մեր ճամբը ուղղափառութեան համար է, ճշմարտութիւնը կ՚խնդրենք և ոչ ուրիշ բան, անոնք ալ (հաւատացին) իրենց ուղղափառ հաւատքը Հրաւէր սիրոյ գրքով հրաժարակեցին, որ եէտքը հրաւէր սիրոյն հրաւէր սրոյ եղաւ։

Պէլլի մենք սուրկինէն ազատեցանք Հայոց ձեռքովը և Քաղթօլիկներուն մէջը ապահով չէինք նէ՛ ան ատենը Հայոց մէջը սէրէ սէրիէ ժուր կուգայինք, մինչև Ղալաթիայի Ժամը մեզի պխտոր տայլին, որ հոն նստէինք, մենք չուզեցինք. զիրա Ազգին մէջը մէկ վէլվէլէ մը ձգեցինք, գիտէինք որ օր մը չէ օր մը ծայր մը պիտի տայ, Ղալաթիա աքան չերթանք տէի, Օրթագեղ մէթէրից ըրինք մեզի։ Ամիրայից տուները զէֆքերնուս մէյիլ եղած էինք, ամմա Ազգը կ՚չարթուի եղեր, մեզի ինչ, գէրէ Հռովմայու Բաբէն առ, մինչև էն պզտի բաբական կարգաւորնիս սաանկ կընէ. կրակը կ՚ձգէ ժողովրդոց մէջը, իրար կանցնէ, կախել, կոտրել, մեռցնել կուտայ, ինքը կփախչի զէֆքերնին կ՚համէ հեռուէն, սօղրա օրթան կելլենք կ՚մխիթարենք քի, ուղղափառ հաւատքի համար պէտք է որ արուն թափէք, առջի քրիստոնեաներն ալ սաանկ են ըրէր։ Տաշխըն ժողովուրդը մեզի չըսէր քի, ճանըմ վերապատըրտելիներ՛ առաքեալներն ալ արուն թափեցին, դուք ինչու անանց չէք նմանիր, չէն ըսէր քի Հռոմայ բոլոր կարտինալները Բաբը ալիլէ մինչև պօղազնին զէֆք սէֆայի մէջ տալմիշ եղեր են, մենք ինչու անանց ուղուրին էշ նահատակ կըլլանք։

Արդ Հայոց մէջէն պազին քըշվէլէն՛ պազին մեռնելէն ետև, շատերը իմացան մեր սէպէպով ըլլալը, մեզնէ պաղեցան. տոլիկնիս ավրվեցաւ հոն, Պատրիարքը ուզեց որ խուցը մեզի խօթէ. և տանը քէօշէյէն տէճաիրկին ընէ մեզի, պաշլայեցինք տէնկսիզ տէնկսիզ խօսիլ, ճշմարտութիւնը սաանկ պէտք է ըսելով, որպէս զի մեզի վռնտեն տէ, իրաւունքով Քաթօլիկի Թարաֆը զանք. զէրէ ան ատենը Քաթօլիկի Թարաֆը ապահով եղաւ խայրի։ Անցանք հոս. Քօլէշցիք մեզի նեղութեան մէջ գըրին, ժամանակ մը քահանայագործութենէ դադրեցուցին, ետքը ծածուկ Պատարագի իզին ըրին, եէտքը յայտնին, էն ետքը խոստովանանք ընելու։

Եւ չխնդրի մեծ մեծ զօրութեր էրնք Քօլէշցիներուն քի, « ՀԷլէ մէջ մը խոստովանութեան թղթն առէք, Նայեցէք քի՝ քանի մարդ և քանի տան պիտոր գործենք, Հայոց մէջէն խելացին և պէնէկինը առնելու էնք, որ երթայ Պատրիարքը համալ համալ մարդիկներով միայ։ » Տեսանք որ ումմիշ ըրածներնէս մարդ չեկաւ, ճարերնիս հատաւ, գտանք ձեզի պէս մարդիկներ։

Նայյին, մէկ մէճլիսի մէչ աղջիկ չըլլայ նէ, մասխարայութին՝ ընելու չէրթար հոն, ուստի աղչկան համար հերձուածող եղաւ։ Գամմաղիէլին տղին հալը մալիմ է, չատ բան զուրցել պէտք չէ, զէրէ ամէն բան ինքիրմէն կվայլէ անոր վրան: Սանփանը ժամանակու խէնթեցեր էր, հիմա ալ շօշորթը կայ վրան։ Հօշ՝ բռնած ճամբան ալ կ՚վկայէ, որ Թիմարխանայի խէնթերէն է, լեզուին պէտք է մէկ զինճիր միալ, որ անանկ հպարտութեամբ մեծ մեծ չխօսի։ Եւ դու տիրացու Նիկողոս՝ քու ալ հալդ մալիմ էր, որ սարկաւագ ես, և քանի մը տարի է, որ աղչկան մը ռաքը կապեր ես, չես կրնար կարգուիլ, հպարտութենէդ չես կրնար ալ ընել քի կարողութիւն չունիմ կարգուելու, եկար Քաթօլիկ եղար, որ Հայը՝ Քաթօլիկի աղջիկ չտար. և Թապլչէթովը Ներշանածէդ ետ կըլլաս, և ուրիշ զէնկին աղչիկ մը կառնես։ Եթէ ասանկ չըլլար նէ՝ մեզի խոստովանանք եղած ատենդ՝ պիտոր ըսէինք քի՝ սարկաւարգին կարգուիլ չըլլար. ատաչ նշանդ ես ռա, յետոյ եկու խոստովանէ, լաքին մենք այս այն չնայեցանք, ձեզի բերինք խոստովանցուցինք, քանի մը սուտ ու մուտ բաներ սովրեցուցինք, որ երթաք ասոր անոր հետ իյնաք, խավղայ մը հանէք տէ մենք ալ բաներնիս տեսնանք, զէրէ առաջուց մենք Պատրիարքին փիթ կուտայինք քի՝ Քօլէշցոց արզը գրէ, քշել մեոցնել տուր։

Տեսանք քի Պատրիարքին ձեռքովը բան չըլլար կոր, Ազգը ոտքի տակ կերթայ ըսելով, ետ կ՚քաշուի, եկանք Քօլէշցիները կռնակ առինք որ Պատրիարքին բան մը կարենանք ընել. լաքին Քօլէշցիք ալ մեզնէ ձեռք քաշեցին, մենք միացինք բացը. վէ լաքին աղբարը ուզեց Պատրիարքը և առաւ, թէ որ չի տայինք՝ կըլլար, լաքին մեր հանգստութիւնը չարի տէյի՝ տուինք։ Դու որ բռնուեցար գացիր Պատրիարքարանը և մեղայ ըրիր ազատեցար. մենք քեզի սիրտ տալու համար, սուտ մը հանեցինք քի Պատրիարքին արզը Դռնէն պատռեր են, դոն ալ

Պատրիարքին ինչ իշխանութիւն ունենալը չգիտնալով, և ան-խելքութիւնով լինկար օրթան քի՝ պանա նէ եափա պիլիրտի։ Ուչան երոթըճը քուշուն էօմրիւ ազ օլուր, կըսեն, ո՛ անխելք՝ արզդ պատռեցաւ նէ, ֆալախայ տէյնէկը չկոտրեցաւ ա. Պատրիարքարանի հափըսին զինճիրը չի հատաւ ա. կամ թէ ուրիշ խապահած մը վրադ դնելով կինէ կրնար քշել, երբ ուզէր։

Լաքին ինչ ըսեմ, հիմա հոտ ճաղ մը առ առչիդ, անխելքութիւնդ մէջը պառկեցուր մեռելի պէս, պարտքերուդ տէրտը, զարուրութեանդ խասաւէթը, քըշտւելուդ ցաւը և սըխընթըն, ճաղին քովերը սալթանաթ տէի տիզմիշ ըրէ. լաց ու լաց՝ անմխիթար լաց, ինչու հաւատացիր. երբ որ կըսէինք քի, Հայոց Եկեղեցին հերետիկոս է, չըսէիր քի՝ դուք հոն իքէն՝ ուղղափառ էր, դուք չըլլաք նէ, հերետիկո՞ս կըլլայ, զանէր ճշմարտութիւնը կամ ուղղափառութիւնը անանկ քէբաղէ բան մընէ՝ որ ըլեց մարդու վրայ կեցած է, անոնք ուր են նէ՝ ըլլայ, և ուր չէն նէ՝ չըլլայ։

Ժամանակաւ քերթողին մէկը պարծենալով ըսեր է քի, քերականութիւնը իմ հետս ծնաւ և իմ հետս պիտոր մեռնի. որուն համար մէկն ալ կըսէ քի՝ ինչպէս առաջինը սուտ է, առաջուց քերականութիւն կար, ետքինն ալ սուտ եղաւ, զէրէ օր օրէ աւելի ծաղկեցաւ քերականութիւնը։ Ասանկ ալ մեր ըսածը սուտ է և ամենասուտ, քի Հայոց մէջ ուղղափառութիւնը մեզի հետ մտաւ, մեզի հետ ելաւ. զէրէ անհա յառաջուց ըլլալուն համար, մեր Չամչեան Հ. Միքայէլը կ՚գրէ քի՝ ուղղափառութիւն Հայոց անմոլար, սկսեալ ի Սրբոյն Առաքելոց և իջեալ ի սուրբ Լուսաւորչէն. Եւ ետքինն ալ սուտ է, զէրէ բոլոր Ֆրէնկիստան իրենց քրիստոնէութեանը նայելով, կըսէ թէ ուղղափառութիւնը Հայոց մէջն է, ինչպէս Զոհրապեան Հ. Յովհաննէսը Փարիզէն կգրէ (1)։

Ուստի ձեզի յորդորեցինք քի՝ եկէք Քաթօլիկ եղիք, հաւատքի համար չէր. իլլէ նէֆսանիյէթ ընելով, մենք չէրէֆ զանանք, խօսքերնիս գալեցնենք, և բուն նպատակնիս՝ Բաբին օգտակար ծառայութիւն մը ընենք, Հայոց ազգը Բաբին իշխանութեան տակը անցունենք։ Չէրէ այս բանիս համար մենք միսիօնար եղեր ենք, սիլահըրզ ակեր ենք, թօխուդ թիւֆէնկսիզ առներ,

(1) Ասանկ նամակ մ՚ալ Հ. Սերովբէ՝ ստորագրութեամբ Արշալոյսին միջոցաւ քանի մը տարի յառաջ հրատարակուած է։

քաղաքներ կ՚քակենք և եէսիր կընենք սուր գազան Բաբին։

Անա իմացիր մը, ինչու ձեզի Քաթօլիկ ըրինք. ինչու խավղայ հանեցինք. զերէ սասնկ չըլլայ նէ չըլլար, աթլար թէփիշտի, էշէկլէր արայա կիթտի. պէյի մեր իւիթիպարն ալ կտորեցաւ, լաքին Ֆրէնկին փօլիթիգան շատ է,. մենք կինէ հիլլէպազութեամբ հօզգասլազութեամբ կխաբենք և գլուխ կելլենք. պաշ օլ տա, էշէկ պաշը օլ։

Գանք հիմա քեզի՝ մեր հալը անա հասկըցուցինք. ուստի դուն մեզի համար քշուեցար. լաքին միտքդ դիր քի՝ ուղղափառութեան համար է, զերէ մեզի համար սէպէս նէ, մենք փարայ չունինք, որ քեզի վարձք տանք. փարայ ունենայինք նէ Հ. Գրիգորին պէս մենք ալ կփախչէինք, բայց թէ որ ուղղափառութեան համար տանիս նէ, Աստուած անվարձ չի հանէր, Աստուած մխիթարանք տայ. առ ալ երած սրտից մխիթարանք ըլլայ։

Հ. ՄԵՍՐՈՎԲՍ ԵՒ Հ. ԹՈՎՄԱ
ՎԱՐԴԱՊԵՏՔ ԱՐԲԱՑԵԱՆ

Բ.

*Առ Մուրատեան Պ. Տիգրան, ի Նիկոմիդեայ։*

Արժանայորգ բարեկամ.

Այս օրերս Տէրոյենց պատուելիին Երեւակ անուն թերթին մէջ՝ Սկաւագիր աղերից Երուսաղեմի մեր տեղեկագրին դէմ գրուած յօդուածը ձեր հետազըրգռութիւնը շարժելով ստիպուէր էք Երուսաղէմի մէջ Սողոմոնեան տաճարի և Պրապատիկէ աւազանին մօտ Յովակիմ Աննայի տուն կոչուած Արշակունեաց ձեռքով կառուցեալ եկեղեցիի յափշտակութեան վրայօք վերահասութիւն գործել։

Բարեկամ, յիշեալ խմբագրին՝ ազգին անժխտելի իրաւանց դէմ ցարդ ցուցուցած կիրքն ու յամառ կամակորութիւնը արդէն յայտնի է շատերուն. ինչպէս այս անգամ ալ Երուսաղէմի Ց.

պատրիարքը արդարացնելու դիտմամբ, մեր հրատարակած ճշմարտութիւնները սուտ հանելու փորձ ընել ուզելով կպնդէ թէ « յիշեալ եկեղեցին Հայոց չէր և չէ »։

Մենք արդէն հաստատ ապացոյցներ ունիմք թէ՝ նոյն իսկ Երուսաղէմի մէջ և շրջակայքը մեր Հայոց ի բնէ ունեցած 72 կտոր սեփհական ազգատուանց վանքերէն մէկն էր և է. մանաւանդ թէ անտարակուսելի ճշմարտութիւն մ՚է, որ մի և նոյն շինուածքին ձևն ու դիրքն անգամ իբրև կենդանի վկայ՝ Հայոց վանք և եկեղեցի ըլլալը ինքնին ստուգած է և կստուգէ, որուն մօտերս լատինացմէ յափշտակուիլը յիշած էինք։

Այս խնդրոյն լուծումն ալ Արժ. Չիլինկիրեան Յակոբոս վարդապետէն առած ըլլալով (որուն համար յիշեալ Երեւակի խմբագիրը մեր աշխատութեան իբր թէ գործակից կանուանէ. որն որ ազգ. գործով այժմ ձեր կողմերը կգտնուի) ձեր հետաքրքրութիւնը յագեցնելու համար կարևոր կհամարիմ սոյն իրողութիւնը և սիրելութեանդ հաղորդել։

Այս մասին յիշեալ վարդապետին մեզի տուած տեղեկութիւնը այս է. որն որ նոյն միջոցները Երուսաղէմի վանուց Աւագ Թարգմանութեան պաշտօնը վարելուն. մանաւանդ թէ հետազօտօղ անձ մը ըլլալուն համար տեղեկութիւն ստացած է հետևեալ կերպով։

Երուսաղէմայ լատինաց վանքի միաբանութիւնը՝ քրիստոնեայ ազգերէն որսացած ու լատինացուցած ժողովրդեան անունով իբր թէ եկեղեցի մը շինելու տեղ մը կ՚փնտռէ, և արևելեան պատերազմին ատենները Բ. Դռնէն խաթիլամի ասմի հրամանագիր մը առնելով կխրկուի յԵրուսաղէմ. թէ արդեօք միրիի հողերէն դատարկ միացած տեղ մը կրնայ գտնուիլ լատին ժողովրդեան համար եկեղեցի մը շինուելու։

Դատարանէն առանձին իլամ մը առնուելով և անոր համեմատ Բ. դռնէն ալ իսկոյն հրովարտակ ելլելով, յիշեալ եկեղեցին լատինաց վանքին ձեռքը կյանձնուի 1856։

Եւ ահաւասիկ իլամին իմաստը.. որուն վրայ հիմնուած է և հրովարտակին խօսքերը։

Երուսաղէմի պարսպէն ներս սիթտի մէրիէմի կողմը եղած՝

քաղաքի դրան (որուն Բենիամինի դուռ ալ կըսուի) մերձակայ միրիի ամայի միացած տեղերէն, ուր ժամանակաւ եկեղեցի մը աւերակներէն փոքր ինչ շինուածքի մ'ալ նշոյլներ կտեսնուին. 400 կանգուն լայնութեամբ և նոյնչափ երկարութեամբ արսա գետին մը ի շնորհս մալաքոֆի պատերազմին շահատակող գաղղիացի զօրաց՝ լատինաց վանքին շնորհեցաւ իւր ժողովրդեան եկեղեցի մը շինելու համար։

Անկէ յայտնի կերևայ թէ մոռցուած է այն ատեն իսլամին մէջ յիշուելու այն անհագին գմբէթաւոր եկեղեցիին տակաւին կանգուն և հաստատ շէնքը. կմոռցուի նաև հարէմի շէրիֆին մօտիկ ըլլալը պատճառ բռնելով ժամանակաւ սուլթան Սալահէտտինին Հայոց ձեռքէն քաշել առնելը և մինչև ցարդ սաքահիյէ մէտրէսէսի կոչուիլը. այլ և կմոռցուի 20 տարի յառաջ անոր քով՝ կէօզլիւկլիւ Րէշիտ փաշային կանգնեցուցած մինարէն և այնքան բազմաթիւ սալահիյէ վախֆիյէսի անուամբ կալուածներն ու յիշատակիները։

Զամուռճի պատուելին ասոնք գիտէ արդեօք, որ ազգին իրաւանց հակառակ կելլէ ու կ'զրաբանէ։

- Այս մասին կ'ըսուի թէ Երուսաղէմի յունաց միաբանութիւնը և պատրիարքը միայն բողոք մատուցանել փութացեր է Բ. Դրան. զարմանալով միանգամայն Հայոց վանուց պատրիարքին անհոգութեան և անտարբերութեանը վրայ։

Սոյն միջոցին Ս. Յարութեան տաճարի գմբէթին նորոգութեանը համար Բ. դրան կողմէն Երուսաղէմ ղրկուող շինուածոց պաշտօնէական իւր տեսութեան գացող էֆէնտիներուն զայրացմամբ ըսած է թէ՝ «եթէ հնարը ըլլայ, կարծեմ մեծ մզկիթն ալ աճուրթի հանել պիտի ախորժէիք»։ Յիշեալ խմբագիր Տէրոյէնց պատուելին քանի մը տարիէ ի վեր է որ Հայաստանեայց եկեղեցւոյ իրաւունքները և սեփհականութիւնները աճուրթի հանել ստիպուած է իւր Երևակ կամ աւերակ թերթին միջոցաւ։ Սակայն այս մասին խնդիրը կարեկցութեան արժանի է քան թէ պարսաւանաց. վասն զի եթէ ուրիշ արուեստ մը ունենար՝ ապրուստի մը համար ասանկ վատութեան չէր գիջանէր. մանաւանդ ընտանեաց տէր անձ մը միշտ կարօտ ըլլալով իր օրա-

կան պարէնը հայթայթել, որու որ ծառայէ, հարկաւ անոր ի նպաստ գործել պիտի ջանայ. յանցանքը ազգին է որ իւր գլտնականաց յարգը չ՚գիտնալով, նոցա պիտոյքը հոգալու և անոնց ապագան ապահովելու մասին ալ անփոյթ և անտարբեր մնացեր է (1) և կմնայ. մանաւանդ թէ իր այս հոռի ընթացքովը շատ կորուստներ ալ ունեցեր է որով և շատ ուսումնականներ մեր ազգին մէջ պանդոկներու խորշերը անխնամ երեսի վրայ մնալով յետին աստիճան խղճութեան և չքաւորութեան մէջ մեռցեր են և անոնց գրաւոր աշխատութիւնն ալ ի կորուստ մատնուած է ի ցաւ ազգասիրաց. ափսոս որ մեր ազգը դեռ ուսման և գիտութեան յարգն ու արժէքը չէ ճանչցեր, և հետևաբար գիտնականաց վրայ ալ վարկում չէ ունեցեր և չունի։

Ձեզ ի սրտէ միշտ բարեացակամ

ԹԱԴԷՈՍ ՄԻՀՐԴԱՏԵԱՆ
ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐԵԱՆ ՄԻՀՐԴԱՏԵԱՆՑ

Ի Կ.—Պօլիս 1863 Մարտ 7.

---

(1) Նամակագրին այս պարբերութեան խօսքերը ընդհանրապէս իրաւացի են սակայն յիշեալ պատուելիին ազգին կողմէն ցուցուած մեծարանքին նկատմամբ, զրպարտութիւն մը կըհամարուին ազգին համար: Մենք չենք կարծեր թէ անխորհուրդ եղած ըլլայ այս խօսուածքը. Վասն զի թէ որ ազգը իւր գիտնականաց արժէքն ու կարևորութիւնը չէ զգացեր և ըստ արժանոյն զանոնք չէ կըրցեր յարգել ու զանոնց պիտոյքը հոգալ կամ կարեկցիլ, բայց յիշեալ պատուելիին ոչ սակաւ համարում տուած է և արդեամբ իսկ յարգած:

Թողում ըսել այն նպաստներն ու առանձնաշնորհութիւնները որ հասած են իրեն. ինչպէս Փինկեանցի Ցարութիւն աղայի՝ անգիտաբար շնորհքը (ոսկիները) գին նորա տպարանի մամլոյն. նոյնպէս Եկեղեցական պատմութիւն մը հեղինակել և ի լոյս ընծայելու համար երեսուն հազար մառչիլէն աւելի ստացած դրամը. և այն առանց հրատարակելու և բաժանորդաց իղձը լցունելու. թէ և ըստ մեզ. չհրատարակուիլը աւելի ախորժելի կսեպուի. որովհետև ով չգիտէր թէ անկէ ալ պապականութեան հոտ պիտի բուրէր անշուշտ:

Ազգէն ստացած յարգանքը՝ ինքնին փճացուց, երբ սկսաւ ամեն ամսոց վերջի ուրբաթ օրերը Թոշակ ընդունել Ս. Բենետիկտոսի եկեղեցւոյն կողմէն. կամ յիսուսեանց մեծաւորէն (Ժօժէն Պօռէ): Հոս յայտնի կերևայ պատուելիին օտարասէր բնաւորութիւնն ու ապերախտութիւնը. զի եթէ ազգը իւր գիտնականաց յարգանք չկրցաւ տալ այլ գէթ սմա յարգանք ընծայել ուզեց ալ նէ ինքը մերժած է:

## Գ.

Մեր Ազգային Եկեղեցին ուրիշ Ազգի մը Եկեղեցւոյ հետ միացնելու գաղափարին ծառայող ազգայիններ՝ ազգերնուս մէջ ժամանակ ժամանակ երևան ելնելով, անխորհրդաբար մեծամեծ ջանքեր յայտնած են իրենց այս սնոտի և վատ գաղափարը յառաջ տանելու համար։

Այս կերպ միութեան անկարևոր և Ազգին վնասակար ըլլալը առանց այժմէն քննութեան առնելու, սկսինք նախ և յառաջ քննել այն շարժառիթը՝ որ զանոնք այս անպատեհ խորհրդին առաջնորդեր է, որուն գործադրութիւնը ըստ մեզ անհնար և հետևանքը խիստ վնասակար է Ազգին։

Այն շարժառիթք՝ որ այս երևակայեալ միութեան խորհուրդը նոցա մտացը մէջ ծնած է, այնպէս կըսուի թէ՝ իւր գոյութիւնը մի միայն Ազգին ամբողջութեան կորուստ սպառնացող հերձուածոց ծագումէն առած ըլլայ, որուն՝ Ազգին ամբողջութեան պահպանելու փափաքովը վառուած ճշմարիտ Հայուն սիրտը՝ արդարև առանց մեծ ցաւ զգալու չէ կարող հայել։

Սակայն այս ցաւալի հերձուածները կամ պառակտումները, որք դժբաղդաբար կ'շարունակեն մեր Ազգին մէջ, կ'ըսեն թէ միշտ երկու պատճառներով գոյութիւն գտած են և կ'գտնեն, մէկը՝ Ազգին ամբողջութենէ կրօնքի կամ կրից պատճառաւ բաժնուողներն են, իսկ միւսը՝ ազգային կառավարութեան կողմէն անհրաժեշտ համարուած Ազգին ամեն մէկ] անհատին իրաւանցը անմիջական պաշտպանութեանց զանցառութեանը պատճառաւ բաժնուողներն են։ Ուստի և ասոնցմէ յայտնի կերևայ թէ՝ մեր Ազգ. Եկեղեցին աշխարհային իշխանութեան տէր Եկեղեցիի մը հետ կցել կամ միաւորել խորհող ազգայինք համոզուած այլ են թէ՝ իրենց երևակայած կրօնական միութեան միջոցաւ Ազգին ամբողջութեանը մահ սպառնացող այս հերձուածը կ'դադրի և Հայ—ազգը մասնաւոր պաշտպանութիւն մը ստանալով նիւթապէս և բարոյապէս կ'զարգանայ։

Արդ այս կարծեցեալ միութեան նկատմամբ մեր ըսելիքը սա երկու կէտերուն մէջ կամփոփենք։ 1. Ցուցնենք՝ մեր ազգ-

Եկեղեցիին ուրիշ Եկեղեցւոյ մը հետ ընելիք միութեան անկարեւոր ըլլալը։

2. Անոր անգործադրելի և ազգին բոլորովին վնասակար ըլլալը։

Մեր Ազգը իշխանութեան տէր ազգի մը հետ կրօնապէս միացնելու ջանացող ազգայնոց նպատակը կերեւայ թէ՝ Ազգին ամբողջութեան պահպանութեան համար մասնաւոր պաշտպանութեան իրաւունք մը ձեռք բերելով, Ասիոյ մէջ Հայ ժողովրդեան երբեմն կրած հարստահարութեան առաջն առնելն է։

Ենթադրենք թէ՝ Ազգը դիւրութեամբ անանկ պաշտպանութեան մը տէր եղաւ, մի՞թէ այս պաշտպանութիւնը կարող պիտի ըլլայ Ազգին մէջէն ըստ մեծի մասին մեր եկեղեցւոյն անկարգ վարչութեանը առթիւ կրօնական համոզմամբ պատահելիք հերձուածները իսպառ դադրեցնել։ Ամենևին ոչ։

Միթէ չե՞նք գիտեր՝ որ պապական կառավարութեանց երկիրներուն մէջ բողոքականութիւնը օր աւուր յառաջ կ'երթայ և բազմաթիւ պապականներ բողոքական կ'ըլլան, և իրենց կառավարութիւններն անգամ կարող չեն մի և նոյն իրենց դաւանած եկեղեցիէն բաժնուողները արգիլել և եկեղեցին կործանումէ ազատ պահել։ Եւ դարձեալ չե՞նք լսեր, որ բողոքական տէրութեանց մէջ ալ պապականութիւնը կ'քարոզուի, և պապական (խտրական) կրօնքը ընդունողներ անպակաս են։

Քանի որ դարուս քաղաքականութիւնը՝ կրօնքի ազատութիւնը ճշմարտապէս ընդունած է, կրօնական միութեան միջոցաւ յուսացուելիք պաշտպանութիւնը կրօնական համոզմամբ Ազգին ամբողջութեան ըսպառնացող հերձուածները չ'պիտի կրնայ երբեք Ազգին մէջէն դադրեցնել, ապա ուրեմն այս միութեան խնդիրը մեր Ազգին երբեք կարևորութիւն չունի։

Նոյնպէս սխալ է կարծել կամ հաւատալ թէ՝ այս տեսակ միութեամբ մասնաւոր կառավարութենէ ստացուելիք պաշտպանութիւն մը կարևոր է և պիտի ըլլայ Ասիոյ մէջ բնակող մեր ազգայինները այն բարբարոս և բռնաւորական գործքերէն փրկելու համար, որոց ներքև ատեն ատեն ճնշուած են և կ'ճնշուին հակառակ մեր Օսմանեան ազատամիտ և մարդասէր կառավարութեան կամաց։

Վեհափառ Սուլթանը իւր արդարասիրութեան դրօշակին և իշխանութեան տակը բնակող ամէն կարգի հպատակ ազգաց իւր անխտիր պաշտպանութիւնը չզլանար։

Նորին վեհափառութիւնը բանիւ և գրով խոստացած է թէ՝ ամէն կերպիւ կ՚հսկէ իւր հպատակաց անդորրութեանը և երջանկութեանը, և ահա այս խոստմունքը շարունակ պահած և արգեամբ ի գործ դրած է։ Մեր Օգոստափառ Սուլթանը անպարտ չ՚սեպէր այն պաշտօնատար կառավարիչները՝ որ իր մէկ Բայա ժողովրդին իրաւանց բռնաբարութեանը աչք գոցեն։

Արդարև անանկ տեղեր կ՚գտնուին՝ ուր մեր համազգի եղբայրները տակաւին հարստահարութիւն կ՚կրեն տեղական իշխանութեան բռնաւորական վարչութեանը պատճառաւ, սակայն շատ անգամ ըստ մեծի մասին Հայ ազգի չորպաճիներն ու առաջնորդներն են՝ որ իրենց անձնական շահուցը համար խեղճ ժողովրդին իրաւունքը կ՚բռնաբարեն կամ բռնաբարելու գործիք կըլլան։

Մեր Ազգին ներկայացուցիչներուն պարտքն է, որ նման հարստահարիչները կամ իրաւանց բռնաբարողները մեր Սուլթանին կառավարութեանը յայտնեն, որ պատրաստ է անմիջապէս այն արիւնարբու գազանային ճիրաններէն փրկել և հարստահարիչ ճնշող ճանկերէն ազատել իր հպատակներ և չարաչար պատժել և զսպել զանոնք, որ կ՚յանդգնին իր կամացը դէմ գործել, առիթ տալով օտար Թ. տէրութեան մը՝ որ մեր Թուրքաստանի բարեկամ և դաշնակից տէրութեանց դաշինքներուն առջև մեր Սուլթանին կառավարութիւնը ամբաստանել ջանայ։

Եթէ ըսուի « Ուրեմն ինչու հարստահարութեանց դէմ առ Բ. Դուռն հասած գանգատներն երբեմն անլսելի և անգործադրելի կ՚ըլլան, » Անշուշտ առիկայ իրեն պատճառներ ունենալու է։ Ըստ մեզ՝ եթէ հակառակ Կայսեր կամաց ժողովրդոց վրայ գործադրուած բռնաւորական եղելութիւն մը օրինաւորապէս Բ. Դրան հաղորդուի, անոր հատուցումը անտարակոյս չ՚պիտի կրնայ մերժուիլ մեր Սուլթանին կառավարութեան կողմանէ։

Սա յայտնի է թէ մեր վեհափառ Սուլթանին կառավարութիւնը իւր հպատակ ազգաց ժողովրդեան նիւթապէս և բարոյապէս

զարգացմանը նկատմամբ ունեցած փափաքին գործադրութեանը ճակելէն ի վեր, սկսան կամաց կամաց եղծումները վերջանալ և հարստահարիչներուն ձեռքէն քիչ՝ շատ գանգատները պակսիլ։ Եւ այսչափ փոփոխութեանց մէջ միթէ հաւատալու չենք, որ քիչ ժամանակէն մեր Թուրքաստանն ալ քաղաքակրթութեան կամ լուսաւորութեան այն աստիճանը հասնի՝ ուր կ՚գըտնուին այսօր Եւրոպիոյ քաղաքակրթեալ ազատասէր և արդարասէր տէրութիւնները։

Քանի որ կ՚տեսնուի թէ կառավարութիւնը այսչափ հոգ և խնամք կ՚տանի իրաւանց պաշտպանութեան և լուսաւորութեան համար, ուրեմն կրօնական միութեամբ այն երևակայեալ պաշտպանութիւնը կարևոր չէ երբէք մեր Ազգին։

Ի վերայ այսր ամենայնի զարմանք է տեսնել՝ թէ այս այլանդակ գաղափարն ունեցող ազգայինք կարծեօք ալ կ՚տարբերին իրարմէ։ Ասոնց մէկ մասը կ՚ջանայ՝ որ այս միութիւնը Հռովմէական (պապական) եկեղեցւոյն հետ ըլլայ, և միւս մասը՝ բողոքական եկեղեցւոյն, և միւս մալ՝ Ռուսական եկեղեցւոյն հետ։ Յայտնի կերևայ թէ՝ այս երեք ճիւղերը՝ ինչպէս կարծեօք, նոյնպէս և նպատակաւ իրարմէ տարբեր են։

Ազգը՝ յիշեալ եկեղեցիներուն հետ միացնելու ջանացող ճիւղերուն մէջ կան անանկներ՝ որ սոսկ իրենց անձնական շահամոլութենէն թելադրեալ կ՚ջանան իրենց նպատակը յառաջ տանիլ։ Եւ անանկներ ալ կան, որ ծուռ դատողութենէ և սխալ համոզմունքէ մը ստիպեալ պարզմտաբար կամ կուրօրէն՝ Ազգին նպաստաւոր և օգտակար կ՚սեպեն այս երազուած միութիւնը։

Անհաւասիկ այս երեք ճիւղերուն ալ իրարու դէմ ունեցած հակառակ կարծիքն ու նպատակը բաւական փաստ մը կրնայ ըլլալ թէ՝ այս միութիւնը երբէք չպիտի կրնայ յաջողիլ և գործադրուիլ։

Ենթադրենք թէ՝ մէկ ճիւղին ազդեցութիւնը միւսներէն աւելի զօրաւոր ըլլալով, յանկցնի իրեն նպատակ դրած եկեղեցիին հետ ազգը միացնելու պայմաններուն մէջ մտնել, սակայն ո՞վ կրնայ հաւատալ թէ՝ այն ճիւղը առանց մեծամեծ արգելքներու և դժուարութեանց պատահելու պիտի կարողանայ իւր նպատակին հասնիլ։

Մինչդեռ և ոչ մէկ ճիւղը առանց Ազգը վրդովելու չէ կարող այս միութեան ձեռնարկել, ուրեմն նորա գործադրութիւնը անհնար և միանգամայն ազգին ամբողջութեանը վնասակար է։

Դարձեալ ենթադրենք թէ՝ յիշեալ երեք ճիւղէն մէկը այս միութեան ձեռնարկութեանը մէջ յաջողի և Ազգ. սովորական խռովութեանց կամ պառակտմանց առիթ չտալով ազգին մեծամեծ չարիքներ չ՚բերէ, տակաւին այնպիսի խիթալի և վտանգաւոր վիհ մը կ՚բացուի ազգին առջև՝ որ առաջինէն աւելի ազգերնուս կորուստ կրնայ սպառնալ։ Այս վիհին ժամանակ ժամանակ ազգերնիս իր անդամներէն բազմաթիւ զոհեր տուած է։

Ռուբինեանց Թագաւորութիւնը կործանելէ սկսանելէ ի վեր հետ զհետէ և անկէ յառաջ Իտալիայ, Հունգարիայ, Բոլոնիայ, Նայլն, Նայլն գաղթող մեր համազգի եղբայրները թէ եկեղեցինին թէ կրօնքնին և թէ լեզունին ու ազգութիւննին քիչ միջոցի մէջ բոլորովին կորսնցուցին օտարաց խառնուելով, վասն զի մեր ազգը օտարաց խորամանկութեան շատ անգամ խաբուած է և կ՚խաբուի միամտաբար, « անոնք ալ մեզի պէս քրիստոնեայ են » ըսելով, ուստի և անանկ կրօնական միութիւնն ալ հարկաւ ամուսնական խառնակութիւն ալ պիտի բերէ իր հետ ի վտանգ և ի կործանումն ազգութեան։

Եթէ մեր ազգը կրօնական միութեամբ յարի ո և է եկեղեցւոյ, արդեօք իր եկեղեցական ազատութիւնն ու անկախութիւնը և իրաւունքները, լեզուն և ազգութիւնը պիտի կրնա՞յ ամբողջապէս պահպանել միացած եկեղեցւոյն ներքին խորամանկ նպատակին դէմ, այսինքն՝ ազգին սերունդը բոլորովին իր հետ խառնելով, ազգը կլլելու և Հայ անունը աշխարհիս երեսէն յաւիտեան ջնջելու համար գործադրուելիք բուռն հնարքներուն դէմ։ Բնաւ երբէք։

Քանի մը տարի յառաջ մեր ազգայիններէն մէկը Հնդկաստանցի Հայ վաճառականի մը հետ տեսութիւն ընելու բարեբաղդութիւնը ունենալով աս հետեւեալ հետաքրքրական հարցումը ընել կստիպուի թէ՝ — Ազգերնուս նկատմամբ Ռուսիոյ բռնած քաղաքականութիւնը ինչ կ՚նշանակէ —. Ազգերնիս մօտ ժամանակ իւր Կաթողիկոսական մայր Աթոռը Պարսից ձեռքէն հանելով՝

Ռուսիոյ պաշտպանութեան ներքեւ դրած օրէն ի վեր, Ռուսիոյ Կայսերաց միակ նպատակն եղած է, նախ՝ մեր հոգևոր և աշխարհական ազգայնոց սնափառութիւնը իբր գործի ոսկւոյ և պատուանշաններու միջոցաւ մեր Հայոց եկեղեցւոյն ազատութեան և անկախութեանը դէմ տիրապետական ազդեցութիւն մը ձեռք բերել, և յետոյ յուշիկ յուշիկ մեր եկեղեցին իր եկեղեցւոյն հետ խառնելով Հայ-Ազգութիւնը և լեզուն աշխարհիս երեսէն ջնջել ընդդէմ խղճի և արդարութեան։ —. Հարկաւ լսած էք՝ կըսէ՝ — Ռուսիան մեր դպրոցներուն մէջ անգամ ամէն ուսմունքէ առաջ իր լեզուն սորվեցնելը իբրև քաղաքական օրէնք սահմանելէ զատ, ամուսնական խառնակութիւն ալ մտցուցած է ազգերնուս մէջ, որն որ մեր այն կողմի հայրենաբնակ ազգայնոց կորըստեանը վիհ մը կրնայ ըլլալ, թէ որ այժմէն առաջքը առնելու համար պէտք եղած միջոցները ձեռք չառնուի — Եւ կ՚վերջացնէ խօսքը։

Սակայն մեր՝ և ո՛ և է քրիստոնեայ եկեղեցւոյ մէջ առանց խտրութեան, փոխադարձ եղբայրական կամ Աւետարանական սիրոյ յարաբերութիւններ հաստատելու և քրիստոնէական ուխտն ու դաշինքը վերանորոգելու համար ցուցուած ջանքի և փափաքի մը դէմ ըսելիք մը չունինք, քանզի ատիկայ Քրիստոսի Ս. պատուէրն է, ուստի և բոլոր քրիստոնեայ ազգաց եկեղեցիք պարտական են նոյն պատուէրը յարգել և պաշտել իսկ, և Քրիստոսի սիրով և խաղաղութեամբ մէկզմէկու հետ եղբայրաբար վարուելու ջանալ, բաւական է որ Ս. Աւետարանը ընդունած և հաւատակից ըլլալով միմեանց, ամբողջապէս մէկմարմին և ընդհանրական եկեղեցի կ՚կազմեն Քրիստոսի, որ է կեդրոն միութեան, որուն իրաւաբանութեան աղբիւրն ալ Ս. Աւետարանն է։

Երանի թէ՝ Յիսուսի մեզի պատուիրած սիրովը միանայինք բարոյապէս ամենայն եկեղեցիք քրիստոնէից, որով կ՚վերնար քրիստոնէական երջանիկ աշխարհին վրայէն այն նախատինքը՝ որ սիրոյ և խաղաղութեան Աստուծոյն և պատուիրանաց զանցառութենէն յառաջ եկած է, ըստ այնմ թէ՝ «Զխաղաղութիւն թողում ձեզ . . . նոր պատուիրան տամ ձեզ . . . զայս

*պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս . . . այսու ծանիցեն թէ աշակերտք իմ էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս »։*

*Իսկ ո՛ և է եկեղեցւոյ հետ անկէ տարբեր միութիւն հաստատել և անոր համար ամէն մտածմունք, հոգ, ջանք և աշխատութիւն ի գործ դնելը, բոլորովին վնասակար է մեր ազգին և հակառակ Ս. Աւետարանին սկզբանց։*

*Անկէ տարբեր նպատակաւ միութեան գաղափար ունեցող ազգայինք ազգին վնասակար անդամներ կ՚ճանչնանք, և անոնց այս մասին ունեցած, թէ յայտնի և թէ գաղտնի ազգակործան խորհուրդն ալ կ՚հերքենք և կ՚մերժենք։*

*Այն է ճշմարիտ Հայը՝ որ կ՚սիրէ իր ազգը և իրեն նպատակ կընդունի նորա յառաջադիմութիւնը, լուսաւորութիւնը և երջանկութիւնը։*

*Ազգը կ՚յառաջադիմէ իրեն ընդունած և վեհափառ Սուլթանէն վաւերացած Ազգ. Սահմանադրութեան անթերի գործադրութեամբ և ինչպէս մեր լուսաւորչական Ս. Եկեղեցին է ազգին յոյսն ու նեցուկը և միութեան կապն ու հոգին (Տես և Մասեաց. Աղաւ. թիւ 13 Բ. տարի, ապրիլ, 1856) այնպէս և Ազգ. Սահմանադրութիւնը։*

*Իւր Ազգին յառաջադիմութեանը համար աշխատող Հայը՝ նորա տրամադրութեանցը համեմատ շարժողն է, ուստի անոնք են անկեղծ և ճշմարիտ ազգասէրները, որ իրենց մտացը մէջ երբէք ազգաւէր և խարդախ գաղափարներու ծնունդ չտալով կ՚ուղղեն իրենց նպատակն ու սիրտը դէպ ի Ազգ. ամբողջութեան և յառաջադիմութեան նպաստաւոր համարուած միջոցներուն յարատև գործադրութեանը։*

*Ազգը պէտք չունի երբէք այն կարծեցեալ պաշտպանութեան, ինչպէս ցուցուցինք. նա պէտք ունի միմիայն անանձ տաղանդաւոր և փորձառու անձանց, որոնք իրարու աջակցելով կարող ըլլան իմաստուն առաջնորդութեամբ կառավարել զայն և պաշտպանել նորա ամբողջութիւնն ու իրաւունքները ջնջելու նպատակաւ նենգաւոր թշնամեաց մեքենայած բուռն հնարքներուն դէմ։*

*Փոխանակ վնասակարին հետևելու, ջանանք օգտակարին և միմեանց տնաշինութեան հետևիլ և ազգութիւնը ամբողջացնելով զայն ամուր ձեռօք պահպանել և մարդկութեան աշխարհին առջև*

հաստուն և բարեկիրթ և յաջս ամենեցուն սիրելի ազգ մը ըլլալ և քառնալ այն նախատինքը թէ « Հայը վայ է և անմիաբան » մէկդի ձգելով իրնէ անտի մեր տունը կործանող այն չար և վատ կիրքերը, նախանձութիւնն ու սնափառութիւնը, և խելքերնիս գլուխնիս ժողվելով խնքզինքնիս կառավարել աշխատինք. Ափսոս, որ տակաւին մեր ազգը սկզբունքի տէր չէ.

Մեր ազգային կառավարութեան համար փորձառու գլուխներու իմաստուն քաղաքականութեան տարերքը տակաւին տկար է ազգերնուս մէջ, աշխատինք զայն զօրացնելու, ունենանք ակադեմեայ մը, զօրացնենք մեր դպրոցները սնուցանելով անոնց մէջ քաղաքագիտութեան այն տարերքը, որ դարուս բոլոր քաղաքակրթեալ ազգաց յառաջադիմութեան և լուսաւորութեան առաջնորդող զօրութիւնն է :

Մինչդեռ լուսաւորութեան մէջ յարատև յառաջադիմութեան ընթացք մը կարող է որ և է ազգ՝ քաղաքակիրթ ազգաց կարգին մէջ դասել, ուրեմն ազգը կառավարողները՝ ազգին այն մըշտատև յառաջադիմութեան ընթացքին մէջ մտնելուն աշխատելու են, որով կարենայ ճանչցուիլ դարուս քաղաքականութենէն իբրև իւր իրաւանց պաշտպանութեան տէր, զանոնք ճանչցող և պաշտպանելու կարող Ազգ և քաղաքակրթեալ Հայ ժողովուրդ ընդ պաշտպանութեամբ Նորին կայսերական կառավարութեան մեր Օսմանեան տէրութեան.

Դ.

Պատճէն նամակի Վեհափառ Կաթողիկոսին ամենայն հայոց Ներսէսի 5դ ի առ փոխարքայն Կովկասու Վորոնցով գրեալ ի մայիս 11, 1851 ամի. ընդ համար 137. Թարգմանեցաւ ի Ռուսերէնէ.

Առ Ձերդ պայծառափայլութիւն.

Ողորմած Տէր՝

Կնեազ Միխայէլ Սիմէնովիչ.

Ձերդ թղթակցութիւն ի 28 անցեալ մարտ, ընդ համար 332, որում հետ ղրկած էիք Դավրիժու Ժէնէրալ հիւպատոս Ստատ-

կիր Սովէտնիկ Անիզկովին գէկուցման պատճէնը. Ս. ԲարԹուղիմէոս Առաքելոյն վանքը յԱտրպատական, կառավարուԹենէն Կ. պոլսոյ Պատրիարքական կառավարուԹեան տեսչուԹեանը յանձնելու մասին ունիմ պատիւ պատասխանել. Կ. պոլսոյ պատրիարքը ի սեպտեմբերի 1850 ամի, ինձ իմացուց Թէ Օսմանեան տէրուԹեան անհնազանդ Քիւրտերը ըստ մեծի մասին տիրելով այն վանքին անխնայ կընեղէին Հայերը և Ասորիները. և Թէ Օսմանեան սպարապետները յաղԹելով նոյն Քիւրտերուն, գերի ըրին անոնց տոհմապետները և իրենց ընտանեօք հանդերձ առաքեցին ի Կ. պոլիս: Օսմանեան բանակապետը լսելով Ս. ԲարԹուղիմէոսի Վանաց գիւղօրէից հասարակուԹեան ձայնը, զանոնք Քիւրտերու հարստահարուԹենէն ազատելու համար Թղթակցեց Բ. դրան հետ, ինչպէս որ Դուռն ալ առաջարկեր է պատրիարքին, որ յիշեալ վանքը և Հայերը ընդունել բարեհաճի իւր կառավարուԹեան ներքև. Թէպէտ և պատրիարքը այս մասին կըհարցնէ իմ կարծիքս, բայց ես մինչ ցարդ չը պատասխանեցի. այն պատճառաւ որ բոլոր Օսմանեան հպատակ Հայոց՝ Էջմիածնայ ԿաԹողիկոսուԹեան վերաբերուԹիւն ունեցող եկեղեցական գործերը այս կէս դարուս մէջ նախկին ԿաԹուղիկոսներուն անհոգուԹեանը առԹիւ մնացած են անկատար և առանց շարժման.

Իմ Ռուսաստան գտնուած ատենս, չունէի երբէք տեղեկուԹիւն ԿաԹուղիկոսներուն կառավարուԹեանը վրայօք. բայց 1846 Թուականին Էջմիածնայ վանքը դառցած ժամանակս կառավարուԹիւնը գտի ամենախեղճ վիճակի մէջ. մինչև անգամ Օսմանեան Հայ Թեմերէն անբարեկարգ, անտարբերուԹիւնը անոնց մտքէն հանած էր կառավարուԹեան կարգը. և չէին կրցեր պահել իրեն առջի բարելաւուԹեան մէջ: Այս վիճակին մէջն են և ուրիշ Թեմերը Հայոց. Աստրախանու, Տփխիսու, Ղարաբաղի, և Շամախի.

Այս անկարգուԹեանց առաջքը առնելու համար ես կարևորուԹիւն ունէի գործունեայ և հաւատարիմ կղերի մը. բայց չէի կրցէր գտնել. ինչպէս բազում անգամ գանգատէր եմ և Ձերդ պայծառափայլուԹեան. ուստի պարտաւորեցայ 1846ի վերջերը

երթալ Տփխիս և զբաղիլ քննութեան գործոց Տփխիսու թեմի. ուր ես յընթացս 18 ամսոց հազիւ կրցայ բանալ եղեալ թերութիւնները. և այս քննութեան պտուղն ալ ան է, որ այս օրս Էջմիածնայ վանքը մասամբ ինք ունի իր մինչև ցարդ կորսնցուցած արդիւնքը։

Գործունեայ կղերաց պակասութեանը պատճառաւ բոլոր ի Տաճկաստան գտնուած Հայոց թեմերը իմ տեսչութենէս զուրկ են մինչ ցարդ, և չի ալ պիտի շտկուին. քանզի որպէս Էջմիածին, նա ևս ի Կ. պօլիս չկայ կարող քաղաքագէտ և բանիբուն ու միանգամայն հաւատարիմ վարդապետ մը, որոնց կարելի ըլլար յանձնարարութիւն ընել, և ոչ ոք ալ չբաղձալով հաստուցանել այսպէսները, Հայոց թեմերը և եկեղեցական գործերը անշուշտ պիտի ունենան իրենց տարտամ վիճակը:

Բայց չեմ կրնար չյիշել մէկ հոգեորական մը Սարգիս վարդապետ Ջալալեան, որ ծանօթ է ինձ իրեն բարի յատկութիւններովը, կարողութեամբը և հաւատարմութեամբը, որ արդ Աստրախանու թեմին քննութեանը գացեր է - կսպասեմ անոր վերադարձը՝ որ ղրկեմ ի Կ. պօլիս։

Անցեալ դարերուն մէջ գտնուեր են անանկ Կաթուղիկոսներ, որոնք իրենց ճիգը թափելով Ազգին ապահովութեանը և բարեկեցութեանը համար, կարող եղեր են Եկեղեցին և Հաւատքը՝ ազգաց կռապաշտութեան և բարբարոսութեան ատենները պաշտպանել, և մեծ աշխատութեամբ Օսմանեան Վեհափառ Սուլթաններէն և Պարսից Շահերէն հրովարտակներ ալ (Ֆէրման) ստացեր են. որոնց մէջ կըպարունակին Կաթուղիկոսութեան իրաւունքները և Եկեղեցեաց և Ազգին օգուտը. նաև Հաւատոյ մասին ազատութիւն։ Այս հրովարտակներուն պատճէնները կըսպատրաստուին առաջի առնել Ձերդ պայծառափայլութեան և յետոյ չպիտի գլանաք ըստ նախնի սովորութեան աղերսագրի հետ Ջալալեան վարդապետին պատգամաւորութեամբը ղրկել առ Վեհափառ Սուլթանն, հրովարտակներուն մէջ յիշուած իրաւունքները վերահաստատելու համար։

Ես յուսով եմ թէ Աստուծոյ ողորմութեամբը և ամենողորմած Թագաւոր Օգոստափառ կայսեր բարեյօժար հաճութեամբը իմ

աղերսս չըմնար առանց կատարման. և անտարակոյս եմ թէ անարգէլք կըվերահաստատուին Վեհափառ Սուլթանին կառավարութեան յանձնած ժամանակ, և ըստ հին ազգային իրաւանց ամէն Հայերը կըկուսակցին Էջմիածնայ Աթոռոյն հետ. որով կարող կըլլանք բարելաւցնելու ազգայնոցս և Եկեղեցեաց վիճակը։

Մնամ աղօթարար Ձերդ պայծառափայլութեան կենաց

ՆԵՐՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

## Ե.

Յիշեալ պարտքին պատճառը չէ թէ գայլ արաբացւոց բարբարոսութիւնը, (ասի սովորական դարձած խօսք մ'է. ըստ որում չէ լսուէր. ցարդ թէ օր մը արաբացիք կողոպտած ըլլան Երուսաղէմի վանքը) այլ մի և նոյն վանքին ընկերութեան (միաբանութեան) եղծումն էր և անկէ յառաջ եկած, որոնք զեխ շռայլութեան մէջ իյնելով վանքին պարկեշտութիւնը վեհանձնութիւնն ու հաւատարմութիւնը անգամ բարոյապէս կորսնցուցած և նիւթապէս ազգին գանձն ալ բարբարոսաբար կողոպտելով փճացուցեր և վանքն ալ յետին խեղճ վիճակի մէջ պարտքի ներքև ձգէր մէկ դի քաշուէր էին. սակայն վնասը և պարտուց ամենամեծ հոգը կրել Ազգը պարտաւորեցաւ և վանուց վրայ դիզուած ու ծանրացած ութն հազար քսակ պարտքը տուժել հարկադրեցաւ, վանքին գոյութեանն ու հաստատութեանը տէր և ժառանգ և նորա օգտին ու վնասին ազգին վերաբերեալ և նորա տնտեսութիւնն ալ ազգէն կախեալ ըլլալուն համար։

Որովհետև միաբանութիւնը ազգին կողմէն կազմուած ընկերութիւն մը ըլլալով, եղծման վտանգին հանդիպած ատեն, իսկոյն անոր դարմանին Ազգը հոգ տանելու տեղ անհոգութեամբ բարձի թողի ընելով, աւելի տեղիք տուած էր եղծման, ուստի հետ զհետէ բոլոր արդիւնք անխնայ և չարաչար ի վատնումն ի քանդումն և յաւերումն դիմելու ճամբայ գտէր էր։

Թողումք յիշել միաբանութեան այն իրար հալածելու հարըստահարելու դատաճանելու և զրկելու եղեռնային չարիքները, մինչև հազիւ թէ կրցաւ ազգը այն եղծմանց առաջքը առնուլ և վանքն ու նորա վարչութիւնը վերանորոգել և պարտքը հատուցանել յիշեալ Պօղոս Սրբազանին միջոցաւ, առանց բարիք մ'ալ վայելելու բաց ի վնասէն:

Եւ թէպէտ չենք կարէր ուրանալ անկէ յառաջ կարգ մը պարկեշտ և բարեբարոյ նախկին անձնուրաց միաբանութեան ազգօգուտ աշխատութիւնք ի մասին ազգ. ստացուածոց պահպանութեան — որոց անձնուէր ջանից փետուրներովը պարծիլ և յլազրաց միջոցաւ նա ազգին պարզամիտները խաբել սովրած է արդի միաբանութիւնը — բայց ինչ օգուտ՝ երբ ազգը իբրև անզգայ նախկին միաբանութեան յարգը չ'գիտնալով փոխանակ աջակցելու նորին աշխատանաց, յարատևելուն անգամ անփոյթ մնաց, ուստի և պատահած եղծումներէն իրեն հասած վնասները խիստ շատ և կրկնապատիկ ըլլալն ալ անուրանալի է, որոնք ըստ մեծի մասին ընդհանուրին թշուառութեանը շարժառիթ մը կրնան համարուիլ, յափշտակիչ ձեռքերուն տակը կողոպտանաց մատնուած ըլլալուն համար, որով թէ ազգին և թէ վանքին գործերն ալ գրէ թէ միշտ յետախաղաց ընթացեր է և կընթանայ ի վնաս ինքեանց:

Ահա կարգ մը միաբանութիւն պահպանող, տնարար և շահածող, և կարգ մ'ալ քանդող, կողոպտիչ ցրուող ու վատնող, բայց ազգը միշտ վնասն ու հոգը բարցող գտնուած է և կ'գըտնուի ցարդ առանց խրատուելու և փորձառու ըլլալով իր ընչից տէր լինելու:

Իսկ երբ սահմանադրութեան միջոցաւ փոքր իշատէ իր մինչ ցարդ ունեցած վնասները զգալով, մէկ կողմէն իր ազգ. տնտեսութիւնը կարգադրել և իր բոլոր սեփհականութեանց օրինաւոր տէր ըլլալով ազգայնութիւնը բարուոքել կուզէ ազգը, միւս կողմէն ճիզվիթ՝ մեքենաշարժութիւնը առանց եղծմանց աւելի ոյժ տալու և իր նպատակին հասնելու դիտմամբ ազգ. իրաւանց դէմ ելլելով կ'հնարէ ըսել թէ «Երուսաղէմի վանքը ազգէն կախում չունի, անկախ է» (սքանչելի ճիզվիթութիւն.). որպէս զի

արդի միաբանութիւնը ինքնագլուխ և ազատ մնալով ի պատասխանատուութենէ, ըստ քմաց և հաճոյից շարժի և գործէ համարձակ ինչ որ կիրքը կ՚պահանջէ, որով և ազգ. ստացուածք ընդհանուրին շահուն ծառայելու տեղ մասնաւորաց կրից զոհուին և ի կորուստ մատնուելով փճանան ի վտանգ վհատութեան և յուսահատութեան ազգին.

Ով կրնայ իրաւանց և պարտուց սկզբունքը ուրանալ կամ իրաւագիտաց աչքէն թագուցանել: Վասն զի ամէն ազգ. հաստատութիւն, որ բուն իսկ ազգի մը ստացուածքն ու ժառանգութիւնն է, միևնոյն ազգին կսեփականի, նորա տէրն ու ժառանգը ըլլալուն համար. ուստի և նորա պահպանութեան ու հսկողութեան պարտքն ալ իրեն կվերաբերի և հետևաբար նորա տնտեսութեան կամ կառավարութեանը իրմէ կախում ունենալը՝ իր՝ անժխտելի իրաւունքներէն մէկն է։ Ճիզվիթութիւնը ասի վարագուրել կջանայ։

Արդ որովհետև Երուսաղէմայ վանքն ալ մեր ազգ. երևելի հաստատութիւններէն մին և բուն իսկ ազգին ստացուածքն ու սեփհականութիւնն է, ուրեմն նորա տէրն ու ժառանգն ալ ինքն է. ուստի իբրև տէր և ժառանգ՝ նորա հսկողութիւնը պահպանութիւնն ու կառավարութիւնն ալ իրմէ կախում ունի։ Ասիկայ իր անանկ մէկ բացարձակ իրաւունքն է, որ ոչ կրնայ բռնաբարուիլ և ոչ կրնայ ժխտուիլ։

Ենթադրենք թէ յիշեալ վանքը և Երուսաղէմի մեր ազգի բաժին տնօրինական սրբազան տեղիքը բուն իսկ ազգին ստացուածքն ու ժառանգութիւնը չեն, և անոնց տնտեսութիւնն ու պահպանութիւնն ալ իրեն չվերաբերիր և վանքին կառավարութիւնն ալ իրմէն կախում չունի. ուրեմն ո՛ր իրաւունք և պարտիք բռնադատեցին ազգին այնքան դարերէ ի վեր նոցա պահպանութեան և պիտոյից փոյթ տանել և պարտքերը հոգալ և մինչև անգամ յափշտակութենէ ազատել՝ երբեմն պատահած օտար յարձակմանց ալ դիմադրելով։

Հարկաւ ազգ. իրաւունքն ու պարտիքն էր որ հարկադրեցաւ ազգը և բռնադատուեցաւ մինչ ցարդ ամէն կերպով իր խնամքն ու այցելութիւնը չզլանալ. ուստի և պէտք եղած ա-

տէնն ալ քննիչներ խրկել և հաշիւ տոմար պահանջել պարտաւորեցաւ. Նն. Նն. այս խնդիրը ինքնին լուծեալ է և աւելի ապացոյցներու կարօտութիւն չունի։ Կթողումք յիշել նաև արժանայիշատակ տէր Պետրոսեան կոբէցի Մամիկոնեան Զաքարիա սրբազան պատրիարքի վախճանին՝ ազգէն հաշիւ տոմար պահանջուիլը և միաբանութեան կողմէն 1846. բոմանցի Գէորգ վարդապետին հաշիւներուն հետ Երուսաղէմէն Կ.-պոլիս գալը. Նն։

Ն. ահա այ առթիւ յիշեալ վարդապետը պօլիս հասած ատէն՝ Օրթագիւղի քարոզիչ Յօհաննէս եպիսկոպոսին ալ պատրիարքութիւնը յափշտակելու նպատակաւ գործադրած ջանքերը տեսնելով և ազգ. սնտուկին ալ 120000 ղուրուշ տարեկան տուրք խոստանալը, ևայլն. Մատթէոս պատրիարքէն լսելով և իմանալով, անմիջապէս պէտք եղած միջոցները ձեռք առաւ և յիշեալ տուրքին որոշումը ընդունելով, պատրիարքութիւնը Աթոռակալ փոխանորդ Երուսաղէմացի Կիրակոս եպիսկոպոսին վրայ հաստատուեցաւ։ Իսկ յիշեալ Յօհաննէս եպիսկոպոսը յետոյ Ճանիկ ամիրային միջոցաւ գէթ Երուսաղէմի փոխանորդութիւնը յափշտակելով յաջող առթի մը կսպասէր պատրիարքութիւնը ձեռք ձգել. որպէս զի ձմռան խոստացածները աշնան հատուցանելու կարող ըլլայ. ինչպէս իրօք քիչ միջոցի մէջ իր այս փափաքին ալ հասնիլ յաջողեցաւ։

Վասն զի 1850. մայ. 24. Կիրակոս սրբազանը յանկարծ վախճանելով կարողացաւ պատրիարքութիւնը յափշտակել և միաբանութեան ամբողջութիւնը խանգարել և վանքը տակն ու վրայ ընելով զոհել իր կրից նախորդաց այն ամէն աշխատանքն ու ազգաշահ նպատակները։ Այս մասին փոքր ինչ լուսաբանած է միհրդատեան Պ. Թադէոսին 1861, ի լոյս ընծայած Նկարագիր վարուց եւ ընթացից Յ. Պատրիարքին Երուսաղէմի՝ (որուն արարքները յիրաւի մեր ազգին նկատմամբ աղէտ մը կհամարուին) համառօտ պատմագիրը [1]. և օգոս. 23. հրա-

[1] Յիշեալ գրքին գողին վրայ Նկարագիր աղէտից Երուսաղէմի վերնագիր մ՚ալ աւելցուցեր էր առանց նախազգուշակելու թէ՝ միայն այն վերնագիրը Մասիս լրագրի արդարացի մեկնաբանութեանցը պատճառաւ պիտի ըլլայ.

տարակած Էրկու խօսք վերնագրով յայտարարութիւնն ալ ուշադրութեան արժանի է։

Արդ ըսել է թէ ազգին սանձը իրենց ձեռքը եղած ատեն Երուսաղէմի վանքը և նորա կառավարութիւնը ազգէն կախեալ և միաբանութիւնն ալ իբրև ազգին բարեյօժար կամացն ու հրամանին միշտ հնազանդ և հպատակ կ'ճանչցուէր, ինչպէս իրօք ալ այնպէս էր. ուստի և ինչ որ հրամայէին՝ կրնային կատարել տալ յանուն ազգ. իրաւանց. սակայն երբ ազգը իր բազմադարեան թմրութենէն, գէթ փոքր ինչ սթափելով կ'փափաքի օրինաւորութիւնը յարգել և ազգ, առ տնին անտեսութիւնը բարւոքել, և ազգին կառավարութեան ղեկը ուղղեցոյցի միջոցաւ վարել. և ըստ օրինի ընդհանուր գոյից ու հաստատութեանց, նաև անշարժ և շարժական կալուածոց տեսչութեանն ու մատակարարութեան և բոլոր եկամտից հաշիւներուն քննութեան և հսկողութեան հոգ և խնամք տանել, անիրաւ կ'դատուի և յափշտակիչ ու կողոպտելու նպատակ ունեցող կհռչակուի (զարմանալի ճիզվիթութիւն)՝։

Երանի թէ ազգը մինչև ցայսօր իր ընչից և հաստատութեանց տէր եղած ըլլար. քան թէ տգիտութեան ձեռք անտարբեր և անզգայ մնալով, մանաւորաց փուճ կրից զոհ եղած ըլլար բոլոր եկեղեցեաց և վանօրէից մէջ հաւաքուած ազգ. հարստութիւնը ի վնաս և ի վտանգ հանրութեան ։

Եւ տես այս մասին Պօղոս և Զաքարիա քաջարթուն հովիւները տեղեակ և ծանօթ ըլլալով ազգին անհոգութեանը պատճառաւ ազգային վատնումներուն, իրենց հեռատեսութեամբը թէ ազգ. արկղը սեղանակապտութենէ ազատ պահելու և թէ ազգին դրամագլուխ մը ճարելու նպատակաւ 1842 թուին նուիրակ առաքեցին Երուսաղէմէն ի հնդիկս գաղատացի Իսահակ Ծ. վարդապետը. և պատրաստի եղած դրամէն զոնէ 250000, լիրայ հաստատ պանգայի մը մէջ շահու դնելու խորհուրդը յղանալով, թղթակցեցան Կալկաթայի ազգայնոց հետ՝ Յովսէփ Աղաբէկեան իշխանին միջոցաւ։

Նոյնպէս և վեհափառ Ներսէս Սրբազան Կաթողիկոսին գրեցին թէ՝ ի նպաստ ազգ. դպրոցաց յանուն Երուսաղէմի՝ հաստատ

պանգայ մը շահու դնելու համար 250000, ոսկի եւ միտք ունին խորհել իրեն. յորմէ գոհունակութեան պատասխան ալ ընդունեցին թէ՝ ինքն ալ կանուխ մտաբերած է այդ բարենպատակ խորհուրդը, և թէ՝ արդէն յանուն Երուսաղէմի վանաց փոքր ինչ դրամ շահու դրած է. միայն թէ քիչ մը երկայնամիտ ըլլան իրեն մինչև իմացնէ իրենց կերպը միջոցներն ու պայմանները։

Ձենք կրնար զանց ընել հոս Աստուածատուր Եպիսկոպոսին Կ. Պօլսոյ Պատրիարք նստելով, իբր ի նպաստ Իւսկիւտարու Ս. Կարապետ Եկեղեցւոյն շինութեան՝ սուտ պահանջելը, որուն խնդիրը թէ և կատարեցաւ, բայց իբրև ընծայ խրկած մատանին ետ դարձուելով ալ՝ հետևեալը գրուեցաւ իրեն թէ «ընծայ չարաշուքի, մրջիւնակեր պատարագի,» և թէ բարոյական եկեղեցւոյն շինութիւնը՝ յառաջ է քան զնիւթականին, եայլն։

Այս երջանիկ միջոցներն էր՝ որ շնորհիւ Զաքարիա ազգասէր Պատրիարքին՝ Երուսաղէմ բնակող ազգայինք ալ արուեստից և վաճառաշահութեամբ սկսեր էին զարգանալ, նոյնպէս և ուսումնարանն ալ գիտնական Մուրատ վարժապետին միջոցաւ ուսման և գիտութեան պարտիզին մէջ յառաջաքայլ ծաղկիլ։

Ոհ երբ նախախնամութիւնը ասանկ չնաշխարհիկ հայրապետներ պարգևած էր մեզ, Ներսէս Կաթողիկոս և Զ. Պատրիարքի նկատմամբ, Ազգն ալ դեռ ի քուն տգիտութեան մթագին գիշերի մէջ թմրած կ'ննջէր։ եղուկ և ափսոս, ինչ ազնիւ և հեռատես ու բարձր խորհրդածութիւն, ինչ գովելի և ազգօգուտ նպատակ, և որպիսի սիրալիր յարաբերութիւն առ միմեանս։

Սակայն միշտ բարեաց հակառակ բանսարկու թշնամին սատանայ (տգիտութիւնը), ի վրէժ քինու չարանախանձ ատելութեանն՝ գրգռեալ ընդ դէմ լուսոյ իմաստութեան, հիմն ի վեր տապալել փորձեց ազգին համար պատրաստուած այն բարիքները. վասն զի յիշեալ նախապատրաստութիւնները՝ ազգին սանձը յափշտակող և ազգը իրենց ձեռքը իբրև մեքենայ գործիք և խաղալիք ընողպարոնները իմանալով, փոխանակ գոհ ըլլալու, յարձակեցան գազանաբար և սպառնալեօք Զ. Պատրիարքին դէմ և սուտ պահանջքեցին անկէ։ Երբ յորդորական նամակաւ մը

ցուցուցան իրենց թէ «առանց երախայ մը դեռ ծնած չէ, այլ սոսկ խորհրդածութիւն մէր, իսկ երբ այդքան դրամ գումարուի, անշուշտ իմաց պիտի տրուի իրենց »: Բայց երբէք չ՚համոզուեցան, և բողոքական տիտղոսով զանի հասարակութեան առջև անուանարկ ընել եւ վշտացնել աշխատեցան: Ասոր ալ չ՚բաւականալով՝ վանքին մէջ նորին սրբազնութեան ձեռօք հաստատուած տպարանէն ի լոյս ընծայուած և ուխտաւորաց շատերուն իսկ ձրի բաժնուած՝ նախնեաց մատենագրերն անգամ յանիրաւի հաւաքել տալով, անարգաբար այրեցին, որով խեղճ սրբազանին դիւրազգաց ու փափուկ սիրտը դառնութեամբ լցուցին՝ Աստուածատուր Պատրիարքին օրով, ուստի խղճալի սրբազանը այնպիսի նախատանաց չ՚դիմանալով և «տակաւին Ազգս մահուան քունի մէջ կ՚քնանայ եղեր, սխալեցայ» ըսելով, սաստիկ տմօթոյն կաթուածի մը ենթակայացաւ, և ջրգողական ախտն ալ վրայ հասնելով վախճանեցաւ 1846. մայ. 7. ի հասակի վաթսուն ամաց ի սուգ համակելով համայն ողջամիտ միաբանութիւնը:

Ահաւասիկ Ազգին տգիտութենէ անհոգութենէ և անկանոնութենէ մինչև ցարդ կրած անհամար վնասները, որով մեծամեծ կորուստներ ըրած է և կընէ, ևս և ախտաւոր կրից զոհուած են և կը զոհուին իւր տաղանդաւոր և անձնուէր պաշտօնեայներն ալ, ինչպէս սոյն յիշեալ Զ. Պատրիարքը (որ յաջորդ ալ ընտրուած էր Ն. Ս. Կաթողիկոսին. և այդ մասին նշան ալ ստացաւ Ռուսաց տէրութենէն 1844,) որուն ազգօգուտ ջանքերն ու նպատակները անհետացած են իր հետ այսօր ի վնաս ազգին:

Վասն զի եթէ ազգը կանոնաւոր Երեսփոխանութիւն և կեդրոնական օրինաւոր վարչութիւն ունենար՝ ինչպէս նոյն ինքն հանգուցեալ սրբազանը կ՚բաղձար և ժամ յառաջ ազգին արթնութեանը կ՚սպասէր. ազգին շահուն համար ունեցած խորհուրդները առաջարկել և ազգին գործադրել տալ կ՚վստահէր, առանց արգելքներու սպատահելու և չար կրից հանդիպելով ի զուր զոհուելու. կամ քիչ մը աւելի բացայայտ խօսելով, եթէ ազգը մինչև ցայն վայր արթուն գտնուէր և անկանոնութեան ու միապետութեան գազանային ճիրաններէն իր օձիկը ազատած

ըլլար, պատրաստ էր յիշեալ Սրբազանը նաև ուխտաւորաց նուէրներէն ժողովուած ու հոլեցուցած 17000, հօխայ արծաթ և ոսկիէն զատ, մարգարիտ և ակնեղինայ աւելորդներն անգամ ազգին կարևորութեանը համար դարձեալ դրամագլուխ մը ունենալու ծառայեցնել։

Եւ յիրաւի խնկ քաջ. եթէ այսուհետև ազգին ներկայացուցիչները սահմանադրապէս ազգին ստացուածքին տէր կանգնելով, բոլոր ելումուտքը չ'կեդրոնացնեն եւ տարին միանգամ ընդհանուր հաշիւ չ'ներկայացնեն հասարակութեան, այլ և դրամագլուխ ալ ճարելու հոգ և ջանք չտանելով հասարակութենէն միայն լոկ ստակ հաւաքել ակնկալեն, թող չտարակուսին թէ՛ կարող պիտի չըլլան երբէք ազգ. տնտեսութիւնը ըստ օրինի բարւոքել, և դպրոցներն ու վանքերը բարեկարգել և ազգին զաւկները ուսման և գիտութեանց ասպարէզին մէջ մտցնել, որով միայն պիտի կարողանայ ազգը սնանկութիւնն ու չքաւորութիւնը իր վրայէն թօթուելով մօտալուտ վտանգներէն ազատուիլ, և յառաջադէմ զարգանալ։

Եւ հիմա այս մասին եթէ հարկն ալ պահանջէ, մինչև եկեղեցեաց և վանօրէից աւելորդ զարդերն անգամ հաւաքել և շահուդնել և կամ հաստատ եկամուտ ճարել, ազգին պարտքն է։ Վասըն զի ինչ օգուտ ունին այն խորշերը բանտարկուած և ժամանակ առ ժամանակ թէ օտար և թէ ընտանի աւազակաց ձեռքով կողոպտուած, կամ ո՛ և իցէ կերպիւ փճանալու ճամբայ գտած արծաթեղէն և ոսկեղէն և զոհարեղէն զարդերը, քանի որ ազգը այսօր դրամագլուխ մը և օրինաւոր հաշիւ տոմար չունենալով խիթալի կացութեան մէջ կ'հեծէ կ'տառապի կտագնապի և կ'ճնշուի անմտաբար։

Արդարև այն բաները մեր ազգին նկատմամբ Աստուածպաշտական ջերմեռանդութենէ գոյացած և յառաջ եկած են և ի փառս Աստուծոյ միայն նուիրուած, իբրև արտայայտ իմն նշան Աստուածսիրութեան, ի զարդ վայելչութեան Ս. եկեղեցւոյն. և ի պահանջել հարկին դարձեալ ի պէտս շինութեան և նորոգութեան եկեղեցեաց կամ վանօրէից կ'գործածուին, ինչպէս շատ անգամ։ Բայց քանի որ ամենէն առաջին և գլխաւոր Աստուածսիրու-

բանգիր եղաւ, և թէպէտ ոմանք այս կողմերն ազգային պաշտօններու կարգուած են՝ բայց աւելի շատերն են որ թափառական և աստանդական երերուն և տատանեալ կ'շրջին ի ցաւ մեր սրտի ։

Սա ճշմարիտ է թէ Ս. Երուսաղէմայ միաբանութիւնը անկէ յառաջ ալ վտանգաւոր ժամանակ մը ունեցաւ. բայց սա ալ ճըշմարիտ է և բոլոր ազգին ալ ծանօթ է թէ՝ նախկին Կ. Պօլսոյ Պատրիարք Անդրիանուպօլսեցի Պօղոս Սրբազան Հայրը՝ զմիաբանութիւնը այն վտանգէն ազատեց. յիշեալ արժանայիշատակ վեհափառին ջանքովը Ազգ. ժառանգական ստացուածքները վերըստին ձեռք բերուեցան և ուսումնարան ու տպարան հաստատուելով, և միաբանութեանն ու Ս. Աթոռին ներքին և արտաքին բարեկարգութեանը վերաբերեալ իմաստուն կարգադրութիւններ ըլլալով, միաբանութիւնը գրէ թէ նոր ոգի, նոր ոյժ առաւ ։ Վերջապէս այն ատեն ազգը անանկ ակնկալութիւն մը առած էր թէ՝ սա միաբանութիւնը մեծ յառաջադիմութիւն մը և նշանաւոր օգուտներ պիտի ընէ ազգին . . . ։

Բայց դժբաղդաբար իրերը հակառակ վիճակի մը հասան՝ ներկայ կառավարութեան տակ այն ամէն յոյսերն անհետ ըլլալէն զատ, իրերը նոյն վիճակին մէջ ալ չ'մնալով այն աստիճան վատթարացան՝ որ հիմա Ս. Աթոռը՝ ցաւօք սրտի կ'ըսեմ, զահավէժ կործանման մը եզերքն եկած հասած է ։ Կառավարութեան սոյն արդի վիճակը յառաջ բերող պակասութիւններուն ինչ ըլլալն ու ինչ պատճառներէն յառաջ գալը՝ հոս լռութեամբ կանցնինք. միայն իրերուն վիճակը նկարագրենք, յորմէ կառավարութեան ինչ և որպիսի ըլլալը ինքնին հասկցուի :

Սրբազան Հայր, Ս. Երուսաղէմայ արդի որպիսութիւնը մօտէն ուշի ուշով և անկողմնակալ աչքով դիտողը՝ մէկէն սա բաները պիտի տեսնէ ։

Պիտի տեսնէ նախ՝ թէ մենք Երուսաղէմի մէջ գտնուող բոլոր ազգերուն և բոլոր պաշտօնական անձանց մեր ազգին վրայ ունեցած սէրը համակրութիւնն ու համարումը իսպառ կորսնցուցած ենք, և ասիկայ գրեթէ ամէն բանի մէջ մեր ազդեցութեան տկարացած կամ մանաւանդ բոլորովին վերցած ըլլալէն յայտնի կերևի ։ Անոնք հիմա իրաւամբ Երուսաղէմայ Հայոց միաբանու-

իւնը ու անոր կառավարութիւնը անկարգ և անգլուխ խումբի
ը տեղ դրած են։ Մենք հոն տղգ մը ներկայացնելու և նորա
րաւունքն ու շահերը պաշտպանելու պատիւը չունինք. քան-
ի այժ բաներն ընելու կարողութիւնը բարոյապէս կերանցու-
ած ենք։

Երկրորդ՝ Ներքին վիճակին գալով՝ պէտք տեսնէ թէ՝ Ա-
Աթոռին և միաբանութեան յաջորդութիւնը վերջանալու վտանգի
մէջ է. քանզի եթէ ներելի է ըսել, և արդարև սրտի ցաւով կը-
ենք զառանցեալ իշխանութիւն մը՝ որ իր անխորհուրդ և անբան
՝անոյքը միայն գիտէ . . . սասանկ միաբանութիւն մը ինչպէս
րնայ միապետական դրութեան տակ առանց ուղեցոյցի՝ կառա-
վարութեան ղեկը ուղղեցնացութեան մէջ պահել. անոր կրօնա-
յան բարոյական և ուսումնական պիտոյքն ու յառաջադիմու-
թիւնը ինչպէս կրնայ հոգալ. մանաւանդ որ տեսչութեան
կամ մատակարարութեան մը ամենէն հարկաւոր տաղանդաւոր
և փորձառու տարրները լուծուած են. ծերակոյտ, խորհրդակա-
նաց ժողով, աթոռակալ փոխանորդ, աւագ թարգման. նայլն.
ասոնց և ոչ մէկը կայ։

Երրորդ՝ միաբանութեան ուրիշ մէկ կարևոր մասին մէջ, որ
ընչից մատակարարութիւնն է, անկողմնասէր դիտողը պիտի
տեսնէ մէկ կողմէն հաստատուն եկամուտից վիճակի և կանոնաւոր
հաշուէտումարի մը պակասութիւն, և որ ամենէն ցաւալին է վան-
քին հաստատուն եկամուտ ձեռք բերելու որոշման դէմ ներհակութիւն.
մէկալ կողմանէ գրեթէ կամակոր շռայլ վատնութիւն մը տիրած
է ի վնաս ազգին, որ վերին հսկողութեան մը պակասութենէն
կը յառաջանայ, այնպէս որ խիստ դիւրին է մակաբերել՝ թէ
հիմա միաբանութիւնն ու վանքը կողոպտանաց և յափշտակու-
թեան ձեռք մատնուած անտէրունչ ամկապետութեան մը ճիշտ
մանութիւնը առած է, իրաւաբանութեան դէմ հալածմունք և
հրզվիթ. սպառնալիք . . . այնպէս որ ազգասիրական աշխատու-
թիւնը անգամ արժէք չունի։

Չորրորդ՝ ուսումնական ու կրօնական մասին գալով պիտի
տեսնէ թէ՝ ուսումնարանը խափանուած է, տպարանն անգործ և
քեալ, հոգևոր պաշտամունք. սրբարանին բարեզարդութիւն.

երաժշտութիւն. մեր ազգի բաժին հայրենաժառանգ սրբազան տեղեաց չքեղութիւնն ու հոգացողութիւնը բարձի թողի. հիւանդանոց չկայ. քաղաքի ժողովրդոց դաստիարակ չկայ. մանկունքն անխնամ. հիւանդք անկարեկից. վերջապէս կապ միաբանութեանն լուծեալ իւրաքանչիւր անհատից ապագան վտանգաւոր և բոլորովին երաշխաւորութենէ զրկուած է. ասոնց ամէնը վանքին կործանման արտայայտ նշաններն են, եթէ այժմէն ասոնց առջևը չառնուի։

Ահաւասիկ սրբազան Հայր, տխուր եղելութեանց ցաւալի նկարագրութիւնը, որոնք Ս. Երուսաղէմայ միաբանութեան մէջ ամէն անաչառ դիտողաց աչաց առջևը այնպէս յայտնի ու զգալի կերևին. ինչպէս անոր նիւթական պատերն ու հոյակապ գմբեթը։

Ազգին ընդհանուր կամքէն յառաջ եկած ու զանի ներկայացնող Երեսփոխանական դրութեան տակ, որով դուք՝ սրբազան Հայր, կրօնական և քաղաքական ժողովներով, ազգին նիւթական ու բարոյական շահուն վրայ հսկելու, անիկայ պահելու ու պաշտպանելու բարձր ու նուիրական պարտաւորութիւնը հասած էք, այսուհետև ձեր ուշադրութեան ղէկը այս բազմադարեան երևելի ազգային հաստատութեանը վրայ դարձնելու և անոր բարոյապէս խարխալած, բայց նիւթապէս տակաւին ամուր ու հաստատուն գոյութիւնը առողջ ու կենդանի ոտից վրայ կանգնեցնելու խնամքն ու պատիւը ձեզի կիյնայ:

Ի վերջոյ աս ալ կ'իմացնենք թէ միաբանութեան ողջամիտ ու անոր ամբողջութեանը նախանձախնդիր մասին կողմէն սոյն անձը ազգ. Սահմանադրութեան հիման վրայ Ս. Աթոռոյն բարեկարգ կառավարութեանը նկատմամբ կանոնագրութիւն մը յօրինած ու գրի առած է. որն որ նոյնպէս ձեր ուշադրութեանը յանձնելու պատրաստ եմք (1)։

Ներքին համոզման և զգացմանս առթիւ և նուիրական պարտաւորութենէ իսկ շարժեալ ասոնք խորին խոնարհութեամբ յայտնելով, ոչ թէ իբրև սովական, այլ իբրև եկեղեցական

(1) Որուն առաջին մասը. Արշալոյս լրագրի միջոցաւ հրատարակուած է թիւ 638. դեկ. 17. 1860:

անձ և ազգ. անգամ ձեր սրբազնութեան ուշադրութիւնը կ՚ըստիպուիմ հրաւիրել. ուստի իբրև 'ի պաշտօնէ նախագահ ազգ. ժողովոյ բարեհաճեսջիք նոյն այս խնդիրն առաջարկութիւնս ազգասէր տեարց նախաւէրուն ներկայացնել։

Մնամ խոնարհ յարգանօք ձեր բարձր սրբազնութեան.

ՅԱԿՈԲՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ
ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

Նախկին Ազգ. քարոզիչ
Ս. Աթոռոյն Երուսաղէմի:

1860 հոկտ. 9.
Ի Կ. Պոլիս:

---

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### ԱՌ ԼՈՒՍԱՒՈՐՉԵՐԱՄ ՕՐՀՆԵԱԼ ԼՐՈՒԹԻՒՆ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ

Յուլիս 18 Թուականով մեր Արժանապատիւ եղբայր Իսահակ վարդապետը նոր յայտարարութիւն մըն ալ հաներ է։ Անոր խորագիրը կարդալը բաւական է ինչ ոգւով գրված ըլլալը հասկընալու։

Այս խորագիրը կըցուցընէ թէ իր միտքը Ազգին օգտակար ճշմարտութիւն մը յայտնել չէ, այլ ճշմարտութիւն մը յայտնելու եկած անձ մը անտանարկ ընել ժողովուրդին առջև. որպէս զի ժողովուրդը յարգ և արժէք չիտայ անոր խօսքերուն և իրաւասութեան։

Այս սխալ դատողութեան ձախորդութիւնը գիտնալով՝ հարկ չիկայ անոր վրայ խօսք ընել. ուստի աւելի շնորհակալ կըլլանք մեր Արժանապատիւ եղբօրը այս երկրորդ յայտարարութենէն՝ քան թէ կըվշտանանք. վասն զի այս յայտարարութեամբ ինքն ալ կօժանդակէ մեզի՝ հաստատելու թէ՝ դուրսէն արժանաւոր Արքեպիսկոպոսի մը Երուսաղէմի Աթոռին Պատրիարք ընտրուելուն դէմը նզովք չիկայ. և թէ սուրբ եկեղեցին Հայաստանեայց իր եկեղեցական պաշտօնէից մէջ այս կերպ և ասոնց նման խտրութիւններ երբէք չընդունիր, որուն ապացոյց է և կանոնն ալ, որ «Թէ յարտաքուստ և թէ ներքուստ» ըսելով, ներսինին ու դրսինին մէջ խտրութիւն չէ դրեր։

Մեր թէ առաջին և թէ երկրորդ յայտարարութեան առաջ բե-

րած փաստերուն դէմ փաստ մը չգտնելով, մեր եղբայրը «ասկէ առաջ հաստատեցինք» կըսէ նզովքին գոյութիւնը. և այսչափով գոհ կըլլայ առանց յիշելու՝ թէ մեր երկրորդ յայտարարութեամբը իր «հաստատեցինք» ըսածը՝ նոր փաստերով ջնջված էր:

Չէինք յուսար որ մեր կրկին յայտարարութիւնները և Իսահակ վարդապետ եղբօրը նախնթաց յայտարարութիւնը ընթերցողները՝ տակաւին ուրիշ ապացոյցներու կարօտին, համոզուելու համար թէ՝ դուրսէն արժանաւոր անձ մը Պատրիարք ընտրուելուն դէմ նզովք չիկայ։

Ցիրաւի մեր նախնի Սուրբ Հարք և Հայրապետք կանոններ և նզովքներ դրած են, հաւատոյ և կրօնի վերաբերեալ իրաց վրայ, զորս պարտաւոր ենք երկիւղածութեամբ յարգելու. բայց այսպիսի խնդրոյ մը մէջ նզովքի խօսք մտցունել ուզելը նախնեաց դէմ անիրաւել ըսել է։

Այս շինծու նզովքին կարգէն չէ՞ նաև այն համբաւեալ նզովքը, որպէս թէ բնիկ Երուսաղէմացի մը չկրնար Ս. Երուսաղէմի միաբան և Պատրիարք ըլլալ. բայց հանգուցեալ Կիրակոս սրբազանը բնիկ Երուսաղէմացի չէ՞ր, որ իր արժանաւորութեամբը կրցաւ Պատրիարք ըլլալ Ս. Երուսաղէմի։

Դարձեալ կըսվէր թէ՝ նզովքով արգելուած է, որ Ս. Աթոռոյն Աւագ լուսարարը երբէք չկրնար Ս. Երուսաղէմի Պատրիարք ըլլալ։ Ուրեմն ինչպէս համարձակեցաւ արդի միաբանութիւնը վերջին Սրբազանին վախճանէն ետև Լուսարարապետ Գէորգ Եպիսկոպոսը Պատրիարք ընտրելու համար խնդիր մատուցանել Ազգային Վարչութեան։

Ըսել է որ այս նզովքներն ալ վերոյիշեալին պէս անհիմն և շինծու խրտուիլակներ են շահադէտ անձինքներէ հնարուած, և մեր արժանապատիւ եղբօրը պէս անձանց ձեռքը՝ պարզամիտները վախցունելու և իրենց նպատակին ըստ պիտոյից ծառայեցնելու գործիք եղած։

Մեր Արժ եղբայրը և իրենպէսները պէտք է գիտնան, որ այսուհետև ժողովուրդը խաբելու և խաբէութեան կոյր գործիք ընելով մեքենայի պէս գործածելու ժամանակն անցած է։

Մեր Արժանապատիւ եղբայրը լաւ համոզուելով թէ՝ դրսէն արժանաւոր եպիսկոպոսի մը Պատրիարք չըլլալու, կամ թէ այդ տեսակ նզովքի մը գոյութիւնը չըպիտի կրնայ ապացուցանել, ուստի այն խնդիրէն փախուստ տալով՝ մեր անձնականին դէմ զինելու փորձ է ըրեր. ցուցընելով թէ մենք բոլոր միաբանութեան վճռովը մերժուեր ենք եղեր միաբանութենէն.

Մենք մինչև ցայսօր չգիտէինք այս բանը, վասն զի 1860 նոյ. 25, ի Պօլսոյ վերադառնալով, երբ դեկտեմբեր 18 հասանք ի Յոպպէ, մինչև ցայս վայր Յոպպէու վանքը նստած՝ արժանապատիւ Տեսչին հետ մէկտեղ եղբայրական սիրով իմ եկեղեցական պաշտօնս կը կատարէի, Ս. Պատարագ կը մատուցանէի, և ոչ ոք բան մը ըսած էր մեզի. կերևի որ այս գաղտնի մերժումը նեղ օրի մը գործածուելու համար մեր Արժանապատիւ եղբօրը երևակայութեան մէջ միայն կայ եղեր։

Կափսոսամ մեր Արժանապատիւ եղբօրը բռնած այս նպերելի ընթացքին, որ խնդիրը անձնականի փոխելով, համեստութեան և պարկեշտութեան դէմ մեր պատիւը կոտրելու դիտմամբ դժբաղդաբար խեղճ ու ողորմելի միաբանութեանս ալ բարեսէր վարքը արատաւորել ժպրհեցաւ՝ բարոյական սկզբանց խաչավարժ ըլլալով. բայց այսու ամենայնիւ կրկին մեր փառքը աւելցուցած ըլլալուն համար՝ այս անարգանքն ալ շնորհակալութեամբ ընդունեցինք և կընդունինք։

Մեր միտքը ուրիշ բան չէր, եթէ ոչ՝ միայն ճշմարտութիւն մը յայտնել, և բարեսէր հասարակութեան խիղճը հանդարտեցնելով՝ միաբանութեանս ալ պատիւը պաշտպանել, Ազգին բարեսէր կամացը ամենայն պարտաւորութեամբ միշտ հնազանդ ըլլալը իմացնելով՝ և ոչ թէ անձնական խնդիրներ յուզել Ազգին գայթակղութեանը առիթ տալով, վրդովել և խռովեցնել զանի՝ մեր արժանապատիւ տէր Իսահակ եղբօր պէս՝ և կարծեմ թէ այսպիսի բաները աններելի մեղք մը եղած ըլլալուն տարակոյս չունինք, որն որ ընթերցասիրաց անաչառ դատողութեանը կը յանձնեմ։

Մենք մեր անձին դէմ եղած թշնամանքի մը, անպատուութեան փոխարինութիւն ընելու՝ ոչ սովորութիւն ունիմք. և ոչ

իսկ արտօնութիւն. ուստի մենք, ոչ ինքզինքնիս հրապարակաւ արդարացնելու կաշխատիմք, և ոչ մեր հակառակորդաց՝ թէ յայտնի և թէ գաղտնի ազգավնաս ընթացքները երևան կը հանեմք, և ոչ մեր Արժանապատիւ եղբօր և նմանեաց անվայել վարմունքները ի հրատարակութիւն կուտամք, և չեմք կամիր բնաւ անոնց ամենուն գործքերը անպատիւ կերպով նշաւակել, որ պատիւ մը երբէք չեն բերեր մեր բոլոր Եկեղեցականաց դասուն և կրօնաւորական պարկեշտութեան. քանզի այս բաները մեր միտքէն դուրս է և խոհեմութիւնը կը բծաւորէ անձնական խնդիր յարուցանել և հրատարակել. իսկ մեր Արժանապատիւ եղբայրը ճարպիկութիւն մը բանեցնել կամելով իբրև սպառնալիք իրաւասութեան մը դէմ, անմիջապէս անձնական խնդիր մը ձեռք առաւ գալեց. բայց մենք անոր փոխարէն պարտաւորեցանք խոհեմաբար Ազգային օրինաւոր Վարչութեան ատենին բողոքելու. ուստի, անոր կը դիմեմք և անկէ կը խնդրեմք մեր պատւոյն նախանձախնդիր ըլլալ և արդարապէս դատ և իրաւունք ընել։

Մենք թէ և մերժուած ալ ըլլանք՝ ամենևին ոխակալութեամբ կամ շահու և փառաց ակնկալութեամբ չեմք համարձակիր մեր միաբանակից եղբարցը պակասութիւնները երևան հանել, այլ ամենայն խոնարհութեամբ կ տանիմք մեզի դէմ եղած թշնամանքներուն, իբրև երեսուն ամաց ծառայութեան փոխարէնը. և եթէ բողոքեմք Ազգային իրաւարար Ատենին ալ, մեր անձնական պատւոյն նախանձախնդրութենէն աւելի Հայաստանեայցս Ս. Եկեղեցւոյ և Ս. Երուսաղէմի Աթոռոյն պատւոյն նախանձախնդրութեամբն է, որոնց պայծառութեանը համար ուխտած եմք մեր անձը նուիրել. ուրեմն այս վերջին խօսքերովս,

Մնամ միշտ աղօթարար ի դիմաց միաբանութեանս ողջամիտ մասին, և հաւատարիմ անձնուէր պաշտօնեայ սիրելի Ազգիս։

1861 յուլիս 19. — Յ. Վ. Զ.

Ի Կ. Պօլիս

## Է.

*Ամենապատիւ Սրբազան Տէր եւ վսեմաշուք Անդամք ազգային կեդրոնական վարչութեան։*

*Եթէ անհրաժեշտ պարտք են իւ րաքանչիւր անհատից յանուն ազգութեան վանօրէից բարեկարգ պայծառութեան իբրև ուսմանց և գիտութեանց վառարան և նոցա բարեխնայել ազգօգուտ յառաջադիմութեան Թեկն ածել, որչափ ևս առաւել եկեղեցական անձի մը։*

*Նուաստս ի տղայ տիոց փափաքող լինելով գնալ յԵրուսաղէմ և ի կարգ միաբանութեան գտանիլ, և զոր ինչ ուխտեալ մը նուիրական պարտք են՝ առնել, արժանացայ այդմ. և փոյթ էր ինձ ի զարգացումն և ի բարեկարգութիւն Ս. Աթոռոյն։*

*Մեր վարդապետական Ս. կոչման առաջին տարիները ցաւ ՚ի խոր սրտիս զգացի, որ այնպիսի երևելի ազգ. հաստատութիւն մը, նիւթականին կարող և այնպիսի ժառանգութիւն մը, մեծամեծ բարիքներ կրնայ յառաջ բերել. սակայն իւր հսկող գլխոյն անհոգութեամբը օր քան զօր յետադիմել և բարոյապէս կործանումը և քանդիլ սկսիլը տեսնելով, և մակաբերելով իսկ թէ այդպիսի ընթացքով ազգօգուտ ծառայութիւն մը չունենալէ զատ. գոնէ քիչ շատ բանիբուն և իմաստուն նեցուկներ ալ չպիտի կրնայ ունենալ ապագային համար. (վասն զի վարժարանն ալ խանգարեալ և լոկ անուամբ և եթ կպարծի, և մանաւանդ Աթոռին զանձն ալ ընդ վայր ի զուր կվատնուի. և այն միայն ի փառս իւր յամառ գլխոյն և կրից,) և հետևաբար տեսնելով թէ մեր տկար ձայնը՝ որ ի բարեկարգութիւն և յառաջադիմութիւն առ նորին հանգուցեալ Յօհաննէս պատրիարքին առեանն, բազմիցս կրկնուելով երբէք լսելի պիտի չըլլայ. վասնորոյ ի նուիրական պարտաւորութենէ ստիպեալ 1856. յունիս 26. իմ հայրենի քաղաքս Կ.-պօլիս գալով դիմեցի առ ազգ. գերագոյն ժողովն. և Ս. Աթոռոյն և միաբանութեան հասած վնասակար ընթացքը և անհոգութենէ առաւել վատթարանալու ճամբայ գտած վտանգը և եղծումը՝ նորին բարձր սրբազնութեան Յակոբ պատրիարքի հօրն հասարակաց. և ժողովա-*

կամ անզգամաց ծանուցանելով, արժան դատեցին և որոշեցին յիշեալ Ցօհաննէս սրբազան պատրիարքը Երուսաղէմէն ի Կ. պօլիս հրաւիրել Ս. Աթոռոյն ցաւալի վիճակին վրայ Նորին սրբազնութեան հետ՝ խորհրդակցելով հարկ եղածը տընօրինել։

Մեր այս խնդիրը՝ վեհափառ Տէր, և մեծապատիւ տեարք, մեր տենչն ու փափաքը թէպէտ բարեկարգութեան համար էր, յօգուտ և ի փառս ազգին, բայց չունեցաւ արդիւնք մը, վասն զի պատրիարքը կուսակցութիւն գտնելով յամառեցաւ ոգիտաբար ի Պօլիս գալ և ազգին ներկայանալով հրահանգ մը ընդունել Ս. Աթոռին բարեկարգութեանը համար։ Ուստի անյոյս մնալով ի բարեզարդութենէ Ս. Երուսաղէմի վանուց, վերադառնալ չյօժարեցայ։ և միջոցէ մը ետքը Խարբերդու առաջնորդական պաշտօնին թէպէտ անարժան, այլ յԱզգէն կանչուած ըլլալով, վեց եօթն ամաց հետէ Խարբերթի և շրջակայ ազգայնոց հոգևոր և մարմնաւոր ծառայութեանը անձամբ չափ վաստակաբեկ եղէ մինչև ցհէտս, և ասկէ ամիս մը յառաջ տեղապահ սրբազանէն ընդունած հրամանին համեմատ հարկադրեցայ թողուլ պաշտօնս և դիմել առ կեդրոնական վարչութիւն սիրելի ազգիս։

Ապաքէն սրբազան Հայր. և մեծապատիւ տեարք. քանի որ ազգային սահմանադրութիւնը ի շնորհս Օսմանեան առատագութ Կայսեր վաւերացեալ բարուոքապէս գործադրիլ սկսաւ. դուք՝ որ ճշմարիտ նախանձախնդիր էք ազգութեան փառաց, և քանի որ ազգէն կոչուեր էք, ըստ սահմանադրութեան ազգ. գործերը և զազգն իսկ կառավարել, անշուշտ և ի բարեկարգութիւն Ս. Յակոբեանց վանուց Երուսաղէմի ջանադիր ըլլալու առաւել պարտականութիւն ունիք, վասնորոյ սիրելի է ինձ ներկայիւս առ մեծապատուութիւն ձեր դիմել և այս փոքրիկ առաջարկութիւնը ներկայացնել. որպէս զի մինչև ցարդ ունեցած առաջնորդական պաշտօնս բաւական համարելով, բարեհաճիք վերադառնալ նուաստիս ի Ս. Աթոռն ի գիրկ հոգևոր ծնողին իմոյ յԵրուսաղէմ. ուր փոխադարձ երդմանս ուխտը յարգելով գտանիլ ի շարս միաբանութեան, յորմէ անբաժանս

եմ ցարդ. որով և ի պայծառութիւն Ս. ուխտին և ազգօգուտ ջանից լինել աջակից (¹)։

Մեծայոյս եմ թէ այսուհետև ի շնորհս ազգասիրութեան ձեր արժանաւոր գլուխ մ'ալ ընտրուելով բարեկարգութիւնք կատարեալ մասամբ յօգուտ ազգին։

Արդ' սրբազան Հայր և մեծապատիւ տեարք, բաղձալի է ինձ յոյժ եթէ տարածել փութայք ձեր սոյն բարեհաճութիւն' ոչ թէ միայն նուաստիս վերայ, այլ և ի գրկաց Ս. Աթոռոյն ինքնակամ ցրուեալ միաբան եղբայրակցաց ևս. որով մեծապէս կ'մխիթարէք և շնորհապարտ առնէք զանարժանութիւնս, ըստ որում և նոքա իրաւունք և պարտիք ունին ըստ ուխտին իւրեանց կատարել, յորմէ նոցա զուրկ մնալն ազգին վնաս բերէ։

Կամ որպէս և եմս բարօրութեան ազգիս միշտ սրտափափաք։

ԱՐԻՍՏԱԿԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

1863 դեկ. 13. ի Կ.—Պօլիս։

---

# Ը.

Առ ամենապատիւ Յակոբ եւ Սարգիս Ազգախնամ արքազանս.

Ձեր անհրաժեշտ պարտականութիւնը մեծ ու նուիրական լինելով, հարկ ի վերայ կայ, որ ամենայն անցնուիրութեամբ ճշմարտութիւնը յարգէք ու պաշտպանէք նմա միշտ աջակցիլ

---

(¹) Սոյն եպիսկոպոսն ալ բուն իսկ Երուսաղէմի միաբանութենէ, և նորա ամուլ և յետադէմ ընթացից և եղծմանը պատճառաւ վանքէն հեռացող միաբաններէն մէկն ըլլալով, և կարծելով թէ' ազգը ամէն ազգ. գործերէն յառաջ սահմանադրութեան միջոցաւ սոյն ազգ. հաստատութեան բարեկարգութեանը ձեռնամուխ ըլլալու և զանի իր արդի եղծումէն ազատելու կամք և հաճութիւն և նորա համար խորհելու անգամ ժամանակ ունի. ուստի ստիպուեր է իւր մինչև ցմահ անբաժանելապէս վանքին (ազգին) ծառայելու համար ըրած երդման ուխտը կատարելու նպատակաւ վերոյգրեալ խնդիրը առաջարկել ազգին. չէ նէ' անկէ հեռի մնալը իրեն աւելի շահաւոր և հոգեկեցոյց ըլլալուն և երդման մասին ալ արդէն իւր խիղճը հանդարտ և ազատ և ուխտադրուժ չսեպուելուն ալ աներկբայ եղած ըլլալը յայտնի է, ինքնակամ վանքէն հեռացող և նորա դարմանէն յուսահատ միւս ( միաբան եղբայրակցացը նման, թէ և ազգին մէջ աւուր հացի անգամ կարօտ ալ մնայ, քանի որ յիշեալ վանքը բարբարոս խեղճ վիճակի և խիթալի կացութեան մէջ կգտնուի . . . սակայն ալ անշուշտ ժամանակը պիտի յայտնէ։

ջանաք, Թէև անիրաւութիւն նորա դէմ կանգնի և զանի ոտնհար ընել սպառնայ. դուք միշտ պարտական էք յանուն ճշմարտութեան խօսիլ, ճշմարտութեամբ գործել և Քրիստոսի սուրբ պատուիրանացը համաձայն Ձեր բանն այոն այո և ոչն ոչ լինի և մինչ ցվերջին շունչ աչառութենէ և խարդախութենէ հրաժարիլ և անիրաւութենէ հեռի կենալ պարտիք. ասի եկեղեցականի մը ուխտն ու հոգին ըլլալը անուրանալի է, ինչպէս ձեր սրբազան կոչումն ալ իսկ ձեր ուխտին և երդմանը համեմատ ձենէ ընթացք և գործք կպահանջէ։

Բայց դժբաղդաբար մենք ասոր հակադարձը կտեսնենք ներկայիս մէջ, որով և գայթակղութիւն օր ըստ օրէ աճելու վրայ է բոլոր եկեղեցականաց բռնած ընթացիցը համար. յիրաւի դուք կանցնիք կերթաք և ձեր գնացած ճամբուն հետքն անգամ կը կորսուի, այլ անտարակուսելի է Թէ՝ ձեր գործերը յաւիտեան պիտի մնան, և չարաչար պիտի յիշուին ապագային մէջ անշուշտ ի գայթակղութիւն համայն հայորդւոյն։

Սրբազան Տեարք, դուք որ Հայ կղերին ներկայացուցիչն էք, ձեզմով անոնց ալ ապագան այժմէն վտանգաւոր և գահավէժ դիրքի մը մէջ կգտնուի, մանաւանդ վանքերն ու վանական կրօնաւորք, որոնք այսօր իրենց նախորդաց ազգօգուտ նպատակէն շեղած ըլլալով խիթալի կացութեան և իրենց անձանց մասին ալ Թշուառ վիճակի մը ենթակայացած են. մէկ խօսքով միևնոյն վանքերը այսօր իրենց նշանակութիւնը կորսնցուցած են, և մեր աչացը առջև անոնք այսօր ծուլարան կամ ցուլարան կներկայանան իբրև ազգին մսապատակող եղեռնագործ խումբ մը մարդիկներու քարանձաւները. և վանականք իբրև ազգին կողոպտիչ ուտող և սպառող ցեցերը կամ տզրուկները։ Մեր յոյսը՝ վստահութիւնն ու համարումը վերցած է և արդէն մեր լուսաւորչական Ս. Եկեղեցւոյն և ազգին Թշուառութեանը միակ և գլխաւոր շարժառիթը կհամարուին համայն եկեղեցականք. որոնք ոչ Թէ ի մարդկանէ. այլ և յԱստուծոյ անարգուած են այսօր իրենց վատ ընթացքովը (Մաղաքիա. Բ.)։

Վանքերը վերծանութեանց Թանգարան և բարոյական ու մտաւորական զարգացմանց վառարան և իբր ընդհանուր դաստիա-

րսկումթեանց աղբիւրներ ըլլալու տեղ, ազգին սպանդարանը եղած են այսօր, և վանօրէից արտաքսած անհատները մէկ մէկ տինլիւ՝ որ անպիտան մոլիներ ըլլալով, ազգին չարագրգիռ և վնասակար անդամները կճանչնանք. յորոց մեր առաջին սրբազան հայրց վառ և բորբոք ազգասիրական ոգին սպառած, և գոգցես իսպառ ջնջուած է, և ազգը մինչև ցայսօր թէև անտարբեր աչօք կնայեր անոնց, սակայն այսուհետև այդ մասին ալ անտարբեր չպիտի մնամք, և պիտի քննենք ու աչքէ անցընենք ամէն այն ազգային հաստատութիւնները, և զանոնք բարեկարգելու պիտի աշխատինք. որչափ և խոչնդոտ արգելքներ ալ ունենամք մեզի դէմ. վասնորոյ և արդէն այս քննութիւնը չկատարած Երուսաղէմայ վանաց պատրիարքի ընտրութիւնն անգամ ապօրինաւոր և անվաւեր կհամարեմք: Ասի մեր ազգային ազատ և սեփհական իրաւունքն է. վասն զի ազգին կողմէն հաստատուած ընկերութեան մը, մանաւանդ նորա ամբողջութիւնը խանգարուած եղծեալ և ապականեալ ընկերութեան մը համար ընտրուելիք նախագահին մեր յանձնելիքը ինչ ըլլալը վերստին չքննած ու չգիտցած, ինչ պատասխանատուութիւն պիտի կրնանք պահանջել անկէ, և զանի Ազգային ո՞ր գործոցը պատասխանատու ճանչնանք,

Ահա ճշմարտութիւն մը, որուն առջև այնքան տագնապ՝ աշխատութիւն խոհր և բաժանում ձգելու և նզովք անգամ հաստատելու ջանքը, և Ազգ. անբռնաբարելի իրաւանցը դէմ խռովութեան և երկպառակութեան յարուցած մրրիկները ի զուր և երևակայական ցնորքներ են։

Արդ նախկին Պատրիարք Յակոբ Սրբազան, դու յամառ պարզամտութեամբդ ձեռնասուններէդ ազգատեաց վարդապետի մը ամբարիշտ ձեռքին մէջ միշտ խաղալիք ըլլալով և ի վաղուց հետէ դիւրահաւանաբար նորա անօրէն խորհուրդներուն հետևելով պատրիարքութեանդ ժամանակ ազգին գլխուն ամեն տեսակ չարիք և աղէտ բերեր կուտէր ես։

Ալ սթափէ, բայց մտքիդ աչքը. տես թէ այս օրերս ալ այն լոյոլայի չարահնար աշակերտը՝ ազգը պառակտելու և լուսաւորչական Ս. Եկեղեցւոյն առաքելադիր հիմունքը տապալելու հա-

մար՝ ինչպէս զքեզ սա խոր ծերութեանդ ատեն ճիզվիթութեան ամբարիշտ ձեռքն է մատնէր, ինչպէս զքեզ ազգային սահմանադրութեան դէմ յարուցանելով տուած հանդիսաւոր ստորագրութեանդ յարգն ու պատիւը քեզի իսկ ուրանար ընել տուէր. և ինչպէս զքեզ՝ բոլոր քրիստոնեայ ազգաց կեդրոնատեղի երուսաղէմի նման քաղաքի մէջ մեր ազգին ունեցած հռչակաւոր վանքի և Աթոռի մը անարժան և անպիտան մէկը ի նախատինս ազգաց պատրիարք ընտրել տալու դատապարտելի նպատակաւ անգոյ նզովք մը և մոլար վարդապետութիւն մը ընդունելու և հաստատելու մասնակից ընել կարողացեր է։

Թէ որ սովորական յամառ բնաւորութիւնդ մէկ դի թողլով ողջմտութեամբ խորհիս, դու ալ կ՚ստիպուիս խոստովանելու թէ անշուշտ ամենողորմ Աստուած քու տկարամտութեանդ նայելով քանի մը ամիս առաջ կաթուած հիւանդութիւնը իբրև վերին ազդարարութիւն մը քեզի եկաւ ալ նէ, թեթևցուց, որպէս զի վաղվաղակի զղջալով ապաշխարես և խեղճ ազգին վնաս և չարիք և քրիստոսադրոշմ լուսաւորչական անբիծ կրօնքին արատ բերելէն և նս Քրիստոսի հօտին գայթակղութեան առիթ և պատճառ ըլլալէն բոլորովին դադրիս։

Սարգիս Պատրիարք՝ հարկը կ՚պահանջէ՝ որ սրբազնութեանդ հետ ալ Լակոնական ոճով վայրկենի մը չափ յատուկ տեսութիւն մը ընենք և վերջին հրաժարական ողջոյնը տանք:

Գիտես, ազգին մէջ դեռ անանկ մարդիկ կ՚գտնուին՝ որ դէմքիդ գծագրութենէն գուշակելով կ՚ըսեն թէ՝ դու այնքան տկարամիտ մ՚ես, որ ինչ սկզբանց տէր ըլլալդ դու ալ չես զգար, և ինչ չարիք՝ որ գործես, գրեթէ այն չարեաց աւելի գործիք ես՝ քան թէ հեղինակ: Մենք այս կարծիքէն չենք։ Յիրաւի խիստ ապուշ երևցող դէմք մը ունենալդ չենք կրնար ուրանալ, բայց լաւ համոզուած ենք՝ որ դուն ցոփ կիրքերուդ գերին ես, դու չարութիւնը ազատ կամքով կ՚գործես, դու ապուշ երևոյթով մը մարդիկ խաբելու տաղանդն ունիս, դու խիստ առաձգական հաւատքիդ թոյլտուութեամբը անսանձ կիրքերդ յագեցնելու, որ և է միջոց լաւ կ՚համարիս, դու նպատակիդ ծառայելու յարմար ինչ առիթ որ դէմդ ելլէ, բնաւ չես փախցներ, դու սուտը՝ ջուրի

պէս կ'խմես և մատնութիւնը հացի պէս կուտես. դու ոչ անցեալէն խրատուիլ, ոչ ներկայէն պատկառիլ, և ոչ ապագայէն երկընչիլ գիտես . . . :

Սրբազան, քու գործդ Աստուծոյ է մնացեր, գիտցիր՝ որ կողմնակիցներուդ ալ ատելի պիտի ըլլաս, քանի որ հիմա իրենց պէտք ես, ուզածէդ աւելի զքեզ կ'շողոքորթեն, և երբ նպատակնուն հասնին, իսկոյն քեզնէ երես դարցնելով հօրդ ալ կը փորեն — Չարք միաբանին առ ի առնել զչար ինչ, յորժամ լըրանայ գործն չարութեան, անդէն գակաւ կապ միաբանութեան նոցա — կ'ըսէ Թէոդորոս.

Ուրեմն Սրբազան, գոնէ սա ունայն կենցաղոյս մէջ յաւիտեան կորսնցուցած անուանդ, պատուոյդ և ապագային փոխարէն՝ հոգւոյդ փրկութիւնը մտածէ, ալ մի յապաղեր անկեղծ սրտիւ զըղջալու, յամառ կիրքերդ ոտնհար ընելու և ինքզինքդ կատարեալ ապաշխարութեան տալու, որպէս զի մենք ալ քու ճշմարիտ զիղջդ ու ապաշխարութիւնդ տեսնելով մեծ գայթակղութենէ մը ազատինք և հոգւով մխիթարուինք:

Մենք Քրիստոսի հետևողքս, որչափ որ դու օրինաւորութիւնը և զմեզ լքար թողուցիր և զրպարտելով տէրութեան մատնեցիր ալ նէ, քեզի համար անյիշաչար հոգւով և ջերմեռանդ սրտիւ միշտ կաղօթեմք առ ամենողորմ Աստուած՝ որ քեզի զիղջ շնորհէ:

Ձեր ազգախնամ հայրութեան՝

Հաւատարիմ զաւակունք սահմանադրական
ողջամիտ Հայ - հասարակութեան:

Սեպտ. 1861.

## Թ.

*Բողոք մեծ զրպարտութեան մը դէմ,*

Մասիս լրագրին մէջ, Թիւ 548. օգոստ. 11, այլաբանօրէն տեսով նամակ մը կարդացինք Գ. Վ. Պառնասեանի ստորագրութեամբ Միհրդատեան Գ. Թադէոսին դէմ։

Մենք գիտէինք թէ՝ այլաբանօրէն կամ այլանդակ բանականօրէն խօսողն միայն Արեւելեան դարն եղած ըլլար, այլ ուրախ ենք որ ուրիշներ ալ կ'գտնուին եղեր։

Յիշեալ այլաբանը կ'ըսէ թէ՝ Սամաթիոյ Թաղին ժողովուրդը Միհրդատեանին Գատարագի մէջ Սըսոյ Կաթուղիկոսին անունը յիշատակելէն գրգռուէր է։ Ասով նամակագիրը (այլաբանութեամբ) կ'ուզէ ցուցնել թէ՝ Աստուծոյ ժողովուրդը իր եկեղեցւոյն գլխաւոր պաշտօնեաներէն Կաթուղիկոսի մը դէմ բողոքած ըլլայ և՞զանի իբրև օրինաւոր Աթոռ Հայաստանեայց եկեղեցւոյն ընդունած չըլլայ։

Ահա մենք այսպիսի զրպարտութեան կամ զրաբանութեան մը դէմ հարկադրեցանք բողոքել և կ'ըսենք թէ Հայ—Ազգը տէր և պաշտպան է միշտ իր Աթոռներուն. և ասոնց մէջ կ'ճանչնայ Ս. Էջմիածնայ մայր Աթոռը՝ Աթոռ Հայրապետական և գլուխ ընդհանուր ազգին և կեդրոն հոգևոր կառավարութեան ազգին։ Ուստի այն աւուր պատահած գրգռութիւնը՝ չէ թէ Տաթևացիին և Սըսոյ Կաթուղիկոսին անունը Գատարագի մէջ յիշելէն յառաջ եկած է, այլ հրաժարեալ Սարգիս Պատրիարգին անունը չյիշուելուն համար տէր Փիլիպոսին եղբօրը միայն պօռալ կանչուըռտելէն, կարծելով թէ ժողովուրդն ալ իրեն համամիտ պիտի գտնուի ի պաշտպանութիւն անուան հրաժարեալ Պատրիարքին, որուն զրպարտիչ և սոսկալի ազգամատնութեանը դէմ բողոքած է և կ'բողոքէ ազգին մեծագոյն սահմանադրասէր և ողջամիտ մասը։

Նամակագիրը աղէկ ըրած կ'ըլլար՝ թէ որ նոյն օրուան գէպքին վրայօք ստոյգ տեղեկութիւն մը առնելէն յետոյ ել-

լէր և իր այլաբանութիւնը կամ այլանդակ բանադրանութիւնը Մասիսի միջոցաւ ի տես ամենեցուն հրատարակել ջանար ։

Սահմանադրական Հայ-հասարակութիւն Սամաթիոյ ։

1862. օգոստ. 13.

---

Ժ.

*Բողոք առ Բ. Դրան կազմած առժամանակեայ ազգ. պատրիարքարանի մասնաժողովն ։*

Մասիս լրագիրը իւր 559 թուով պատրիարքարանի այսինքն Բ. Դրան կազմած առժամանակեայ Մասնաժողովին կողմէն տեղեկագրով մը Բ. Դուռը մատուցուած ազգ. ընդհանուր սահմանադրութիւն վերնագրով խնդրագրի մը, և Բ. Դռնէն թէզքէրէի սամիի, և անոր իբր պատասխան շնորհակալութեան տեղեկագրի մը օրինակները կհրատարակէ ։

Յիշեալ տեղեկագրին մէջ նախ՝ ըսուած է թէ, ազգային ընդհանուր մահսէրագրութիւնը ազգին հոգևոր և աշխարհական գլխաւորներէն կմատուցուի առ Բ. Դուռն ։

Երկրորդ՝ ըսուած է թէ՝ պատրիարքարանը փակող անձինք յանդուգն և քէշն ու աղէկը որոշելու անկարող մարդիկ ըլլալով, կայսերական կառավարութենէն անոնց յանցանքը ներուելուն համար մեծապէս շնորհակալ կըլլայ ընդհանուր ազգը՝

Եւ երրորդապէս աղերս եղած է թէ՝ ազգին բարեկարգութիւնը վերահաստատուելու մասին հարկաւոր սեպուած Բ. հրամանն ու շնորհքը ըլլուի կայսերական կառավարութենէն ։

Առաջինին պատասխանելով կըսեմք՝ թէ յիշեալ տեղեկագիրը և թէ մահսէրը ազգովին ընդունուած չկրնար ըլլալ, քանի որ մատուցուած մահսէրը ազգին Երեսփոխանաց ստորագրութիւնը չունի, այլ անցեալները Իւսկիւտար գումարուած — միաբանա-

կամ խմբակին — շարադրածն ըլլալուն, մի միայն մասնաւոր անձանց մահսէրը կկոչուի, ինչպէս որ նոյն իսկ տեղեկագրին ռուեսայի ռուհանիյէ վէ մէօթէպէրանի թարաֆընտէն խօսքերն ալ՝ ըսածնիս կհաստատեն, որ այս խօսքերը ազգին սահմանադրութեանը կամ իրաւանցը բոլորովին հակառակ և անոր դէմ մեծ հայհոյանք են։

Երկրորդին գալով՝ կպատասխանեմք թէ՝ պատրիարքարանը փակող անձինք՝ ոչ յանդուգն և ոչ ալ չարն ու բարին որոշելու անկարող մարդիկ, այլ ազգին բարեկամութեանը ցանկացող և անոր ընտիր մասը կազմող, ինքզինքնին գիտցող՝ արհեստաւոր (էսնաֆ) անկեղծ Հայեր են, որոնք բնաւ երբէք չեն ընդունիր այս մասին արդարակորով կայսերական կառավարութեան քով յանդուգն և յանցաւոր սեպուելով ներողութիւն գտած ըլլալնին, ազգին կամքին հակառակ՝ առժամանակեայ մասնաժողովին կողմէն տրուած տեղեկագրին միջոցաւ. վասն զի 1860, ի սահմանադրութեան քննութեան ուշանալը, և այն պատճառաւ ազգ. ներքին և արտաքին բոլոր գործերուն երեսի վրայ մնացած ըլլալը. և գլխաւորաբար Բ. Դրան Ցանձնաժողովին օր յառաջ ազգ. սահմանադրութեան Բ. Դռնէն առնուելու մասին ցուցուցած անհոգութիւնը տեսնելով՝ ստիպուեցան պատրիարքարանը երթալ և բողոքել անոնց դէմ, որոնք իրենց յանձնուած պաշտօնը ըստ արժանւոյն չկատարելով պարապ տեղ ժամանակ կանցնէին, որով պատճառ կըլլային մանաւանդ պատրիարքարանի պարտքը աւելի ծանրաբեռնելու. Թէպէտ և անոնք դարձեալ պատրիարքարանը մտան բազմեցան հակառակ ազգին կամաց։

Տեղեկագրին մէջի այս անհաճոյ խօսքերը թէպէտև բոլորին աւելորդ և անտեղի են. սակայն Բ. Դրան կողմէն պատրիարքարանը նստող մասնաժողովին ազգատեցութեան ոգին յայտնապէս կտեսնուի ամէն ազգասէր Հայու, և այն խօսքերը ազգայնոց գրչէ լսուիլը արդարև մեծ ցաւ է մեզ. որքան որ այս եպերելի ոգին յիշեալ ժողովին սիրտը նոր մտած չըլլալը տեղէն տեղէն փորձով ցուցուած է։

Իսկ երրորդին նկատմամբ՝ կպատասխանեմք թէ՝ ազգին բա-

րեկարգութեան վերահաստատուիլը այսպիսի խարդախ միջոցներով անկարելի է, մանաւանդ թէ քանի մը անձանց մէկ տեղ գալով երեսանց հաշտուիլը և ներքապէս դարաններ գործելը՝ այս ծանր խնդրոյն վերջ չկարէր տալ. և որ մեծն է՝ այս տեսակ ձախորդ և արհամարհելի տեղեկագիր մը և ռուքայի ռուհանիյէ վէ միւլքիյէրանի կողմէ Բ. Դուռը մատուցուած ազգ. ընդհանուր մահսէրագրութեան կեղծ անուան տակ գրուած խնդրագիր մը՝ չկրնար ազգ. փափաքելի միութիւնը և բարեկարգութիւնը հաստատել Թշուառ ազգերնուս մէջ։

Ասանկ ընելով կրկնապատիկ մեղադրելի կըլլայ պատրիարքարանի մամնաժողովը, մէկ մը խնդրոյն իսկութենէն դուրս ելլելով և իրաւութեան կերպարանքը փոխելով Բ. Դուռը խաբելուն. և մէկ մ՚ալ ազգին երկարատև երկպառակութեան պատճառ ըլլալուն համար։

Խաղաղասէր նախկին Յակոբ պատրիարքին և միաբանական ժողովոյն անդամոց ընելիքը՝ թէ սրտանց ազգին միութեանը և խաղաղութեանն ու բարեկարգութեանը անկեղծաբար փափաքող էին, և իրենց ըրածը ազգովին ընդունելու և արդիւնաւոր ըլլալու կամք ու փափաք ունէին, ուրիշ բան ընելու չէին, այլ տէրութեան ճանչցած ազգին Երեսփոխանական ընդհանուր ժողովը հրաւիրելով ի պատրիարքարան՝ հոն սահմանադրութեան Թշնամիները սահմանադրասէրներուն հետ հաշտեցնել, և այնուհետև Երեսփոխանաց, այսինքն ազգին ամէն մէկ անհատին ստորագրութեամբ խնդրագիր մը մատուցանել առ Բ. Դուռն՝ քննութեան առնուած կանոնին վերստին գործադրութեան հրամանագիրը միայն պահանջելու. և այն ժամանակ ռուքաա ի ռուհանիյէ վէ միւլքիյէրանի կողմէն եղած չէր ըլլար, այլ ստուգիւ ազգային ընդհանուր մահսէրագրութիւն եղած կըլլար, որով ազգին մէջ այն ցանկալի խաղաղութիւնն ու բարեկարգութիւնը կթագաւորէր. և նոյն իսկ ազգը տէրութեան ի նախնեաց մեզի շնորհած արտօնութեանցը համաձայն 1860, ին փափաքած սահմանադրութեան միջոցաւ ազգային գործերը կարգին կմտնէր ի բարելաւութիւն ազգին։

Հիմա տես թէ իրենց այս խարդախ ընթացքով ազգին և

նորա պատուոյն որչափ վնաս հասուցին․ զոր ակներև կտեսնենք առ տեղապահն ուղղուած թեզքէրէի սամիին մէջ։ Քանզի Թեզ-քէրէի սամին՝ մահզէրագրին պատասխանելով կ'աւետէ տեղապահին (աչքերնին լոյս) ըսելով թէ «կառավարութիւնը ազգին բարեկարգութեանը պէտք եղածը այս անգամ քննելով, արքունի օրինաց և կանոնացը և միւս ազգաց տուած կանոնին համեմատ կանոն մը յօրինելով պիտի շնորհէ ազգին»։

Մի թէ այս խօսքերով համոզուած և գոհ եղած է պատրիարքարանին տիրապետող առժամանակեայ մասնաժողովը և միաբանականը, թէ ազգին՝ այսինքն ընդհանուր հասարակութեան ընդունած 1860, ին սահմանադրութեան տէրը պիտի ըլլայ, որ կելլէ իբր ընդհանուր ազգին կողմէն այսպէս գիր կգրէ, որով թէ ազգէն և թէ նոյն իսկ իրենցմէ ընդունուած սահմանադրութիւնը՝ որպէս թէ տէրութեան կանոնաց և օրինաց դէմ և անհամաձայն եղած ըլլալ կկարծեցնէ․ ինչպէս իրենց [illegible]եալ խարդախ տեղեկագրութեան մէջ յայտնի կնշմարուի, և անոր խափառ ընչուելուն միայն իրենց պատճառ ըլլալը՝ դատողութեան տէր անձանց քով վերստին կյայտնուի ի մեծ ամօթ և նախատինս ինքեանց․․․»

Արդ գիտնալու են թէ՝ ազգին ողջամիտ մասը այսպիսի հնարքներուն և խարդախ գնացից չհամոզուիր և լուռ չկենար․ ազգին բռնաբարեալ իրաւանցը պաշտպան է և պիտի ըլլայ միշտ և չպիտի թողու երբեք՝ որ ազգին հարստահարիչներուն (միաբանական Ժ. խմբակ) դժոխային մեքենաներովը ազգը դէպ ի կորուստ շարժի։

Կցաւիմք որ՝ յիշեալ նախկին պատրիարքի միաբանս. ժողովին ներկայ գտնուող քանի մը բարեսիրտ յարգելիք ևս անոնց սատանայահնար կեղծաւորութեան միջոցաւ ազգին իրաւանց և պատւոյն դէմ լարած ճիզվիթական թակարդներէն խաբուեցան և զուցէ իրենք ալ հասկցած են իրենց խաբուած ըլլալը նոցա փարիսեցութենէն։

Խօսքերնիս չերկարելով կիմացնեմք թէ Մասիս լրագրի մէջ հրատարակուած այն գրութիւնները (որոնք ազգին պատիւ չեն բերեր) մի միայն խարդախ, խաբէական և ազգակործան գրու-

Թիւններ են, և Թէ սահմանադրասէր հասարակութիւնը զանոնք նոյնպէս կդատէ, այս իրաւամբ՝ որ նոյն գրութիւնները ընդհանուր Երեսփոխանական ժողովով որոշուած, տնօրինուած՝ և ստորագրուած չեն, ուստի կպարտաւորի զանոնք անվաւեր հրատարակել ի լուր ամենեցուն։

Սահմանադրասէր հասարակութիւն։

1862 հոկտ. 27։

---

## ԺԱ.

**1279 Շապան 19 թարիխի իլէ միւվէրրիխ մազպաթը Պապը Ալիյէ թագտիմ գըլընան պիր գըթա՛ արզ վէ մահզարըն սուրէթի տիր։**

*Մաարուզի տաիի քէմինէլէրի տիր քի՛*

Մին իլ գատիմ իթտիխա ի Թէպա՛իէթտէ սապիթ գատէմ օլմագլըղը՛ վաճիպէի զիմմէթ վէ ֆարիզէի ուպուտիյէթ պիլմիշ օլան Թէպաաի սատըգէի տէվլէթը Ալիյէտէն Էրմէնիան միլլէթի գուլլարընըն ումուրի իտարէսի էօթէտէն պէրու էքսէրիյէթի արա իլէ ինթիխապ օլունան Փաթրիքլէրիմիզէ իհալէ պույրուլմուշ:

Վէ ումուրի միլլէթ իսէ իշ պու իքի մատտէտէն իպարէթ օլուպ, պունուն պիրի Րուհանի օլմաղ իլէ՛ Թամիտ վէ Թէզվիճ վէ մէզհէպիմիզէ միւթալիք ուսուլ վէ ֆուրուաթըն քիլիսալէրիմիզտէ Թալիմ, վէ միւթէվէլֆալէրիմիզին վուգուինտէ իճրա օլունաճագ ային վէ ատէթլէրին Թէլղինի, վէ պու միսիլլիւ շէյլէր օլուպ:

Ումուրի ճիսմանի իսէ, մէսարիֆաթը միլլէթ իչիւն միւթէմատի՛ քիլիսա վէ մանասթըրլէրիմիզտէ էսամիի միւխթէլիֆէ իլէ վէրիլմէքտէ օլան մէպալիղին տէրճ վէ մուհաֆազասը իլէ իճապը մէսարիֆաթընէ տըգգաթ, վէ Թանզիմ օլունան տէֆա-

Թիրլէրինին սէնէ պէ սէնէ միլլէթ մուվաճէհէսինտէ իպրազ
օլունմասը: Վէ մէմուր պույրուլանճագ մուրախխասլարըն ին-
թիխապի իլէ, մէվճուտ պուլունան մէզթէպլէրիմիզին հիւսնիւ
իտարէ, վէ միւհթաճ օլան մահալլէրէ տախի ինշասի իլէ, չօ-
ճուգլէրիմիզին պէտէվիյէտէն մէտէնիյէթէ թահվիլի, վէ մէվա-
գիի իճապիյէսինէ կէօրէ լէազըմ կէլէն թիճարէթ վէ հէրասէթ
միսիլլիւ սանայէին իլէրուլէմէսի, վէ մէմալիքի մահրուսէտէ
վագի խասթախանէլէրիմիզ իտարէ թահտինէ ալընարագ,
արալըգտա սիւրիւնմէքտէ օլան ֆուգարէլէրիմիզին ՝ իթր վէ
վիգայէսի, վէ քիլիսա վէ մանասթըրլէրիմիզին թէրմիմ վէ թա-
միրի իլէ, լէվազիմաթը սաիրէլէրինին հիւսնիւ թէսվիյէսինէ
պագըլմասը, վէ մին էլ գատիմ կէրէք վագըֆ վէ կէրէք պա
ֆէրմանի Ալի մութասարըֆ օլտուղումուզ մագամը շէրիֆ վէ
տիկէր միւշթէրէք մահալլէրիմիզին հըֆզ վէ իտարէսի իլէ,
մարհասա վէ րահիպան վէ պիլ ճիւմլէ քիլիսա խատէմլէրի-
նին թէայեիւշաթլէրի՝ պիր գանոն թահթինէ ալընարագ, արա-
լըգտա չէքմէքտէ օլտուգլարը սէֆալէթ վէ զարուրիյէթտէն
պէրի օլմալէրի: Վէ թարաֆը միլլէթտէն Փաթրիքխանէյէ վու-
գու՝ պուլանճագ միւսթէտիաթըն մագամը Պապը Ալիյէ թագրիր
վէ թագտիմի իլէ շէրէֆը սուտուր պույրուլանճագ էմր վէ ֆէր-
մանը Ալինին իճապը իսթիհսալինէ ղայրէթ վէ միւպաշըրէթ
օլունմասը: Վէ պու միսիլլիւ ումուր վէ խուսուսաթըն քէմա-
հու վէ հագգա հիւսնիւ իտարէսի՝ եալընըզ պիր Փաթրիգ մա-
րիֆէթի իլէ հուսուլ փէզիր օլունամայաճաղի — Տէվլէթը Ա-
լիյէնին մալիւմը մաատալէթ արասի թաճիտարիլէրի պույրու-
լտուգտէ — պա իրասքի սէնիյէ Փաթրիքխանէմիզին թահթի րի-
յասէթինտէ պուլունմագ իւզէրէ պիր ռուհանի վէ պիր ճիսմանի
իքի մէճլիս թէշքիլ օլունուպ, իշ պու մէճլիսլէր միլլէթին ու-
մուրի մէզքիւրէլէրինէ մախսուս պիր նըզամնամէնին զայէմէ
ալընմասընը թէնսիպ, վէ պու պապտէ րուհանի վէ ճիսմանիտէն
իպարէթ օլարագ պիր զօմիսիօն թէշքիլի իլէ, պունլարըն չէնթ
պէնտ թանզիմ էյլէմիշ օլտուգլարը նըզամնամէնին թէֆահհիւս

վէ ումումէն զապուլ օլունմասը զըմնընտէ. կէչէն 1860 մայ. 24 Թարիխի միլատիյէսի իլէ Փաթրիքխանէտէ խաս վէամտէն իպարէթ պիր մէճլիս Թէճէմմուան, Նըզամնամէի մըզպուր պէնտ պէ պէնտ Թէճէսսիւզ վէ Թէֆախխիւս օլունմուշտէ, հէր վէճհ իլէ տէվլէԹի Ալիյէնին նըզամաԹը ճէլիլէսինէ մուվաֆըգ վէ տիյանէԹը չաքիրանէմիզէ միւԹապըգ կէօրիւլէրէք, ֆի մա պաատ րէտտ վէ ճէրհ օլունմամասը իչիւն՝ տիյանէԹիմիզճէ շարԹ վէ ճէմին, վէ քեաֆֆէսի Թարաֆընտէն իմզա վէ Թասդ, վէ պէ հէր նուսխասընը՝ ՓաԹրիղիմիզ Սարգիս Էֆէնտի պէնտէլէրի Թէմհիր, վէ պիրէր գըԹա պույրուլտիլէրի իլէ մաան մէմալիքի մահրուսէի շահանէտէ պուլունան միլլէԹիմիզ մարհասալարը Թարաֆընէ իրսալ էտէրէք՝ անքեամը միւնտէրիճէսի իւզէրէ պիր պուչուք սէնէյի միւԹէճավիզ իտարէ. վէ պէր պէյանը պալա՝ հէր պիր միւքԹէզիյաԹըմըզըն փէյ տէր փէյ սըրասընա կիրմէքտէ իտիւկի միւշահատէ օլունմագտէ իքէն:

Մազամը Պապը Ալիտէն շէրէֆսուտուր պույրուլան էմրի սամիտէ նաԹըգ, — Նըզամնամէի մէզպուրէնիզին միւԹալաասը իլէ պիր գըԹա իրատէի սէնիյէ Թէալլիւք պույրուլարագ փաԹրիքխանէ Թարաֆընէ կէօնտէրիլէճէկի — մէալի ալիսի իւզէրինէ՝ մազամը միշարիլէյհէ Թագտիմ օլմաղին: Բէյի ալիլէրի իւզէրէ՝ միլլէԹէ պիր քաչ կիւն իչիւն մուվագգաԹէն պիր մէճլիս Թէշքիլ: Վէ Նըզամնամէնին մուայէնէսի պապընտէ խարիճիյէ ՆազարէԹի ճէլիլէսինտէ պիր քօմիսիօն քիւշատ: Վէ մուախիարէն՝ Նըզամնամէ զավլինճէ՝ միլլէԹ մուրախխասլէրինին ճէտի քիմէսնէ ինԹիխապ էյլէմէլէրինէ պիր գըԹա էմրի ալի Թէալլիւք պույրուլտու իսէ տէ,

Հալա շարԹը մէզքիւր իւզէրէ զապու՝ վէ մազամը ալիյէ Թագտիմ էյլէտիկիմիզ Նըզամնամէ պիր պուչուգ սէնէյի միւԹէճավիզ փաԹրիքխանէմիզ Թարաֆընէ ալտէԹ իյլէմէտիկինտէն փաԹրիքխանէ վէ մանասԹըրլէրիմիզին կիւն պէ կիւն Թէլէֆաթը քիւլլիյէյէ տիւճար վէ տիյունաԹը վաֆիրէյէ կիրիֆԹար պուլունտուգլէրի. վէ արալըգտէ սիւրիւնմէքտէ օլան

ֆուգարա վէ խաամէկեան, բահիպան վէ ֆիլ ճիւմլէ քիլիսա խատտէմլէրինին պիւթիւն կիւն էյլէմէքտէ օլտուգլէրի ահ ու ֆիղան՝ հէրքէսին էֆքեարընը թէքլիֆ իտէրէք, արալըգ ա-րալըգ փաթրիքխանէյի թաճիզ էյլէմէքտէ պուլունտուգլէրի մուհաթի իլմի ալիի հազրէթի վէքեալէթ փէնահիլէրի պույրուլ-տուգտէ՛, պունճա վազըթտան պէրու խարիճիյէ նազարէթի ճէլիլէսինտէ թէվքիֆ գըլընմազտէ օլան նըզամնամէյէ տայիր պիր գըթա իրատէի սէնիյէ թէայյիւք պույրուլարագ՝ փաթ-րիգխանէմիզ թարաֆընտէ իրսալի իլէ ումուրի միլլիյէմիզին միհվէրի խտարէսինէ գօնուլմասը նիյազի պապընտէ վէ հէր ճալտէ էմր ու ֆէրման հազրէթ վէքեալէթ փէնահիլէրինին տիր:

*Ումումէն էրմէնեան միլլէթի գուլլէրի:*



## ԺԹ.

### Առ տեղապահն եւ նախագահն ազգ. ժողովոյ Սրբազան հայրն.

Մենք ստորագրեալքս իմանալով՝ որ Երուսաղէմայ փոխա-նորդ Իսահակ վարդապետը իբր թէ վանքին միաբանութենէն որոշուէր է եպիսկոպոս ձեռնադրուելու, կ՚բողոքենք նոյն որոշմանը դէմ և կիմացնեմք ձեր սրբազնութեանը, որ բաւա-կան փաստեր ունենալով՝ յիշեալ վարդապետին եպիսկոպոսու-թեան աստիճանին անարժան ըլլալուն, պատրաստ եմք ուզուած ժամանակ ապացուցանել, և հետևաբար վստահ եմք որ ձեր սըր-բազնութիւնն ալ կջանայ մեր Հայաստանեայց Ս. աւանդութիւն-ներն և իրաւունքները հաստատ պահելու, ուստի և քանի որ այդ վարդապետին Եպիսկոպոս լինելու ջանքին դէմ բողոքներ կան, անոր ճամբորդութիւնը արգիլէք, վասն զի մինչև որ բողոքներուն փաստերը չքննուին և մինչև որ արդարապէս չհերքուին, յի-շեալ վարդապետը չկրնար արժանաւոր դատուիլ եպիսկոպո-սական աստիճանին:

Ասկէ զատ Ազգային կանոնաւոր կեդրոնական վարչութեան դէմ ապստամբութեան յանցանքով ամբաստանուած միաբանութեան մը մէջէն որ և իցէ անձերու այս միջոցիս եպիսկոպոսութիւն առնելու համար ճամբայ ելլելնին՝ Նոր ապստամբութեանց պատրաստութենէ զատ ուրիշ բան չկրնար նշանակել։

Վասնորոյ թէ յիշեալ Իսահակ վարդապետին և թէ նոյն իսկ միաբանութենէն ոմանց եպիսկոպոս ըլլալ ուզողներուն՝ առ սրբազան Կաթուղիկոսն վկայական կամ յանձնարարական չտրուելէ զատ, եթէ առանց գիր ալ երթալու ըլլան, Ազգ. կեդրոնական վարչութիւնը պարտական է ո և իցէ միջոցաւ արգիլել զանոնք։ Մնամք. եայլն։

Ստորագրութիւնք։

Ապր. 9, 1863. ի Կ. Պոլիս։

ԺԳ.

Յիշեալ Թաղերուն նկատմամբ կարևոր չհամարեցինք մանրամասն ծանօթութիւն տալ և կամ միաբան սիրով և ընկերակցութեամբ Թաղին գործերը ի միասին տեսնելու փափաքող Թաղեցւոց ոխերիմ հակառակորդին դէմ հրատարակած բողոքներէն մէկին օրինակը դնել հոս և պատճառն ու դիտողութեան արժանի կէտերը բացատրել և լուսոյ ու խաւարի պատերազմին (որ դժբաղդաբար դեռ կշարունակէ) դաշտին մէջ վիրաւոր ինկածներուն վրայօք ցաւալի տեսարան մը բանալ ընթերցողաց. որովհետև այս խնդրոյն մէջ ալ մեր ազգ. պատրիարքարանին անխոհեմ ընթացքն ու անբաւական կարողութիւնը և ազդեցութեան տկար և անհատի մը անգամ իրաւունքը պաշտպանելու անկարող, նա ևս ճիզվիթական խլրտմանց ներքև նորա միշտ ընկճեալ և ճնշեալ ըլլալը կնշմարուի. զոր արդէն շատ տեղ ցուցուցած ենք։

## ԺԴ.

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ազգային սահմանադրութեան գործադրութեան պատրաստութիւնները լմննալու վրայ են, և ահա ազգային Երեսփոխանները կ'ընտրուին ։ Ազգ. Երեսփոխանաց առաջին գործերը պիտի ըլլան ազգ. Քաղաքական և Կրօնական ժողովներուն ընտրութիւնը և Կ. — Պոլսոյ ու Ս. Երուսաղէմի ազգ. Պատրիարքներուն ընտրութիւնը ։

Արդ մենք ազգ. Երեսփոխանաց ընտրողքս հարկ կ'համարինք ծանուցանել, խնդրել, և պահանջել իսկ ազգային նորընտիր Երեսփոխաններէն, որ այս ընտրութեանց մէջ կարելի եղածին չափ զգուշանան ի սէր ազգին, իրենց ընտրութիւնը այնպիսի անձանց և այնպիսի եկեղեցականաց, եպիսկոպոսներու ու վարդապետներու վրայ չնելու, որոնք որ և է կերպով ազգին խաղաղութիւնը աւրելու, ազգին մէջ ցաւալի երկպառակութիւն ու աղէտալի կռիւներ ձգելու և մինչև անգամ արիւն Թափուելուն պատճառ եղան և կըլլան, ինչպէս նաև այնպիսի առաջնորդներու՝ որոնք իրենց վիճակը խոհեմութեամբ և ազգասիրաբար չկրնալ կատարելով՝ կամ ամբաստանութեան ներքև ընկած են, կամ իրենց վիճակը միշտ խռովութեան մէջ պահած են ։ Փորձեալը՝ կրկին փորձելն յիմարութիւն է. մենք կ'փափաքինք՝ որ մեր Երեսփոխանները փորձեալները փորձելու պակասութեան մէջ չգտնուին, որով պատճառ մը չտան շատերնուս սիրտը ցաւելուն, և խելահաս ու անխելահաս ոմանց ալ նորէն զժտութիւն յարուցանելուն ։

Ժողովուրդը դժկամակութեամբ պիտի լսէ ամէն օր Սուրբ Պատարագի մէջ այն եպիսկոպոսաց և վարդապետաց անունները՝ որ ըստ իւր հաւատոց, ազգին անմեղ արիւնը Թափուելուն պատճառ եղան։ Ուստի մենք ընտրողքս ազգին խաղաղութեանըն ու ազգ. գործերուն բարեկարգութեանը համար. ժողովուրդին սրտին հանդարտութեանը համար և ապագայ սրտաբեկութեանց առաջքն առնելու համար, պարտք կ'դնենք նորընտիր

ազգային Երեսփոխանաց վրայ, որ չընտրեն այնպիսի անձինք՝ որոնք որ և է ազդեցութեամբ ու կիրքով և նպատակով և որ և է միջոցով ալ այսօր ազգին ողջամիտ մասին ատելի եղած են։

Ազգային Երեսփոխանաց ընտրողք․

1863. Սեպտ. 16,

---

Է.

Այս տեսակ վնասատու միաբաններ և անարժան տեղակալներ գրեթէ միշտ ներսէն պատահած է՝ քան դրսէն։ Չէ լսուէր երբէք՝ որ դրսէն մէկը Երուսաղէմի Պատրիարքութիւնը յափշտակել ջանայ, և սաստիկ մոլեգնութեամբ կուսակցութիւն սրսալով չարիք և աղէտ պատճառէ Ազգին, տարիկս ներսինները կընեն. որոնք ոչ թէ ազգին օգտակար ծառայութիւն մատուցանելու, այլ միմիայն իրենց սնափառութեան և ամբարհաւաճութեան փուճ կիրքը յագեցնելու և կոյր երկրպագուներէ իբրև չստացուած պաշտօնելու տուփանօք, ուստի և այս առթիւ ազգին մէջ՝ շահասիրաց միջոցաւ, խռովութեան և երկպառակութեան հրդեհը հրահրելէ զատ, միաբանութեան մէջ ալ պառակտում և հալածանք յարուցանելով հոգեվտանգ և ոճրագործ չարութեանց անգամ ձեռք երկնցնել յանդգնած են, որով և ազգին ստացուածքը ատանկներուն չար կրիցը զոհուելով, վանքին վրայ նոցա դիզած պարտուց ծանր բեռն ալ դարձեալ ազգն է քաշեր, ինչպէս առկէ առաջ ըսած ենք։

Զարմանքն այն է, որ ազգին ազատ ընտրանօքը անխտիր դրսէն ալ Պատրիարք ընտրուող անձինք՝ միշտ ներսիններուն ձեռքով քանդուածները, եղծումները, և ի կորուստ մատնուած ազգին սեփհականութիւնները վերանորոգելու, բարեկարգելու և պարտքը վճարելով յիշեալ հաստատութիւնը ողջ ու կենդանի ոտից վրայ կանգնեցնելու ճիգ թափած են։ Ազգը ամէն պարագայի մէջ աւելի դրսինէն լիուլի արդիւնք և պտուղ վայելած է, ինչպէս Սարգիս, Եղիազար, Գրիգոր պարոն տէր, և շղթայակիր, Յակոբ Նալեան և Թէոդորոս Պատրիարքները, և այլն, որոց մե-

ծառայութեան անջինջ յիշատակը ազգասիրաց սրտին վրայ քանդակուած իբրև արձան կայ և կ՚մնայ:

Եւ յիրաւի ներսէն ալ ծագած են երբեմն անանկ տաղանդաւոր և գործունեայ միաբաններ և արժանաւոր ազգընտիր Պատրիարգներ, որոնք բաւական ջանք յայտնած են մանաւանդ ի մասին պահպանութեան Երուսաղէմի ազգային ժառանգութեանց ի պատիւ և ի շինութիւն փառաց ազգին, ինչպէս է Զաքարիա Պատրիարքը, որուն՝ թէ ի Պատրիարքութեան և թէ անկէ առաջ Պօլսոյ Երուսաղէմի փոխանորդութեան պաշտօն վարած ատենը Քրիստոսի Ս. գերեզմանին բաժանորդութեան մէջ ի նախնեաց անտի մեր ազգին ունեցած վաղեմի իրաւունքը վերստին ձեռք բերելու մասին կրած աշխատանքը՝ յաւերժական յիշատակ մ՚է ազգերնուս. նոյնպէս և բազմերախտ Պօղոս սրբազանին վանքին պարտուց նկատմամբ ի գործ դրած հոգաբարձութիւնը և անկէ յառաջ յիշեալ վանուց վրայօք բացուած այն մեծ դատին մէջ յԱտեան արքունի ունեցած մեծագործ հաստատունութիւնը՝ նշանաւոր է. որոց երկուքն ալ իրենց հանճարովն ու տաղանդովը անմահ կ՚փայլին:

Սակայն մնատառու և անարժաններուն գալով՝ միշտ կ՚տեսնենք թէ՝ արժանաւոր անձանց ազգօգուտ ջանքն ու նպատակը ապարդիւն մնալէ զատ, ազգն ալ իր անհոգութեանը և անտարբերութեանը պատճառաւ նոյն ազգօգուտ ջանքը յառաջ տանելու փոյթ չէ ունեցեր, ուստի և քննիչ ու կազդուրիչ հսկող աչքը ազգին կողմէն պակսելով գրեթէ միշտ չ՚պիտու անձանց ձեռքն է մնացեր վանքին կառավարութեան սանձը, որով մեկին շինածը՝ միւսը քակելով, ասանկ ազգակործան կրից գործիք ու խաղալիք եղած է ազգին ալ ստացուածքը:

Ըսածնուս հեռուէն փաստ բերելու հարկ չունինք, անհատսիկ արդի Երուսաղէմայ փոխանորդին և Յովհ. Պատրիարքին բարեվայելուչ ջանացողութիւններն ու վարմունքները, որք բաւական են մեր այս ըսածները ապացուցանել: Այս վերջինը բու. ինքնահաճ բռնաւորութեամբը և կոյր կամակորութեամբը նախորդաց կարգ կանոնը ջնջելու նպատակաւ [1] մինչ ցվերջին

---

[1] Նոյեանն Աղաւնի՝ անուն թերթը՝ խափանել տուաւ:

քունչ նոցա ազգօգուտ ջանքը ի կորուստ մատնել զբաղեցաւ. և որ աւելի ցաւալին է՝ կենդանութեան ատեն որքան որ վանքին օգուտն ու շահերը նաև համարումն ու պատիւը իւր անզուսպ կրից անգթաբար զոհեց ալ նէ, իւր մահուան ատենն ալ անկէ աւելի ազգին այսչափ աղմկալից երկպառակութեանց անգամ սկզբնապատճառ եղաւ։

Թողումք յիշել հոս ազգին գոյից և ոգւոյն վրայ տիրելու նըպատակաւ միաբանութեան դէմ ձեռք առած ատելութեան փորձերը, որոնք յանուն ազգին յօժարեցան տանիլ առաւել այնքան Թշնամանաց և հարստահարութեանց, քան հաւատարմութեան դէմ մեղանչել։ Պատրիարք բազմած օրէն ի վեր հաշիւ ցոյց տալ չուզելով, երբ չորրորդ տարին հարկադրեցան խորհրդականք հաշուին կանոնը յիշեցնել իրեն — ազգը մենէ հաշիւ հարցուցած ատեն ինչ պիտի ընենք — ըսելով, — միլլէԹ՝ տիւմէնի պանա Թէսլիմ էԹմիշ, սիզի Թանըմազ — պատասխանը առնելէ զատ, նորա վերջին գաւաԹին հակառակութեան և հալածանաց դառն մրուրըն ալ սկսան միաբանները քամել։

Ասկէ յառաջ եկաւ զանգատանաց ձայներու արձագանգը, որոնք ազգ. գերագոյն ժողովոյն ականջը հասած ըլլալով, յիշեալ պատրիարքը Պոլիս հրաւիրել որոշեց և անմիջապէս հրաւիրակ առաքեց յԵրուսաղէմ, այլ նա սոյն որոշման դէմ ուրիշ միջոցներ ձեռք առաւ, և պատիր հնարքներով և խորհրդականաց ալ գիրկը նետուելով հանրագրութիւն մ՚ալ առացաւ՝ միջոց վաստկելու համար ազգ. ժողովէն։ Իսկ երբ կամքը կատարուեցաւ, առաջինէն աւելի սաստկացուց կատաղութիւնը այն միաբանից դէմ, որք ճշմարտութեան և ազգին իրաւանց աջակցիլ պարտանձին համարած էին, որոնցմէ շատերը վշտացուց, և զոմանս ի գերեզման մահու իջեցուց. և շատերն ալ վհատելով յուսահատ վանքէն հեռացան (որ վնաս մեծ էր առաւել ազգին, քան հեռացողաց...)։ Նորա ուզածը այս ըլլալով՝ փոխանակ օրինաւորութիւնը յարգելու և միաբանութեան հետ սիրով և խաղաղութեամբ վարուելով յօգուտ ազգին ջանասիրելու — աԹ էէրինէ էշէկլէր պազլարըմ — ըսելով, իւր կամահաճ ակնարկութեանց երկրպագուներ հաւաքել և յաճախ ձեռնադրութեամբ (իբր Թէ

նախկին միաբանից պատիւը կոտրելու միջոց մը համարեց) հանողին գլուխը վեղար անցնելու հետամուտ եղաւ (1) — ասի բռնակալաց սկզբունքն ու սովորոյթն է և աւստ փարաւոնական, ըստ այնմ թէ՝ յարեաւ այլ թագաւոր, որ ոչ ճանաչէր ըզ Յովսէփայն հաւատարմութեան զյարգ—ուստի և այն աստիճան հասաւ եղծումը, որ իր սահմանէն ալ դուրս ցաթկելով անձամբ իսկ՝ սաստիկ և կատաղի լրբութեան ձեռքը իբրև թըշուառ գերի մը՝ առ զայրոյթ սրտին կաթուածի մը հանդիպելով յանկարծ մեռաւ, օրինակ չար թողլով յետամնայից։ Յորմէ օրինակ առնելով և արդի միաբանութիւնը, աւելի ժանտ և դաժան ընթացք և վարմունք գործադրել ժպրհեցաւ (2) և կռնակը ճիզվ.

---

(1) Անա ասանկով նուաստացեր է վեղարին պատիւն ալ. և շատերը նորա ներքև պարունակուած պարտականութեանցը վերահասու չըլլալով, վարդապետական պաշտօնն ալ աղարտուեր է, վասն զի եթէ տեղեակ ըլլան, ոչ ոք կրնար համարձակիլ այդ լուծին պարանոց երկնցնելու, ինչպէս հին առած մ՚ալ կըսէ՝ Այս անանկ անձնուրաց հեղինակի (տէվրիշի) մը քնկուղ կամ գլխարկ (վեղար) մ՚է, զոր ոչ դնողը գիտէ, և ոչ գիտցողը կ՚համարձակի դնել: (Ա. Տիմ Ե. 22.)

Ասանկ Պատրիարքաց վարմունքը խիթալի վիճակի մը հասուցած է խեղճ միաբանից կացութիւնը, որոց ապագան ապահովեալ և երաշխաւորեալ չէ:

(1) Ինչպէս Յոհաննէս Պատրիարքին մեռնելէն ետև արդի միաբանները ամէն կերպ անօրէնութիւն՝ անխնայ և չարաչար գործադրեցին Զիլինկիրեան Յակոբոս Վ. ին դէմ զրպարտելով, զրկելով և մինչև անգամ հալածելով զանի, մի միայն ազգային իրաւանց և Երուսաղէմի վանքին ներքին կանոնաց հակառակ գործածուած բռնաբարութեանց դէմ ախոյեան կանգնած և վանուց բարեկարգութեան և յառաջադիմութեան ընթացքի մէջ մտնելու և յարատևելու և միաբանութեան ապագան ապահովելու մասին եռանդագին բաղձանք և ասոր համար մեծամեծ ջանքեր յայտնած և անձանձիր աշխատանք չ՚խնայած ըլլալուն պատճառաւ:

Յիշեալ միաբանութիւնը նորա գլխուն յանիրաւի տեղացուցած անյագ վրէժխնդրութեան սպառնալից որոտումները իր սահմանին մէջ ալ բաւական չ՚համարելով՝ իր ոճրագործ ատելութեան ձեռքը՝ նորա գոյքը պահպանող սենեկին փականացը երկնցնել անգամ յանդգնեցաւ — երբ նա վատթար վարչութեան պատճառաւ վանուց ցաւալի վիճակին՝ ազգին կողմէն դարման և փոյթ ձեռք բերելու համար ի Կ. Պոլիս կ՚աշխատէր — յափշտակելով նորա ժառանգական ստացուածքը, որուն դէմ բողոքած է և կ՚բողոքէ առ ազգային կեդրոնական վարչութիւն, ըսպասելով՝ թէ իւր ծնողական ժառանգութեան յափշտակիչ ձեռքերէ ազատուելուն, և թէ իւր աւագ թարգմանութեան պաշտօնը վարած ժամանակ ըրած ծախուց հաշիւները տեսնուելուն: (Եկայք սպանցուք. զի մեր լիցի ժառանգութիւն):

մեքենականութեան տալով ազգին իրաւանց և օրինացը դէմ ալ ապստամբութեամբ դրօշակ բացաւ գլուխ վերուց և սկսաւ ազգին բարեյօժար կամացը հակառակ շարժիլ։—Փոյթ չէ. մեր ազգին համար անցուկը՝ մոռցուկ է, և հաստն ու բարակը մէկ գին—։

Ահա զուր ջան և անօգուտ վաստակ և ժամանակի վատնումն և Երուսաղէմայ վանքին ամլութեան պատճառները, և արժանաւորին ու անարժանին նկարագիր պատկերը, զոր հարկ և պատշաճ համարեցինք դնել հոս, որպէս զի օգտակարն ու վնասակարը ըստ ինքեան ապացուցուի, և ընտրութեան մասին ազգին ազատ իրաւանցը և Լուսաւորչական Ս. եկեղեցւոյ աւանդութեան և դրութեանը դէմ՝ նոր և ազգակործան խտրութիւն հնարող ճիզվիթութեան նպատակը պարզուի։ Վասն զի եկեղեցականաց մէջ խտիր դնել ուզելը, ազգին իրաւունքը բռնաբարել և նորա եկեղեցւոյն մաքուր դրութեան դէմ անիրաւել ըսել է զատ ուրիշ բան չէ։

Ի սկզբանէ անտի Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ՝ Կաթուղիկոսութիւնն, Պատրիարքութիւնք, վանահայրութիւնք և առաջնորդութիւնք՝ իւրաքանչիւրն իր մէջ պարունակող եպիսկոպոսաց, և կամ ընդհանուր եկեղեցական պաշտօնէից համար սահմանուած իբրև ժառանգական յաջորդութիւն մը չըլլալուն համար, բնականաբար առանց ո՛ և է խտրութեան նորա այս սեփհական Աթոռներուն համար կրնան ընտրուիլ՝ այն եկեղեցականները, որոնք եկեղեցւոյն պայծառութեան և ազգին լուսաւորութեան նկատմամբ թէ բարոյապէս և թէ նիւթապէս արդիւնք յառաջացնելու և յիշեալ ազգային հաստատութիւնները արդիւնաւորելու չափ տաղանդ ունեցած ըլլան։

Եթէ այս պաշտօնատարութիւնք իբրև ժառանգական յաջորդութիւն էն, ուրեմն ինչու անոնք ի նախնեաց մասնաւոր օրէնքներով հաստատուած ու աւանդուած չեն մեզի. սա ամենէն պարզ և յայտնի է թէ՝ Կաթուղիկոսութիւնն անգամ՝ որ ամենէն բարձր Աթոռն է, ժառանգական յաջորդութիւն չէ, թող թէ Երուսաղէմի պատրիարքութիւնը. վասնորոյ ընտրելի անձը՝ ուր տեղէն, ո՛ր վանքէն կամ ո՛ և է ազգային հաստատութեան միաբանութենէն ըլլայ՝ ըլլայ, անխտիր՝ Ազգը միմիայն տաղան-

պատուրն ու արժանաւորը ընտրելու պարտական է առանց կողմնասիրութեան՝ որովհետև Հայաստանեայց Ս. Եկեղեցին ընդհանրապէս իր եկեղեցականները մէկ անզանի պաշտօնեայ կը ճանչնայ, և պապական դրութեան պէս զանազան կրօնաւորներու կամ միաբանութեանց բաժնուած չըլլալը ամենուն յայտնի է, (թէ և արդի մեր եկեղեցականները իրենց եկեղեցւոյն դրութենէն շեղած և միմեանց կապակցութենէ լուծուած իրար ատել և հալածել գիտեն ի շնորհս շահասիրութեան և մարդահաճոյութեան) տես այս մասին՝ Երուսաղէմայ խնդիրն ու Մէճմուա վէրնագրով 1861. օգոստ. 1 տպեալ տետրակը։

Իսկ եթէ Երուսաղէմի Պատրիարքութիւնը ժառանգական է՝ ըսուի, այսինքն յիշեալ վանքին միաբանութեան իբր թէ հաղորդ չեղող եկեղեցականաց արգիլուած է, ուրեմն ինչու Հաննէ վարդապետ — եւ թէ յարտաքուս — բառը կ'յարէ։ Սոյն իսկ յարտաքուստ բառը զօրաւոր կերպով կ'հաստատէ թէ՝ դրսէն ալ եկեղեցականք իրաւունք ունին Պատրիարք ընտրուելու այն աթոռին համար։ Յիշեալ վարդապետին այս բառերը երբէք խարութիւն չեն պարունակեր, այլ յաւէտ արտօնութիւն կուտան Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ բոլոր եկեղեցականաց այն Աթոռին Պատրիարքութեանը մասնակցելու։

Եթէ գլխաւոր և ուշադրութեան արժանի կէտ մը կայ, սա է թէ՝ Հաննէ՝ Եզովբ կ'կարդայ թէ ներսէն և թէ դրսէն այն բիրտ, տգէտ, փառամոլ ու շահամոլ եկեղեցականաց գլխուն, որք վասն մարդահաճոյութեան և փառամոլութեան յիշեալ պատրիարքութիւնը ձեռք անցնելով և բարեպաշտ ուխտաւորաց կամ ազգին բարի նպատակաւ տուած նուէրներէն գոյացած վանքին դրամը իւրեանց հաճոյիցը համար շռայլութեամբ, զեղխութեամբ վատնելու յանդգնած են և կ'յանդգնին։

Թէ եկեղեցականներէն և թէ աշխարհականներէն՝ անոնք որ Երուսաղէմի Պատրիարքի ընտրութեան խնդրոյն մէջ ամեն ջանք ի գործ դրին և դնել կ'աշխատին, յիշեալ Պատրիարքութեան ժառանգական յաջորդութեան կերպարանք մը տալու, և Ազգին միւս եկեղեցականաց իրաւունքը բռնաբարելու վատ նպատակաւ՝ Հաննէ բարեյիշատակ վարդապետին՝ որոշ, անկեղծ

և ազգաշէն խօսքերը չարաչար մեկնելով, նորա՝ մարդահաճոյ, փառամոլ և ազգաւեր անձանց Պատրիարք ընտրուելնուն դէմ յիշած նզովքը, միաբանութենէ դուրս եկեղեցական պաշտօնէից Պատրիարք ընտրուելուն դէմ է ըսելու՝ վէճեր ու վիճաբանութիւններ յարուցանելու չամաչեցին, ուրիշ նպատակ չունէին, բայց միայն յիշեալ Պատրիարքութիւնը իւր տեղւոյն մէջ սահմանափակ ընելով, այն բարձր ու փափուկ պաշտօնը և ազգային հաստատութիւնը իրենց հաճոյ, փառամոլ, շահասէր և մախող անձանց ձեռքը մնայ, որ դիւրութեամբ կողոպտելով, կարենան իրենց նպատակին հասնիլ։ Եւ կարծեմք թէ ասկէ ետքը վանքին էշպանը անգամ Պատրիարք ընտրել տալու պիտի աշխատին ի շնորհս ներսէն ըլլալու կոյր կամակորութեան, որ կ'նպաստէ ճիզվիթութեան նպատակին. (ով անմտութեանն)։

Ուստի մենք ալ ընդ Հաննէի նզովք և անէծք կ'կարդանք՝ ոչ միայն Երուսաղէմի Պատրիարքութեան չարանենգ նպատակաւ ձեռք նետել ուզողներուն, այլ և ազգին ուրիշ բոլոր Աթոներուն, վանքերուն, առաջնորդութեանց և այլ ազգ. հաստատութեանց տիրապետական և շահասիրական ոգւով ձեռք երկընցնել ջանացող եկեղեցականաց գլխուն, և կ'խրատենք մեր բարեմիտ հասարակութիւնը, որ միշտ արթնութեամբ հսկէ իւր բոլոր սեփհականութեանց եւ ստացուածոց, որ չըլլայ թէ այնպիսի շահամոլ եւ սնափառ անձանց ապականիչ եւ մախիչ ձեռքը իյնալով վատնուին եւ փճանան յանձնարին վերջ եւ ի մեծ ցաւ ճշմարիտ ազգասիրաց։

## ԿԱՐԵՒՈՐ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Մեր ազգ. բոլոր վանքերուն ինչ նպատակի և վախճանի համար հաստատուած ըլլալը յայտնած ժամանակ, ըսած ենք թէ՝ անոնք առանց բացառութեան Ազգին անբռնաբարելի սեփհականութիւնները ըլլալնուն և ազգէն կախում ունենալնուն համար, ազգ. Վարչութեան նոցա նկատմամբ ընելիք տնօրէնութիւնները սիրով ընդունելու են։ Քաջ գիտենք թէ՝ մեր բոլոր այս

քաւծները ոմանց գրգռութեանը պատճառ ըլլալով պիտի սկսին դարձեալ ըսել թէ՝ վանօրայք ազգէն կախում չունին, նոքա ազատ են ամէն պատասխանատուութենէ, և նոցա մէջ պատսպարեալ վանահարց և միաբանից ձեռքը ժառանգական իրաւունք մ'է, և թէ՝ ազգին անոնցմէ հաշիւ պահանջելը կամ ո՛ և է անօրէնութեան ձեռնարկելը մեր հաւատքին կ'դպչի (տինիմէ սէօյտիւ)։

Ասոնք սոսկ երևակայական և կեղծուպատիր, և միայն ի շահամոլ կրից յառաջ եկած խօսքեր եղած ըլլալը՝ խելքը գլուխ, ողջամիտ և իմաստուն անձանց յայտնի ըլլալով, ամենայն անկեղծութեամբ և խղճի մտօք կ'վստահացնենք ու կ'ըսենք թէ՝ անոնք որ ատեն ատեն այս տեսակ նենգաւոր խօսքեր իւրեանց անսուրբ բերաններէն դուրս թափած են ու կ'թափեն, նպատակնին ուրիշ բան չէ, բայց միայն բարեպաշտ և անկեղծ հասարակութիւնը խաբելով կարող ըլլան վանքերը Ազգին բացարձակ իրաւասութենէն հանել և իրենց շահասիրութեան ծառայեցնել։

Թող բարեպաշտ հասարակութիւնը չ'խաբուի՝ անոնց չարագրգիռ թելադրութեանց ունկն դնելով, և կրցածին չափ հեռու փախչի անոնց կուսակից ըլլալէ, (թէ և այս պարագայներուն մէջ չգիտութեամբ ոմանք անանկներուն կողմը յարեցան և իբրև մեքենայ ազգ․ իրաւանց դէմ գործիք եղան) և թողու որ ազգը իր Սահմանադրութեան տրամադրութեանցը համեմատ իրաւունք բանեցնէ վանօրէից ալ վրայ, պարտաւորելով զմիաբանութիւնս և զվանահայրս՝ որ իրենց կոչումը և պարտքը ճանչնան և մտնեն բարեկարգութեան այն ընթացքին մէջ, զոր ազգը անձկանօք կ'փափաքի տեսնել։

Մեր ազգին վանականք կամ եկեղեցականք՝ աշխարհային կամ քաղաքական գործոց խառնուելու ոչ արտօնութիւն ունին և ոչ իսկ իրաւունք, որն որ Ս. Աւետարանին ոգւոյն հակառակ է, ուստի և Հայաստանեայց Լուսաւորչական Ս, եկեղեցւոյն դրութեանն ալ բոլորովին հակառակ։ Թէ և կ'տեսնենք թէ ազգը վերջի ատենները ազգասէր հայրերուն կամ հովիւներուն հաւատարմութեանը յանձնած է իր գոյքը և քաղաքական գործքերը,

բայց չէ թէ տիրապետական ոգւով իշխելու կամ ըստ քմաց մխելու համար, այլ իբրև խնամատար պահելու և պաշտպանելու, և պահանջած ատեն արդիւնաւոր հաշիւ ցոյց տալով ազգին և ետ ուզած ատենն ալ դարձեալ ամբողջ նորա յանձնելու պայմանաւ ։ Շատ անգամ լսած ենք թէ՝ ազգին նեղ օրին համար կպատրաստուին ասոնք՝ ըսելով, կըկեղեքեն զազգը, ասկէ աւելի ինչ նեղ օր կ'ըլլայ ազգին համար, եւ ուր են պատրաստուածները . . . ։

Ազգը պարտական է մարմնաւորը մատակարարել և իւր եկեղեցականաց բարոյական կրթութեան վրայօք հոգ տանիլ և փոխարէն՝ անոնցմէ կրօնական և բարոյական ուսմանց և գիտութեանց պտուղ պահանջելն ալ իւր ազատ իրաւունքներէն մէկն է, զոր պէտք չէ երբէք անգործադրելի թողուլ ։

Թող ներուի մեզ ըսել թէ՝ մեր ազգին եկեղեցական մասը ընդհանրապէս նախնեաց ոգւոյն և ընթացից հակառակ քաղաքական գործերու ալ ձեռք երկնցուցած ըլլալուն պատճառաւ է որ՝ հետզհետէ ճշմարտութեան ուղիղ պողոտայէն խոտորելով դժբաղդաբար մեծ և ազգավնաս մոլորութեան մէջ սահէր և սնափառութեան ու շահամոլութեան ճանկը իբրև գերի կամայ ակամայ ամէն վատութեանց, և որ աւելի ցաւալին է՝ արծաթսիրութեան՝ այսինքն է անհաւատութեան ներքև գձնելու և խոնարհելու, նաեւ ոճրագործ չարութեանց անգամ զիջանելու և մասնակցելու և օտար կրօնից մեքենականութեան ձեռքը գործիք ու խաղալիք ըլլալու անձնատուր եղած է։ Իր այս ընթացքով, ինչպէս կ տեսնենք՝ քրիստոնէութեան նախատինք և գայթակղութեան ու բամբասանաց առիթ ըլլալով իւր պատիւն ու համարումն ալ վերցած է։

Վասն զի քանի որ ընթացք կամ գործ՝ հոգևոր Ս. կոչման չը համապատասխանէր և նորա ենթակայնաւ երեւոյթս կրօնասէր կ'ձևանայ, ըսել է թէ՝ ի հաւատոց եւ ունայն և թափուր ըլլալ կը նշանակէ, ուստի նա գառնազգեստ գայլ մը համարուելով իւր ընկերները խածատող և գիշատիչ ըլլալէ զատ, հասարակութեան բարոյականութիւնն ալ խանգարող և զանի պատառող գազան մը դարձած ըլլալը ինքնին կ'յայտնէ. որովհետև գործք՝ հաւա-

տոյն արտայայտ նշանն է. և անդրադարձաբար ի նշանից անտի ի յայտագայ և հաւատքն, ուստի և ըստ Առաքելոյն' առանց գործոց հաւատքը մեռած է, և քանի որ եկեղեցականները նորա համաձայն գործք և ընթացք չունին, ապա ուրեմն ըսել է թէ' և հաւատք և գութ անգամ չունին.— Եւ որ ընտանեացն (ազգին) խնամ ոչ տանիցի, ի հաւատոյն ուրացեալ է, և աւելի ևս քան զանհաւատան է —.

Ազգը իր եկեղեցական մասը իրեն օգտակար անդամ ընելու համար' պարտի նախ զանոնք ամփոփել և չափաւորել։ Երկրորդ նոցա օրինաւոր կառավարութեանը համար նախնի սրբազան Հայոց օրէնքներով սահմանուած նոցա կարգն ու կանոնը վերանորոգել և հաստատել, որպէսզի իրենց սահմանին մէջ նոցա հաւասարակշռութիւնն ալ անխախտ և անեղծ մնալով կարող ըլլան առ ազգն և առ Աստուած ունեցած պաշտօնն ու պարտքերնին ճանչնալ և Ս. կոչման համեմատ կատարել։

Հետևաբար ազգն ալ իր բոլոր ազգ. կալուածոց և հաստատութեանց, գոյից և ստացուածոց ըստ օրինի տէրը ըլլալով իրեն պարտքն ու իրաւունքը գործադրել ջանասիրէ, և գէթ առ այժմ փոքր ինչ փոխառութեամբ իւր ազգ. գործերը կարգադրել հոգ տանի։ Եւ ահա այն ատեն ազգերնուս եկեղեցական պաշտօնեաները իրենց Ս. կոչման համաձայն հոգևոր սահմանին մէջ' բոլոր հաւասարակութեան անկեղծ մեծարանքն ալ կրնան ընդունիլ իբրև ազգին անձնուէր ու հաւատարիմ հովիւները ու հայրերը. ապա թէ ոչ, նոցա անկարգութեանը պատճառաւ ազգին ալ ապագան խիստ վտանգաւոր կերևի:

Ազգութեան փափկութիւնը զգայող և զանի միշտ երազող սիրտ մը, ազգին արդի ցաւալի վիճակին նկատմամբ' աղեկիզեալ կ'այրի ու կ'տոչորի. վասն զի ցաւ մը, վտանգ մը' որ համբութիւնը կ'կրէ, կ'սեփականի զգայուն անհատի մը։ Հայը, որ կրած է և կ'կրէ դառնութիւն, միշտ, տառապանք եւ թշուառութիւն, իր վատշուէր' աշխարհական եւ եկեղեցական անհատներն են պատճառ։

Այս ցաւը ու նաև եղծումներէն յառաջ եկած վտանգը փարատելու համար ազգութեան ազնուութիւնն ու փափկութիւնը զգա-

ցող դարձեալ եկեղեցական եւ աշխարհական անհատներուն դիւցազնական ոյժը պէտք է. թէ մեծատուն եւ թէ աղքատ՝ խեղճ ազգասիրաց համար է խօսքերնիս. որոց խոհեմ և հեռատես, խոհուն և արթուն ուսումնական բազուկը միայն կարող է դարմանել ցաւը եւ դիմակալել վտանգաց եւ զազգը ու նորա եկեղեցին կործանումէ ազատ պահել. յայնժամ վտանգը փախուստ տալով՝ աղքատութեան, տգիտութեան եւ թշուառութեան սեւ ամպերն ալ կ՚փարատին եւ ազգը երջանկութեան մէջ կը փայլի ու կ՚փառաւորուի՝ ճշմարտապէս փառաբանիչ եւ երկրպագող ըլլալով Տեառն Աստուծոյ ամենակալին։

Այս ցաւոց եւ ազգամէտ դաւաճանութեանց եւ առ գլուխ հասնալ վտանգներուն առջեւը ուրիշ բանով չ՚կրնար առնուիլ, բայց միայն ազգութեան եւ նորա յառաջադիմութեան նախատող օրէնքի մը սիրովը եւ նորա անթերի գործածութեամբը, որ կարող է ամբողջ եւ ազատ կացուցանել զԱզգը եւ նորա Ս. եկեղեցին օտար հրապուրանքներէ եւ ներքին դաւանագործ ազգակործան ձեռքերէ, եւ առաջնորդել այն շաւիղը՝ ուրկէ կ՚ընթանան դարուս քաղաքակիրթ եւ լուսաւորեալ ազգերը։

Եթէ ըսուի՝ թէ իւրաքանչիւրոց սիրտը (գանձը) մարած է. և ասանկ նեղ ժամանակի մէջ իր օրական պարէնը անգամ ճարելու տարակուսած, ասոնք ո՞վ պիտի մտածէ. կ՚պատասխանենք թէ՝ այդ յուսահատութիւնն ալ վտանգաւոր է եւ մահաբեր, այլ եւս հնարից գտնելն է՝ քաջութիւնը, ուստի և խոնարհաբար կ՚յորդորենք եւ կ՚խրախուսենք ըստ Առաքելոյն՝ — Որ ինչ իմաստութեամբ, որ ինչ օգտակար ընթացք և հանճար բարի, միաբան սիրով և ընկերութեամբ զայն արասջիք—։ Եւ Աստուած՝ որ աղբիւրն է սիրոյ և բարութեան՝ աղբերացուսցէ առատապէս զողորմութիւն իւր, առաջնորդելով զամենեսին և զԱզգ մեր համայն յաւէտ ի բարին։

## ՎԱԽՃԱՆ

ի 1861. Թուականէ, մինչ ց 1864. յունվ. 1.

# ՑԱՆԿ





# ՎՐԻՊԱԿՔ

| սխալ | երես | տող | ուղիղ |
|---|---|---|---|
| էն | 1 | 15 | ամենէն |
| կ'սկսն | 30 | 15 | կ'սկսին |
| որպէս զի | 32 | 7 | (որոգայթ երրորդ) որպէս զի |
| անիծեց | 37 | 21 | անիծից |
| շնթել | 42 | 33 | շողոքորթել |
| 1862 | 70 | 11 | 1863 |
| երազով | 74 | 2 | երազելով |
| փափաքն | 76 | 29 | փափաքածն |
| սեամը | 87 | 19 | սեմոց վրայ |
| քաքթօլ | 95 | 8 | քաթօլ |
| որ | 114 | 32 | որով |
| այ | 115 | 9 | այս |
| պատմագիրը | » | 31 | պատմագիրքը |
| գողին | » | 32 | կողին |
| պատճառաւ | » | 34 | պատճառ |
| մատենագրերն | 118 | 9 | մատենագիրքերն |
| ազբիս | 121 | 6 | ազգիս |
| կերսնցու | 122 | 4 | կորսնցու |
| պատրագ | 126 | 11 | պատարագ |

ԼԵՒՈՆ ԹՈՒԹՈՒՆՃԵԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

## ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ

### ՂՋԷՆ ԱՆՋԱՏ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՉԿԱՅ



1956

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ «ԶԱՐԹՕՆՔ»Ի

# ԼԻԿԻՈՅ ՀԱՅՐԱՊԵՏՆԵՐՈՒ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՁԵՒՆ ՈՒ ՎԱՒԵՐԱՑՈՒՄԸ

---

**Թէ ինչպէս Սուլթան Համիտն անգամ ընկրկեցաւ Տարիհէն վաւերացեալ Հայոց ընկալեալ աւանդութեանց եւ եկեղեցական օրինաց դէմ քայլ առնելու, Կիլիկեան Աթոռը անջատելով Ազգ. Նուիրապետական գերիշխանութենէն:**

*Սիրելի և բազմահմուտ բարեկամս Արշակ Ալպօյաճեան,*
*ւնի 9, 10 և 12 Մարտ 1956-ի թիւերուն մէջ խիստ նշանա-*
*ից դրուագներ պատմեց Կիլիկիոյ Աթոռին վերաբերմամբ:*
*յ կաթողիկոսի ընտրութեան ձեւին և վաւերացման մասին*
*յաճեան կը յիշէ Ազգ. Ժողովին 1872-ին գծած բանաձեւը.*
*րութիւնը գաւառէն, վաւերացումը կեդրոնէն». այս բա-*
*ւը Ազգ. Ժողովին Թելադրողը Ազգ. Սահմանադրութիւնն*
*րուն* հիմնական սկզբունքը *արձանագրուած է Օսմ. Օրինաց*
*քածոյին մէջ (Տեսթուր), որովհետեւ ան կը բխի պատ-*
*քական* շերիաթէն. *և ուրիշն հաստատուած է 1461-ին, Կ.*
*յ Հայոց Պատրիարքութեան հիմնումի հրովարտակով: Ֆա-*
*Սուլթան Մէհմէտի հրովարտակը խմբագրուած ըլլալով*
*Հայոց Եկեղեցիին ընկալեալ աւանդութեանց և օրինաց:*

*Ալպօյաճեանի յիշած դէպքերէն կը հաստատուի որ՝ Ա)*
*. կեդր. Վարչութիւնը, Սսոյ աթոռակալին ընտրութեան*
*ար, Պատրիարքական պատուիրակ մը կը ղրկէ կուսակալա-*
*ն կեդրոնը (Ատանա), կազմելու և վարելու համար Կիլի-*
*յ Ընտրական Ժողովը: Բ) Պատրիարքարանը չընդունիր ա-*
*ց կեդրոնին հաւանութեան «ինքնակալ» կաթողիկոս մը,*
*ընտրութիւնը թերի և հետեւաբար ապօրինի եղած է և*
*կը հռչակէ «անվաւեր և ապօրինի»: Գ) Այդ պարագային*
*րիարքարանը կեդրոնէն կը նշանակէ լիազօր փոխանորդ*
*աթ ուին վրայ. Դ) «Ինքնընտիր կաթողիկոսը» ընդ հսկո-*
*թեւ ն Պոլիս բերելով կ'աքսորէ վանքի մը մէջ: Այս բոլորը*
*ու ատեան Ազգ. Կեդր. Իշխանութեան, հետեւաբար ազգին,*
*ւս ·ար եկեղեցական գերագոյն իշխանութեան կամ Նուի-*

բաղկեացութեան իրաւասութիւնը որեւէ մասնաւոր հայրապ
թեան վրայ։ Այս Աթոռները երբեք անկախ և անջատ չե
ընտրութեամբ և ոչ պաշտօնավարութեամբ։ Այս մասին
պիտի խօսինք արդէն։

Սիսի Աթոռին վերջին կաթողիկոսը՝ հոգելոյս Սա
էր, որ իր տարահալած Աթոռը փոխադրեց պատմական հայ
հողերէն դուրս և հաստատեց Անթիլիաս։ Սահակ Բ.-ի
ջորդները չեն կրնար իրմէ ժառանգուած Աթոռին ապ
նուիրապետական կախումն ու կարգը խախտել։

Արդ, տեսնենք թէ ի՞նչպէս ընտրուած է Սահակ Բ

Այս ընտրութեան յարակից պարագաները և նշա
լից դրուագները կը պատմէ հոգելոյս Մաղաքիա Պատր
Օրմանեան իր «Խոհք եւ Խօսք»ին մէջ (էջ 197)։

«... Կիլիկիոյ կաթողիկոս Մկրտիչ Քեֆսիզեանի
ուամբ պահ մը աթոռը թափուր մնալէ ետքը՝ յաջորդի
րութիւնը կատարուած էր Իզմիրլեանի պատրիարքութե
րով, և ընտրեալը եղած էր Գրիգորիս Ալէաթճեան եպ
պոսը։ Բարձր Դուռը կամ լաւ եւս արքունիքը բացէ ի
մերժած էր այդ ընտրութիւնը վաւերացնելու։ Կիլիկիոյ
ը կը շարունակէր պարապ մնալ, երբ որ և ես ինծի հե
Վարչութիւնը գործի գլուխ կ'անցնէինք։... Նոր ընտրու
անցնելու առթիւ(*) նոր խնդիր մը գրգռեց ընտրող
գործողութեանց ձեւը, զոր կառավարութիւնը կը պահ
ընտրելեաց ցանկին նախապէս արքայագրութեան պայմանով
տարել... վարչութիւնը... ստիպուեցաւ զիջանիլ։...
յանձնառութեան վրայ Երուսաղէմի լուսարարապետ Խապա
Սահակ Եպս. պատրիարքական պատգամաւոր նշանակուեցաւ,
խապատրաստական գործողութիւնները կատարուեցան
Հոկտեմբեր 20-2 Նոյեմբերին, վեց ընտրելեաց ցուցակը ու
կուեցաւ Կիլիկիոյ Ընտրողական Ժողովին և Նոյ. 23-6 Դեկ
կաթողիկոս ընտրուեցաւ Երուսաղէմի փոխանորդ Երէց
Գէորգ Եպս.ը։ Երէցեան առջի օրէն գոհունակութեամբ չ
հաւորութիւններ ընդունելէ ետքը, ընտրութենէն հրաժ

---

(*) Տ. Գրիգորիս վախճանած էր 1899ին (Լ. Թ.)։

(**) Ինչ որ ցոյց կու տայ թէ հրաժարական կամ վաւերացում
Վարչութեան կը պկատանին, ինչպէս պիտի տեսնենք։

ւ արտաքին և կցկտուր պատճառներով. իմ ծանր նամակս ազդեցութիւն չունեցաւ, և վերջապէս ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ իպուեցաւ 1902 Փետր. 1-14ի նիստին մէջ հրաժարականը ընունիլ եւ ընտրութեան ձեռնարկել(*):

«Այդ միջոցին էր որ չենք գիտեր ինչ դրդմամբ և ուն գրգռութեամբ, կառավարութեան կողմէն Կիլիկիոյ Աթո- Կ. Պոլսոյ Պատրիարքութենէն անջատելու եւ նոր ու ինքնուրոյն ատրականութեան վերածելու գաղափարը ծագեցաւ, և առանց Կ. լսոյ Պատրիարքարանին հաղորդելու ուղղակի Կիլիկիոյ տեպահ Բեքմեզճեան Կիրակոս Եպիսկոպոսին հրահանգ տրուեւ նոր ընտրութիւն կատարել, և Ատանայի կուսակալ Պահփաշա ստացած հրամանը գործադրելու ձեռնարկեց.... Որփ ալ Բեքմէզճեանի և Կիլիկեցւոց և յատկապէս Ատանացւոց հանգներ հասցուցինք՝ իւրովի ընտրութեան չձեռնարկել, բայց ժամուն ուժգին միջոց մը գործածելու համար 1902 Յուլիս 2 Օգոստոսին հրաժարագիրս հասցուցի Նախարարութեան և ծէ քաշուելու դիրք ստանձնեցի։ Թէպէտ բանակցութեանց ւեցայ, բայց միշտ պնդեցի թէ ԲՈՎԱՆԴԱԿ ՕՍՄԱՆԵԱՆ ՅՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ ԸՆՏՐՈՒԱԾ ԸԼԼԱԼՈՎ՝ ինքզինքս ազատ զգամ ԵՐԲ ԱՆՈՐ ՄԷԿ ՄԱՍԸ ԻՆԷ ԿԸ ԽԶՈՒԻ ԵՒ ՄԻԱՑՆ ԱՑԵԱԼ մասին պատրիարք մնալու կը պարտաւորուիմ։ Այդ կէվրայ ամուր պնդելս իւր արդիւնքս ունեցաւ և ԿԱՅՍՐՆ ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿԻՆ ՁԱԽՈՂ ԸԼԼԱԼԸ ԶԳԱՑ, և Օտոս 18-31ին յատկապէս պալատ հրաւիրելով, պաշտօնաս հաղորդել տուաւ, թէ աթոռներու յարաբերութիւնները ԸՍՏ ԱՌԱՋՆՈՅՆ շարունակել հրամայած է, որով ես այլեւս հրաժականս պնդելու պատճառ չունէի։

«Պէտք է աւելցնեմ թէ Բեքմէզճեան տեղապահը և Անայի մեծամեծները առանց Կ. Պոլսոյ Պատրիարքութեան հանգին և մասնակցութեան ընտրութիւն կատարել չուին...»

Յառաջիկայ գլուխներուն մէջ աւելի լայնօրէն կ'ուսումնասիրենք խնդիրը։

⁂

# Բ.

# ՄԷԿ ԱԶԳ ՄԷԿ ԱԹՈՌ



**Այրարատեան Մայր Աթոռին հետ՝ ամբողջ**
**մնայ միշտ նոյն յարաբերութեանց, որոնցմով նախնե**
**ատենի կապուած են իրարու հետ ազգն ու աթոռը:**
«Ազգային Սահմանադրութիւն» 1860ի (Յօդ.

Ազգային Սահմանադրութիւնը, *որ միաձայնութեամբ ընդունեցաւ Ազգային Ընդհանուր Ժողովէն* 24 *Մայիս* 1860 *ազգին* նոր *կազմակերպութիւն մը չէ որ կու տար։ Ազգ իշխանութիւնը միշտ գոյութիւն ունեցած էր, Սահմանադ թիւնը* անոր ձեւը *կը սահմանէր, խորքը թողլով՝ ազգին վ մի արտօնութիւնները։*

*Աւետիս Վրժպ. Պէրպէրեան իր* «Պատմութիւն Հա *գործին մէջ կ'ըսէ (Գլ. ԿԸ.)* «Ցաղագս հաստատութեան Ազգ Սահմանադրութեանն Հայոց» *խորագրին տակ.*

«(1860) Ցաւուրս *պատրիարքութեան Մատթէոսի* [*]... *ի բարեկարգել զազգային իշխանութիւնն խորհեցան ի Գիր ՅՈՒՑԱՆԵԼ ԶՎԱՂԵՄԻ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆՍ ԱԶԳԱՅԻՆՍ շնորհ յաղթապատուեալ կայսերաց Օսման տէրութեան, և* զձեւ ազգ իշխանութեանն, *որ, ի սկզբանէ հետէ ժողովրդախառն է,* մանադրել եւ կանոնաւորել»։

*Նախորդ էջերուն մէջ այս կէտը արդէն շեշտած ե Պատրիարքական առաջին* պերապը, *որով ազգային արտօ թիւնները կը սահմանուին և կը հաչակուին, Նորահաստ պատրիարքութեան տրուած է, ինչպէս յիշեցինք Ֆաթիհ Ս թան Մուհամմէտէ* 1461-*ին*[**]*։ Անկէ ետք պերաթները կրկնա են իւրաքանչիւր պատրիարքի աթոռակալութեան առթիւ։ կէտը բացատրութեան մը կը կարօտի. անպատեհ չէ զայն յիշել։ Իսլամ աշխարհին կազմակերպութեան ըմբռնումով*

(*) Ցետոյ Մատթէոս Ա. Հայոց Կաթողիկոս:

(**) Կորսուած պատրիարքարանի մէկ հրդեհին մէջ, ինչպէս այլ հին օրինակները:

*թիւնը կամ աւելի չիտակը պետութիւնը՝ ինքնակալն է, ա-մահուամբ պետութիւնը կը վախճանի և կրկին կը ծնի,* ...պէս ըսելու համար, յաջորդող վենապետով։ Ահա թէ ինչո՛ւ ...քանչիւր սուլթան, իւրաքանչիւր պատրիարքի համար պերարքը կը խմբագրէ, *որ, սակայն ըստ աւանդութեան օրէն-*...քոս էութեանը՝ *առաջին պերարքին կրկնութիւնն է։*

*Ինչպէս վերը ըսուեցաւ, Ազգ. Սահմանադրութիւնը ի անցուցած է այս վաղեմի ազգային արտօնութիւնները։* ...*Պատրիարքարանի մէջ պահուած օրինակներէն [որոնց* ...*դիրը կայ Պէրպէրեանի վերոյիշեալ հատորին մէջ, էջ* ...27] *քաղելով, թարգմանաբար կը ներկայացնենք ստորեւ*...*ց մեզ հետաքրքրող էական հատուածները.*

«... *Այս օգոստափառ հրովարտակս տուի [այս անուն* ...*ատրքին]... և հրամայեցի որ սփիւռս Կ. Պոլսոյ և* Ռումե-... և Անատոլիի և յարակից մասանց *հայոց առաջնորդներու, ե-*...*ցականներու և հայոց վրայ... Պատրիարք լինի՝ ըստ* իրենց ...անդ սովորութեանց, օրինաց եւ դաւանանքին։ *Եւ պատրիար-*...*թեան ենթակայ յիշեալ վայրերու առաջնորդները և եկե-*...*ղականները ու բովանդակ հայոց մեծն ու փոքրը յիշեալը* ...*րիարք ճանչնան. պատրիարքութեանը պատկան իրենց* ...*ի [դաւանանքին) տրամադրութեանց վերաբերեալ խնդրոյ* ...*ար դիմեն յիշեալ եկեղեցականին, անոր արդար խօսքէն* ...*լին։ Անոր պատրիարքութեանը ենթարկեալ վայրերու մէջ* ...ալ կրօնաւորն է որ, առաջնորդները եւ կուսակրօն կղերը եւ ...աններն ըստ հայկական դաւանանքին, արժանի դասէ՛ պաշտօ-...նայեցնել կամ հրաժարեցնել, դրանց ոչ ոք արգելք պիտի չըլլայ ...ոչ ալ միջամտուի։ Եւ առանց յիշեալ պատրիարքին կնքեալ հա-...եան, վիճակի մը բնակիչներուն կողմէ կամ խնդրագիրով, ոչ առաջնորդութիւն պիտի չտրուի........ *և անիրաւասու անձեր՝ եկեղեցականը պաշտօնազրկէ և անոր եկեղեցին սա կրօնա-*...*ին տուր ........ ի ձեռ ....* Հայոց դաւանանքին հակառակ ...*ութեանց չձեռնարկեն...... և հակառակ դաւանանքի, հա-*...*թիւնը գրգռողներ պատրիարքին ձեռօք և իմ կայսերական* ...*վարտակովս ձերբակալուին և այդպիսիներու հանդէպ պատ-*...*ը տնօրինուի և գործադրուի։ Եւ ըստ օրինի ձերբակալու-*...*նը հարկ դատուած հայ կղերը և քահանայք յիշեալ պատ-*...*րքին միջոցաւ կալանաւորուին։ Ոչ ոք առանց իր յօժա-*...*թեան միւսլիման պիտի չըլլայ։ ......... Եւ ոչ ոք դրսէն*

*արգելք յարուցանէ անոր պատրիարքական իշխանութիւնը կ*
*բարկելուն։ ....... Եւ Տէրութեանս մէջ հաստատուած եկեղե*
*ներոց ու վանքերու մէջ բնակող կղերին՝ քահանայ և կա*
*կրօն՝ համարատուութիւնը* պատրիարքին եւ անոր տեղակալներ
ձեռօք ըլլայ: *Եւ հնաւանդ Հայութեան պատկան եկեղեցին*
*ու վանքերը, որբանոցները չորսուին... փաշաներու, կառ*
*վարիչներու, և վոյվոտներու և* վիճակին բնակիչներուն։ *Արտ*
*քին միջամտութիւն չըլլայ։ Այսպէս գիտցէ՛ք, հնազանդեցէ*
*որբազան նշանակիս [սուլթանական, կնքոյս]»։*

***

*Ըստ էութեան Ազգային Սահմանադրութեան մշակմ*
*արտօնութիւնը կը բղխի* 1856-*ի* խաթթը հիւմայիւնէն, *որով Սու*
*թան Մեճիտ կը յանձնարարէր ոչ-իսլամ ազգութիւններու*
*ձեռնարկել* իրենց արտօնութեանց եւ առանձնաշնորհմանց քննու
թեան եւ բարեփոխութեան: *Առ այս իւրաքանչիւր հասարակ*
*թիւն, պատրիարքարաններու մէջ սուլթանին հաճութեամբ*
*Բարձր Դրան հսկողութեան տակ յատուկ ժողովներ պիտի կա*
*մէր «ժամանակին ինչպէս նաեւ լուսաւորութեան յառաջդ*
*մութեանց և քաղաքակրթութեան պահանջմանց համաձայն» ա*
*բարեկարգութիւնները կատարել և զանոնք Բարձր Դրան նե*
*կայացնել։* «Այն իրաւասութիւնք, *կ'ըսէր* խաթթը հիւմայիւնը,
շնորհուած *են փառայիշատակ Սուլթան Մուհամմէտ Ֆաթիհի*
*անոր վեհափառ յաջորդներուն կողմէ՝ քրիստոնեայ պատր*
*արքներու և եպիսկոպոսներու, պիտի ներդաշնակուին նո*
*կացութեան և դիրքին որ սուլթանին վեհանձն՝ նպատակներ*
*կ'ապահովէին այս հասարակութեանց»։*

*Հայոց Ազգ. Սահմանադրութիւնը այս հրահանգին հա*
*մաձայն և այս ձեւով մշակուեցաւ։ Բ. Դրան ներկայացուցիչ*
*ներու մասնակցութեամբ՝ ազգային ներկայացուցիչներու վե*
*րաքննիչ ժողովը, պատրաստեց Սահմանադրութեան բնագիրը*
*որ յետոյ ներկայացուեցաւ Սուլթանի հաւանութեան։ Այս վե*
*րաքննիչ ժողովը, կամ ըսենք Սահմանադիր ժողովը իր աշ*
*խատանքներուն սկսաւ* 1858-*ին, և Սուլթան Ապտիւլ Մեճիտ*
*կողմէ պատրաստուած բնագրին վաւերացումէն ետք* 24 *Մայի*
1860-*ին պատրիարքանիստ մայր եկեղեցւոյ մէջ գումարուա*
*Ընդհանուր ժողովը զայն հռչակեց։*

*Սուլթան Ապտիւլ Ազիզի կառավարութիւնը* 1860-*ի Սահ*
*մանադրութեան վերաքննութիւնը պահանջեց, ազգին, իրա*

ները սահմանափակելու առաջադրութեամբ։ Նոր խառն աժողով մը կազմուեցաւ այս վերաքննութեան համար, ո-կազմած նախագիծը Ազգ. Ժողովի ալ քննութենէն անցնե-վերջապէս ընդունուեցաւ և վաւերացուեցաւ Սուլթան Ա-ն 17/30 Մայիս 1863-ին։

Գլխաւոր փոփոխութիւնը եղաւ 8-րդ յօդուածին տրա-րութիւններուն մէջ որ կը սահմանեն Ազգ. Վարչութեան րերութիւններու բնոյթը՝ Բ. Դրան, Մայր Աթոռին և ազ-հանդէպ. ասոնք փոխադրուեցան Նոր սահմանադրութեան տրական յիշատակագրին, որ խառն (կառավարական և յին) յանձնաժողովը Սահմանադրութեան յարակից կ'ուղ-ղեհապետին։ Այս յիշատակագրին Գ. տրամադրութեամբ Վարչութեան պարտականութիւնն է էջմիածնայ Ս. Աթոռին ով՝ հաւատարիմ վարուիլ ընդ կանոնաց եւ օրինաց Հայաս-այց Եկեղեցւոյ»։ Ուրեմն 1860-ի բնագրին վրայ կատարուած ն փոփոխութեան բնոյթը կը կայանար անոր կարգ մը ններուն հո-առաջ տարուելուն և մասնաւորաբար 8-րդ ածով քիչ մը շատ որոշ կերպով խմբագրուած ազգային ականութեանց (Բ. Դրան, Մայր Աթոռոյ և ազգին հան-ռճի սրբագրութեան մէջ։ Մայր Աթոռին հանդէպ սահ-ուած պարտականութիւնը իր ոգիին և գրեթէ տառին մէջ խութիւն չէր կրեր։ Փոփոխութիւնը Օսմանեան կառավա-եան (Բարձր Դրան) հետ յարաբերութեանց կէտին սեղմու-մէջ կը կայանար էապէս։



## Գ.

# ՈՒՐ ԱԶԳՆ ԱՆԳԱՄ ՉՈՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹ
# ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ

Սահմանադրութեան վերաքննութիւնը ազգին համ
ընդունելի է երբ հիմնական սկզբանց տրամադրութ
համաձայն ըլլայ, այն սկզբանց՝ որով ապահովեալ են
իրաւունքները, իրաւունք՝ որոնց վրայ ազգն անգամ
իշխանութիւն տնօրէնութեան զի միանգամայն պարտի

*Այս* հիմնական *սկզբունքներէն մին է Հայաստան
Եկեղեցւոյ ոչ միայն դաւանութիւնը, այլ և* աւանդութիւ
*անխախտ պահել։ Եւ արդէն Ազգ. Սահմանադրութեան
այն տրամադրութիւնները որ կը վերաբերին եկեղեց
աւանդութեանց և Հայոց. Եկեղեցիին միաւոնականութ
կեդրոնացած են Ազգ. Պատրիարքարանի. Կեդր. Իշխանու
ձեռքը, որպէս աւանդապահը Հայաստանեայց Եկեղեցւոյ
նոնաց և օրինաց, և այս՝ որպէս պարտականութիւն մը
դէպ Արարատեան Մայր Աթոռոյ, Ս. Էջմիածնի, Ամե
Հայոց Կաթողիկոսին։ Այս սկզբունքը և անոր տրամադ
թիւնները խախտելու իշխանութիւն չունի* «ազգն անգա
միանգամայն պարտիք են»:

*Մեր նիւթը ճապաղած չենք ըլլար, արտագրելով
Սահմանադրութեան զայն չահագրգռող կարգ մը յօդուած
և տրամադրութիւնները, որ կը չեշտեն աւանդական նու
պետական կարգով ազգային եկեղեցական կարգապահութ
իրաւանց և պարտուց ներդաշնակութեամբ, գաւառական
կեդրոնին միջեւ մասնաւորապէս։ Պիտի տեսնենք որ պ
գաներու բերմամբ գոյութիւն առած մասնակի Աթոռներ
մեքենային մաս չեն կազմեր, որ այդպիսի Աթոռներու
ճակատոր եպիսկոպոսները, այսինքն առաջնորդները
նախնեաց աւանդութեան իրենց Թեմերու ժողովուրդէն
տրուին, բայց ընտրութիւնը կը վաւերացուի Պատրիա
րանէն և կ'անուանուին Ազգ. Վարչութեան խառն ժող
հաւանութեամբ՝ Պատրիարքէն՝ այսինքն Արարատեան Մ
Աթոռոյ փոխանորդի հանգամանքը ունեցող և Ս. Էջմ՝*

*իր ուխտը կատարած և Հայոց կաթողիկոսէն ձեռնադ-
ած և օծուած եպիսկոպոսէն։ Մասնաւոր կաթողիկոսներ
ամարայ և Սսոյ), ինչպէս Ս. Երուսաղէմայ պատրիարքը
իսկոպոսական ալ է և որուն անունը կը յիշուի պատարա-
էջ որպէս առաջնորդական աթոռ) պարզապէս «վանահայրեր»
ած են։ Մասնաւոր կաթողիկոսներու թողուած միակ դերն
պատրիարքին իրենց հովուած վիճակներու վրայ անուա-
առաջնորդները եպիսկոպոս ձեռնադրել։*

*Առանց աւելի երկար մեկնաբանութիւններու և ըն-
ուրին թողլով քննել և եզրակացնելը, պարզապէս պիտի ար-
նք վերայիշեալ սահմանադրական տրամադրութիւնները։*

*Սահմանադրութիւնը իր հիմնական սկզբունքով պատրի-
քեան դրութիւնը կը վերածէ պատրիարքին նախագա-
ամբ Ազգային Վարչութեան «որուն Օսմ. տէրութենէն
ծ արտօնութեամբ յանձնեալ և Տաճկաստանի հայոց ներ-
րծոց անօրէնութիւնը»։ (Հիմնական Սկզբունք Ա.)։*

*Ազգային վարչութեան պարտականութիւնն է «... Հա-
նեայց Ս. Եկեղեցւոյ* դաւանութիւնն ու ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ-
անխախտ պահել...» (*Հիմ. Սկզբունք Ե.*)։

Կազմական տրամադրութիւն Ազգային Վարչութեան.—

3.— *Ազգային Վարչութեան պաշտօնական գլուխ՝ Պոլսոյ
իարքն է և կեդրոն՝ Պատրիարքարանը։ ... Ազգային
Վարչութեան... իշխանութիւնը* բոլոր Տաճկաստանի
վրայ կը տարածուի։

*Յօդ.* 4.— *Ազգ. Կեդր. Վարչութիւնը առաջնորդարա-
գաւառներու մէջ* կը ներկայանայ գաւառական ժողովնե-
*րովք Պոլսէն դուրս* ազգային վարչութեան գաւառական
կը կազմեն, *որոնց պաշտօնական գլուխը վիճակին ա-
որդն է, և կեդրոն՝ տեղին առաջնորդարանը։*

ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆ

*Յօդ.* 7.— *Գաւառական վարչութեան մէջ՝ թաղական ու
կան խորհուրդները համարատու են գաւառական ժողով-
ն, գաւառական ժողովները համարատու են գաւառական
ժողովներուն.* գաւառական վարչութիւնը համարատու է
ական վարչութեան եւ առաջնորդը՝ պատրիարքին։

ՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՔ

*դ.* 8.— *Ազգային վարչութեան* ազգին հետ, Արտա-

տեան Մայր Աթոռին հետ... *ունեցած յարաբերութիւնները* սկզբանց վրայ *հիմնեալ պիտի ըլլան։*

*Ազգին և ազգայնոց հետ՝ հայրաբար վարուիլ։*

***ԱՐԱՐԱՏԵԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻՆ ՀԵՏ՝ ԱՒԱՆԴԱՊԱՀ Մ[...] ՄԻՆՉԵՒ ՆՈՅՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ՈՐՈՆՑՄՈՎ ՆԱԽՆԵԱՑՄԷ Ա[...] ԿԱՊՈՒԱԾ ԵՆ ԻՐԱՐՈՒ ՀԵՏ ԱԶԳՆ ՈՒ ԱԹՈՌԸ...*** *Սոյն յա[ր]բերութեանց միջնորդ պատրիարքն է։*

ԱԶԳԱՅԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

*Յօդ. 11.— Ընդհ. ժողովին պաշտօնն է... ազգ[...] ծանր կամ ընդհանրական գործերը վճռաբար անօրինել։*

*Իր պարտաւորութիւնն է Ազգ. Սահմանադրութ[...] սկզբունքները անխախտ պահել և անոնց տրամադրութեա[...] համեմատ վարուիլ։*

*Յօդ. 12.— Ընդհ. ժողով կը գումարուի՝*

*... կաթողիկոսի ընտրութեան մասնակից ըլլալու մար։ Երուսաղէմայ և Պոլսոյ պատրիարքաց ընտրութ[...] համար։*

ՊԱՏՐԻԱՐՔ

*Յօդ. 14.— Պատրիարքը ազգային ժողովոց նախագ[...] է և անոնց գործադիր իշխանութիւնը կը վարէ։*

*Յօդ. 16.— Պատրիարքը իր բացակայութեան ա[...] ազգ. ժողովներու մէջ տրուած որոշում մը չստորագրած, րաւունք ունի դիտողութիւն ընելու և խնդիրը կրկին քն[...] թեան առնել տալու, իսկ երկրորդ որոշումէն ետքը պար[...] ւոր է ստորագրելու, եթէ՝* այն որոշումը Սահմանադրութ[...] տրամադրութեանց անհամաձայն չգտնէ։

*Յօդ. 17.— Պատրիարքը* իրաւունք ունի *Սահմանադ[...] թեան տրամադրութեանց համեմատ չվարուող ազգա[...] գործակալ մը, այսինքն՝ եկեղեցական մը... իր պաշտօ[...]* հանելու կամ արգիլելու *առաջարկութիւն ընել որուն անկ է։*

ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Յօդ. 21.— Կրօնական ժողովին պաշտօնն է՝ ազգա[...] կրօնական գործոց ընդհ. տեսչութիւնը։ Իր պարտաւորութ[...] քըն են...* Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ դաւանութիւնն ու ա[...] դութիւնները անխախտ պահել, *եկեղեցւոյ և եկեղեցականաց բա[...] կարգութեանը հսկել... արժանաւոր ու բանիբուն եկեղեց[...] կաններ հասցնել և* ազգին մէջ ծագած կրօնական վէճերը [...] և. լուծել։

Յօդ. 22.— Երբ պատահի կրօնական այնպիսի ծանր-
ր մը զոր կրօնական ժողովը չկարենայ լուծել, ընդհ.
ին բազմական զանազան եկեղեցականաց հետ համագումար
պիտի կազմէ, երբ այն համագումար ժողովն ալ իր ձե-
ռութենէն վեր դատէ զխնդիրը, ԱՅՐԱՐԱՏԵԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻՆ-
է ԴԻՄԷ:

Յօդ. 23.— Թէ մայրաքաղաքի և թէ գաւառներու մէջ
պետի և քահանայի ձեռնադրութեան հրաման կրօնական
ն կը տրուի:(*)

ԳԱՒԱՌԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Յօդ. 76.— Գաւառական ընդհ. ժողովներուն պաշտօնն
քանչիւրը իր գաւառին կողմէ երեսփոխանութեամբ
ին առաջնորդը ընտրել:

Յօդ. 77.— Առաջնորդը գաւառական ժողովներուն նա-
ն է և անոնց գործադիր իշխանութիւնը կը վարէ:

Յօդ. 78.— Առաջնորդը պիտի չկրնայ վանքերու մէջ
թիւն հաստատելով իր պաշտօնէն հեռանալ, այլ գաւառական
որ քաղաքին մէջ ազգային առաջնորդարանը պիտի
, ուր կը գումարուին գաւառական ժողովները:

ԱԶԳԱՅԻՆ ՏՈՒՐՔ

Յօդ. 88.— Գաւառները մասնակից պիտի ըլլան ազգա-
դհ. տուրքին:—

Գաւառներուն կողմէ ազգային կեդր. սնտուկին տըր-
մինչև ցարդ սովորութիւն եղած տարեկան տուրքին
էն՝ գաւառական սնտուկը իր հաւաքած գաւառական ընդհ.
ին հարիւրին այսքան պիտի տայ ազգ. կեդրոնական
ին: Հարիւրին որքան տրուիլը Պոլսոյ Քաղաքական
պիտի որոշէ:

ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ

Յօդ. 115.— Պատրիարքը պէտք է որ էջմիածնայ կաթողիկո-
նադրեալ կամ անկէ իբր էջմիածնայ եպիսկոպոս ընդու-
նած մ'ըլլայ:

Յօդ. 116.— Երբ ընտրեալը վարդապետ ըլլայ, անմիջապէս
ին կը ղրկուի եպիսկոպոս ձեռնադրուելու համար:

Յ դ. 122.— Առաջնորդի ընտրութիւնը գաւառական

(* ...րեմն՝ կեդրոնէն:

*ընդհ. ժողովին մէջ կ'ըլլայ նոյն և նման պարբերաբերութեան։*

*Սոյն ընտրութիւնը գաւառական խառն ժողովին նորդութեամբ վաւերացեալ տեղեկագրով կը ծանուցանէ ընտրողներին*, որ կեդր. խառն ժողովին հաւանութեամբը կ'ան... զառաջնորդը:

*Յօդ.* 123.— *Եթէ առաջնորդը Սահմանադրութեան պակասութեան մը մէջ գտնուի, ամբաստանութեան կ'ընկնի գաւառական ժողովոյ կողմէն և քննութիւնը ըստ յօդուածին ըլլալով՝* դատը կեդր. խառն ժողովին մէջ կը տե... որ ըստ պատշաճի կը տնօրինէ:

*Յօդ.* 150.— Սահմանադրութեան վերաքննութիւնը ա... համար անընդունելի է, երբ հիմնական սկզբանց տրամադրութ... համաձայն չըլլայ, այն սկզբանց՝ ՈՐՈՎ ԱՊԱՀՈՎԵԱԼ ԵՆ Ա... ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԸ, ԻՐԱՒՈՒՆՔ՝ ՈՐՈՆՑ ՎՐԱՅ ԱԶԳՆ ԱՆԳԱՄ Զ... ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ՉԻ ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ՊԱՐՏԻՔ Ե...

*
* *

*Ազգ. Սահմանադրութեան* 1860-*ի սկզբնական բնա... այս քաղուածներով մեր ընթերցողներուն ներկայացուցա... ղանք բնագիր մը, որուն վրայ կը հիմնուին և որմէ կը հա... այսօր Անթիլիասի «ինքնագլուխ»ները իրենց անջատող... ձգտումները արդարացնելու համար։*

*Արդարեւ, Անթիլիասի Տեղապահ Խորէն Սրբազան ... յոց Կաթողիկոսին ուղղած իր գրոյն մէջ կը համարձակի ը... թէ Արարատեան Մայր Աթոռին գահակալին նախագահութ... տակ գումարուած Եպիսկոպոսական Ժողովը կանոնական, ... մական և աւանդական ոեւէ իրաւասութիւն չունի զբաղ... Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան վերաբերեալ ... ցերով։ Թէ՝ «Կիլիկեան Թեմերու Պատգմ. Ժողովը»* Հայց. դեցւոյ աւանդութեանց վրայ հիմնուած սահմանադրական ոգ... *կազմուած՝ օրինականօրէն անթերի կերպով կատարած է Տ... Կիլիկիոյ հայրապետական ընտրութիւնը, թէ* անցեալին մէջ նոյն հիմունքներով ընտրուած են Կիլիկիոյ կաթողիկոսները *զար... նալիօրէն խոստովանելով հանդերձ թէ՝* Կիլիկեան թեմերն աթոռը կը կառավարուին ԱԶԳ. ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ եւ կա... նագրութիւններով, որոնք պետականօրէն հաստատուած եւ ընդ... ...ուած են:

*Ինչ որ որոշ է պատմականօրէն, այն է թէ Կ. Պոլսոյ 1461-ին հաստատուած եպիսկոպոսը, որ Արարատեան Ս. ոյ միաբան և հայոց կաթողիկոսէն ձեռնադրուած եպիս- ս մըն է և* յաչս Հայաստանեայց Եկեղեցւոյ հայոց կաթողի- ի փոխանորդը, *յանուն Ազգին և Աթոռին կ'իշխէր Օսմ. ւթեան ենթակայ Հայոց Եկեղեցւոյ բոլոր վիճակներուն, որս կիլիկեան թեմերուն, որ* 1517-*էն ի վեր Օսմ. տէ- եան մաս դարձած էին (Եաւուզ Սուլթան Սելիմի կատա- նուածութիւններով). Կիլիկեան մասնաւոր հայրապետութիւնը ուած ըլլալով* 1446-*ին, ուրեմն* 59 տարի միայն *ինքնավա- իւն ունեցած է, անիշխանութեանց հետեւանքով։*



## Դ.

# Ս. ԱԹՈՌԸ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ Է ԵՒ ՈՒՐ
## ՄԷԿ՝ ՀԱՅՑ. ԵԿԵՂ. ՆՈՒԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Գ

Մաղաքիա Արք. Օրմանեան, որ կերտած է աստ
բանութեան բեմն Ս. Էջմիածնի Գէորգեան Ճեմարանին
Մակար Կաթողիկոսի օրով, Կ. Պոլսոյ մերձակայ Արմաշի
բեվանքը կազմակերպած՝ իր Պատրիարքութեան Աթոռը
լէն առաջ, որ իր «Հայաստանեայց Եկեղեցի» և այլ
տրոսական երկերով Հայաստանեայց Եկեղեցւոյ վարդա
թիւնը երկասիրած, հմուտ եկեղեցականներ հաստցուց
1886-ին Վաղարշապատի մէջ լոյս տեսած «Աթոռ Հայաստան
գործին մէջ կ'ուրուագծէ Արարատեան Ս. Աթոռոյ էութ
Ընդհանրական և Ազգային տեսակէտով։

Եկեղեցւոյ սկզբնական կազմակերպութեան առենէ
է որ ինքնագլուխ Աթոռներու գոյութիւնը կը տեսնենք
քեալական հաստատութեամբ։ Առաքեալները իրենց քա
շրջանին մէջ կը հիմնէին եկեղեցի և անոնց յաջորդները
կը վարէին և կը տարածէին հոն ուր քրիստոնէութիւնը
րոզուած չէր, և այսպէս կը կազմուէին եկեղեցւոյ ինքն
աթոռներ, առաքելական յաջորդութեամբ։ Մեր նիւթէն
է Հռովմէական Կայսրութեան մէջ այս աթոռներուն հաւ
մով զբաղիլ։

«Կայսրութենէն դուրս երկիրներն ալ — կ'ըսէ Մ
քիա Արք. Օրմանեան (անդ էջ 9), — ինքնագլուխ եկեղե
գլուխներ ունէին առաքելական հաստատութեամբ և այս
սակ էին Հայոց, Պարսից և Եթովպացւոց աթոռներն։ Ա
ալ դարձեալ իրենց յարակից՝ նախամեծար արքեպիսկոպ
թեանց նման մեծ աթոռներ ունէին, զոր փոքր կաթո
հնար է անուանել, զոր օրինակ Աղուանից և Վրաց Աթ
որք իրենց ներքին մետրապոլական աթոռներն ունէին,
կայն Հայոց Աթոռոյն գերագահութիւնը կը ճանչնային»։

Այս այն հիմամբ՝ որ այս ազգաց մէջ քրիստոնէութ
տարածուած էր Ս. Լուսաւորչի և յաջորդաց ձեռօք։

Երբ քրիստոնէութիւնը ընդհանրական և անդ չա

*ք դարձաւ և Տիեզերական Ժողովով անոր հանգամանքը, …ակերպութիւնը ճշդել հարկ տեսնուեցաւ, սահմանուեցաւ …նախնեաց սովորութիւնք պահեսցին...» (Սուրբ Ժողով …եայ կանոն Զ.)։*

*«Երեք ինքնագլուխ աթոռներն, զորս յիշեցինք կայ…ական սահմաններէն դուրս, երեքն ալ առաքելական ա…ներ են։ Ս. Շմաւոն հաստատեց իր աթոռը Պարթեւաց …աւորութեան մէջ, և Ս. Առաքեալն Բարթողիմէոս՝ Հայոց …աւորութեան մէջ, և Ս. Առաքեալն Մատթէոս յԵթով… ... Նոյն օրինօք(1) և իրաւամբ որով ընդունուեցաւ Ս. …տոսի յաջորդութիւնն ի Հռոմ, Ս. Յակոբայ յաջորդութիւնն …ուսաղէմ(2), Յովհաննու յաջորդութիւնն յԵփեսոս, և Ս. …կոսի յաջորդութիւնն յԱղեքսանդրիա...» (Նոյն, անդ …6)։*

*Բացի Կեսարիոյ Ղեւոնդ Հայրապետին վկայութենէն, …քիա Եպիսկոպոս կը յիշէ նաեւ Եփեսոսի Ս. Ժողովոյ ո…ւմը, 431 Օգոստոս 31-ին տրուած (Նոյն, անդ էջ 35)... …ոյս կանոն պահեսցի նաեւ յայլ վիճակս և յամենայն նա…ս, զի մի ոք յամենապարեպաշտից եպիսկոպոսաց գրաւե…պաւոռ որ յառաջագոյն և ի սկզբանէ անտի չիցէ եղեալ …իւրով կամ նախնեացն իւրոց՝ իշխանութեամբ։ Եւ եթէ …րաւեալ իցէ դարցուցէ զայն, զի մի Հարցն կանոնք ա…եսցին,* եւ զի մի՛ ընդ անուամբ քահանայութեան սոփպեսցի

---

1) Ղեւոնդիոս Էքսարքսոն Կեսարիոյ բացայայտ կերպով կը հաստատէ …իս այն խօսքերով, զորս ինքն կ՚ուղղէ առ Գրիգոր Հայրապետն Հայոց.— …րդ քանզի ի քեւ ծագեաց արեգակն արդարութեան Քրիստոս ի դոցա …ս), եւ դու ընտրեցար ի տեղի ընտրելոց սրբոց Առաքելոցն Բարթո…սի եւ Թադէոսի» (Նոյն էջ, 29, երես՝ 10)։ (Զենոբ Պտ. Տարոնոյ, տպ. …իկ, 1932)։

Ծանօթ. Մ. Արք.

2) Ս. Յակոբոյ Աթոռոյն Առաքելական հաստատութիւնը, Ս. Տեղեաց …մանքին հետ, պատճառ են, կը կարծենք, որ Հայաստանեայց եկեղեցին …ատեան Մայր Աթոռին հետ տիեզերական կը նկատէ Երուսաղէմի Հա…արիարքը, որուն անունը կը յիշուի Ս. պատարագի ընթացքին Ամենայն …կաթողիկոսէն անմիջապէս յետոյ։ Ազգային Սահմանադրութեան հեղի…րն ալ տիեզերական կ՚անուանեն Ս. Երուսաղէմի Պատրիարքութիւնը, …ր՟ ւրութիւնը տեղի կ՚ունենար Ազգ. Ընդհ. Ժողովէն, որպէս այդպիսին։

(Ծանօթ. Լ. Թ.)

աշխարհական իշխանութեան զոռոզութիւն, եւ մի սակաւ սակաւ յանգգաւսս կորիցէ ազատութիւնն զոր շնորհեաց մեզ, եամբքն իւրով Տէրն մեր Յիսուս Քրիստոս Փրկիչն ամենայն մ կանց (*ընդգծումը մերն է*)։ *Վասն այսօրիկ պահեսցին ի ւոնքն իւրաքանչիւր գաւառաց որպէս էին անդստին, ի կզբանէ նախնեաց սովորութիւն։ Եւ իշխանութիւն ունի մետրապոլիտքն ամենայն առնուլ զպատճէն վճռոյս ի պ պանութիւն իւրեանց։ Եւ եթէ ոք նախնեացն սովորու անարգիցէ, մի մնասցէ անպատուհաս։ Եւ եթէ ոք յառաջ սովորութիւն ինչ որ հակառակիցէ այնմ, զոր վճռովս սա նեցաք այժմիկ, անհիմն վճռէ ճանաչել զայն սուրբ և հանրական ժողով»* ( *Ժող. Եփես. գործ է* acta, I. 332)

*Իսկ Կ. Պոլսոյ ժողովին կանոնը կ'ըսէ... (տես անդ էջ* 32)*.— «Իսկ եկեղեցիք Աստուծոյ, որք սահմանս բարոսաց (բարբարոս անուամբ կ'իմացուէին այն երկիր որք կայսրութեան սահմանէն դուրս էին — Մաղաքիա Ե կոպոս), պարտ է զի վարեսցին ընդ հարցն 'սովորութ որք պահեալ են ի մեզ»։*

*Ահա' ուրեմն Հայոց Թագաւորութեան մէջ, Հայա նեայց Առաքելական Ս. աթոռին հաստատութիւնը, որուն կան սահմանը եղած է բնականաբար Մեծ Հայք, որուն կ'իշխէին Արշակունիք։*

*Բայց դարեր վերջ, երբ Մեծ Հայքն ալ և Փոքր Հ ալ օտար տիրապետութեան տակ էին, Կիլիկիոյ մէջ կը նուէր Հայոց Թագաւորութիւն, որու վրայ որոշուեցաւ Ս Աթոռը փոխադրել Սիս, մայրաքաղաքը, ինչպէս անկէ ա փոխադրուած էր Անի։ Ս. Աթոռը դարձած էր Ամենայն Հ Հայրապետութիւն սակայն, որ կ'իշխէր Թաթարաց տիր տութեան տակ գտնուող Հայաստանի և ցրօնքի բոլոր հ վրայ։*

*Այս փոխադրութիւնը որ մեզի պարզ և բնական կ'ե ւի՝ այնքան ալ պարզ չթուեցաւ Անտիոքայ Լատին Աթոռ որուն սահմաններուն մէջ կ'իյնար Կիլիկիան։ Բայց այս խ դիրը թոյլ տուաւ ճշդել Հայաստանեայց Ս. Աթոռին «առ հողային-ազգային» հոլովոյթը և անոր ճանաչումը, քրիս եայ աշխարհէն։*

*Լսենք «Աթոռ Հայաստանեայց»ի Սրբազան հեղ ին (նոյն, անդ էջ* 49-50)*.—*

*...չպէս ըսինք՝ դեր մը յատկացնել Նուիրապետական աթոռ-ին՝ սահմանադրականօրէն ճշդուած պայմաններու տակ։*

*Ն. Ս. Օ. Տ. Տ. Վեհափառ Հայրապետին Նախագահու-մը գումարուած Հայց. Եկեղեցւոյ Եպիսկոպոսական Ժողո-... արդէն ձեռնարկած է Սահմանադրութեան մշակման եւ առ-յանձնաժողով մը նշանակած՝ որ մինչեւ 1956 Սեպտեմբեր-ը պատրաստած պիտի ըլլայ այդ Եկեղեցական Սահմանա-...թեան Նախագիծը։*

*Բայց մինչ այդ Հայց. Եկեղեցւոյ արտասահմանեան թե-...աթոռները, բոլոր թեմերը պարտաւոր են հպատակիլ Սահմանադրութեան տրամադրութիւններուն. ինչ-չափ ճիշդ կերպով դիտել կու տայ Փարիզի «Յառաջ» ...թերթը («Մեր խօսքը», 27-28 Ապրիլ 1956).* «Ոչ ոք իրա-ունի չեղեալ համարելու հարիւրամեայ Ազգ. Սահմանա-...ւնը ցորչափ նորագոյնը չէ յօրինուած»:

*Խիստ օրինական դիտողութիւն մըն է ասիկա։*

*Անթիլիասի Աթոռին Տեղապահ Տ. Խորէն Եպս., ինչ-յիշեցինք, Եպիսկոպոսական Ժողովին կողմէ 20 Մարտ-ն կատարուած կաթողիկոսական ընտրութեան թերի կեր-...տարուած եւ հետեւաբար անընդունելի նկատուիլը վըճ-...ռոշումը ժխտելու համար կոչում կ՚ընէր, ինքն ալ, Ազգ. ...նադրութեան։*

*Օրինականութեան այդ նախանձախնդրութիւնը առիթ ... մեզի դիմել ամենէն բանաւոր միջոցին՝ նոյնինքն Ազգ.*

---

...) Անոնք որ բառերու հետ չեն խաղար, Եպիսկոպոսական Ժողովին օրի-...ութիւնը եւ աւանդութեանց համաձայն ըլլալը չեն կրնար խնդրոյ առար-...։ Սահմանադրութենէն առաջ դարերով պատրիարքը իրեն խորհրդական ... է եթէ ոչ հայոց բոլոր թեմակալ եպիսկոպոսները, այլ գոնէ Կ. Պոլիս ... եպիսկոպոսները: Իսկ Ազգ. Սահմանադրութեան կրօնական ժողովի ...ութեանց վերաբերեալ յօդուածները, զորս յատկապէս արտագրեցինք, ...կեղեցւոյ կրօնական դասուն պարտականութիւնները կը նկատեն եպիսկ. ... մէջ քննուած խնդիրները: Կրկնենք, «Կրօնական ժողովի պաշտօնն է ...կեղեցւոյ դաւանութիւնն ու *աւանդութիւնները* անխախտ եւ անարատ ...եւայլն, եւն. (տես 1860-ի բնագիր Սահմանադրութիւն յօդ. 20, 21, 22, ...ագրած ենք այս աշխատութեան սկիզբը): Իսկ եթէ սահմանադրու-...ային պիտի կառչինք, յիշենք որ Կ. Պոլսոյ Պատրիարքին ատենապե-...տակ գումարուեցաւ այդ պատմական ժողովը:

Սահմանադրութեան որ իր կարգին նախնեաց աւանդութ[...] վրայ հիմնուած էր, և առաջին առթիւ յիշեցինք Սսոյ վեր[...] կաթողիկոսին ընտրութեան պարագաները, Մաղաքիա Պ[...] րիարքին օրով։ Պատրիարք և Ազգ. Կեդր. Վարչութիւն ընտրութեան ձևին մէջ օրինականութիւնը նոյնիսկ աւլ[...] նին դէմ պաշտպանելու համար, ուրիշ կռուան չունէին ոչ կայսերական պերաթներն ու Ազգ. Սահմանադրութիւնը

Պիտի առարկուի սակայն թէ տեղապահ Խորէն Ե[...] կ'ակնարկէ նաև կանոնագրութեանց, կամ ըսենք կանո[...] գրութեան մը, զոր աչքի առաջ չունինք։ Եթէ այդպիսի նոնագրութիւն մըն է որ պիտի կրնար յաւակնիլ ինքնիշ[...] և ինքնավար հռչակել Անթիլիասի Աթոռը, անկախ և ա[...] Հայոց Կաթողիկոսութեան, և ոչ-համարատու նաև Ազգ. ղեց. Կեդր. Վարչութեան(**), Ազգ. Սահմանադրութեան տրամադրութիւնը, ո՞ր յօդուածը, նոյնիսկ զօրութեամբ Եայի՝ անոր հիմնական սկզբունքներուն մէջ, հիմք ծառայ[...] այդպիսի կանոնագրութեան մը մշակումին։

Ազգ. Սահմանադրութեան ոչ մէկ պարբերութիւնը լիկ[...]մերու Գաւառական ժողովներուն. ոչ մէկ մասն[...] իրաւունք կը վերապահէ ինքնագլուխ «կանոնագրութ[...] պատրաստել նախ, որովհետև անոնց գործունէութեան կ[...] նական տրամադրութիւնները արդէն կան Սահմանադրու[...] մէջ։ Իսկ եթէ հարկ ըլլայ պատրաստել, նախ առ այդ ա[...] նութիւն պէտք է տրուի Պատրիարքարանէն, յետոյ վաւե[...] ման ենթարկուի մշակուած նախագիծը՝ Ազգ. Կեդր. Վար[...] թեան Ընդհ. Ժողովէն, և դարձեալ գործադրութեան դրա[...] համար անհրաժեշտ է Պատրիարքին կնիքն ու ստորագ[...] թիւնը՝ որպէս հաստատութիւն թէ կանոնագիրը սահմանա[...] կան է, զի Պատրիարքը Սահմանադրութեան հսկողն է։

---

(**) Նոյն «Յառաջ»ը վերոյիշեալ խմբագրականներուն մէջ կ[...] արդարեւ.— «եթէ Հայց. Եկեղեցին մէկ մարմին է եւ մէկ գլուխ՝ ունի երկու թեւեր: Մէկը միւսին լրացուցիչ», եւ թէ «դարաւոր աւանդութիւն[...] մանաւանդ կանոններ ճշդած են իւրաքանչիւրին դերն ու իրաւասութիւն[...] Մի հարցնէք թէ Ազգ. Սահմանադրութեան ո՞ր տրամադրութեան մէջ ա[...] կութիւն կայ թէ Հայց. Եկեղեցին երկու թեւեր ունի, մէկը միւսին լրա[...] ախնդին երկու հայրապետ:

Արդ, ուրեմն եթէ խնդրոյ առարկայ կանոնագրու-
ը կամ «կանոնները» Սահմանադրութեան ոգիին և տառին
րամադրութիւններուն բացարձակապէս համապատասխա-
ելով մշակուած ըլլային իսկ, ըստ Սահմանադրութեան
է վաւերացման ենթարկուէին։ Արդէն որևէ օրէնսգէտ
ըսէր որ ամբողջի մը կազմական մաս կազմող հաստուած
կրնար առանձին կանոնագրութիւն պարտադրել, զայն
ադրութեան դնել առանց կեդր. իշխանութեան հաւանու-
և վաւերացման։

Հարկը կրնայ բացառութիւններ թոյլատրել, բայց ոչ
ոյ վերջին կաթողիկոսը, ոչ Հայոց Հայրապետը այդպիսի
ութեան մը պատասխանատուութիւնը առնել չեն ուզած։
նի որ Ազգ. Սահմանադրութիւնը օրինապէս ի զօրու է
ոք իրաւունք ունի զայն՝ չեղեալ համարելու, ցորչափ
ոյնը չէ յօրինուած», Անթիլիաս կաշկանդուած է և ըս-
ած է օրինական ճամբով գործել։ Նոյնիսկ Ամենայն Հա-
թողիկոսը և Գեր. Հոգեւոր Խորհուրդը չեն կրնար առ-
յ կիրարկութեան պայմանաւ իսկ վաւերացնել որևէ կա-
րութիւն՝ եթէ ան Սահմանադրութեան ոգիին ու տառին
ակ է։ Գալով մեր Նուիրապետական Աթոռներէն ոևէ
ինքնագլուխ անկախութիւն տրուելուն և զայն ազգա-
րին եկեղեցական իշխանութեան իրաւասութեններէն զերծ
ւելուն, «ազգն իսկ չունի իշխանութիւն տնօրինութեան»:

* * *

Ինչ կ'ըսէ Կ. Պոլսոյ Պատրիարքը — զի եթէ Ազգ.
նադրութիւնը ի զօրու է, Կ. Պոլսոյ Պատրիարքը թէև
վիճակի գործադիր իշխանութեան, ի վիճակի է սահմա-
կանութեան հսկողութեան հեղինակութիւնը բարոյապէս
դրելու։ Կ. Պոլսոյ Պատրիարքը մինչև Անթիլիաս եկու
Հայրապետին առընթեր, և ըսաւ թէ հոն գտաւ ներձուա-
նոյնինքն Աթոռոյ Միաբանութենէն մերժուած։ Ըստ
ջի («Մեր խօսքը», 27 Ապրիլ) Կ. Պոլսոյ Պատրիարքն

է որ իբրեւ Եպիսկ. Ժողովի երիցագոյն անդամ «ամենէն
տականⁱ(*) դերը կատարեց Թունդ կղերապետական և կե
ձիգ ուղղութեամբ, և թէ Ժողովին խմբագրած համաձայն
կը մատնէ իր (Պատրիարքին) սկոլաստիկ ոգին ու ոճը
Պոլսոյ Պատրիարքը խօսեցաւ քարոզներով, «խաւարելո
ռըն դարձիր», ինչպէս պիտի ըսէր Ս. Ներսէս Շնորհալ
վերջապէս Պոլսոյ Պատրիարքարանի պաշտօնաթերթ
կաթ»ի խմբագրական սիւնակին մէջ «Մեկ գլուխ մեկ մ
խորագրով (Ապրիլ 23-24) յայտարարելով թէ «Հայց. Եկ
մէկ մարմին է և մէկ գլուխ խորհրդանշուած՝ Ս. Էջ
նով», թէ «ամբողջական մէկը պէտք չունի և չի կրնար
նալ ուրիշի մը» և վերջապէս նոյն խմբագրականին մէ
Թիլիասի ըմբոստներու բռնած դիրքը կ'որակուի «հերձ
ղական մտայնութիւն»։ Խմբագրականը ստորագրած է
ըստ «Ցուռայջ»ի (նոյն անդ) (Գ)արեգին (Պ)ատրեարք)

Ազգ. Սահմանադրութեան տառին կառչած Գ
Խորէն Եպս., տեսնելով որ Կ. Պոլսոյ Պատրիարքը
Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը Անթիլիաս եկած
ասոնք Ազգ. Սահմանադրութեան աւանդապահներն են,
ցա՜ւ զանոնք համոզել որ իր տեսակէտը վաւերացնեն..

* * *

Եզրակացնենք.

Միակ օրինական միջոցը, ոչ միայն Անթիլիասի
յաստանեայց Եկեղեցւոյ բոլոր Նուիրապետական Աթ
կանոնադրութեամբ մը օժտելու հնարաւորութեան, Հա
կեղեցւոյ Նոր Սահմանադրութեան կազմութիւնն է, որ
չակման ձեռնարկուած է։ Երբ ան աւարտի, որպէս օր
կ'ենթարկուի Հայոց Եկեղեցական Ազգ. Ընդհ. Ժողովին
գումարուի Ս. Էջմիածնայ մէջ։ Այս ժողովը կը գոր

---

(*) Ինչպէս յայտնի է, փանջունիական բառարանին մէջ *ժի*
նշանակէ *դըրական* (տես Ընկ. Փանջունիի Ծապլվարի մէջ)։ Գործին
կողմը այն է որ ճիշդ այս առթիւ եւ նոյն խմբագրականին մէջ է որ
է որպէս եզրակացութիւն թէ Ազգ. Սահմանադրութիւնը ի գօ ու
ւ այս կ'րսուի՝ որպէս յիշեցում. . . Կ. Պոլսոյ Պատրիարքին։

րագային որպէս սահմանադիր ժողով։ Յետոյ Նոր Սահմա-
նադրութիւնը, կիրարկութեան համար անոր վերջնական, քուէ-
արկուած ձեւը կը վաւերացուի Հայոց Կաթողիկոսէն։

Նոր Սահմանադրութիւնը բնականաբար պիտի վերա-
քննէ Հայոց Եկեղեցւոյ Ազգ. Կեդր. Վարչութեան վերաբե-
րեալ Ազգ. Սահմանադրութեան և Երջանկայիշատակ Գէորգ Ե.
Կաթողիկոսին օրով մշակուած կանոնագրին տրամադրութիւն-
ները (քանի որ Նոր Սահմանադրութիւնը պիտի տարածուի
բոլոր հայոց վրայ)։ Տրամաբանական կը թուի որ Նոր
Կեդր. Իշխանութեան տրուի ապակեդրոնական լայն դիմագիծ,
ըստ իւրաքանչիւր թեմի տեղական պայմաններուն, չեշտելով
թեմից վարչական ինքնավարութիւնը, ինչ որ արդէն Ազգ.
Սահմանադրութեան ալ համաձայն է։

Բայց որեւէ սահմանադրութիւն որ ամբողջութիւն մը
կ՚ընդգրկէ, պայման ունի կեդր. վարչութեան հաստատութիւնը։
Ազգ. Սահմանադրութեան Ա. գլխին կազմութեան վերաբերեալ
3-րդ յօդուածը և զայն լրացնող 4-րդ յօդուածը «ազգային
իշխանութիւնը ամբողջութիւն մը կը նկատեն, որուն կեդրոնական
աթոռը Պոլսոյ մէջ է և «գաւառներու մէջ կը ներկայանայ գաւա-
ռական ժողովներով» որպէս «ազգային վարչութեան գաւառական
մարմ»: Կեդրոնին մէջ գլուխն է պատրիարքը, իսկ գաւառա-
կան մասին մէջ՝ վիճակին առաջնորդը։ 5-րդ յօդուածը ճշդե-
լով որ «Գաւառական վարչութիւնը նոյն փոխադարձ պար-
տօք կապուած է գաւառաբնակ ազգայնոց հետ, ինչպէս Կեդր.
Վարչութիւնը ընդհանուր ազգայնոց հետ, և իրենց յարացոյց պիտի
ըլլան զկեդրոնական վարչութիւնը» — կը սահմանէ մասերու
ինքնավարութիւնը եւ ամբողջին մէջը։ Այս ինքնավարութիւնն է
որ կրնայ և պէտք է աւելի ապակեդրոնացուի, բայց այս ա-
պակեդրոնացման սահմանն է՝ ամբողջին իմաստը մէջ ըլլալը։

Սահմանադրութեան սկզբունքը ազգին իրաւունքը կ'ա-
պահովէն, և այդ իրաւունքին մէջ օրինական սահմաններով
ազգին անբաժան մասերուն տրուած իրաւասութիւնները,
որպէս ազգային իրաւունքի ամբողջութիւնը կազմող բաժին-
ներ, պարտիք և իրաւունք։ Եւ ազգին իրաւունքներուն վրայ
ազգն հսկ չունի իշխանութիւն [illegible]։

ՎԵՐՋ

ԽԱՆ-ԱԶԱՏ ԵՒ Գ. ՎԱՐԴԱՆԵԱՆ

# ՅՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*(Գլխաւոր կէտերը)*

27 պատկերով եւ մեծ գունաւոր քարտէզով

*աժանմ. դասընթացի եւ ժողովրդ. ընթերցման համար*

**Երկրորդ բարեփոխուած հրատարակ.**






ԹԻՖԼԻՍ
Էլեկտրաշ. տպ. Ն. Աղանեանցի, Պօլից. 7.
1911

# I.

# ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՐԿԻՐՆ ՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

## ԵՐԿԻՐԸ

Հին Հայաստանը տարածւում էր Փոքր Ասիայի արեւեան մասում՝ Կովկասից հարաւ։

Սա մի լեռնոտ երկիր է, որը զանազան լեռնաշղթաներով բաժանուած է մի քանի՝ համարեա թէ անջատ՝ հովիտների ու բարձրաւանդակների։

Այդ փոքրիկ երկիրներից իւրաքանչիւրը մի առանձին ինքնագլուխ իշխանութիւն էր, որ կոչւում էր Նախարարութիւն, իսկ իշխանը՝ Նախարար։

Նախարարութիւններից մի քանիսը իրար հետ միանալով, մի թագաւորութիւն էին կազմում։ Այդպիսով հնում Հայաստանում մի քանի հայկական թագաւորութիւններ առաջ եկել։ Դրանցից գլխաւորներն էին Մեծ Հայքը, Փոքր Հայքն ու Ծոփաց Աշխարհը։

Մեծ Հայքը տարածւում էր Արաքս կամ Երասխ գետի հովտում, Այրարատ կամ Մասիս լեռան շուրջը և իր սահմանների մէջ էր առնում հարաւային Կովկասի մի մասը, Վան լճի աւազանը և Եփրատ գետի վերին մասերը։

Մեծ Հայքից դէպի արեւմուտք էր ընկնում Փոքր Հայքը, իսկ դէպի հարաւ՝ Ծոփաց աշխարհը։

Հայաստանի այդ երեք մասերն էլ իրանց առանձին թագաւորն ունէին։ Նրանք երբէք հաշտ չէին ապրում և շարունակ պատերազմներ էին մղում միմեանց դէմ, դրա համար հայ թագաւորութիւնները չէին զօրեղանում ու մի մեծ թագաւորութիւն կազմում։

Հայաստանի թույլ մնալուն քիչ չէին նպաստում նա
նախարարները։ Նրանք էլ չէին ցանկանում, որ թագավոր
ները զորեղանան, որովհետև այդ դեպքում նրանք կորցնու
էին իրանց ինքնիշխանությունը և հարկատու էին դառնու
թագավորին։

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

Հայաստանի բնակիչները մի քանի դասակարգերի էի
բաժանված։

Ամբողջ երկրի հողերն ու կալվածները թագավորի
նախարարների և նրանց ազգականների ու բարեկամներ
սեփականությունն էին համարվում։ Սեփականությունը ժա
ռանգաբար անցնում էր որդոց—որդի։



Նկար 1. Բուրմեր։

Բոլոր մեծ ու փոքր կալվածատերերը Հայաստանի ազ-
նվական դասն էին կազմում։ Նրանք կոչվում էին ազատներ։

Ժողովրդի մնացած մասը—գիւղացիք, արհեստաւոր-
ներն ու վաճառականները կալուածներ չունէին և կոչւում
ին ոչ-ազատներ կամ հպատակներ։

Ազատներ.—Ազատները երկրի մշակութեամբ կամ ու-
րիշ աշխատանքներով չէին զբաղւում, որովհետև անպատ-
ւաբեր ու անվայել էին համարում։ Ազատների սովորական
զբաղմունքներն էին զինւորական վարժութիւնները, որ-
սորդութիւնն ու զանազան ուրիշ զւարճութիւններ։ Նրանք
միայն իրաւունք ունէին միշտ զէնք կրել։ Ոչ-ազատները
այդ իրաւունքից զրկւած էին։

Ազատների դասակարգին էին պատկանում նաև քուր-
մերը—քահանայական դասը, որոնք նոյնպէս ունէին իրանց
սեփական կալուածները։ Բացի սեփական կալուածներից, քուր-
մերը վայելում էին նաև տաճարներին յատկացւած կալուած-
ների եկամուտները։ Թէ քուրմերին և թէ տաճարներին
պատկանող կալուածներից ոչ մի տուրք չէր վերցւում։

Քուրմերի գլխաւոր պաշտօնն էր՝ տաճարներում աստ-
ւածներին զոհ մատուցանել և ժողովրդի մէջ հաստատ պա-
կռապաշտական կրօնը։

Նրանք շատ անգամ ուրիշ պաշտօններ էլ էին վարում.
ակ՝ լինում էին դատաւորներ, թագաւորական կամ նա-
րարական դիւանապետներ, գրագիրներ և այլն։

Քուրմերը նաև բժշկութիւններ էին անում։

Քուրմերից առհասարակ վախենում էին բոլորը։ Նրանք
ազդեցութիւն ունէին ամբողջ ժողովրդի վրայ։

Ոչ-ազատներ.—Թէ ազնւականութեան և թէ քրմա-
կան բոլոր հողերը մշակում էր գիւղական ժողովուրդը։
գիւղացիք պարտաւոր էին իրանց ստացած արդիւնքի մեծ
ը տալ ազատներին իբրև տուրք։

Նրանք բացի իրանց սովորական զբաղմունքներից,
հպատակներ, իրանց տէրերի համար ուրիշ շատ ծա-
ութիւններ էին կատարում։ Նրանք իրանց տէրերի կա-
րեալ ճորտերն էին։

Վաճառականներն ու արհեստաւորները քիչ աւելի բարձր
րք էին վայելում և մեծ մասամբ ապրում էին քաղաքնե-
ում։ Թէև սրանք էլ գիւղացիների նման զուրկ էին զէնք

կրելու իրաւունքից, բայց աւելի մեծ պատիւ ու յարգանք ունէին։ Գիւղական ժողովրդից պահանջւում էր նոյնպիսի յարգանք ցոյց տալ վաճառականներին ու արհեստաւորներին, ինչպիսին ցոյց էր տրւում ազատներին։ Միևնոյն ժամանակ վաճառականներին ու արհեստաւորներին թոյլ չէր տրւում, որ հպարտանան և այնպիսի իրաւունքներ բանեցնեն գիւղական ժողովրդի վրայ, ինչպիսի իրաւունք բանեցնում էին ազատները։ Վերջինները պարտաւոր էին «եղբայրաբար» վերաբերւել իրանցից աւելի ստոր աստիճանի վրայ կանգնած ժողովրդին։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ԿԱԶՄԸ

### Թագավոր

Հայաստանը կառավարւում էր միահեծան բռնապետական իշխանութեամբ։ Թագաւորը ամբողջ Հայաստանում ինքնիշխան և ինքնակալ էր։

Թագաւորի ամեն մի հրամանը օրէնք էր, ոչ ոք չէր կարող այդ օրէնքը փոխել։ Ամենքն էլ պարտաւոր էին թագաւորին հնազանդել, թէկուզ նրա հրամանը մի ոճիր թելադրէր։ Թագաւորը երբեմն լինում էր նոյնպէս երկրի ամենագլխաւոր քրմապետը։

Թագաւորի անձը սուրբ էր համարւում. նախարարները ու ժողովուրդը որչափ էլ չը սիրէին իրանց թագաւորին, դարձեալ ոչ ոք չէր մտածի նրա կեանքին վերջ դնել։

Արքունիքը կառավարւում էր երեք կարգի եկամուտներով։ Առաջինը՝ թագաւորական կալւածքներից ստացւած եկամուտն էր, երկրորդը՝ նախարարներից ստացւած տուրքը, իսկ երրորդը՝ վաճառականներից վերցւած մաքսը, որ կոչւում էր հաս կամ մուտ։

Թագաւորական կալւածները չափազանց ընդարձակ էին։ Երբեմն ամբողջ նահանգներ թագաւորին էին պատկանում։ Այսպէս թագաւորինն էր Այրարատեան ընդարձակ դաշտավայրը, ուր ոչ մի նախարար չըկար։ Թագաւորն ուրիշ շատ կալւածներ էլ ունէր, որոնք գտնւում էին զանազան նախարարութիւնների սահմաններում։

Թագաւորները շատ շքեղ ու փարթամ կեանք էին վարում։ Նրանց բոլոր ամանեղէնները ոսկուց ու արծաթից էին. հագուստն ու զէնքերը զարդարուած էին թանկագին ակնեղէններով ու մարգարիտներով և կարուած ոսկեթել բանուածքով։ Նրանք երկար մազեր էին պահում և կրում էին թանկագին քարերով զարդարուած վարսավիլ։ Թագաւորի թոյլտւութեամբ նախարարներն էլ կարող էին վարսակալ կրել։

Սովորական օրերին թագաւորները իրանց գլխին դընում էին խոյր, իսկ հանդիսաւոր օրերում՝ թագ։

Թագաւորները հագնում էին նուրբ շապկի վրայից մի երկար կապա (ինչպէս որ քահանաներն են հագնում ֆարաջայի տակից), որ կոչւում էր պատմուճան, իսկ վերևից գցում էին կարմիր գոյնի մի երկար ծածկոց, որ ասւում էր ծիրանի։ Ծիրանու եզերքը զարդարուած էր լինում սամոյր մորթով։ Պատմուճանի վրայ կապում էին ակներով ու ոսկով զարդարուած գօտի, որից կախում էին մի շատ շքեղ փոքրիկ սուր։

Թագաւորական կօշիկները կարմիր էին լինում. ուրիշ ոչ ոք իրաւունք չունէր նոյն գոյնի կօշիկներ հագնել։ Եթէ թագաւորը ցանկանում էր իր նախարարներից մէկին մի առանձին շնորհ անել, թոյլ էր տալիս նրան մէկ ոտքին միայն կարմիր կօշիկ հագնել։ Նրա թոյլտւութեամբ նախարարները կարող էին նոյնիսկ ոսկէ բաժակ կամ այլ անօթ գործ ածել։



Նկար 2. Մեծն Տիգրանի դրամը։

Թագաւորական վրանը կարմիր էր լինում։ Վրանի վերևում փայլում էր ոսկուց կամ արծաթից շինած արծիւ, որ հայոց թագաւորների զինանշանն էր։

Հայոց թագաւորները ոսկուց ու արծաթից դրամներ էին կտրել տալիս, որոնց մի կողմում իրանց պատկերն էր լինում, իսկ միւս կողմում թագաւորական զինանշանը։

## Նախարարներ

Ինչպէս թագաւորը ամբողջ Հայաստանում, այնպէս էլ նախարարներից ամեն մէկն իր երկրի սահմաններում կատարելապէս ինքնիշխան էր։

Նախարարները իրանց ունեցած հարստութեան և վայելած դիրքի համաձայն՝ երկու կարգի էին բաժանւում, ազատներ ու կրտսերներ։ Նրանք բոլորն էլ թագաւորի ծառաներն էին համարւում և պարտաւոր էին խաղաղ ժամանակ նրան մի որոշ տուրք վճարել, իսկ պատերազմի դէպքում՝ զօրքով օգնել։

Նախարարները զանազան աստիճանների էին բաժանւած և թագաւորի պալատում նրանցից ամեն մէկն իր յատուկ տեղը կամ բարձն ունէր։ Աւելի բարձր աստիճանաւորները նստում էին սրահի վերին կողմում, իսկ ստորինները աւելի ցած։

Այդ բարձերի թիւը երբեմն հասնում էր 900-ի։ Եթե բարձերից մէկն իր տեղից բոլորովին վերցւած, կամ աւելի ցած էր տեղափոխւած, այդ նշանակում էր, որ թագաւորը բարձի տիրոջը աչքից գցել է։

## ՎԱՐՉԱԿԱՆ ՈՒ ՊԱԼԱՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

Նախարարներից շատերը թագաւորների մօտ վարչական կամ պալատական զանազան պաշտօններ էին վարում։

Այսպէս՝ չորս հոգի փոխարքայի պաշտօններ ունէին և կոչւում էին սահմանապահներ։ Նրանք պարտաւոր էին երկրի սահմանների վրայ հսկել։ Նախարարներից մէկը պաշտօն ունէր հսկելու երկրի ճանապարհների, կամուրջների և ջրանցքների շինութեան, ինչպէս նաև քաղաքների ու գիւղերի բարեկարգութեան վրայ։ Նա կոչւում էր Աշխարհաշէն։

Մի այլ պաշտօնեայ կոչւում էր Սպարապետ, որ զօրքի գլխաւոր հրամանատարն էր և նրան պատերազմի էր առաջնորդում։

Զափազանց մեծ թիւ էին կազմում Թագաւորի պալատական պաշտօնեաները։ Դրանցից առաջին տեղը բռնում էր Թագադիր ասպետը, որի պաշտօնն էր Թագաւորի գլուխը Թագ դնել։ Պալատական միւս բարձր պաշտօնեան Հայր-Մարդպետն էր, որ արքունական կալւածների ընդհանուր կառավարիչն ու Թագաւորի գանձերի և կանանոցի հսկողն էր։

Սրան էին հպատակւում Մարդպետները, որոնք հսկում էին արքունական կալւածներին և հաւաքում Թագաւորական տուրքերը։

Յետոյ կար Մարքասզը, որ միշտ ուղեկցում էր Թագաւորի ուղարկած դեսպանութիւններին։

Բացի այս առաջնակարգ պաշտօններից, կային և ուրիշ շատ երկրորդականները. օրինակ՝ մի նախարար պարտաւոր էր Թագաւորի հագուստը պահել ու հագցնել, մի ուրիշը՝ արքունիքի կահկարասիքը կարգի բերել, մի երրորդը՝ Թագաւորի առջևից արծիւ տանել և այլն։

---

## Դատաւորներ ու պատիժներ

Թագաւորները թէ իրանց արքունիքում, թէ քաղաքներում և թէ մեծ գիւղերում յատուկ դատաւորներ էին նշանակւում, որոնց պարտաւորութիւնն էր անհամաձայնութիւնները ու վէճերը քննել ու վճիռներ կայացնել։

Հայաստանի զանազան կողմերում, Թագաւորանիստ քաղաքների կամ անառիկ բերդերի մօտ կային բանտեր, որոնցից մի քանիսը կոչւում էին վիրապներ։ Յանցաւորներին առհասարակ շատ խիստ պատիժներ էին տալիս. նրանց տանջանքների էին ենթարկում ու գլխատում։

Պատիժներ գործադրողները կոչւում էին դահիճներ, իսկ նրանց գլխաւորը՝ դահճապետ։

---

## Զորքը

Հայաստանում այժմեան նման մշտական զորք չէին պահում։ Թագաւորը միայն մի փոքրիկ զօրաբանակ ունէր, որ նրա թիկնապահ զօրքն էր համարւում և ամեն տեղ հետեւում էր նրան։

Պատերազմի ժամանակ թէ Թագաւորը և թէ ամեն մի



Նկար. 3. Ծանր հեծելազօրք։

նախարար իրանց հպատակ ժողովրդից էին զորք հաւաքում և կռւի առաջնորդում։ Զօրքը ռոճիկ չէր ստանում. նրա ծախքերը հոգացւում էին մասամբ Թագաւորական գանձարանից, իսկ մեծ մասամբ էլ պատերազմներում ձեռք բերած աւարից ու կողոպուտից։

Շատ անգամ օտարներից էլ էին վարձով զորք հրաքրում։

Հայկական զօրաբանակը բաժանւում էր երեք կարգի— ծանր ու թեթեւ հեծելազօրքը և հետիոտն զօրքը։

Ծանր հեծելազօրքի թէ ձիերը և թէ զինուորները երկաթէ զրահներով էին ծածկված։ Զինուորները գլխներին դնում էին սաղաւարտ։ Նրանց զէնքերն էին տէգ, սուր ու վահան։

Թեթև հեծելազօրքը ծանր զրահ չէր հագնում։ Դրանց զէնքերն էին երկար նիզակ, սուր ու վահան։ Իսկ հետիոտն զօրքը կռւում էր նետ ու աղեղով։

Թագաւորն ու նախարարները ձիու-վրայ էին կռւում։

Հայերը սովորութիւն ունէին իրանց զէնքերը թունաւորելու, դրա համար էլ նրանց հարւածները մահացու էին լինում։ Հայ զինուորները, մանաւանդ աղեղնաւորները, յայտնի էին իբրև նշանաւոր կռւողներ։ Ժամանակակից պատմիչների ասելով, հայ աղեղնաւորների նետերը շատ հեռու էին թռչում և շատ քիչ էին վրիպում նպատակից։

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԲԱՂՄՈՒՆՔԸ

Հայ ժողովրդի գլխաւոր զբաղմունքներն էին երկրագործութիւնն ու խաշնարածութիւնը։ Հայաստանի կլիման շատ բարեխառն լինելով, այնտեղ մշակւում էին ամեն տեսակ հացահատիկներ, պտղատու ծառեր ու խաղող։ Խաշնարածութեան մէջ, բացի եղջիւրաւոր անասուններից, շատ նշանաւոր էին ձիերն ու ջորիները։ Հնումը հայերը յայտնի էին իբրև լաւ ձիաբուծներ և Հայաստանի ձիերն ու ջորիները շատ գնահատւած էին հարևան բոլոր երկրներում։

Բացի դրանցից՝ հայերը զբաղւում էին նաև որսորդութեամբ և ձկնորսութեամբ։

Հայաստանում ծաղկած արհեստներից յայտնի էր զինագործութիւնը։ Հայերի պատրաստած զէնքերը, մանաւանդ աղեղն ու նետը, չափազանց գնահատւած էին նոյնիսկ հռոմայեցիների կողմից։

Հայերը շատ հին ժամանակներից են սկսել վաճառականութեամբ պարապել։ Հայաստանը ծովերից հեռու գտնւելով, հայ վաճառականները իրանց առևտուրը կատարում էին

ցամաքային ճանապարհներով ու գետերի վրայով։ Նրանք մեծ կարաւաններով իրանց բերքերը տանում էին հեռաւոր երկիրներ և այնտեղերից էլ ուրիշ ապրանքներ էին բերում։

Հայաստանից արտահանած ապրանքներն էին՝ հացահատիկներ, ձէթ, գինի, աղ, պղինձ, զէնքեր, ձիեր, ջորիներ և այլն։ Իսկ օտար երկիրներից բերում էին՝ համեմներ, թանկագին կտորներ, ակնեղէններ, անագ և ուրիշ ապրանքներ։

Հայ վաճառականները միևնոյն ժամանակ միջնորդի դեր էին կատարում արևելեան հարուստ Հնդկաստանի և արևմտեան հարևան ազգերի միջև։

## ՀԱՅՈՑ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔՆ ՈՒ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### Ը ն տ ա ն ի ք

Ինչպէս բոլոր հին ժամանակուայ ազգերի մէջ, այնպէս էլ հեթանոս Հայաստանում բազմակնութիւն էր ընդունուած։ Սակայն այդ իրաւունքից աւելի շատ օգտւում էին ազատները, որովհետև նրանք հարուստ էին և բազմաթիւ կանայք ու զաւակներ պահելու միջոցներ ունէին։ Կանանցից միայն մէկն էր գլխաւորը, միւսները կոչւում էին հարճեր։



Նկար 4. Հայ իշխանուհի։

Այսպէս թագաւորի կամ նախարարի բազմաթիւ կանանցից միայն մէկն էր համարւում թագուհի կամ իշխանուհի։ Թագաւորական կամ նախարարական գահը ժառանգում

էին, սովորաբար, գլխաւոր կնոջից ծնուած՝ անդրանիկ զաւակները։ Եւ հէնց դրա համար էլ թագաւորի կանանց ու նրանց զաւակների միջև շարունակ վէճեր ու կռիւներ էին տեղի ունենում թագաժառանգութեան պատճառով։

Այդ կռիւներից ու վէճերից խուսափելու համար, թագաւորները առհասարակ իրանց մօտ պահում ու մեծացնում էին թագաժառանգին միայն, իսկ մնացած բոլոր զաւակներին մանուկ հասակից արքունիքից հեռացնում էին։

---

## Բերդեր եւ ամրոցներ

Թագաւորներն ու նախարարները բացի քաղաքներում ունեցած իրանց հոյակապ պալատներից ու տներից, երկրի զանազան կողմերում շատ բերդեր ու ամրոցներ էլ ունէին, որոնք շրջապատուած էին գեղեցիկ պարտէզներով և անտառներով։ Այդ բերդերն ու ամրոցները, թէև ծառայում էին երկրի պաշտպանութեանը, բայց տարւայ որոշ ժամանակներում թագաւորները գնում ապրում էին այդ տեղերում։

Այդ բերդերում ու ամրոցներումն էին պահւում թագաւորական ու նախարարական գանձերը։ Այնտեղ էին թաղւում նաև նրանց տոհմի աճիւնները։

---

## Հարսանիք եւ թաղում

Մեծամեծների տներում կատարուած հարսանիքները շատ շքեղ էին լինում։ Սովորութիւն կար հարսի գլխին մարգարիտներ, իսկ փեսայի գլխին ոսկէ դրամներ շաղ տալ։ Հարսանիքը տևում էր մի քանի օր։

Մեռածների համար ընդունուած էր շատ մեծ սուգ կատարել։ Թաղման հանդէսի ժամանակ դագաղի առջևից գնում էր երաժշտական խումբը, որ փողեր էր հնչեցնում ու քնար ածում։ Յետևից գնում էին վարձովի լալկան կանայք, որոնք սև զգեստներ հագած, երգերով գովաբանում էին մեռնողին, իրանց երեսները ճանկռտում, լալիս էին և ուրիշներին էլ լացացնում։

Մեռելի տէրերը սովորութիւն ունէին սև շոր հագնել և երկար ժամանակ սուգ պահել։

---

## Հ ա գ ո ւ ս տ

Ժողովրդի հագուստը մօտաւորապէս նոյն մասերից էր բաղկացած, ինչ Թագաւորինը։ Նրանք շապկի վրայի հագնում էին կարճ պարեգօտ—կապա, որի փէշերը դրւում էին լայն վարտիկի մէջ։ Վարտիկը կապւում էր խոնջանով, որ միևնոյն ժամանակ գօտու դեր էր կատարում։ Ոտներին հագնում էին հողաթափներ կամ տրեխներ։

Ազնւականները պարեգօտի վրայից հագնում էին կար Թիկնոց, իսկ խոնջանից կախում էին կարճ սուր։ Իբր զարդարանք, նրանք ականջներից կախում էին ոսկէ կա արծաթէ օղեր, Թևերին էլ հագնում էին ապարանջաններ Նրանք շատ շքեղ կերպով զարդարում էին նաև իրան ձիերը։

Ժողովրդի ստորին խաւերը զուրկ էին ազնւականներ վայելած բոլոր շքեղութիւններից։ Նրանք ապրում էի գետնափոր տներում, իրանց անասունների և հաւերի հետ*)

---

*) Այդ մասին աւելի մանրամասն տես մեր «Նախ. մարդը և Հա առասպելները» դասագրքում։

# II

# ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ

---

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐՈՒԹԻՒՆԸ ՓՈՔՐ ԱՍԻԱՅՈՒՄ ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆԻՑ ԱՌԱՋ

Հայ ազգի պատմութեան ամենափայլուն շրջանը Մեծն Տիգրանի թագաւորութեան տարիներն են համարւում։

Այդ այն ժամանակն էր, երբ հռոմայեցիք գրաւել էին Փոքր Ասիայի մի քանի երկիրները և աշխատում էին ամբողջ արևելքի տէրը դառնալ։

Հռոմայեցիք այն ժամանակւայ ամենազարգացած ու լուսաւորւած ազգն էին։ Նրանց զօրքերը զինւած էին ամենալաւ զէնքերով։ Նրանք յայտնի էին իրանց քաջութեամբ, կարգապահութեամբ, յանդգնութեամբ ու տոկունութեամբ։ Նրանց զօրավարներն էլ չափազանց հմուտ էին պատերազմական արւեստի մէջ։

Հռոմայեցիք տէր էին դառել Միջերկրական ծովին ու Նրա վրայ բազմաթիւ առևտրական ու պատերազմական նաւեր էին պահում։ Նրանք այդ պատերազմական նաւերով սարսափ էին ազդում իրանց տէրութեան սահմանակից երկիրների և ազգերի վրայ, որոնց հետ շատ էլ լաւ չէին վարւում։

Ուզելով հարստանալ, ճոխ ու փարթամ կեանք վարել, հռոմայեցիք իրանց հպատակ ազգերին սաս-

տիկ հարստահարում, կեղեքում և թշւառութեան էին մատնում։

Այդ ժամանակ արևելքում ոչ մի հզօր տէրութիւն չկար, որ արգելք լինէր հռոմայեցիների ազդեցութեան տարածւելուն և սահման դնէր նրանց անխիղճ կեղեքումներին։

Ամենամեծ տէրութիւնը Փոքր Ասիայում Պարթևների թագաւորութիւնն էր, որ գտնւում էր Հայաստանի արևելեան կողմում։ Պարթևները, սակայն, ներքին խռովութիւններից թուլացած, անկարող էին հռոմայեցոց հետ մրցել։

Հռոմէական սահմաններին շատ աւելի մօտ էր Պոնտոսի թագաւորութիւնը, որ այդ միջոցին նոր էր սկսել զարգանալ ու զօրեղանալ։



Նկար 5. Միհրդատ

Այդ թագաւորութիւնը տարածւում էր Սև ծով
հարաւային ու արևելեան ափերում, իր սահմաններ
մէջ առնելով նաև Կողքիսը, Կովկասի մի մասն ու Փոքր Հայքը։

Այդ երկրի թագաւորն էր Միհրդատ Եւպատորը։

ը մի շատ խելօք, հպարտ ու պատերազմասէր
'արդ էր։

Միհրդատը շատ տարիներ գործ ունենալով արև-
'ըտեան ազգերի հետ. ուսումնասիրել էր նրանց թէ
ու և թէ վատ կողմերը։ Նա ծանօթ էր մի քանի
ւզուների, ինչպէս և շատ հմուտ էր պատերազմա-
ան գործերում՝ թէ ցամաքի և թէ ծովի վրայ։ Նրա
յատերազմական նաւերը լողում էին Սև ծովի վրայ։

Հպարտ ու յանդուգն Միհրդատն էր, որ դուրս
ը եկել հզօր Հռոմի դէմ, կամենալով ինքը դառնալ
'ոքր Ասիայի տէրն ու իշխողը։

Պոնտական թագաւորի ու հռոմայեցիների միջև
կուած հէնց այդ կռիւների ժամանակ Մեծն Տիգրա-
ը Հայաստանի թագաւոր է դառնում։

---

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՏԻԳՐԱՆԻՑ ԱՌԱՋ

Տիգրանից առաջ գոյութիւն ունեցող Հայաստա-
ի երեք թագաւորութիւններն էլ բոլորովին անկախ
էին։ Փոքր Հայքն իր առանձին թագաւորը չունէր և
ացրած էր հարևան Պոնտոսի թագաւորութեանը։
'եծ Հայքը՝ պարթևական թագաւորի, իսկ Ծոփաց
շխարհը՝ Կապադովկիայի գերիշխանութեան տակ էին
ւ նրանց հարկատու։

Մեծն Տիգրանը մի խելօք, բայց և շատ հպարտ,
առասէր ու պատերազմասէր մարդ էր։

Իր հօրից Մեծ Հայքի գահը ժառանգելուն
էս (95 Թ. Ք. ա.), նրա առաջին միտքն է
նում Ծոփաց աշխարհը միացնել իր թագաւո-
ւթեանը և այդպիսով ստեղծել մի զօրաւոր հայ-
ական տէրութիւն։

Այդ ժամանակ Կապադովկիան, Միհրդատի մղած

պատերազմների պատճառով, շատ թուլացած էր։ Նա անկարող էր պաշտպանութիւն ցոյց տալ իր հովանաւորութեան տակ գտնուող Ծոփաց աշխարհին։ Մեծն Տիգրանը շատ հեշտութեամբ նուաճում է նրան և իր երկրին միացնում (96 թէ 93 թ. Ք. ծ. առ.)։

---

## Տիգրանի և Միհրդատի դաշնակցութիւնը

Մեծն Տիգրանի յաջողութիւնն ու զօրեղանալը տեսնելով, Միհրդատը մտածում է դաշն կապել հայոց թագաւորի հետ ու միացած ոյժերով շարունակել հռոմայեցիների դէմ սկսած պատերազմը։

Այդ նպատակով Միհրդատը դեսպան է ուղարկում մեծն Տիգրանի մօտ, առաջարկելով միևնոյն ժամանակ իր Կլէոպատրա աղջկանը հայոց երիտասարդ թագաւորին կնութեան։

Տիգրանը խորհում է, որ եթէ Պոնտոսի զօրեղ թագաւորին աջակից ունենայ, կարող է աւելի ընդարձակել իր երկրի սահմանները և շատ աւելի զօրաւոր տէրութեան թագաւոր դառնալ։

Նա խիստ ցանկութիւն ունէր ջախջախել բոլոր այն մանր տէրութիւնները (Եդեսիան, Կորդուաց Աշխարհը, Մեդիական Ատրպատականը և ուրիշները) որոնցով շրջապատուած էր Հայաստանը։

Միհրդատն ուրախութեամբ խոստանում էր Տիգրանին աջակցել իր այդ ցանկութիւններն իրագործելու, միայն թէ նա էլ իրան օգնէր հռոմայեցիների զօրութիւնը ջախջախելու։

Տիգրանն ու Միհրդատը համաձայնութեան գալով պայմանաւորւում են, որ Հռոմի դէմ իրանց

մղելիք պատերազմներում նվաճած բոլոր երկրները Միհրդատին պիտի պատկանեն, իսկ ձեռք բերված ավարը, գերիներն ու հարստությունները պիտի բաժին հանեն Տիգրանին։

Այսպիսի պայմանով Մեծն Տիգրանը միայն իր գանձարանը հարստացնելու մասին չէր մտածում։ Նրա ցանկությունն էր արևմտյան երկրների ավելի լուսավոր ժողովուրդներին — հույներին, հրեաներին, ասորիներին և ուրիշներին, գաղթեցնել Հայաստան, որպես զի խտացնի նրա բնակչությունը և զարկ տայ երկրի և ժողովուրդի առաջադիմությանը։

## Տիգրանի եւ Միհրդատի առաջին ընդհարումները հռոմայեցիների հետ

Պայմանագիրը կնքելուն պէս, դաշնակիցները յարձակւում են Կապադովկիայի ու Պաֆլագոնիայի վրայ և տիրում այդ երկիրներին։ Երկու երկիրներն էլ այդ ժամանակ Հռոմի գերիշխանութեան տակ էին։ Դրանց գահաժառանգները սարսափած գիմում են հռոմայեցիներին և նրանցից պաշտպանութիւն խնդրում։

Հռոմի Ծերակոյտը*) հրամայում է Կիլիկիայի հիւպատոս Սիլլային՝ մաքրել երկու երկիրներն էլ «բարբարոս» (կիսավայրենի) թշնամիներից և գահաժառանգ Արիոբարզանին հաստատել Կապադովկիայի թագաւոր։

[illegible]ն իր փոքրաթիւ զօրքով յարձակւում է

*) Հռոմում այդ ժամանակ թագաւորներ չկային. Երկիրը կառավարում էր ժողովրդից ընտրած ներկայացուցիչների ժողովը, որ կոչւում էր Ծերակոյտ։

դաշնակից զորքերի վրայ, մեծ ջարդ է տալիս նրանց և Արիոբարզանին հաստատում իր հայրենական գահի վրայ (92 թէ 91 թ. Ք. ծ. ա.)։

Դրանից յետոյ Սիլլան շտապով վերադառնում է Հռոմ, ուր այդ ժամանակ ներքին խիստ երկպառակութիւններ կային։

Միհրդատն ու Տիգրանը կրած պարտութիւնից չեն յուսահատւում։ Սիլլայի հեռանալուց յետոյ, նրանք շտապով պատրաստութիւններ են տեսնում պատերազմական նոր գործողութիւններ սկսելու համար։

Այս անգամ Տիգրանը, սակայն, հաւատարիմ չէ մնում իր աներոջ հետ կապած դաշինքին։ Պատերազմների ամբողջ ծանրութիւնը Միհրդատի վրայ է ընկնում, որովհետև Տիգրանին շատ աւելի զբաղեցնում էր իր սահմանակից փոքր երկիրները գրաւելու միտքը, քան հզօր Հռոմի դէմ պատերազմելը։

---

## Մեծն Տիգրանի նւաճումները Պարթևաց երկրում

Տիգրանն ուզում է ամենից առաջ Պարթևների գերիշխանութիւնից ազատւել։ Նա օգուտ քաղելով պարթևական ներքին խռովութիւններից՝ յարձակւում է նրանց վրայ։

Ամեն ինչ ճանապարհին քարուքանդ անելով, Տիգրանը գնում հասնում է մինչև պարթևական թագաւորանիստ քաղաքները։ Պարթևները մեծ պարտութիւն են կրում և ստիպւում հայերին վերադարձնել այն 70 գաւառները, որ նւաճել էին Տիգրանի գահ բարձրանալուց առաջ։

Բացի դրանից, նրանք պարտաւորւում են Տիգրանին զիջել Միջագետքի հիւսիսային երկու խիստ

արգաւանդ նահանգները, ինչպէս և հիւսիս-արևելեան այն բոլոր փոքրիկ իշխանութիւնները, որոնք մինչև այդ ժամանակ պարթևների պաշտպանութեան տակ էին։



Նկար 6. Մեծն Տիգրան։

Այս փայլուն յաղթութիւններից յետոյ, Մեծն Տիգրանն իր զօրքով մտնում է Միջիա (Մարաստան)

մայեցիք իրանց Լուկուլլոս զօրավարին էին ուղարկել անհանգիստ Միհրդատի դէմ։

Լուկուլլոսը թէ ցամաքի և թէ ծովի վրայ, Միհրդատի բանակը կատարելապէս ջարդելով և ցիր ու ցան անելով գրաւել էր Պոնտոսի բոլոր քաղաքները։ Հռոմէական զօրքերից հալածւելով, Միհրդատը փախաւ իր փեսայի մօտ։ Հպարտ Տիգրանն այդ խայտառակ պարտութեան համար խիստ բարկացած լինելով, չէր ցանկացել մինչև անգամ Միհրդատի երեսը տեսնել, այլ հրամայել էր նրան՝ գնալ Հայաստանի մի հեռաւոր տեղում ապրել։

Այդ ժամանակ Լուկուլլոսը իր Ապպիոս զօրավարին ուղարկում է Տիգրանի մօտ և պահանջում յանձնել Միհրդատին։

Ամբողջ 25 տարի շարունակ խոնարհութիւն տեսած գոռոզ Տիգրանը սաստիկ զայրանում է հռոմայեցու այդ յանդուգն պահանջից և համարձակ խօսակցութիւնից։ Նա ոչ միայն մերժում է Միհրդատին յանձնել, այլ և պատրաստակամութիւն է յայտնում հռոմայեցիների դէմ պատերազմելու։

Բայց հէնց որ Լուկուլլոսի դեսպանը հեռանում է, հայոց թագաւորը մտատանջութեան մէջ է ընկնում։ Նա իր մօտ է հրաւիրում Միհրդատին, մեծ պատւով ընդունում է նրան և խորհուրդ անում, թէ ինչ կերպ պատերազմել հռոմայեցիների հետ։

Մեծն Տիգրանը 10,000 հեծելազօրք է յանձնում Միհրդատին, որ նա գնայ իր երկիրը յետ նւաճի։ Իսկ ինքն իր թագաւորութեան մէջ գտնւած բազմացեղ ժողովուրդներից մի ահագին բանակ հաւաքելով՝ պատրաստւում է մի սոսկալի հարւած հասցնել հռոմայեցիներին։

Այդ իմանալով Լուկուլլոսը՝ առանց ժամանակ

կորցնելու, արշաւում է ուղղակի Տիգրանակերտի վրայ։

Մեծն Տիգրանի համար Լուկուլլոսի այդ արշաւանքը բոլորովին անսպասելի էր։ Երբ նրան լուր են բերում, թէ հռոմէական զօրքը Հայաստան է մտել, նա բարկութիւնից լրաբերին գլխատել է տալիս։

Յետոյ նա իր ամենասիրելի զօրապետ Միտրօբարզանին 3000 ձիաւոր և բազմաթիւ հետևակ զօրք է յանձնում ու հրամայում, որ գնայ Լուկուլլոսին կենդանի կամ մեռած բերի։ Բայց Միտրօբարզանը յաղթւում և սպանւում է կռւի դաշտում. իսկ Լուկուլլոսը գնում, պաշարում է Տիգրանակերտը։

Տիգրանը լուր է ուղարկում Միհրդատին, որ օգնութեան հասնի, սակայն նա ուշանում է։

Միհրդատը, երկար ժամանակ հռոմայեցիների հետ պատերազմած լինելով, փորձով գիտէր, որ նրանց հետ բացարձակ ճակատամարտի դուրս գալը վտանգաւոր է. այդ պատճառով էլ նա դիտմամբ ուշանում է Տիգրանին օգնութեան գալու, որպէս զի նա սիրտ առած ճակատամարտի դուրս չըգայ Լուկուլլոսի դէմ։ Նա լուր է ուղարկում Տիգրանին, թէ պէտք է աշխատել հռոմէական բանակի կերակուրը կտրել ու նրան սովի մատնել. սակայն Տիգրանը չէ լսում փորձւած Միհրդատի խորհրդին։ Նա իր 280 հազար խառնիճաղանճ զօրքին վստահացած՝ դուրս է գալիս հռոմայեցիների դէմ (69 թ. Ք. ծ. ա. ամառը)։

Ամենից առաջ Տիգրանը մտածում է իր կանանոցն ու գանձերը փրկել։ 6000 ձիաւորներ ճեղքում են հռոմայեցիների բանակը, մտնում են պաշարւած Տիգրանակերտը և ազատում թագաւորի կանանոցն ու գանձերի մի մասը։

Լուկուլլոսը վճռում է թոյլ չըտալ Տիգրանի մեծ բանակին մօտենալու քաղաքին։ Նա իր զօրքի մի մա-

սը թողնում է Տիգրանակերտի պաշարումը շարունակելու, իսկ միւս մասը հետը առած գնում է Տիգրանի առաջը կտրելու։

Մեծն Տիգրանը Լուկուլլոսի փոքրաթիւ բանակը նկատելով, արհամարհանքով բացականչում է. «Այդ օտարականները եթե դեսպանությամբ են իմ մոտ գալիս, չափազանց շատուոր են, իսկ եթե պատերազմելու՝ շատ փոքրաթիւ են»։

Լուկուլլոսի թէև փոքրաթիւ, բայց լավ վարժված բանակը մէկ օրվայ մէջ, սակայն, սոսկալի ջարդ է տալիս հայոց թագավորի բանակին, որը թէև բազմաթիւ, բայց ծանրաշարժ էր և բացի այդ՝ կանոնավոր պատերազմների էլ անվարժ էր։ Այդ ահավոր բանակի մի մասը ջարդվում, իսկ մնացածն էլ շփոթված փախուստի է դիմում։ Փախչում է նոյնպէս Տիգրանը, իսկ Լուկուլլոս վերադառնում է և պաշարում Տիգրանակերտը։

Տիգրանակերտի բնակիչներին, որոնց հայոց թագավորը բռնութեամբ էր տեղափոխել, Լուկուլլոսը խոստանում է թոյլ տալ իրանց հայրենիքը վերադառնալ։ Նրանք էլ ուրախութեամբ քաղաքի դռները բաց են անում և անձնատուր լինում։

Լուկուլլոսի յաղթական զօրքը գրաւում է և կողոպտում քաղաքը, ինչպէս և թագավորական գանձերը (69 թ. Ք. ծ. ա.)։

## Տիգրանի երկրորդ պատերազմը

Տիգրանակերտի մօտ չարաչար յաղթվելուց յետոյ հայոց թագավորը գնում է իր միւս մայրաքաղաքը Արտաշատ։ Նա սկսում է այնտեղ նոր բանակ կազմել։ Առաջին պատերազմից խրատված, նա աշխատում է

այս անգամ իր զորքն աւելի լաւ կրթել ու կանոնաւորել։

Լուկուլլոսն իր զորքով հետևում է նրան։

Մեծն Տիգրանը առանց սպասելու, որ հռոմայեցիք գան և պաշարեն իր անառիկ մայրաքաղաքը, զորքն առած գնում է Լուկուլլոսի առաջը կտրելու։ Զորս բուայ ճանապարհի վրայ թշնամի բանակները միմեանց ն հանդիպում և սկսւում է երկրորդ արիւնահեղ ճակատամարտը։

Կռւի սկզբում յաղթութիւնը հայերի կողմն էր երևում։ Լուկուլլոսը կարծում է, թէ ինքն այլևս կոած է։ Բայց նա, առանց շփոթւելու, հրամայում է իր հեծելազօրքին գրոհ տալ հայերի վրայ։ Կռիւը տաանում է և վերջում հայերը դարձեալ յաղթւում են ու փախուստի դիմում։ Տիգրանն էլ փախչում ու թաքչում է Արտաշատում (68 թ. սեպտ. Ք. ծ. ա.)։

Այս երկրորդ պատերազմում շատ հայ ազնւականներ գերի են ընկնում հռոմայեցիների ձեռքը։

Այնուհետև Լուկուլլոսը գնում պաշարում է Արտաշատը, բայց Հայաստանի վաղահաս ցրտերը սաստիկ նեղում են նրա զօրքերին, որոնք սկսում են տրտնջալ և Լուկուլլոսից պահանջել, որ յետ դառնան։

Լուկուլլոսը ճարը կտրած յետ է նահանջում։ Նա անցնում է Տաւրոսի լեռները և մտնում Միջագետք ու պաշարում Մծբին քաղաքը, որի կառավարիչն էր Տիգրանի եղբայր Գուռը։

Այդ քաղաքը մի յոյն ճարտարապետի ձեռքով շատ լաւ ամրացւած էր, այնպէս որ հռոմայեցիք երկար են չարչարւում, մինչև կարողանում են գրաւել (68 թ. Ք. ծ. ա. աշնանը)։

Մինչ Լուկուլլոսը Մծբինում էր գտնւում, Տիգրանն ու Միհրդատը, նոր ուժեր հաւաքած, սկսում

են յարձակողական դիրք բռնել։ Նրանք երբեմն առանձին-առանձին, երբեմն էլ միացած ույժերով յարձակւում են Լուկուլլոսի ղանազան երկիրներում թողած հռոմայեցի զօրամասերի վրայ։ Ամեն տեղ մեծ ջարդ են տալիս նրանց և նորից տիրում բոլոր այն երկիրներին, որոնց տիրել էին հռոմայեցիները (67 թ. գարնանը Ք. ծ. ա.)։

Այդ միջոցին Լուկուլլոսը կատարեալ անգործութեան էր մատնուած։ Նրա զօրքը ապստամբուել էր և այլևս չէր հնազանդւում, ասելով, որ զինուորական ծառայութեան 20 տարին արդէն լրացած է և կամենում են իրանց տները վերադառնալ։

«Բարբարոս» թագաւորների անսպասելի յաջողութիւններն ու հռոմէական լեգէոնների ձախորդութիւնները մեծ շփոթութիւն էին գցել Հռոմի Ծերակոյտում։ Այնտեղ որոշում են յետ կանչել Լուկուլլոսին և նրա փոխարէն ուղարկել երիտասարդ Պոմպէոս զօրավարին։

---

Միհրդատի վերջնական պարտութիւնը եւ մահը

Պոմպէոսի Փոքր Ասիա եկած ժամանակ, Լուկուլլոսի գրաւած երկիրներից համարեա թէ ոչ մի թիզ հող այլևս չէր մնացել հռոմայեցիների ձեռքում։ Միհրդատն ու Տիգրանը այդ բոլորը յետ էին նուաճել և Պոմպէոսն ստիպուած էր ամեն բան սկսել նորից։ Իր բանակը կարգի բերելուն պէս, նա յարձակւում է Միհրդատի վրայ, ժամանակ չտալով, որ նա ու Տիգրանը միանան իրար հետ։

Միհրդատը նորից յաղթւում և հռոմէական զօրքերից հալածուած, երկրորդ անգամ փախչում է Տիգրանի մօտ։ Բայց այս անգամ Տիգրանը նրան ոչ

միայն չէ ընդունում, այլ և մի մեծ գումար է խոստանում այն մարդուն, ով Միհրդատին կըսպանի և նրա գլուխը կըբերի։

Այդ ժամանակ Մեծն Տիգրանի որդին, նոյնպէս Տիգրան անունով, դաւաճանութիւն էր սարքել հօր դէմ, Հայաստանի գահին օր առաջ տիրանալու նպատակով։ Մեծն Տիգրանը կասկածում էր, թէ Միհրդատն է իր որդուն դաւաճանութեան դրդողը։

Ծերացած ու վիրաւոր Միհրդատը, Պոմպէոսից պարտուելով, իր գանձերի մի մասը հետն առած՝ փախչում է և գնում Սև Ծովի հիւսիս-արևմտեան կողմերը ու մի անառիկ բերդաքաղաքում պատսպարւում։ Այդտեղ նա սկսում է նոր զօրք հաւաքել, որ ցամաքի կողմից յարձակւի բուն հռոմէական երկրի վրայ և հէնց այնտեղ շարունակի պատերազմը։

Այդ ժամանակ Միհրդատի Փառնակ որդին ապստամբում է հօր դէմ, պաշարում է նրա բնակարանը և կամենում է սպանել նրան։

Միհրդատը տեսնելով, որ այլևս փրկութիւն չըկայ, անձնասպանութեամբ վերջ է տալիս իր փոթորկալից կեանքին (63 թ. Ք. ծ. ա.)։

---

## Մեծն Տիգրանի վերջնական պարտութիւնը

Մինչ Պոմպէոս Միհրդատին հալածելով էր ըզբաղուած, հայոց թագաւորը ստիպուած էր իր դաւաճան որդու հետ գործ ունենալ։

Մեծն Տիգրանի Կապադովկիայում եղած ժամանակ, նրա որդին մի քանի իշխանների հետ միասին՝ ապստամբել էր իր հօր դէմ։

Ապստամբութեան լուրն առնելուն պէս, Մեծն

Տիգրանը վերադառնում է Հայաստան և մի լաւ ջարդ
տալիս ապստամբներին։

Երիտասարդ Տիգրանը փախչում է իր ա-
ներոջ՝ պարթևաց թագաւորի մօտ։ Նա պարթևներ
զօրք է վերցնում, մտնում Հայաստան և գնում պա
շարում է Արտաշատ քաղաքը։ Մեծն Տիգրանը ստիպ-
ւում է փախչել լեռները և յետոյ մեծ զօրք հաւա
քելով՝ յարձակւում է իր որդու վրայ։ Ապստամ



Նկար 7. Պոմպէոս։

որդին նորից մի լաւ ջարդ է կրում ու փախչում
Այս անգամ նա ուզում է գնալ իր պապի՝ Միհր
դատի մօտ՝ նրանից օգնութիւն խնդրելու. բայց ճա
նապարհին լսում է, որ Միհրդատը յաղթւել է հռո
մայեցիներից, ուստի գնում է ուղղակի Պոմպէոս
մօտ։ Դաւաճան թագաժառանգը հռոմէական զօրապե
տին պատրաստակամութիւն է յայտնում, Հայաստան

նմանչելի ճանապարհները ցույց տալ, եթե միայն օր գահը իրան կը տրվի։

Պոմպէոսը երախտապարտ Տիգրանի առաջնորդու-թյամբ մտնում է Հայաստան և սկսում միմեանց ետևից նվաճել բոլոր բերդերն ու ամրոցները։

Այդպէս առաջ խաղալով, Պոմպէոսն իր զօրքով մտնում է Արտաշատ քաղաքը և պաշարում ծերունի Տիգրանին։

Հարազատ որդու դավաճանությունից յուսահատ-ված, Մեծն Տիգրանը որոշում է անձնատուր լինել, ուստի անձամբ գնում է Պոմպէոսի մօտ ու նրա ոտների տակ դնում իր արքայական թագը։

Բաղցրաբարոյ Պոմպէոսը, ալեզարդ թագաւորի այդպիսի խոնարհութիւնից սաստիկ զգացած, իսկոյն թագը վերցնում, նրա գլխին է դնում, և նստեցնե-լով իր կողքին՝ սկսում է մխիթարել նրան։ «Դու ոչ միայն թագաւորութիւնդ չես կորցրել,—ասում է Պոմպէոսը Մեծն Տիգրանին,— այլ և այսուհետև հզօր Հռոմի բարեկամը պիտի համարուես»։

Տիգրանի դավաճան որդին, որ այդ ժամանակ Պոմպէոսի մօտ էր, մինչև իսկ ոտքի չէ կանգնում ծերունի հօր առաջ։ Նա հրաժարւում է նոյնիսկ մաս-նակցել այն հացկերոյթին, որ Պոմպէոսը տալիս է ի պատիւ հայոց թագաւորի։

Պոմպէոսը սաստիկ զզւանք է զգում դավաճան որդու այդպիսի վարմունքից։

Նա Հայաստանի թագաւորութիւնը նորից Մեծն Տիգրանին է յանձնում, յետ առնելով միայն այն երկիրները, ոլ Տիգրանը գրաւել էր իր թագաւորու-թեան օրով։ Այդպիսով հայոց թագաւորին մնում էր Մեծ Հայքն ու Հայկական Միջագետքը։

Բացի դրանից, Մեծն Տիգրանը պարտաւորւում

է հռոմայեցիներին վճարել պատերազմական ծախքե-
րը՝ մոտ 6000 տաղանտ (9 միլիոն ռուբլի)։

Պոմպէոսը երիտասարդ Տիգրանին էլ տալիս է Ծոփաց աշխարհը՝ իբրև վարձատրութիւն իր մատուցած դաւաճան ծառայութիւնների։ Նա պայման է դնում, սակայն, որ այդ երկրում եղած գանձերը Մեծն Տիգրանին յանձնուեն, որպէսզի նա հնարաւորութիւն ունենայ 6000 տաղանտի խոշոր գումարը՝ հռոմայեցիներին վճարել։

Դաւաճան որդին խիստ դժգոհ մնալով իր ստացածից, մինչև իսկ խռովտանում է Պոմպէոսի դէմ, որը զայրացած շղթայում է նրան և պահում իր մոտ։

Երբ պարթևաց թագաւորը լսում է այդ, միջամըտում է իր փեսի համար ու մեծ փրկանք է խոստանում. սակայն հռոմայեցի զօրավարը նրան պատասխանում է, թէ՝ «որդու վրայ հայրը աւելի մեծ իրաւունքներ ունի՝ քան աները»։

Այս փառաւոր յաղթութիւններից յետոյ, Պոմպէոսը վերադառնում է Հռոմ, իր հետ տանելով շղթայակապ թագաւորազն Տիգրանին և նրա կնոջն ու աղջիկներին (64 թ. Ք. ծ. ա.)։



Նկար 8. Արտաւազդի դրամը

Դրանից յետոյ Մեծն Տիգրանն ապրում է դ[…] էլի 8 տարի։ Նա մեռնում է 56 թւականին Քրիստ[…] սի ծնունդից առաջ, թողնելով Հայաստանի գահը […] գրագէտ ու բանաստեղծ Արտաւազդ որդուն։

## ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆԻ ՔԱՂԱՔԱԿՐԹԱԿԱՆ ՁԳՏՈՒՄՆԵՐԸ

Մեծն Տիգրանը շարունակ պատերազմներ մղելու հետ, միաժամանակ շատ մեծ հոգ էր տանում Հայաստանի բարեկարգութեան մասին։

Հայաստանը թէև բնական շատ հարստութիւններ ունէր, բայց հայ ժողովուրդը դեռ շատ յետ էր մնացել հարևան ազգերից և Հայաստանում շատ քիչ էին զարգացած արհեստները, վաճառականութիւնն ու ճարտարապետութիւնը։

Հայաստանի ամենալաւ քաղաքներն ու նրանց մէջ գտնւած տաճարները, ինչպէս նաև թագաւորական հոյակապ պալատները շինւում էին օտարազգի ճարտարապետների ու վարպետների ձեռքով։ Այսպէս ամենանաուրիկ ու գեղեցիկ Արտաշատ մայրաքաղաքը շինել է Արաքսի ափին, օտարազգի յայտնի զօրաւար Աննիբալի ծրագրով և յոյն ճարտարապետների ղեկավարութեամբ։

Մեծն Տիգրանը՝ հէնց այդ յետամնաց դրութիւնից իր երկիրը դուրս բերելու նպատակով էլ՝ բազմաթիւ ժողովուրդներ էր գաղթեցնում Հայաստան։

Այդ գաղթականներին նա առատ հող էր նւիրում և շատ արտօնութիւններ տալիս, որպէսզի նրանց միջոցով Հայաստանը մշակւի, շէնանայ և լուսաւորւի։

Հայոց թագաւորը մեծ նշանակութիւն էր տալիս մանաւանդ յոյն, ասորի և հրէայ գաղթականներին, որոնք այն ժամանակւայ ամենալուսաւոր և զարգացած ազգերն էին։

Նա անապատներում թափառող վրանաբնակ շա
արաբներ էլ բնակեցնելով Հայկական Միջագետքում
ստիպել էր նստակեաց կեանք վարել։ Արաբները մեծ
մասամբ վաճառականութեամբ էին պարապում։

Մեծն Տիգրանը մեծ արժէք տալով յունական
կրթութեանը, յոյն ուսուցիչներ էր բերել տւել ի
զաւակներին կրթելու համար։ Նա նոյնը պահանջու
էր անել և ազնւականներից։

Այդ կրթութեան շնորհով Տիգրանի Արտաւա
որդին լաւ գրագէտ և բանաստեղծ էր դառել։ Պա
մում են, որ նա յունարէն լեզւով թատերգութիւ
ներ և ուրիշ շարադրութիւններ է գրել։

Հայոց թագաւորը մինչև իսկ յոյն դերասաննե
էր հրաւիրել, որոնք արքունական պալատում ներկ
յացումներ էին տալիս։

---

## Տիգրանակերտ քաղաքը

Մեծն Տիգրանի փայլուն գործերից մէկը պի
համարել Տիգրանակերտի շինութիւնը։ Այդ քաղաք
էլ յոյն ճարտարապետների և օտարազգի վարպետ
ների ձեռքով էր շինւել։

Երբ Տիգրանը սկսում է Հայաստանի հարաւ-ա
րևմտեան երկիրները նւաճել, ուզում է, որ իր մայ
րաքաղաքը այդ երկիրներին աւելի մօտ և իր ընդա
ձակ թագաւորութեան կենտրոնում լինի։ Այդ նպա
տակով էլ նա Տիգրիս գետի վրայ մի նոր քաղ
է հիմնում, որ իր անունով Տիգրանակերտ է կոչւում

Տիգրանակերտն իր ահռելի մեծութեամբ յիշ
ցնում էր Բաբելոնի և Ասորեստանի նախկին վի
խարի քաղաքները։ Նա շրջապատւած էր 50 կա

գուն բարձրության աղիւսէ պարիսպներով, որոնք այնչափ հաստ էին, որ նրանց մէջ կարելի էր լինում ձիերի համար ախոռներ տեղաւորել։

Քաղաքը շատ գեղեցիկ էր ու հարուստ. նա զարդարուած էր ամեն տեսակ շքեղ շինութիւններով ու քանդակներով։ Քաղաքի մէջտեղում շինուած էր բերդը, իսկ պարիսպներից դուրս՝ թագաւորական պալատը։ Այս վերջինը շրջապատուած էր շքեղ պարտէզներով, որհեստական անտառներով և ընդարձակ աւազաններով։

Տիգրանը առաջնակարգ հայ ազնուականներին ստիպել էր իրանց ընտանիքով տեղափոխուել նոր մայրաքաղաքը՝ սպառնալով հակառակ դէպքում գրաւել նրանց բոլոր կալուածները։

Տիգրանակերտի բնակիչների մեծ մասը օտարազգի գաղթականներն էին կազմում, որոնք մեծ արտօնութիւններ էին վայելում։

Ընդամենը 25 տարուայ ընթացքում Հայաստանի նոր մայրաքաղաքի բնակիչների թիւը հասել էր [illegible]00,000-ի։

Տիգրանակերտի բնակիչները, մանաւանդ ազնուական և հարուստ դասը, չափազանց փարթամ կեանք էին վարում։ Այդ բանում նրանք կարծես թէ մրցում էին իրար հետ։

Ուզելով միմեանց գերազանցել, բնակիչները սեփական ու աւելի էին զարդարում Տիգրանակերտը իրանց գեղեցիկ ու շքեղ ապարանքներով, պալատներով և այլ հոյակապ շէնքերով։

Այդ վիթխարի և փառաւոր քաղաքից այժմ ոչինչ հետք չէ մնացել։ Նա դեռ Մեծն Տիգրանի կենդանութեան ժամանակ կիսաւեր էր եղել հռոմայեցիների ձեռքով։

## Մեծն Տիգրանի անձնական կեանքը

Տիգրանակերտում ամենից շքեղ ու ամենից փարթամ կեանք էր վարում հէնց ինքը՝ Արքայից-Արքան։

Մեծն Տիգրանն իր վարք ու բարքով չափազանց նման էր իրանից առաջ եղած՝ ցոփ ու շռայլ կեանք վարող բռնակալ արեւելեան թագաւորներին։ Նրա շռայլութեանն ու փառասիրութեանը չափ ու սահման չը կար։

Տիգրանն իր տարած յաղթութիւններով այ աստիճան էր գոռոզացել, որ ստիպել էր գահընկէ արած թագաւորներին և իշխաններին իր մօտ պա լատական ծառաների պաշտօն վարել։ Դրանցի չորս հոգի պարտաւոր էին միշտ «Արքայից Արքայի մօտ մնալ՝ իբրև թիկնապահներ։

Երբ նա ձիով ճանապարհ էր գնում, այդ թա գաւորազն թիկնապահները պէտք է ոտքով վազէ նրա առջևից. իսկ երբ Տիգրանը գահի վրայ էր նը տած լինում, նրանք ձեռները կրծքերին խաչա դրած՝ կանգնում էին նրա առաջ։

Նա պահանջում էր ժողովրդից, որ իրան աստ ծու տեղ ընդունեն և աստծուն վայել փառաբանու թիւններ անեն։

Իր խիստ ու դոռոզ բնաւորութեամբ, Տիգրան ոչ միայն հակաճառութիւն չէր սիրում, այլ և բա կանում էր, երբ նրան մի որ և է անախորժ լ էին հաղորդում։ Շատ անգամ այդպիսի լուր հաղոր դողներին նա գլխատել էր տալիս։

Այդպիսի բնաւորութեան պատճառով, հայ թագաւորը համարեա թէ ոչ մի անկեղծ և մտերիմ բա

րեկամ չունէր։ Պալատականներն ու իշխանները Նրան չէին սիրում, այլ աշխատում էին ամեն կերպ շողոքորթել՝ հաճելի լինելու համար։ Նրան չէին սիրում նոյնիսկ իր հարազատ զաւակները, որոնցից մէկը՝ ինչպէս տեսանք, դաւաճանեց և պատճառ եղաւ իր վերջնական գժբախտութեան։

---

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՏԻԳՐԱՆԻՑ ՅԵՏՈՅ

Հայաստանը Մեծն Տիգրանից յետոյ, այլևս չէ կարողանում այնպիսի զօրութեան ու մեծութեան հասնել, ինչպիսին ունեցել էր Նրա օրով։

Նա մնում է մի թոյլ ու տկար տէրութիւն՝ երկու զօրաւոր հարևանների միջև։ Այդ հզօր հարևանները էին՝ մի կողմից հռոմէական կայսրութիւնը, իսկ միւս կողմից՝ պարթևական տէրութիւնը։

Դրանցից ամեն մէկը ձգտում է իր գերիշխանութեան տակ պահել Հայաստանը և իր ուզած թագաւորին հաստատել Նրա գահի վրայ։ Հայաստանը մի կատարեալ կռուախնձոր է դառնում այդ երկու տէրութիւնների ձեռքում և նա միշտ հարկատու է մնում կամ մէկին և կամ միւսին։

Հայ թագաւորները անկարող լինելով իրանց հզօր հարևանների գերիշխանութիւնից ազատուել, ամեն հնար գործ են դնում, որ գոնէ օտար լուծը թեթևացնեն։ Այսպէս՝ երբ պարթևներն են սկսում չափից դուրս նեղել հայերին, նրանք դիմում են հռոմայեցիների օգնութեան և նրանց միջոցով աշխատում թեթևացնել իրանց վիճակը. իսկ երբ հռոմայեցիների լուծն է չափից դուրս ծանրանում, հայ թագաւորները պարթևների օգնութեանն են դիմում։

Սակայն պէտք է ասած, որ հայերը մինչև քրիս-

տոնէութիւն ընդունելը շատ աւելի բարեկամ էին պարթևներին, քան հռոմայեցիներին։

Շատ հին ժամանակից ի վեր հարևաններ լինելով, հայերն իրանց սովորութիւններով, նիստ ու կացով համարեա թէ չէին տարբերւում պարթևներից Նրանք միևնոյն կրօնն էին դաւանում և շատ ազգակցական ու խնամիական կապերով կապւած էին միմեանց հետ։

Բացի դրանից՝ Մեծն Տիգրանի սերունդը վերջանալուց յետոյ, Հայաստանում միևնոյն պարթևական Արշակունեաց տոհմն էր թագաւորում։ Թէ պարթևաց և թէ Հայաստանի թագաւորները թէև Արշակունիներ էին կոչւում, սակայն երրորդ դարի վերջերում (Ք. ծ. յ. մի քանի նշանաւոր դէպքեր են տեղի ունենում, որոնք շատ աւելի դժւարացնում են հայոց գործերը

Պարսիկները, որ երկար ժամանակ պարթ հպատակներն էին, երրորդ դարում օգուտ քաղ պարթևական արքունիքում տեղի ունեցած ներ խռովութիւններից՝ ապստամբւում են։ Նրանք գահ կէց են անում Արշակունիներին և պարթևական գ հի վրայ հաստատում պարսիկ Սասանեան տոհմ Դրանից յետոյ հայ և հարևան թագաւորական տոհ րի ազգականութիւնը վերանում է և նրանց մ խիստ թշնամութիւն է առաջանում։

Մօտաւորապէս նոյն թւականներին քրիստ ութիւնը պաշտօնական կրօն է դառնում թէ հռոմ կան կայսրութեան մէջ և թէ Հայաստանում, նոյնպէս մեծ ազդեցութիւն է գործում հարևան յարաբերութիւնների վրայ։

---

# ՀԱՅԵՐԻ ՀԵԹԱՆՈՍԱԿԱՆ ԿՐՈՆԸ

## Աստվածներ

Հայերը հնում կռապաշտական կրոն էին դավանում։ Նրանք ոչ թե մեկ, այլ շատ աստվածներ էին ընդունում ու պաշտում։

Այդ աստվածներն էլ մի քանի աստիճանների էին բաժանվում. նրանց մեջ կային գլխավորներն ու երկրորդականները։ Բացի դրանից՝ կային արական և իգական սեռի աստվածներ։

Հայերի գլխավոր աստվածը կոչվում է Արամազդ, որը երկնքի ու երկրի ստեղծողն էր համարվում։ Արամազդը ամենակարող էր. նա էր մարդկանց պարգևում աշխարհի բոլոր բարիքները։

Մյուս բոլոր աստվածները Արամազդի որդիքն էին համարվում։

Արական սեռի աստվածներից նշանավոր էին՝ Միհրը, որ արևի ու կրակի աստված էր, Վահագնը՝ որ քաջության և ուժի աստված էր։

Իգական սեռի աստվածներից նշանավոր էին Անահիտը՝ որ կանացի բոլոր առաքինությունների աղբյուրն ու հայ ազգի փառքն էր կազմում, Աստղիկը՝ գեղեցկության աստվածուհին էր։

Անահիտը ամենից շատ սիրված ու պաշտված աստվածուհին էր Հայաստանում։ Նրա մասին այն կարծիքը կար, թե նա ոսկե մարմնով է ծնվել։ Այդ պատճառով էլ նրա արձանները մեծ մասամբ ոսկուց էին շինում. նա կոչվում էր Ոսկեմայր։

Շատ մեծ յարգանք էր վայելում նաև Վահագնը։ Նրա մասին աշուղները բազմաթիւ երգեր էին յօրինել, որոնց մէջ գովում ու փառաբանում էին Վահագնի ծնունդը ծովից ու արևից, ինչպէս և նրա կատարած բազմաթիւ առասպելական քաջագործութիւնները։



Նկար 5. Անահիտ։

Բոլոր աստուածների անունով Հայաստանի զանազան տեղերում մեհեաններ—տաճարներ էին շինւած, որոնց մէջ դրւած էին նրանց արձանները։ Այդ տեղերում տարւայ որոշ օրերին ժողովուրդը ուխտագնացութեան էր գնում և քուրմերի միջոցով զոհ մատուցանում։

## Ուխտատեղիներ

Ուխտագնացութեան կողմից շատ նշանաւոր էր Վանատուրի Դիք անունով տաճարը, որ նշանակում է Վանատուրի աստուածներ։ Այդ տաճարը գտնւում էր Բագրեւանդի (այժմ Ալաշկերտի) գաւառում, Բագաւան անունով գիւղում (Բագաւան նշանակում է աստուածների գիւղ)։ Այդ տաճարի տօնը տեղի էր ունենում օգոստոս 10-ին, որ հայկական տոմարի նոր տարին էր։ Այդ տօնը կոչւում էր նաև ծաղիկների տօն կամ Վարդավառ, որ կայ մինչև այսօր էլ։

Ներկայումս Վանատուրի Դիք անունով տաճարի տեղ՝ գտնւում է Սուրբ Յովհաննէս անունով մի եկեղեցի, որ շինել է տուել Ս. Գրիգոր Լուսաւորիչը։

Այժմեան հայկական վանքերի և ուխտատեղիների նման, կռապաշտական մեհեաններին կից շինուած էին ընդարձակ բնակարաններ ուխտաւորներին ընդունելու համար։

Ուխտատեղիները հին ժամանակներում, ինչպէս այսօր էլ, Հայաստանի շատ տեղերում վաճառանոցների դեր էլ էին կատարում։ Մարդիկ զանազան կողմերից այդտեղ էին բերում իրանց ունեցած մթերքները կամ ապրանքները և առևտուր էին անում։

Ուխտատեղիները միևնոյն ժամանակ ընդհանուր ուրախութեան ու զբօսանքի վայրեր էին։ Ուխտաւորները այդ տեղերում երգում, նւագում, պարում էին. Ժողովրդական երգիչներն և աշուղները մրցութիւններ էին սարքում։

III

# ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ՀԱՅԱՍՏԱՆԸ

---

## ՏՐԴԱՏ ԵՒ Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Հայերը կռապաշտական կրօնը թողել և քրիստո-նէութիւն են ընդունել սրանից մօտ 1600 տարի ա-ռաջ՝ Արշակունի Տրդատ թագաւորի օրով։

Հայ պատմիչները հետևեալն են պատմում այ նշանաւոր դէպքի մասին։

Երբ Պարսից Սասանեան տոհմը հաստատւում պարթևական գահի վրայ, բնաջինջ է անում այդ երկ-րում թագաւորող Արշակունիների ցեղը։

Սասանեանները մտածում են Հայաստանում թա-գաւորող Արշակունիներին էլ ոչնչացնել, որպէս այնտեղ էլ թագաւորեցնեն իրանց մարդկանց։

Այդ նպատակին հասնելու համար, Սասանեա Արտաշիր թագաւորը կաշառում է Անակ անունով մ իշխանի և նրա ձեռքով սպանել է տալիս հա Արշակունի Խոսրով թագաւորին, իսկ նրա ամ-բողջ ընտանիքն էլ կոտորել է տալիս։

Այդ կոտորածից ազատւում են միայն Խոսրովի մանուկ որդին՝ Տրդատը և Խոսրովիդուխտ աղջիկը։ Տրդատին Արտաւազդ Մանդակունի նախարարը Հռոմ է փախցնում, իսկ Խոսրովիդուխտին՝ Օտա Ամատունի

ախտաւորը թագաւորական գանձերի հետ, տանում, պահում է Անի ամրոցում։

Խոսրովին սպանող Անակին ու նրա ամբողջ ընտանիքին էլ հայ նախարարներն են կոտորում։ Այդ ընտանիքից կենդանի է մնում միայն Գրիգոր անունով մի երեխայ։ Նրան ազատում է իր դայեակը, որ փախցնում ու տանում է Կեսարիա։

Կեսարիայում այդ ժամանակ քրիստոնէութիւնը ւաւական տարածուած էր։ Գրիգորն այնտեղ մեծանում և դաստիարակւում է քրիստոնէական ոգով։ Նա ամուսնանում և ունենում է երկու զաւակ, Վրթանէս և Արիստակէս անունով, որոնք նոյնպէս քրիստոնէական կրթութիւն են ստանում, այն ինչ՝ Հռոմ փախցրած թագաժառանգ Տրդատը մեծանում ու կրթւում է կռապաշտական ոգով, միևնոյն ժամանակ վարժւելով զինւորական արւեստի մէջ։ Նա Հռոմաեցոց մղած մի քանի պատերազմներին մասնակցում և մեծ անուն է հանում։

Հռոմէական կայսրը կամենալով Հայաստանը պարսից տիրապետութիւնից ազատել և իր ազդեցութեանն ենթարկել, հայոց երիտասարդ թագաժառանգին մեծ զօրք է տալիս և ուղարկում Հայաստան։

Երբ Տրդատը Հայաստանի սահմաններին է հասնում, Արտաշիրի հալածանքներից Փոքր-Ասիա փախած հայ նախարարները գալիս ու հաւաքւում են նրանց թագաւորի շուրջը։

Օտա Ամատունին դիմաւորում է. Տրդատին և յանձնում նրան թագաւորական գանձերն ու Խոսրովիդուխտ քրոջը։

Այդ միջոցին Տրդատի պալատական ծառայողների մէջն էր գտնւում նաև Անակի որդին՝ Գրիգորը։

Նա Կեսարիա եղած ժամանակ արդէն բաժանւել

էր իր կնոջից, որն իր Վրթանէս որդու հետ կռսանոց էր քաշւել, իսկ ինքը Տրդատի մօտ ծառայութեան էր մտել։ Լսած լինելով, որ իր հայրն է սպանել Տրդատի հօրը, նա կամեցել էր այդպիսով իր հօր մեղքը քաւել։

Տրդատը Հայաստանի հողի վրայ ոտք դնելով, գոհունակութեան աղօթք է կատարում Երիզա քաղաքում և զոհ մատուցանում Անահիտ դիցուհու արձանին։

Հէնց այդ ժամանակ Տրդատն իմանում է, որ Գրիգորը քրիստոնեայ է։ Միաժամանակ նրան իմաց են տալիս, որ նա իր հօրն սպանող Անակի որդին է։ Տրդատը սաստիկ զայրանում է և հրամայում Գրիգորին ամենախիստ պատիժների ենթարկել ու տանել, գցել Արտաշատի Խորվիրապ բանտը։

Հռոմէական զօրքի օգնութեամբ Տրդատը Հայաստանի թագաւոր դառնալուց յետոյ, ամենակատաղի հալածանք է սկսում քրիստոնեաների դէմ։

---

## Քրիստոնէութիւնը Հայաստանում

Քրիստոնէութիւնը Տրդատից դեռ շատ առաջ էր մուտք գործել Հայաստան և բաւական մեծ թւով հետևողներ գտել հայ ժողովրդի մէջ։

Հայ պատմիչների ասելով, քրիստոնէութեան առաջին քարոզիչները Հայաստանում եղել են Թադէոս և Բարթուղիմէոս առաքեալները։ Սրանք շատ հալածանքների են ենթարկւել հայ իշխանաւորների կողմից և նահատակւել իրանց հետևողներից շատերի հետ միասին։

Հալածանքները, սակայն, չըկարողացան քրիստոնէութիւնը արմատախիլ անել։ Ընդհակառակը քրիս-

ատեանների թիւը գնալով աւելի ու աւելի շատանում էր Հայաստանում։ Ժողովրդի ստորին խաւերը, որ տարբեր շարունակ տանջւել ու ճնշւել էին իշխանաւորներից՝ մեծ սիրով էին հետեւում նոր կրօնի քարոզիչներին։

Այդ թշւառները արդէն հիասթափւել էին կռապաշտական աստւածներից։ Նրանք դարերից ի վեր շատ էին աղօթել այդ աստւածներին, որ իրանց ազատեն իշխանաւորների ծանր լուծից, բայց նրանց բոլոր աղօթքներն ու մատուցած զոհերը անհետեւանք էին մնացել։ Ընդհակառակը՝ քանի գնում իշխանաւորների ոյժն աւելի մեծանում և հասարակ ժողովրդի լուծն էլ աւելի էր ծանրանում։

Տանջւող ժողովուրդը, քրիստոնէական քարոզիչներից լսելով, թէ կայ մի ուրիշ՝ աւելի զօրաւոր Աստւած, որը պիտի հանդերձեալ կեանքում վարձատրէ զրկւածներին ու պատժէ զրկողներին, երես էր դարձնում պաշտած նախկին աստւածներից և քրիստոնէութեան մէջ փնտրում մխիթարութիւն ու փրկութիւն։

Թէև նոր կրօնը ընդունելով մարդիկ աւելի խիստ տառապանքների էին ենթարկւում, բայց համբերութեամբ տանում էին այդ տանջանքները։ Նրանք հաւատում էին, որ այդ բոլորը ժամանակաւոր են միայն և որ իրանք պիտի վարձատրւեն մշտնջենական երջանկութեամբ։

Առաջին քրիստոնեաները Հայաստանում, թագաւորների ու նախարարների հալածանքներից սարսափած՝ գաղտնի էին պահում իրանց նոր կրօնը։ Աղօթելու համար, նրանք հաւաքւում էին անտառներում, քարայրներում և ուրիշ ծածուկ տեղեր։

Քրիստոնեաների դէմ Տրդատի սկսած հալածանք-

ների ժամանակ, Հռոմից մի խումբ քրիստոնեայ կոյսեր են գալիս Հայաստան։ Նրանք Հռոմից փախչելով, յույս ունեին Հայաստանում հանգիստ գտնել։ Խումբը՝ Գայիանէ, Հռիփսիմէ և Շողակաթ կոյսերի առաջնորդութեամբ՝ գալիս թաքնւում է Վաղարշապատի հնձաններում։ Սակայն Տրդատը բոլորին էլ բռնել է տալիս և հրամայում է սպանել։

Այսպէս շատ ու շատ քրիստոնեաներ նահատակելուց և շատ անմեղ արիւն թափելուց յետոյ, Տրդատը յանկարծ խղճահարութեան մէջ է ընկնում և երկար ժամանակ տանջւելով խելագարւում է։

Տրդատի հիւանդութիւնը մեծ ցաւ է պատճառում նրա Խոսրովիդուխտ քրոջը, որ շարունակ իր սիրելի եղբօր բժշկութեան մասին էր մտածում։

Այդ ծանր մտածմունքների ազդեցութեան տակ, Խոսրովիդուխտը մի քանի անգամ երազ է տեսնում։ Երազում մի ծերունի ասում է նրան, որ Տրդատին կարող է բժշկել միմիայն Խորվիրապում բանտարկւած Գրիգորը։

Այդ երազներից սիրտ առած՝ Խոսրովիդուխտը հրամայում է Գրիգորին բանտից ազատել։ 14 տարւայ բանտարկութիւնից յետոյ, Գրիգորին հանում են Խորվիրապից և բերում Վաղարշապատ։

Պատմում են, որ Գրիգորը մի քանի անգամ աղօթում է հիւանդ Տրդատի գլխին և նա բժշկւում է։

Այդ անսպասելի բժշկութիւնից յետոյ, Խոսրովիդուխտը, Տրդատը, իր Աշխէն կինը և բոլոր պալատականները Գրիգորի ձեռքով մկրտւում են ու քրիստոնէութիւն ընդունում։

Այդ ժամանակից բոլոր քրիստոնեաներին իրաւունք է տրւում նոր կրօնը ազատութեամբ դաւա-

ելու և նա դառնում է Հայաստանի պաշտոնական րոնը (301 թ. Ք. ծ. յ.)։

---

Ս. Գրիգորի եւ Տրդատի գործունէութիւնն ու մահը

Քրիստոնէութիւնը Հայաստանում պաշտոնական րոն հրատարակելուց յետոյ, Գրիգորը բազմաթիւ ստորի և յոյն քահանաներ ու քարոզիչներ է բերել ալիս՝ հայերի մէջ նոր կրօնը տարածելու համար։ Նքն էլ անձամբ ման է գալիս Հայաստանի գանաան կողմերը, քանդել է տալիս կռապաշտական մեհաններըը, ջարդում հին աստուածների արձանները և րանց տեղ եկեղեցիներ շինում։

Առաջին եկեղեցին Հայաստանում շինուել է այն եղում, ուր Գրիգորի աղօթքով բժշկուել էր Տրդատ թագաւորը։ Այդ եկեղեցին, որ Գրիգորն անուանել է Էջմիածին, մինչև այսօր էլ կայ Վաղարշապատում։

Նահատակուած կոյսերի աճիւններն էլ հաւաքեով, Գրիգորն ու Տրդատը երեք գերեզմանների մէջ են ամփոփում ու նրանց վրայ մի-մի մատուռ կառուցանում։ Այդ մատուռները կոչւում են Հռիփսիմէ, Գայիանէ և Շողակաթ։

Դրանից յետոյ, Գրիգորը մեծ շուքով գնում է Կեսարիա և այնտեղ 12 յոյն եպիսկոպոսներից կաթողիկոս ձեռնադրուելով՝ վերադառնում է Հայաստան։

Այդպիսով Գրիգորը Հայաստանի առաջին Հայրապետն է դառնում։

Այնուհետև հայոց Հայրապետն ու Թագաւորը րկում են իրանց երկիրը արտաքին թշնամիներից ապահով դարձնելու մասին հոգ տանել։

Նրանք այլևս բոլորովին՝ երես դարձնելով հե-
թանոս պարսիկներից, աշխատում են մօտից բարե-



Նկար 10. [illegible]

կամութիւն հաստատել իրանց կրօնակից բիւզանդա-
կան կայսրութեան հետ։

Տրդատի ժամանակակից հռոմայեցոց Կոստանդին

կայսրը, դեռ հայոց թագաւորից առաջ էր ընդունել քրիստոնէութիւնը և թոյլ տուել իր կայսրութեան մէջ նոր կրօնը ազատ դաւանել։ Միևնոյն ժամանակ Կոստանդինը իր մայրաքաղաքը Հռոմից փոխադրել էր Բոսֆորի ափին գտնուող Բիւզանդիոն քաղաքը, որ վերջը նրա անունով կոչուեց Կոստանդնուպօլիս։



Նկար [illegible]։ Տրդատը վրաց և աբխազաց թագաւորների հետ

Այս օրով հռոմէական ընդարձակ կայսրութիւնը երկու մասի է բաժանւում։ Արևմտեան մասը մնում է իր հին Հռոմ մայրաքաղաքով, իսկ արևելեանը կոչւում է Բիւզանդական կայսրութիւն։

Ահա հէնց այդ Կոստանդին կայսեր հետ է, որ հայոց կաթողիկոսն ու թագաւորը մտածում են սերտ բարեկամութիւն հաստատել։

Նրանք մեծ հանդիսաւորութեամբ գնում են Կոստանդնուպօլիս, ուր շատ փառաւոր և սիրալիր ընդունելութիւն են գտնում բիւզանդական կայսրի և յոյն հոգևորականութեան կողմից։ Այնտեղ նրանք Կոստան-

դինի հետ բարեկամական դաշն կապելով՝ վերադառնում են Հայաստան։

Ծերութեան հասակում Գրիգորն իր Արիստակէս որդուն է՝ յանձնում Հայաստանի կաթողիկոսութիւնը, իսկ ինքը քաշւում է մի այրի մէջ ճգնելու։ Նա վախճանւում է 332 թ.։ Քրիստոնէական եկեղեցին նրան սուրբերի դասն է դասել, և նա կոչւեց Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ։

Պատմում են, որ ծերութեան հասակում Տրդատըն էլ է քաշւել այրի մէջ ճգնելու և նրան թունաւորել են հայ նախարարները։

---

## Հայաստանը քրիստոնէութիւնից յետոյ

Հակառակ Լուսաւորչի ու Տրդատի ջանքերի, քրիստոնէութիւնը Հայաստանում ընդարձակ չափով չէր տարածւում։ Դարերով դաւանած կրօնից և սովորութիւններից հրաժարւելը շատ էլ հեշտ բան չէ։ Այդ պատճառով էլ շատ տեղերում ժողովուրդը ապստամբում և կռիւ էր մղում քրիստոնէութիւն տարածողների դէմ։

Հին կրօնից հրաժարւելը շատ դժւար էր մանաւանդ քուրմերի համար, որոնք զրկւում էին առաջին եկամուտներից և ունեցած բարձր դիրքից։ Հէնց դրա համար էլ նրանք գրգռում էին ժողովրդին և զորք հաւաքելով՝ երկար ժամանակ կռիւ էին մղում թագաւորի դէմ։ Քրիստոնեաները քուրմերին ու նրանց զորքերին անւանում էին դեւեր։

Նախարարներից շատերը նոյնպէս շտապով չէին ընդունում նոր կրօնին։ Նրանք երկար ժամանակ չէին կարողանում հրաժարւել իրանց հին սովորութիւններից, ինչպէս օրինակ՝ բազմակնութիւնից։

Այդ պատճառով էլ Հայաստանի թագաւորների նախարարների միջև անվերջ դժտութիւններ են ագում։ Նոր ու հին կրօնի կողմնակիցները խիստ Թշնամաբար են վերաբերւում միմեանց ու շարունակ ռիւներ մղում իրար դէմ։

Հայ նախարարներն այլևս իրանց թագաւորնե-րին առաջւան պէս չեն հնազանդւում։ Նրանք շատ անգամ ամրանում էին իրանց անառիկ բերդերում և կռւում թագաւորի դէմ։

Հեթանոսական կրօնի կողմնակից նախարարները թագաւորներից պահանջում էին, որ նրանք անպայ-ման պարսիկ տէրութեան հետ բարեկամութիւն պահ-պանեն։ Քրիստոնեայ նախարարներն էլ, ընդհակա-ռակը՝ բիւզանդական կայսրութեան կողմնակիցներ էին։

Բիւզանդական կայսրութեան հետ բարեկամ լի-նելու ամենամեծ կողմնակիցները հայ կաթողիկոս-ներն էին։ Նրանք հետզհետէ ահագին հարստութիւն և իշխանութիւն ձեռք բերելով, սկսել էին շատ մեծ դեր խաղալ երկրի գործերի մէջ։ Կաթողիկոսները այլևս չէին բաւականանում սոսկ կրօնական պետ լի-նելով, այլ աշխատում էին իրանց ազդեցութեանն ենթարկել թէ թագաւորներին և թէ երկրի ամբողջ իշխանութեանը։

Այդպիսի պայմաններում շատ դժւար դրութեան մէջ էին ընկնում հայ թագաւորները։ Նրանք շատ անգամ չէին իմանում ինչպիսի դիրք բռնել, որպէս-ի նախարարներից մի կամ միւս մասը, կաթողիկոսի հետ միացած, չը թշնամանային իրանց դէմ։

Այդ պատճառով էլ երկիրը ներքին խռովութիւն-ներից ազատ պահելու համար, թագաւորները ամեն

կերպ աշխատում էին պարսիկների և յոյների միջև եղած կռիւներին չը խառնուել։

Սակայն այդ նրանց չէր յաջողւում, որովհետև կռիւները գլխաւորաբար հէնց Հայաստանին տիրանալու պատճառով էին, ուստի հայ թագաւորները, իրանց երկրից բոլորովին չը զրկուելու համար ստիպուած էին կռւողներից մէկի կամ միւսի կողմը բռնել։

Այդ անտանելի վիճակից դուրս գալու համար, Տրդատի յաջորդները մեծ ջանք են գործ դնում թագաւորի իշխանութիւնն այնպէս զօրեղացնելու, որ հնարաւորութիւն ունենան իրանց ուզած ձևով վարել երկրի գործերը։

Նրանք մի կողմից խիստ մաքառում են կաթողիկոսների, իսկ միւս կողմից անհնազանդ ըմբոստ նախարարների դէմ։

Այդ ներքին կռիւները շատ խիստ կերպարանք են ստանում մանաւանդ Արշակ II թագաւորի Մեծն Ներսէս կաթողիկոսի օրով։

## ԱՐՇԱԿ II ԵՒ ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Արշակի դիրքը յոյների եւ պարսիկների հանդէպ

Արշակ II-րդը Արշակունի Տիրան թագաւորի որդին էր։

Պարսից Շապուհ թագաւորը Տիրանին աչքերի լոյսից զրկելով, բնակեցրել էր Կուաշ աւանում։ Յետոյ կամենալով հայերի սիրտը շահել, նա թագաւորեցրել էր Տիրանի Արշակ որդուն։

Արշակը թէև շատ փառասէր, բայց խելքի տէր էլ մարդ էր։ Տեսնելով, որ Հայաստանը ներքին պառակտումներից սաստիկ թուլացել է խաղաղ

դարձել նորևան մեծ տէրութիւնների ձեռքում, նա մտածում է մի հնարք գտնել իր երկիրը այդ կացութիւնից փրկելու։

Արշակը խորհում է բոլորովին չխառնվել յոյն-պարսկական կռիւներին և միանգամայն անկախ դիրք պահպանել։

Երբ Բիւզանդիայի կայսրն իմանում է Արշակի թագաւոր դառնալը, դեսպան է ուղարկում և առաջարկում բարեկամութեան դաշն կապել։ Արշակը, հակառակ Մեծն Ներսէսի խորհուրդների՝ հպարտութեամբ մերժում է կայսրի առաջարկը և անպատուելով յետ է դարձնում դեսպաններին։

Կայսրը այդ անպատւութիւնից սաստիկ զայրացած՝ իսկոյն զօրք է ուղարկում Հայաստան Արշակին պատժելու։ Միևնոյն ժամանակ սպանել է տալիս Արշակի Տրդատ եղբօրը, որն իր Գնել որդու և այլ իշխանազունների հետ գտնւում էր իր մօտ իբրև պատանդ։

Յունական զօրքի գալն իմանալով, Արշակը մեծ վախի մէջ է ընկնում։ Չուզելով սակայն պարսիկների օգնութեանը դիմել, միևնոյն ժամանակ չը վստահանալով անհնազանդ նախարարներին, նա չի էլ մտածում դիմադրութիւն ցոյց տալ, այլ դիմում է կաթողիկոսի միջնորդութեանը, որը խիստ յարգւած էր Կոստանդնուպոլսի արքունիքում։

Մեծն Ներսէսը գնում է Կոստանդնուպոլիս և հաշտութիւն խնդրում կայսրից։ Այս վերջինը զիջելով հայոց Հայրապետի թախանձանքներին, իր զօրքը յետ է կանչում Հայաստանից, ինչպէս և իր մօտ եղած բոլոր հայ պատանդներին արձակելով՝ նրանց հետ իր ազգական Ոլիմպիադա օրիորդին էլ Արշակին կնութեան է ուղարկում։

Հայոց և յունաց միջև ստեղծուած այդ բարեկամութիւնն այս անգամ պարսից Շապուհ թագաւորին է սաստիկ կատաղեցնում, որը պատրաստութիւններ է տեսնում Հայաստանի վրայ արշաւելու։

Հայոց թագաւորը, այս անգամ էլ չուզելով յոյների օգնութեանը դիմել, ստիպւում է Շապուհից էլ հաշտութիւն խնդրել։ Այս վերջինը, սակայն, պայման է դնում, թէ կը հաշտուի, եթէ միայն հայոց թագաւորը խոստանայ իրան օգնել՝ Բիւզանդիայի դէմ պատերազմելիս։

Արշակը ստիպւած է լինում խոստանալ, մտածելով թէ գուցէ կը կարողանայ մի կերպ խուսափել տւած խոստումից ու միաժամանակ բարեկամ մնալ թէ յոյներին և թէ պարսիկներին։

Սակայն այդ բանը նրան չի յաջողւում։

Շատ ժամանակ չանցած Շապուհը արշաւում է յոյների վրայ և հայոց թագաւորից էլ պահանջում է իր խոստումը կատարել։

Արշակը հիւանդ ձևանալով, հրաժարւում է անձամբ պատերազմի գնալ, բայց և իր խոստումը բոլորովին դրժած չը լինելու համար, մի փոքրիկ գունդ զօրք է ուղարկում Շապուհին օգնութեան։

Արշակի այս երկդիմի վարմունքը չէ վրիպում ոչ յոյների և ոչ էլ պարսիկների աչքից։ Երկու կողմըն էլ Արշակին ուխտադրուժ և խոստմնազանց համարելով՝ մտադրւում են մի լաւ պատժել նրան։

---

## Արշակի դիրքը նախարարների եւ կաթողիկոսի հանդէպ

Հզօր հարևաններից ոչ մէկի և ոչ միւսի հետ հաստատուն դաշնակցութիւն չը կապելու անխոհեմա-

ւոր պատճառն այն էր, որ Արշակ II-ը վստահ չէր նախարարների ու կաթողիկոսի միահամուռ աջակցութեան վրայ։ Նախարարներից մի մասը, կաթողիկոսի հետ միասին, անպայման Բիւզանդիայի դաշնակցութիւնն էին ցանկանում, իսկ միւս մասը՝ պարսիկներին։

Այդ անյարմար դրութիւնից դուրս գալու համար, Արշակն իր թագաւորութեան հէնց առաջին օրից խիստ մաքառումն է սկսում նախարարների իշխանութեան դէմ, որպէսզի նրանց ոյժը խորտակելով, կարողանայ ինքնագլուխ կառավարել երկիրը։ Միևնոյն ժամանակ նա զօրեղ թափով կռւում է նաև կաթողիկոսական իշխանութեան դէմ, որն այդ ժամանակ շատ մեծ զօրութեան էր հասել և սաստիկ խանգարում էր թագաւորի ինքնիշխան գործելուն։

Արշակի ժամանակակից Մեծն Ներսէս կաթողիկոսի օրով, որը Ս. Գրիգոր Լուսաւորչի տոհմիցն էր, հայրապետական իշխանութիւնը, նրա պալատն ու վարած կեանքի շքեղութիւնը՝ ոչնչով չէին տարբերւում թագաւորականից։

Մեծն Ներսէսը ամբողջ 15 ընդարձակ գաւառների տէր լինելով, ինքն իրան մի առանձին մեծ իշխանութիւն էր նկատում և ցանկանում էր, որ թագաւորը ամեն բանի մէջ իրան ենթարկւի և իր խորհրդով կառավարի երկիրը։

Իբրև ջերմեռանդ ու բարեպաշտ քրիստոնեայ, Մեծն Ներսէսը բոլորովին չէր համակրում պարսիկներին և ցանկալի էր համարում, որ հայերը միշտ դաշնակից ու բարեկամ մնան իրանց կրօնակից յոյներին։

Իր սկսած մաքառման ժամանակ Արշակը համարեա թէ կողմնակիցներ չունէր, որովհետև նա հա-

մահաւասար կերպով մաքառում էր թէ պարսիկների և թէ յոյների կողմնակից նախարարների ու կաթողիկոսի դէմ։

Այդ մաքառումը սկզբում շատ խուլ, իսկ վերջում խիստ սուր կերպարանք է ստանում։

Արշակը Արշակունի թագաւորների սովորութեան համաձայն, մի նոր քաղաք է հիմնում Մասիսի ստորոտում, որ և իր անունով կոչւում է Արշակաւան։ Նա յայտարարում է, թէ բոլոր յանցաւոր ճանաչւած մարդիկ, եթէ գան Արշակաւանում բնակւեն՝ անպատիժ կը մնան։

Այսպիսով նա ուզում է թէ իր նոր շինած քաղաքը շուտով բազմամարդ դարձնել և թէ մի կեր նախարարներին պատժած լինել։

Եւ յիրաւի, կարճ ժամանակում Արշակաւան լցւում է նախարարներից ու ազնւականներից դժգ մնացած ամեն տեսակ մարդկանցով։

Քանի Արշակաւանը բազմամարդ է դառնու այնքան էլ նախարարների կատաղութիւնն աւել նում է Արշակի դէմ, որովհետև այն մարդիկ, որ ցանկանում էին նրանց ճնշումներից ազատւել, փ չում գնում էին Արշակաւան։

Այդ անպատւութիւնը չըկարողանալով տան նախարարները մտածում են մի լաւ վրէժ լուծել Արշակից և թէ Արշակաւան քաղաքի բնակիչներից։

Թագաւորի և նախարարների այդ խուլ մաք ման ժամանակ, Արշակին յայտնում են, թէ նա րարները դաւադրութիւն են սարքել և ուզում գահընկէց անել իրան ու իր տեղ Գնելին թագա րեցնել։

Գնելը բիւզանդական կայսրի արձակած տանդներիցն էր։

Սա հայրենիք վերադառնալով, գնաց բնակւեց
ր կուրացած պապի՝ Տիրանի մօտ, ուր և ամուս-
ացաւ Փառանձեմ անունով մի գեղեցկուհու հետ։

Դաւադրութեան լուրն իմանալով, Արշակը սաս-
իկ կատաղում է։ Նա խաբէութեամբ ու կեղծաւո-
ւթեամբ որսի է հրաւիրում իր եղբօրորդի Գնելին
սպանել է տալիս։

Ցոյց տալու համար, թէ Գնելը սպանւել է ոչ
է դիտմամբ, այլ պատահմամբ, Արշակ մեծ սուգ է
նում։ Սակայն երբ սովորական սուգի օրերը անց-
ում են, նա քրիստոնէական օրէնքի հակառակ, ա-
ուսնանում է իր եղբօրորդու՝ Գնելի կնոջ Փառան-
եմի հետ։

---

## րշակի ընդհարումները կաթողիկոսի եւ նախարար-ների հետ։

Թէ Գնելի սպանութիւնը և թէ Փառանձեմի հետ
մուսնանալը կատաղի կերպով զայրացնում է հա-
րեա թէ բոլոր նախարարներին, մանաւանդ Մեծն
երսէսին։

Վշտացած Հայրապետը խիստ յանդիմանում էր
անիծում նրան։

Արշակն էլ իր կողմից հրաժարեցնում էր Ներսէ-
ին հայրապետական գահից և հրամայում՝ նրա փո-
րէն նոր կաթողիկոս ձեռնադրել Չունակ անունով
ձին։

Պատմում են, որ հայ եպիսկոպոսները չեն հա-
աձայնել Չունակին կաթողիկոս ձեռնադրել, բայց
րշակն օտար եպիսկոպոսների միջոցով իր ցանկու-
իւնն իրագործել է տալիս։

Մեծն Ներսեսը հեռանում է Վաղարշապատից և քաշվում է մի վանք։

Մեծն Ներսեսին հասցրած այդ անպատվությունը հայ ժողովրդին էլ է սաստիկ զայրացնում Թագավորի դեմ։ Ներսեսն իր կաթողիկոսության օրով շատ բարեգործական հաստատություններ հիմնած լինելով Հայաստանում, ժողովրդի սերն ու յարգանքն էր վայելում։

Այսպես՝ հնումը Հայաստանում սովորություն էր բորոտ և այլ վարակիչ հիվանդություն ունեցող մարդկանց դուրս անել քաղաքներից ու գյուղերից և բոլորովին անխնամ թողնել խեղճերին. իսկ Մեծն Ներսեսը յատուկ գյուղեր էր շինել տվել, ուր բնակեցնում էին այդ կարգի հիվանդներին և պահում տերության հաշվով։

Նա հիմնել էր ուրիշ շատ հիվանդանոցներ, որբանոցներ և այլ օգտակար հաստատություններ։

Մեծն Ներսեսի կարգադրությամբ է նույնպես, որ արգիլվել է հայերին իրանց ազգականների հետ ամուսնանալ, մի բան, որ մինչ այդ ժամանակ ընդհանուր սովորություն էր։

Սիրված ու յարգված Հայրապետին կաթողիկոսությունից հեռացնելուց յետոյ, նախարարները միացած ույժերով յարձակվում են Արշակավանի վրայ, ուր գտնվում էր նաև Թագավորը։

Նրանք Արշակավանի բոլոր բնակիչներին կոտորում և քաղաքն էլ հիմնայատակ են անում։

Արշակն իր Փառանձեմ կնոջն ու գանձերը առնելով, փախչում գնում է անառիկ Անի ամրոցը և այնտեղ պատսպարվում։

Արշակի Ոլիմպիադա կինը այդ ժամանակ արդեն մեռած էր։ Փառանձեմը կամենալով գլխավոր Թա-

---

ուհին դառնալ, մի քահանայի ձեռքով թունաւորել ր տուել Ոլիմպիադային։

Պատմում են, որ այդ քահանան թունաւորելու ւրիշ միջով չգտնելով, հաղորդութեան մէջ թոյն է տանում և այդ ձևով կատարում Փառանձեմի կամքը։

Չվստահանալով, թէ պիտի կարողանան իրանց եփական ույժերով անառիկ Անին առնել, նախարարները պարսից թագաւորի օգնութեան են դիմում և բանից մի գունդ զօրք առնելով, գնում պաշարում ն Անին։

Անին առնւում է։ Անօգնական մնացած Արշակը ազիւ կարողանում է ազատուել նախարարների վրէժնդրութիւնից և փախչում է Վրաստան։

Մի ամբողջ տարի հայրենիքից հալածական մնաւց յետոյ, Արշակը վրաց զօրքով վերադառնում է այաստան՝ իր գահին տիրանալու։ Նախարարները ոկոյն Ներսէհ Կամսարական նախարարի առաջնորութեամբ նրա դէմ են դուրս գալիս. մի կատաղի ատերազմ է սկսւում հայոց թագաւորի ու նախաարների միջև։

Պատերազմի վախճանը դեռ ևս բոլորովին չը որզւած հայերը լուր են ստանում, թէ յունական որքը արշաւում է Հայաստան։

Արտաքին և ընդհանուր թշնամու երևալուն պէս է թագաւորը և թէ նախարարները խելքի են գալիս մի րոպէ մոռանալով իրանց ներքին կռիւները, ոոշում են հաշտուել միմեանց հետ։

Այդ նպատակով պատգամաւորներ են ուղարկում եծն Ներսէսի մօտ, խնդրելով, որ գայ և իրանց ու ագաւորի միջև միջնորդ հանդիսանայ։

Վշտացած Հայրապետը սկզբում թէև մերժում է ագաւորի ու նախարարների խնդիրքը, բայց վերջը

զիջում է և գալիս հաշտեցնում նրանց։ Չեն հաշտ
վում միայն Մեհրուժան Արծրունի և Վահան Մամի
կոնեան նախարարները։ Նրանք թողնում, հեռանո
են Հայաստանից ու գնում ծառայության են մը
նում պարսից Շապուհ թագաւորի մօտ և իրանց կ
րօնն էլ ուրանում։

---

Արշակի եւ Փառանձեմի ողբերգական մահը։

Նախարարների և կաթողիկոսի հետ հաշտուելո
և իր գահի վրայ վերստին հաստատուելուց յետո
Արշակը նամակ է տալիս Մեծն Ներսէսին և խնդ
րում, որ գնայ Կոստանդնուպօլիս, կայսեր հետ
հաշտութիւն կայացնի։

Ներսէսը ճանապարհ է ընկնում, իր հետ տան
լով նաև Արշակի Պապ որդուն և մի քանի իշխան
զունների։

Նա գնում է նախ յունաց այն զօրապետի մօ
որն այդ միջոցին իր զօրքով Հայաստան էր մտել
մեծ աւերմունքներ էր գործում։ Այդ զօրապե
ծերունի Հայրապետի թախանձանքներին զիջել
զօրքն առած վերադառնում է Կոստանդնուպօլ
տանելով նաև հայոց կաթողիկոսին ու նրա հետ
գած իշխանազուններին։

Սակայն յունաց կայսրը հայոց թագաւորի եր
դիմի ընթացքից չափազանց դայրացած լինելով, Նե
րսէսին իր մօտ չէ ընդունում և Արշակի նամակն
չէ կարդում։ Նա մինչև իսկ հրամայում է Ներսէ
բերած բոլոր պատանդներին սպանել և իրան՝ Ներս
սին էլ աքսոր ուղարկել։

Պատանդներից կենդանի է մնում միայն Ա
շակի Պապ որդին։

Հակառակ իր բարկութեան՝ կայսրը երկրորդ անգամ այլեւս զօրք չէ ուղարկում Հայաստան եւ այսպէս Արշակը միաժամանակ ազատւում է դրսի թշնամիների յարձակումներից։

Այդ միջոցին նա սկսում է կամաց-կամաց վրէժ լուծել բոլոր հակառակորդ ու անհնազանդ նախարարներից։ Զանազան միջոցներով նա հետզհետէ սպանել է տալիս եւ ոչնչացնում նրանցից շատ-շատերին եւ նրանց բոլոր կալուածները գրաւում։

Արշակը նամանաւանդ շատ խիստ վրէժ է առնում Ներսեհ Կամսարականից, որի ամբողջ ցեղը սրի է անցկացնում։ Այդ ցեղից կենդանի է մնում միայն Ներսեհի Սպանդարատ եղբօրորդին, որին մայրը փախցնում տանում է յունաց երկիրը։

Թագաւորից հալածւած նախարարներից ոմանք Պարսկաստան են փախչում եւ Շապուհի մօտ ծառայութեան մտնում։ Նրանք ամեն կերպ գրգռում են Շապուհին, ասելով, որ Արշակը ձգտում է բոլորովին ինքնիշխան լինել եւ այլեւս հարկ չը տալ ոչ պարսիկներին եւ ոչ էլ յոյներին։

Շապուհն էլ, օգուտ քաղելով Հայաստանի ներքին անվերջ խռովութիւններից, մտածում է մի անգամից վերջ դնել հայկական թագաւորութեանը եւ նւաճելով այդ երկիրը՝ Պարսից տէրութեանը միացնել։

Նա խաբէութեամբ Արշակին իր մօտ է հրաւիրում, արքայավայել պատիւներ է տալիս եւ ապա շղթայում եւ Անյուշ բերդում բանտարկում է։

Հայոց թագաւորին բանտարկելուց յետոյ, Շապուհը Մեհրուժան Արծրունու եւ Վահան Մամիկոնեանի առաջնորդութեամբ մեծ զօրք է ուղարկում Հայաստան, ուր նրանք ամեն կողմ սոսկալի սարսափ տարածելով, սկսում են հետզհետէ տիրել երկրին։

Նախարարներից մի քանիսը իզուր փորձում են
դիմադրություն ցույց տալ պարսիկներին, ոմանք
իրանց ընտանիքներով փախչում են յունաց սահման-
ները և այնտեղ ապաստանում։

Թագուհի Փառանձեմն էլ է փախչում։ Նա մի
խումբ հավատարիմ մարդկանց հետ, թագավորակ-
գանձերը առած, ապաստանում է անառիկ Արտագեր
բերդը, որը բավական երկար պաշարումից յետո
առնվում է և հայոց թագուհին էլ գերի բռնվու-
Փառանձեմին Մեհրուժանը խայտառակ կերպով սպա-
նել է տալիս։

Արշակն Անյուշ բերդում լսելով Հայաստանում
տեղի ունեցած անցքերն ու իր սիրած թագուհու ող-
բերգական մահը՝ յուսահատությունից անձնասպան
լինում (382 թ.)։



Մեծն Ներսէսն ու Պապ թագաւորը

Բիւզանդիայի կայսրը Հայաստանի դէպքերը լս-
լով և չուզելով, որ պարսիկները տիրանան այդ եր-
րին, Արշակ II-րդի Պապ որդուն հայոց թագավոր
նշանակում ու բազմաթիւ զորքով ուղարկում հայրե-
նի գահը ժառանգելու։

Պապի հետ Հայաստան է վերադառնում և Մեծ
Ներսէսը, որն այդ ժամանակ արդէն վերադարձել էր
աքսորից և Կոստանդնուպոլսում էր գտնվում։

Ճանապարհին հետզհետէ գալիս, Պապին են միա-
նում նաև այն բոլոր նախարարները, որոնք փախ-
ապաստանել էին յունաց երկրի զանազան կողմեր.

Պարսից ու յունաց զորքերը իրար հանդիպու-
են Նպատ լեռան մօտ, Ձիրաւ դաշտի վրայ։ Պապ-

ազմը շատ կատաղի է լինում, բայց վերջը յաղթու-
թիւնը Պապին օգնող զօրքերի կողմն է մնում։

Պատմում են, որ այդ կռուի ժամանակ մի խիստ
ամի է բարձրացել դէպի պարսից բանակը, որի
որհով պարսիկների նետերը կէս ճանապարհին վայր
ին թափւում և հայոց բանակին չէին հասնում։

Պատմում են նաև, որ ամբողջ պատերազմի ըն-
թացքում Մեծն Ներսէսը թագաւորի հետ, Նպատ լե-
ան գագաթին կանգնած աղօթում էր։

Պարսիկները փախչում են։ Փախչում է նոյնպէս
րանց հրամանատար Մեհրուժանը, որը ձիու վիրա-
որւած լինելու պատճառով յետ է մնում։

Սմբատ Բագրատունին ընկնելով Մեհրուժանի
տևից, հասնում ու բռնում է նրան և ապա շիկա-
ցած շամփուրը նրա գլխին դնելով ծաղրով ասում
. «Մեհրուժան, դու ցանկանում էիր հայոց թա-
աւոր դառնալ, ես ահա, իբրև թագադիր ասպետ՝
պսակում եմ քեզ»։

Մեհրուժանի գործակից Վահան Մամիկոնեանը
դաւաճան ընկերից աւելի լաւ վախճան չէր ու-
ցել։ Նրան էլ, դեռ աւելի առաջ, սպանել էր իր
արազատ որդին՝ Սամուէլը։

Այսպէս բիւզանդական զօրքի օգնութեամբ Հա-
աստանը պարսիկներից մաքրելով, Պապը հաստատ-
ւում է իր հայրենական գահի վրայ։

Դրանից յետոյ բիւզանդական կայսրը կասկա-
ծելով, թէ Պապն էլ կարող է իր հօր նման անկա-
ութեան ձգտել և կամ պարսիկների կողմը անցնել,
զօրքի մի մասը թողնում է Հայաստանում՝ Պա-
վրայ հսկելու նպատակով։ Այդ բանը հայոց երի-
ասարդ թագաւորին խիստ գայրոյթ է պատճառում,
նա օգուտ քաղելով Կոստանդնուպոլսում տեղի ու-

նեցող ներքին պառակտումներից, յարձակւում է յա
նական զօրքի վրայ ու դուրս քշում իր երկրի սա
մաններից։

Պապի այդ վարմունքը նորից մեծ վիշտ է պա
ճառում Մեծն Ներսէսին, և նա դարձեալ սկսում
թագաւորի գործերին խառնուել ու նրան յանդիմ
նութիւններ անել։

Թագաւորի և կաթողիկոսի յարաբերութիւնն
հետզհետէ այն աստիճան են լարւում, որ Պապը վե
ի վերջոյ դաղտնի կերպով թունաւորել է տալիս Հա
րապետին։

Սակայն Պապ թագաւորն էլ լաւ վերջ չէ ու
նենում։ Բիւզանդական կայսրը շուտով բազմաթ
նոր զօրք է ուղարկում Հայաստան և հայոց թագ
ւորն անզօր լինելով դիմադրելու, գերի է ընկն
ու տարւում Կոստանդնուպօլիս։ Այնտեղ կայսրը Պ
պին գլխատել է տալիս (388 թ.)։

---

## Ս. ՍԱՀԱԿ ԵՒ Ս. ՄԵՍՐՈՊ

### Տառերի գիւտը

Հայաստանում երկար ժամանակ քրիստոնէ
թեան չըտարածւելու գլխաւոր պատճառն այն
որ եկեղեցական արարողութիւններն ու ժամերգ
թիւնը կատարում էին ոչ թէ հայերէն, այլ օտ
լեզուներով։

Հայերը դեռ սեփական տառեր չունէին, ուս
և անկարող էին սուրբ գիրքն ու ժամերգութի
հայերէն թարգմանել։ Բոլոր հայ վարդապետները
պիսկոպոսներն ու կաթողիկոսները իրանց ուսու
ստանում էին ասորերէն կամ յունարէն լեզուներ

Հայ ժողովուրդը այդ լեզուներին անծանօթ լինելով, ոչինչ չէր հասկանում քրիստոնէական եկեղեցու արարողութիւններից, ուստի և շատ էլ տաք չէր վերաբերւում թէ եկեղեցուն և թէ կրօնին։

Այդ բանը շատ մեծ ցաւ էր պատճառում հայ հոգևորականութեանը։ Նրանք երկար ժամանակ մտածում էին մի հնար գտնել, որպէսզի կարելի լինի այդ խոչնդոտը վերացնել։

Այդ հնարը, վերջապէս, գտնում է Մեսրոպ Մաշտոց անունով մի վարդապետ։

Մեսրոպն իր ժամանակի ամենաուսումնական վարդապետներից մէկն էր։ Նա շատ հմուտ էր թէ ասորոց, թէ յունաց և թէ պարսից լեզուներին։ Դեռ երիտասարդ հասակում նա հայոց արքունիքում դիւանագրի պաշտօն էր վարել, իսկ յետոյ, այդ պաշտօնից հրաժարուելով, կրօնաւոր էր դարձել։ Իբրև քարոզիչ, նա երկար ժամանակ շրջել էր Հայաստանի զանազան կողմերը և փորձով տեսել, թէ հայերէն տառեր չունենալը որքան մեծ արգելք է քրիստոնէութեան տարածւելուն։

Մեսրոպի մէջ միտք է ծագում հայերէն լեզուի համար յատուկ տառեր յօրինել, որպէսզի կարելի լինի մայրենի լեզուով թարգմանել Աստուածաշունչն ու կրօնական այլ գրուածքները։ Բայց մի լեզուի համար նոր տառեր հնարելը շատ էլ հեշտ բան չէ. դրա համար անհրաժեշտ է երկար աշխատանք և գիտութիւն։

Մեսրոպն իր դիտաւորութեան մասին յայտնում է հայոց կաթողիկոսին և նրանից օգնութիւն խնդրում։

Այդ ժամանակ Հայաստանի կաթողիկոսն էր Մեծն Ներսէսի թոռը՝ Սահակը, որ մի շատ լուսամիտ և հայրենասէր մարդ էր։ Սա մեծ համակրանքով է վերաբերւում Մեսրոպի դիտաւորութեանը։ Իր կողմից

դիմում է Վռամշապուհ թագաւորին և նրա հրամանով յայտնի նախարարներից ու հոգևորականներից Վաղարշապատում մի մեծ ժողով է գումարում։

Այդ ժողովի որոշմամբ, Մեսրոպին օժանդակութիւն է տրւում, որպէսզի նա աշխատի իրագործել իր նպատակը։

Մեսրոպը գնում է Ասորիք (Սիրիա), իսկ յետոյ Յունաստան և այնտեղի մատենադարաններում երկու տարի շարունակ աշխատելուց յետոյ, վերադառնում է Հայաստան, հետը բերելով հայկական այբուբենի տառերը, որ մենք մինչև այսօր էլ գործ ենք ածում։

Հայկական տառերի գիւտը մի այնպիսի սքանչելի գործ էր, որ հայ ժողովուրդը նրան մի աստուածային պարգև է համարում։

---

## Ոսկէ դար

Մեսրոպ Մաշտոցը, հայկական տառերի գտնելուց յետոյ, իր մօտ մի քանի հայ հոգևորականներ հաւաքում ու նրանց հայերէն կարդալ-գրել է սովորեցնում։ Յետոյ՝ Մեսրոպն ու աշակերտները, Սահակ կաթողիկոսի աջակցութեամբ, Աստուածաշունչը թարգմանում են հայերէն։ Հետզհետէ նրանք թարգմանում են նաև մի շարք եկեղեցական գրքեր և այնուհետև սկսում են ժամերգութիւնը կատարել հայերէն լեզւով։

Մայրենի լեզւով եկեղեցական արարողութիւններ կատարելը շատ մեծ զարկ է տալիս քրիստոնէութեան տարածւելուն Հայաստանում։ Ժողովուրդը իր հարազատ լեզւով լսելով եկեղեցական արարողութիւնները, այլևս չէ խորշում եկեղեցուց, այլ ընդհակառակը՝ աւելի ու աւելի է կապւում նրա հետ։ Այդպիսով քրիստոնէութիւնը սկսում է խոր արմատ-

ներ բռնել ժողովրդի մէջ և նրա համար մի շատ սի-
րելի կրօն է դառնում։

Եկեղեցական գրքերը թարգմանելու հետ միաժամանակ, Սահակ կաթողիկոսն ու Մեսրոպը, Վռամշապուհ թագաւորի աջակցութեամբ, Հայաստանի զանազան կողմերում, վանքերին ու եկեղեցիներին կից՝ բազմաթիւ դպրոցներ են բացում, որոնց մէջ ժողովրդի զանազան խաւերից հաւաքուած աշակերտներին կարդալ, գրել և ժամերգութիւն են սովորեցնում։

Այդ դպրոցներից առաջին տեղը բռնում էր Վաղարշապատի դպրոցը, որը մի տեսակ ուսուցչանոց էր և ուր ուսուցիչներ էին պատրաստւում միւս դպրոցների համար։

Սահակ կաթողիկոսն ու Մեսրոպը ընտրում են 40-ի չափ ընդունակ աշակերտներ և ուղարկում արտասահման՝ Ալեքսանդրիա, Աթէնք և Կոստանդնուպօլիս՝ իրանց ուսումը կատարելագործելու։

Դրանից առաջ էլ հայ երիտասարդները գնում էին արտասահման ուսում առնելու, բայց այդ ժամանակ հայերէն դիր չըլինելու պատճառով, նրանք իրանց մայրենի լեզւով ոչ մի գրական աշխատանք էին կարող կատարել։

Ալեքսանդրիայի, Աթէնքի և Կոստանդնուպօլսի բարձրագոյն դպրոցներում հայ ուսանողները սովորում էին Աստուածաբանութիւն, ճարտասանութիւն, պատմութիւն ու փիլիսոփայութիւն։ Սահակի և Մեսրոպի ուղարկած և նրանցից յետոյ արտասահման գնացող հայ ուսանողները թէ ուսում էին առնում և թէ միևնոյն ժամանակ յունարէնից գրքեր էին թարգմանում։ Հայաստան վերադառնալով, նրանք ամեն կերպ աշխատում էին իրանց հայրենիքումն էլ տարածել յունական ուսման և գիտութեան լոյսը։

դիմում է Վռամշապուհ թագաւորին և նրա հրամանով յայտնի նախարարներից ու հոգևորականներից Վաղարշապատում մի մեծ ժողով է գումարում։

Այդ ժողովի որոշմամբ, Մեսրոպին օժանդակութիւն է տրւում, որպէսզի նա աշխատի իրագործել իր նպատակը։

Մեսրոպը գնում է Ասորիք (Սիրիա), իսկ յետոյ Յունաստան և այնտեղի մատենադարաններում երկու տարի շարունակ աշխատելուց յետոյ, վերադառնում է Հայաստան, հետը բերելով հայկական այն տառերը, որ մենք մինչև այսօր էլ գործ ենք ածում։

Հայկական տառերի գիւտը մի այնպիսի սքանչելի գործ էր, որ հայ ժողովուրդը նրան մի աստուածային պարգև է համարում։

---

## Ոսկէ դար

Մեսրոպ Մաշտոցը, հայկական տառերի գտնելուց յետոյ, իր մօտ մի քանի հայ հոգևորականներ է հաւաքում ու նրանց հայերէն կարդալ-գրել է սովորեցնում։ Յետոյ՝ Մեսրոպն ու աշակերտները, Սահակ կաթողիկոսի աջակցութեամբ, Աստուածաշունչը թարգմանում են հայերէն։ Հետզհետէ նրանք թարգմանում են նաև մի շարք եկեղեցական գրքեր և այնուհետև սկսում են ժամերգութիւնը կատարել հայերէն լեզուով։

Մայրենի լեզուով եկեղեցական արարողութիւններ կատարելը շատ մեծ զարկ է տալիս քրիստոնէութեան տարածւելուն Հայաստանում։ Ժողովուրդը իր հարազատ լեզուով լսելով եկեղեցական արարողութիւնները, այլևս չէ խրտչում եկեղեցուց, այլ ընդհակառակը՝ աւելի ու աւելի է կապւում նրա հետ։ Այդպիսով քրիստոնէութիւնը սկսում է խոր արմատ-

ներ բռնել ժողովրդի մեջ և նրա համար մի շատ սիրելի կրօն է դառնում։

Եկեղեցական գրքերը թարգմանելու հետ միաժամանակ, Սահակ կաթողիկոսն ու Մեսրոպը, Վռամշապուհ թագավորի աջակցությամբ, Հայաստանի զանազան կողմերում, վանքերին ու եկեղեցիներին կից՝ ազգային դպրոցներ են բացում, որոնց մեջ ժողովրդի զանազան խավերից հավաքված աշակերտներին կարդալ, գրել և ժամերգություն են սովորեցնում։

Այդ դպրոցներից առաջին տեղը բռնում էր Վաղարշապատի դպրոցը, որը մի տեսակ ուսուցչանոց էր և ուր ուսուցիչներ էին պատրաստվում միւս դպրոցների համար։

Սահակ կաթողիկոսն ու Մեսրոպը ընտրում են 10-ի չափ ընդունակ աշակերտներ և ուղարկում արտասահման՝ Ալեքսանդրիա, Աթէնք և Կոստանդնուպոլիս՝ իրանց ուսումը կատարելագործելու։

Դրանից առաջ էլ հայ երիտասարդները գնում էին արտասահման ուսում առնելու, բայց այդ ժամանակ հայերէն գիր չլինելու պատճառով, նրանք իրանց մայրենի լեզւով ոչ մի գրական աշխատանք չէին կարող կատարել։

Ալեքսանդրիայի, Աթէնքի և Կոստանդնուպօլսի բարձրագոյն դպրոցներում հայ ուսանողները սովորում էին Աստուածաբանութիւն, ճարտասանութիւն, պատմութիւն ու փիլիսոփայութիւն։ Սահակի և Մեսրոպի ուղարկած և նրանցից յետոյ արտասահման գնացող հայ ուսանողները թէ ուսում էին առնում և թէ միևնոյն ժամանակ յունարէնից գրքեր էին թարգմանում։ Հայաստան վերադառնալով, նրանք ամեն կերպ աշխատում էին իրանց հայրենիքումն էլ տարածել յունական ուսման և գիտութեան լոյսը։

Այդ ուսումնական հայ վարդապետները միմիայն
թարգմանություններ կատարելով չէին բավականա-
նում, նրանք ինքնուրույն շատ շարադրություններ
էին գրում, մեծ մասամբ կրոնական և պատմակա
բովանդակությամբ։

Տառերի գյուտով և յունական կրթության ազդե-
ցությամբ, հայերը հետզհետէ դուրս են գալիս իրան
նախկին բարբարոսական դրությունից և մտնում լու-
սաւորության ու քաղաքակրթության շաւղի մէջ.
Դրա համար էլ 5-րդ դարը մեր պատմության մէջ
կոչւում է Ոսկէ դար։

Սահակ կաթողիկոսին ու Մեսրոպ Մաշտոցին
հայկական եկեղեցին սուրբերի դասն է դասել, և նր-
րանք կոչւում են սուրբ Սահակ և սուրբ Մեսրոպ։

---

## Դ. ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ

### Պարսիկների ձգտումները

Մեսրոպեան տառերի գյուտի միջոցին, Հայաստա-
նի թագաւորական իշխանությունը չափազանց խա-
խուտ վիճակի մէջ էր գտնւում։

Բիւզանդական կայսրներն ու պարսից թագաւոր-
ները իրանց անվերջ պատերազմներով ու յաճախակի
արշաւանքներով բոլորովին ուժասպառ էին արել Հա-
յաստանը։

Այդ բանին պակաս չէին նպաստում և նախարար-
ների ներքին կռիւներն ու ըմբոստացումները, որ եր-
բէք չէին դադարում։

Հայ թագաւորները, իրանց յենակէտը կորցրած
ջրի մէջ ընկած տաշեղի նման, շարունակ երերւում
էին երբեմն պարսիկների, երբեմն յոյների կողմը։

Այդ գրությունը վերջանում է նրանով, որ հայկական տառերի գիւտից 26 տարի յետոյ, Հայաստանը բաժանւում է Պարսկաստանի և Բիւզանդիայի միջև ու այդպիսով վերջ տրւում Արշակունեաց թագաւորութեանն ու Հայաստանի անկախութեանը (432 թ.)։

Այնուհետև Հայաստանի մեծ մասը պարսից տէրութեան մի նահանգն է դառնում և կառավարւում պարսից թագաւորների նշանակած յատուկ պաշտօնեաների ձեռքով, որոնք կոչւում էին *մարզպաններ*։

*Մարզպանները* լինում էին յաճախ պարսիկներ, երբեմն էլ հայ նախարարներից նրանք, որոնք աւելի հաւատարիմ էին պարսիկներին։

Այդպիսի նախարարների թիւը, սակայն, գնալով աւելի ու աւելի պակասում էր Հայաստանում։ Հայկական տառերի գիւտից յետոյ, որքան աւելի էր տարածւում յունական կրթութիւնը և քրիստոնէութիւնն էլ խոր արմատներ ձգում, այնքան էլ հայերը աւելի էին հեռանում պարսիկների ազդեցութիւնից։

Պարսիկների հովանաւորութիւնն ու բարեկամութիւնը գերադասող էին այն հայերը միայն, որոնք սահմանակից էին նրանց և կամ երկար ժամանակ նրանց հետ խառն էին ապրել։ Այդ հայերը չափազանց շատ ընտելացած լինելով պարսկական սովորութիւններին ու նիստ ու կացին, չէին կարողանում շուտով երես դարձնել իրանց դարաւոր հարևաններից։

Պարսիկները շատ լաւ էին նկատում, թէ ինչպէս հայերի համակրութիւնը աւելի ու աւելի է թեքւում յոյների կողմը։ Այդ բանին մի անգամից վերջ դընելու և Հայաստանը ընդմիշտ Պարսկաստանի ազդեցութեան տակ պահելու համար, պարսից Յազկերտ II-րդ

թագաւորը մտածում է հայերին կրօնափոխ անել և պարսկական կրօնն ընդունել տալ։

Պարսիկներն այն ժամանակ Զրադաշտի կրօնն էին դաւանում։ Նրանց գերագոյն Աստուածը համարւում էր արեգակը։ Եւ որովհետև կրակն էլ արեգակի նման իր շուրջը լոյս և ջերմութիւն էր տարածում, ուստի կրակն էլ էին պաշտում։

Պարսիկները սկզբում փորձում են մեղմ միջոցներով առաջ տանել իրանց նպատակը։ Նրանք իրանց համակրող հայ նախարարներին մեծ պատիւների են արժանացնում և բարձր պաշտօններ տալիս. մինչդեռ յոյների կողմնակիցներին աշխատում են հեռու պահել ամեն տեսակ պաշտօններից։ Բացի դրանից, նրանք հետզհետէ աւելացնում են հայ ժողովրդի ստացւող հարկերը և սկսում հարկ հաւաքել նոյնպէս եկեղեցապատկան կալուածներից, որ մինչև այդ ժամանակ մի չտեսնուած բան էր։

Այդպիսի միջոցներով պարսիկները աշխատում էին նիւթապէս այնչափ ճնշել հայերին, որ նրանք իրանց թշուառութեան պատճառը քրիստոնէութեան մէջ տեսնելով՝ հետզհետէ կրօնափոխ լինէին։

---

## Յազկերտի գրութիւնը եւ հայերի պատասխանը

Յազկերտն ու իր գլխաւոր խորհրդական Միհրներսեհը, տեսնելով, որ ձեռք առնուած մեղմ միջոցները շատ էլ չեն ազդում հայերի վրայ, որոշում են աւելի կտրուկ միջոցների դիմել։

Նրանք իրանց մոգպետի ձեռքով մի ընդարձակ թուղթ են գրում հայոց Յովսէփ կաթողիկոսին ու նախարարներին և առաջարկում կրակապաշտութիւն ընդունել։

Այդ գրութեան մէջ նրանք խիստ կերպով անարգում էին քրիստոնէութիւնը և աշխատում ապացուցել, թէ պարսկական կրօնը շատ մեծ առաւելութիւններ ունի։

Այդ գրութիւնը ստանալով, Յովսէփ կաթողիկոսը իսկոյն ժողով է հրաւիրում հայ նախարարներից ու եկեղեցականներից։ Ժողովն իր կողմից նոյնպէս մի ընդարձակ պատասխան է գրում։ Նրա մէջ մի առ մի ցոյց տալով քրիստոնէութեան ճշմարտութիւնը, հայերը յայտնում են, թէ իրանք ոչ մի կերպ չեն փոխի իրանց կրօնը և պատրաստ են մեռնել քրիստոնէութեան համար։

Հայերի յանդուգն պատասխանը սաստիկ զայրացնում է պարսից թագաւորին։ Նա հրաման է ուղարկում, որ հայոց նախարարները իսկոյն իր մօտ գնան։ Նրանք չը համարձակւելով դէմ կենալ թագաւորի կամքին՝ գնում են։ Գնալուց առաջ նախարարները խօսք են տալիս կաթողիկոսին, որ հաստատ պիտի մնան իրանց հաւատի վրայ։

Յազկերտի մօտ գնացող նախարարներից ամենագլխաւորներն էին Սիւնեաց Վասակ իշխանը, որ այդ ժամանակ Հայաստանի մարզպանն էր, սպարապետ Վարդան Մամիկոնեանը և ուրիշները։

---

## Վասակն ու Վարդանը

Վասակը մի խելօք, լուսամիտ և փառասէր մարդ էր։ Դեռ երիտասարդ հասակում, նա Մեսրոպ Մաշտոցին ամեն կերպ օգնել էր, որ Սիւնեաց երկրում դպրոցներ բանայ ու կրթութիւն տարածի։ Միևնոյն ժամանակ Վասակը շատ ընդունակ վարչական մարդ լինելով՝ ժողովրդից խիստ սիրուած էր։

Սիւնեաց երկիրը Պարսկաստանին սահմանակից լինելով, Վասակը շատ աւելի մեծ համակրութիւն էր տածում դէպի պարսիկները, քան դէպի յոյները։

Նա այնպիսի կարծիքի էր, թէ հայերին աւելի ձեռնտու է պարսիկների գերիշխանութեան տակ մնալ, քան յոյների։ Վասակը յոյս ունէր, թէ պարսիկների հաւանութեամբ կարելի կը լինի նոյնիսկ վերականգնել Հայաստանի թագաւորութիւնը։

Նա մինչև անգամ երազում էր, թէ հէնց ինքը կը դառնայ Հայաստանի թագաւորը, քանի որ Միհրընեռսեհի շատ մօտիկ բարեկամը լինելով, նա մեծ պատիւների էր արժանացել պարսից արքունիքի կողմից և այժմ էլ արդէն Հայաստանի մարզպանն էր։

Մամիկոնեան Վարդանն իր համոզումներով ու հայեացքներով Վասակի ճիշտ հակառակն էր։ Իբրև շատ ջերմեռանդ քրիստոնեայ, նա պարսիկներին չէր սիրում և իր ամբողջ համակրանքը Բիւզանդիայի կողմն էր։ Բացի դրանից՝ նա հաւատի ու կրօնի խնդիրը բոլոր քաղաքական նկատումներից բարձր էր դասում։

Իբրև շատ քաջ և պատերազմական գործերին հմուտ մարդ, Վարդանը հայոց զօրքերի սպարապետ էր կարգւած։

Հէնց իրանց հայեացքների տարբերութեան պատճառով՝ Վարդանն ու Վասակը խիստ հակառակորդներ էին միմեանց։

---

Նախարարների կրօնափոխութիւնն ու վերադարձը

Հայ նախարարներին պարսից արքունիքում ոչ միայն սովորական պատւով չեն ընդունում, այլ և Յազկերտը սպառնում է, որ եթէ իր կամքը չը կատարեն, ամենախիստ տանջանքների կենթարկւեն և Հայաստանն էլ քարուքանդ անել կը տայ։

Նախարարները երկար տատանումներից յետոյ, որոշում են, իրանց անձն ու հայրենիքը անխուսափելի պատուհասից փրկելու համար, երեսանց կրօնափոխ լինել։

Այդ իմանալով, պարսիկները սաստիկ ուրախանում են և առատ պարգևներ են տալիս նրանց։

Նախարարները Յազկերտին խոստանում են իրանց հայրենիքը վերադառնալով, հայ ժողովրդին էլ կրօնափոխ անել տալ։ Պարսից Թագաւորը նրանց մեծ թւով զօրք ու մոգեր տալով, վերադարձնում է Հայաստան։ Մոգերը պէտք է պարսկական կրօնը սովորեցնէին հայ ժողովրդին և եկեղեցիները քանդելով, նրանց տեղ կրակապաշտական մեհեաններ շինէին։ Կասկածելով, սակայն, թէ մի գուցէ նախարարները դրժեն իրանց խոստումը, Յազկերտը Վասակի երկու որդիներին իր մօտ պատանդ է պահում։

Նախարարների կրօնափոխ լինելու լուրը Հայաստան էր հասել դեռ նրանց վերադարձից առաջ։ Ամբողջ ժողովուրդն ու հոգևորականները սաստիկ յուզւել էին։ Երկիրը մի ալեկոծւած ծովի էր նմանում, երբ նախարարները մոգերի հետ Հայաստան են մըտնում։

Հէնց առաջին հայկական գիւղում, ուր նրանք մուտք են գնում, կատաղի դիմադրութեան են հանդիպում։ Ժողովուրդը, Ղևոնդ անունով մի ալեզարդ քահանայի առաջնորդութեամբ, փայտերով ու բահ ու բրիչով յարձակւում է պարսիկների վրայ (450 թ.)։

Նախարարները ժողովրդի զայրոյթից թէ վախեցած և թէ ոգևորւած, շուտով անցնում են ապըստամբների կողմը և Վարդան Մամիկոնեանի առաջնորդութեամբ դուրս քշում պարսիկներին Հայաստանից։

Պարսիկները այդ միջոցին ուրիշ պատերազմով զբաղւած լինելով, անկարող են լինում հայերից իրանց վրէժ առնել։ Հայերն էլ օգտւելով այդ հանգամանքից, առանց ժամանակ կորցնելու, պատգամաւոր-

ներ են ուղարկում բիւզանդական կայսրին, խնդրե-
լով, որ շուտով օգնութեան հասնի։

Կայսրը թէև խոստանում է զօրք ուղարկել, բայց ինքն էլ ուրիշ պատերազմների բռնուած՝ ոչինչ չէ կարողանում անել։

Միևնոյն ժամանակ հայերը դիմում են նաև Հա-
յաստանի բիւզանդական մասում գտնուող հայ իշ-
խաններին և նրանց էլ օգնութեան են կանչում, սակայն սրանք էլ չեն գալիս։

---

## Վասակի ընթացքը

Հայերին դուրսից օգնութիւն չը գալու պատճա-
ռը՝ մասամբ էլ Վասակն էր։ Նա էլ իր կողմից էր նա-
մակներ գրել բիւզանդական կայսրին և այն կողմու
ապրող հայ իշխաններին, հաւատացնելով, թէ պար-
սիկները բոլորովին չեն էլ մտածում հայերին կրօ-
նափոխ անել, այլ թէ հայերն են կամենում պարսիկ
ներից ապստամբել։

Միևնոյն ժամանակ, իբրև երկրի մարզպան, Վա
սակը սկսում է խիստ հալածանքի ենթարկել բոլո
հոգևորականներին և այն նախարարներին, որոնք
աշխատում էին ժողովրդին պարսիկների դէմ գրգռե

Նա ամեն կերպ աշխատում է մանաւանդ Վար
դան Մամիկոնեանին վնասել, որն այդ ամբողջ շարժ
ման ղեկավարն և ոգի ներշնչողն էր։

Այսպէս՝ օգուտ քաղելով այն բանից, որ Վար
դանը մի փոքրաթիւ զօրքով Աղւանից երկրի սահ
մաններումն էր գտնւում, Վասակը լուր է ուղարկում
պարսիկներին, որ շտապեն նրա վրայ յարձակւելու։

Պարսիկները յարձակւում են, բայց մեծ պար
տութիւն կրելով՝ յետ են քաշւում։

Վարդանն էլ շտապում է Հայաստան, Վասակի հալածանքների առաջն առնելու։

Իրանց կրած ամօթալի պարտութիւնից յետոյ, պարսիկները աւելի են կատաղում։ Նրանք մի ամբողջ ձմեռ պատրաստութիւններ են տեսնում հայերին մի լաւ պատժելու։

---

## Աւարայրի ճակատամարտը

Հայերը լսելով պարսիկների մեծ պատրաստութիւնը, իրանք էլ են պատրաստւում պատերազմի։ Նրանք ոչ մի տեղից օգնութիւն չը ստանալով, որոշում են իրանց սեփական ույժերով դէմ դնել պարսից ահաւոր բանակին։

Զատկի օրերը նոր էին անցել, երբ հայերն իմանում են, թէ պարսից զօրքն արդէն Հայաստանի սահմանն է մտել ու ասպատակում է երկիրը։ Սպարապետ Վարդանը իսկոյն հրաւէր է ուղարկում նախարարներին, որ շտապեն իրանց զօրքերով հաւաքուել Արտաշատ քաղաքը։ Շուտով հաւաքւում են 66,000 հոգի։

Վարդանն Արտաշատում զօրահանդէս է կատարում և զօրքի բոլոր պակասութիւնները լրացնելուց յետոյ, շտապում է պարսիկներին ընդառաջ գնալ։ Պարսից զօրքն արդէն հասել էր Արտազ գաւառը։ Հայկական զօրքն էլ բանակ է դնում նրանց հանդէպ՝ Աւարայր դաշտում, Տղմուտ գետի ափին։

Հայոց բանակումն էին գտնւում Յովսէփ կաթողիկոսը, Ղևոնդ քահանան և ուրիշ շատ եկեղեցականներ։ Պատերազմից առաջ Ղևոնդ երէցն ու Վարդանը կրակոտ և ոգևորիչ ճառեր են արտասանում քաջալերելով զօրքին այդ պատերազմի նշանակու-

թիւնը։ Լուսադէմին պատարագ է մատուցւում. ամենքն էլ հաղորդւում են և խոստովանում մինչև վերջին շունչը կռւել իրանց հաւատի համար։

Պարսիկները այդ պատերազմում փղեր էլ էին բերել։ Նրանք դուրս են բերում դրանց ու կանգնեցնում դաշտի երկայնութեամբ, ամեն մի փղի աջ ու ձախ կողմը 3000 զինուոր դնելով։

Վարդանն իր զօրքը չորս մասի է բաժանում և ամեն մի մասը մի նախարարի հրամանատարութեան յանձնում։ Չորրորդ մասն էլ Վարդանն իր հրամանատարութեան տակ է առնում և կանգնում պարսիկ բանակի աջ թևի դիմաց։

Պատերազմը սկսւում է նետաձգութեամբ՝ գետի երկու կողմից։ Հայերը Վարդանի խրախուսանքով անցնում են գետը և ջարդում պարսից բանակի աջ թևը։ Պարսիկների մէջ շփոթութիւն է ընկնում, սակայն շուտով վրայ է հասնում նրանց պահեստի զօրքը և պատերազմը նորոգւում է։

Վարդանն իր ընկերներով շրջապատւում է պարսիկներից և քաջաբար երկար կռւելուց յետոյ, բոլորն էլ ընկնում են պատերազմի դաշտում։

Դրանով էլ վերջանում է պատերազմը, որ տեւել էր ամբողջ օրը (451 թ. յունիսի 2.)։

Այս պատերազմում հայերի կողմից ընկածների ամբողջ թիւը 1036 հոգի էր։ Դրանց մէջ, բացի Վարդան Մամիկոնեանից, կային և ուրիշ շատ նշանաւոր նախարարներ։

Այդ պատերազմի և նրա մէջ ընկած հերոսների յիշատակը մինչև այսօր էլ տօնւում է բարեկենդանի վերջին հինգշաբթի օրը։

---

## Պատերազմի անմիջական հետեւանքները

Աւարայրի ճակատամարտում յաղթելուց յետոյ, հայերը զինաթափ չեն լինում։ Նրանք քաշւում են իրանց անառիկ բերդերն ու ամրոցները և այնտեղից յարձակումներ գործելով՝ անհագին վնասներ են հասցնում պարսիկներին։

Այս պատերազմից յետոյ, պարսից արքունիքում համոզւում են, որ անհնարին է հայերին բռնութեամբ կրօնափոխ անել։ Յազկերտը յետ է կանչում իր զօրքը Հայաստանից և Վասակի տեղ նոր մարզպան նշանակում։ Նա կարգադրում է, որ հայերին թոյլ տան ազատ կերպով դաւանել իրանց կրօնը։ Միևնոյն ժամանակ նա վերացնում է այն բոլոր ծանր հարկերը, որ սովորականից դուրս՝ դրել էին հայ ժողովրդի վրայ։

Յետոյ Յազկերտն իր մօտ է բերել տալիս Յովսէփ կաթողիկոսին, Ղեւոնդ երէցին, Սիւնեաց Վասակին և ուրիշ շատ նախարարների ու եկեղեցականներին, որոնց դէմ դատ է սկսւում պարսից արքունիքում։

Դատավարութեան ժամանակ շատ ամբաստանութիւններ ու չարախօսութիւններ են լինում նաև Վասակի դէմ. զայրացած Յազկերտը զրկում է նրան բոլոր պատիւներից և բանտարկում։ Նոյնպէս բանտարկւում և խիստ տանջանքների են ենթարկւում Յովսէփ կաթողիկոսին, Ղեւոնդ քահանային և միւս բոլոր հայ եկեղեցականներին ու նախարարներին։ Նրանցից շատերը, որոնց թւում կաթողիկոսն ու Ղեւոնդ քահանան, չըկարողանալով տանջանքներին դիմանալ, մեռնում են բանտում, իսկ մնացածներն էլ, տասներկու տարւայ բանտարկութիւնից յետոյ միայն, ազատ են արձակւում և հայրենիք վերադառնում

(463 թ.)։ Վասակն էլ երկար հիվանդութիւնից յե-
տոյ բանտի մէջ մեռնում է։

---

### Երկրորդ կրօնական պատերազմը

Առաջին կրօնական պատերազմից յետոյ, պար-
սիկները ընդմիշտ չեն հրաժարւում հայերին կրօնա
փոխ անելու մտքից։ Շատ ժամանակ չանցած, նրան
նորից մտածում են մեղմ միջոցներով առաջ տան
իրանց նպատակը։ Մի կողմից նրանք թոյլ են տա
լիս հայերին ազատ կերպով դաւանել իրանց կրօն
բայց միւս կողմից բոլոր արժանաւոր, ազնիւ
բարեպաշտ մարդկանց հեռացնում են ամեն կարգ
պաշտօններից, զրկում են պատիւներից և անարգան
ների ենթարկում։ Բարձր պաշտօնների ու պատի
ների արժանանում են այն հայերը միայն, որոն
համակերպւում ու գործիք են դառնում պարսի
արքունիքին։

Այդ եղանակով պարսիկները այս անգամ բաւ
կանին յաջողութիւն են ունենում, մօտ 30 տարւ
ընթացքում, շատ հայեր՝ թէ նախարարներից և 
ժողովրդից՝ թողնում են քրիստոնէութիւնը և պա
սից կրօնն ընդունում։ Հայերը սակայն քիչ յետ
նորից են գլուխ բարձրացնում պարսիկների դէմ 
սկսում մի շարք պատերազմներ, որ տեւում են 
քանի տարի։

Այս երկրորդ կրօնական պատերազմների ժամ
նակ, հայկական զօրքերի գլխաւոր հրամանատարն 
նրանց ոգի ներշնչողն էր Վահան Մամիկոնեանը, ո
Վարդան Մամիկոնեանի եղբօրորդին էր։

Վահանն էլ Վարդանի պէս շատ քաջ և անվ
մարդ էր։ Նա շատ ծառայութիւններ էր մատուց

պարսիկներին և նրանց սիրելին դառնել։ Արքունիքի ատարեալ վստահութիւնը գրաւելու համար, նա մինչև իսկ գնացել էր պարսից մայրաքաղաքը՝ Տիզբոն այնտեղ հաւատափոխ էր եղել, բայց շուտով զղջացել էր և առիթ փնտրում իր յանցանքը քաւելու։

Եւ այդ առիթը շատ շուտով է ներկայանում։ աստանում, որը նոյնպէս պարսիկների գերիշխաթեան տակ էր՝ ապստամբութիւն է ծագում։ Հանմանքից օգտւելով, հայ նախարարներն էլ խորհուրդ կազմում և քաջ Վահանին իրանց սպարապետ ընտրելով, ապստամբում են (481 թ.) և պատերազմ յտարարում պարսիկներին։

Այս պատերազմների մէջ Վահանն իր փոքրաթիւ քով շատ քաջագործութիւններ է կատարում և ագին վնասներ հասցնում թշնամուն։ Պարսիկները րջապէս ստիպւում են հաշտութիւն կնքել Վահանի ու։ Վահանը հետևեալ երեք պայմաններն է առարկում. 1. Քրիստոնէութիւնը պէտք է օրինաւոր և ատ կրօն ճանաչւի Հայաստանում և ոչ մի հայի պիտի ստիպեն կրօնափոխ լինել։ 2. Արժանաւոր ու արժան մարդկանց մէջ տարբերութիւն պիտի դրւի. արժան ու անպիտան մարդկանց չըպիտի պաշտօնր ու պատիւներ տրւեն, իսկ արժանաւորները հածւեն։ 3. Թագաւորը չըպէտք է հաւատ ընծայի են կարգի չարամիտ մարդկանց ամբաստանութիւնրին, այլ ամեն ամբաստանութիւն պէտք է ինքն ձամբ քննի և այնպէս դատաստան անի։

Պարսիկներն ուրախութեամբ ընդունում են այս որ պայմանները։ Նրանք այլևս հրաժարւում են երին կրօնափոխ անելու մտքից և բաւականանում նրանցից վերցւած սովորական հարկով (484 թ.)։

Այնուհետև Վահան Մամիկոնեանը մի քանի խո-

*շոր ծառայութիւններ է մատուցանում պարսից արքու*
*նիքին, որոնց համար թագաւորի սիրելին է դառնու*
*և նշանակւում Հայաստանի մարզպան։*

*Կրօնական պատերազմներից յետոյ, Հայաստան*
*պարսից իշխանութեան տակ է մնում դեռ էլի մօ*
*մէկ ու կէս դար։*

*Բայց ահա եօթներորդ դարում, հեղեղի նմա*
*իրանց բնիկ հայրենիքից դուրս են թափւում արա*
*ները և արշաւում օտար երկիրներ գրաւելու։ Նրա*
*նւաճում են ամբողջ Պարսկաստանն ու նրա տէր*
*պետութեան տակ եղած բոլոր երկիրները, որո*
*թւում նաև Հայաստանը։*

---

## ԱՐԱԲՆԵՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

---

### Արաբները մահմեդականութիւնից առաջ

*Մինչև եօթերորդ դարի սկզբները արաբները ապրու*
*էին Արաբիայում։ Նրանք զատ-զատ ցեղերի բաժանւա*
*բոլորովին նահապետական կեանք էին վարում։ Ամեն*
*ցեղ ունէր իր ցեղապետը, որը ցեղին թէ պատերազմնե*
*էր առաջնորդում, թէ նրա դատաւորն էր և թէ կրօնապետ*

*Այդ ցեղերից մի քանիսը դեռ շատ հին ժամանակնե*
*րից նստակեաց կեանք էին վարում և ունէին շատ հարուս*
*ու գեղեցիկ քաղաքներ, իսկ շատ ցեղեր էլ թափառակա*
*կեանք էին վարում։*

*Նստակեաց կեանք վարողները նշանաւոր էին իր*
*վաճառականութեամբ, իսկ թափառաշրջիկները պարապւ*
*էին մեծ մասամբ աւազակութեամբ։*

*Իրանց երկրի դիրքի շնորհով, արաբները վաճառակ*
*նութեան միջնորդ էին հանդիսանում հարուստ Հնդկաստա*
*նի, Փոքր Ասիայի և Եգիպտոսի միջև։ Նրանց ուղտերի կ*
*րաւանները էին տեղափոխում այդ երկիրների բոլոր*

պրանքները, որոնք յաճախ ճանապարհին կողոպտում էին նոյն արաբների աւազակային խմբերի կողմից։

Արաբների այդ անջատ ցեղերը ոչ մի ընդհանուր կապ չունէին միմեանց մէջ։ Նրանցից ամեն մէկն իր առանձին բարբառն էր խօսում և իր յատուկ կրօնը դաւանում։ Թէև բոլոր արաբներն էլ բնապաշտներ էին, այսինքն՝ նրանք աստուածներ էին համարում արեգակը, լուսինը, աստղերը և բնութեան մէջ եղած զանազան երևոյթները, բայց և այնպէս ամեն մի ցեղ իր առանձին կրօնական հասկացողութիւնները, սովորութիւններն ու իր յատուկ աստուածներն ունէր։



Նկար 12. Արաբ

Միակ բանը, որ այդ ցեղերին միմեանց հետ կապում էր, դա Մեքքէի մօտ գտնուած ուխտատեղին էր, ուր Արաբիայի բոլոր կողմերից, տարին միանգամ, բազմաթիւ արաբներ ուխտի էին գնում և հանդիսաւոր զոհ մատուցա-

նում։ Այդ ուխտատեղում մի սև քարի կտոր կար, որի մասին արաբները ասում էին, թէ երկնքից է վայր ընկել, ուստի նրա սուրբ լինելը ամենքն էլ ընդունում էին։ Այդ քարը մինչև օրս էլ կայ Մեքքէում, ուր ուխտ են գնում մահմեդականները աշխարհի բոլոր ծայրերից։

Այդպէս իրարու հետ ոչ մի ընդհանուր կապ չունենալով, արաբական ցեղերը միմեանց խիստ թշնամաբար էին վերաբերւում և շարունակ ու անվերջ պատերազմներ էին մղում։

Այդ արիւնահեղ պատերազմները տարւայ մէջ միայն մէկ ամիս էին դադար առնում։ Դա այն ամիսն էր (Ռամազան), երբ արաբները պէտք է ուխտ գնային Մեքքէ։ Այդ ամսի ընթացքում ոչ միայն պատերազմներ չէին լինում, այլ և աւազակութիւններն անգամ դադարում էին, որպէսզի ուխտաւորները անհանգիստ չըլինէին։

---

## Մ ու հ ա մ մ ե դ

Եօթներորդ դարի սկիզբներում, Մեքքէ քաղաքից Մուհամմեդ անունով մի արաբ, տեսնելով իր ցեղակիցների աւազակաբարոյ բնաւորութիւնը, շարունակ միմեանց կոտորելը, արբեցող ու անառակ կեանքը, մտածում է մի հնար գտնել նրանց ուղղելու և լաւ կեանքի վարժեցնելու։

Մուհամմեդը խելօք և զգայուն մարդ էր։ Իբրև ուղտապան և վաճառական, նա շատ երկիրներ էր ման եկել և այն համոզման հասել, թէ արաբները կարող են ուղիղ ճանապարհի գալ, եթէ մէկ և ընդհանուր կրօն ունենան։

Այդպիսի համոզման գալով, Մուհամմեդը սկսում մօտիկից ուսումնասիրել քրիստոնէական, մովսիսական այլ կրօնները։ Անգրագէտ լինելով, նա բերանացի է տեղեկութիւններ հաւաքում այդ կրօնների մասին այն բոլոր երկիրներում, ուր ինքը իբրև ուղտապան այցելում էր։

Իր ցեղակիցների համար մի նոր կրօն յօրինելու մասին Մուհամմեդը այնչափ շատ և խորին է մտածում, որ սկսում է կասկածել, թէ գուցէ ինքն էլ Մովսէսի ու Յիսուսի նման, Աստուծու ուղարկած մի մարգարէ է։

Այդ կասկածը հետզհետէ հիւանդոտ Մուհամմեդի մէջ կատարեալ հաւատ է դառնում, որից յետոյ նա հրապարակ է գալիս և սկսում ժողովրդին իր նոր կրօնը քարոզել։

Սկզբում արաբները նրան ծաղրում և խելագար են անուանում, բայց յետոյ նրա հետևողների թիւը հետզհետէ բազմանում է և Մուհամմեդին ճանաչում են Աստուծու Մարգարէ։

Մուհամմեդի քարոզած կրօնը կոչւում է Մահմեդականութիւն կամ Իսլամ։

---

## Իսլամը եւ նրա տարածւելը

Իսլամը քարոզում է միաստուածութեան գաղափարը։ Նա թէ Մովսէսին և թէ Յիսուսին Աստուծու մարգարէներ է ընդունում, բայց դրանցից աւելի բարձր մարգարէ՝ համարում է Մուհամմեդին։

Բացի կրօնական դաւանանքից, Իսլամը սովորեցնում է և շատ ուրիշ կանոններ և օրէնքներ, որոնց համաձայն Մուհամմեդի հետևողները պիտի կարգաւորեն իրանց առօրեայ ընտանեկան ու հասարակական կեանքը։

Իսլամի բոլոր ուսմունքները, որ Մուհամմեդի քարոզներն են համարւում, հաւաքւել ու տպագրւել են մի գրքի մէջ, որ կոչւում է Ղուրան։

Մուհամմեդը տեսնելով, որ իր քարոզած կրօնը արագութեամբ չի տարածւում, պատւիրում է իր հետևողներին՝ սրի ոյժով տարածել Իսլամը։ Դրա շնորհով, Մուհամմեդի մահից շատ ժամանակ չանցած, Իսլամը արաբական ցեղերի միակ կրօնն է դառնում, Ղուրանի լեզուն՝ բոլոր ցեղերի միակ ազգային լեզուն, իսկ Մուհամմեդի յաջորդներն էլ նրանց թէ կրօնական և թէ քաղաքական պետն են դառնում։ Այս վերջինները կոչւում էին Խալիֆներ։

Այսպէս Իսլամի և մի ընդհանուր լեզւի միջոցով արաբական անջատ ցեղերը միանում և մի ընդհանուր տէրութիւն են կազմում։ Յետոյ նրանք խալիֆների առաջնորդութեամբ, դուրս են գալիս իրանց անապատ երկրի սահմաններից և գնում աւելի բարգաւաճ երկիրներ գրաւելու և օտար ազգերի մէջ Իսլամը սրի ոյժով տարածելու։

## Արաբական Խալիֆաթը

Արաբները կարճ ժամանակի ընթացքում, նւաճում են Փոքր Ասիայի այն բոլոր երկիրները, որ մինչև այդ ժամանակ պարսից և բիւզանդական կայսրութեան տիրապետութեան տակ էին գտնւում։

636 թւականին նրանք մտնում են Պարսկաստան։ Մի քանի կատաղի կռիւներից յետոյ, պարսիկները յաղթւում անձնատուր են լինում և ընդունում Իսլամը։

Պարսից Սասանեան ցեղի վերջին Յազկերտ երրորդ թագաւորը փախչում, գնում է Ասիայի խորքերը։ Այդպիսով էլ վերջ է գտնում պարսից վաղեմի հզօր թագաւորութիւնը և Պարսկաստանը արաբական ընդարձակ և հզօր խալիֆաթի մի նահանգն է դառնում։

Արաբները Պարսկաստանի սահմաններից էլ աւելի հեռուն են գնում՝ թէ դէպի արևելք և թէ դէպի արևմուտք և մի շատ ընդարձակ տէրութիւն հիմնում։ Արաբական տէրութիւնը կոչւում էր Խալիֆաթ։

Իրանց նւաճումները չափազանց ընդարձակելով, արաբական խալիֆները իրանց մայրաքաղաքը Մեքքէից տեղափոխում են նախ Դամասկոս և ապա Բաղդատ քաղաքները։ Այդպիսով նրանք աւելի մօտենում են իրանց նւաճած երկիրներին և աւելի հեշտ կերպով նրանց կառավարում։

Տիրապետած երկիրներից ձեռք բերւած անհագին հարստութիւնների շնորհով, այդ երկու քաղաքներն էլ կարճ ժամանակի մէջ, վաճառականութեան ու լուսաւորութեան մի-մի ծաղկած կենտրոններ են դառնում։

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԱԲՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՏԱԿ

640 թւականին արաբները մտնում են Հայաստան։ Հայերն էլ են փորձում դիմադրութիւն ցոյց տալ, բայց մեծ պարտութիւն են կրում։ Արաբները շատ անգթութիւններ կատարելով, 35 հազար մարդ գերի են տանում ու տիրում Հայաստանին։

Նրանք էլ պարսիկների նման անկարող են լինում հայերի մէջ իրանց կրօնը տարածել։ Արաբները ստանկանանում են նրանով միայն, որ հայերը հնազանդ մնան Խալիֆի իշխանութեանը և կանոնաւորապէս հարկ վճարեն։

Այդ ժամանակից էլ Հայաստանը սկսում է կառավարուել խալիֆների նշանակած յատուկ պաշտօնեաների միջոցով, որոնք կոչւում էին Ոստիկան կամ Ամիրա։

Հայաստանը Արաբական տիրապետութեան տակ ընկնելուց յետոյ, դարձեալ կռւախնձոր է մնում երկու հզօր տէրութիւնների միջև։

Ինչպէս որ առաջ յոյներն ու պարսիկներն էին յարունակ միմեանց դէմ պատերազմում, Հայաստանին տիրապետելու համար, այժմ էլ նոյն յոյներն ու արաբներն են կռիւներ մղում այդ նպատակով։ Հայերը, կամենալով իրանց վրայ ծանրացող լուծը թեթևացնել, այս անգամ էլ մերթ յոյների և մերթ արաբների օգնութեանն են դիմում։

Հայաստանը մօտ 200 տարի ոսկալի արհաւիրքների ասպարէզ է դառնում։

Արաբական սոսկալի արշաւանքներից, Հայաստանի տարեգրութեան մէջ ամենանշանաւորն է կաշմ ոստիկանի առաջնորդութեամբ տեղի ունեցածը (703 թէ 704 թ.)։

Այդ կատաղի արաբը, ուզելով հայերին մի լաւ դաս տալ, որպէսզի նրանք այլ ևս յոյների կողմը չանցնեն, հայ իշխաններին խաբէութեամբ կանչում է Նախիջևան և այնտեղ եկեղեցու մէջ բոլորին էլ այրում է։ Յետոյ ասպատակներ է սփռում Հայաստանի զանազան կողմերը և ամեն տեղ կոտորած ու հրդեհ տարածում։

Այդ Թւականը մեր պատմութեան մէջ յայտնի է Հրդեհի տարի անունով։

---

## Հայկական նոր իշխանութիւնների ելեւան զայը

Արաբական տէրութիւնը չափազանց ընդարձակւելով, IX-րդ դարում սկսում է հետզհետէ Թուլանալ և դէպի անկում գնալ։ Խալիֆների նւաճած ընդարձակ երկիրներն ու բազմազան ազգերը սկսում են միմեանց յետևից բաժան-բաժան լինել և զատ-զատ տէրութիւններ կազմել։

Արաբների Թուլութիւնից ուզում են օգտւել նաև հայերը։ Հայ իշխանները, Սևադա անունով պարսիկ իշխանի հետ խօսք մէկ անելով ապստամբում են արաբների դէմ։ Սակայն ապստամբութիւնը չէ աջողւում. արաբները յաղթող են հանդիսանում և նոր Թշւառութիւններ առաջացնում Հայաստանում։

Հայ իշխանները տեսնելով, որ անկարող են ապստամբութեամբ ազատւել արաբներից, փոխում են իրանց ընթացքը։ Նրանք այս անգամ աշխատում են հնազանդութեամբ և Թանկագին պարգևներով սիրելի դառնալ խալիֆներին ու հէնց նրանց հաւանութեամբ զօրեղացնել իրանց իշխանութիւնը։

Եւ այդ բանը նրանց յաջողւում է։ IX և X-րդ դարում Հայաստանի զանազան մասերում մի քանի հայկական անկախ իշխանութիւններ ու նոյն իսկ Թագաւորութիւններ են ստեղծւում, որոնք երկար ժամանակ խալիֆների հովանաւորութիւնն էին վայելում։

---

# IV

# ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

— —

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ

Արաբական տիրապետութեան օրով առեղծուած հայկական իշխանութիւններից ամենազօրաւորը Բագրատունեաց թագաւորութիւնն էր։

Բագրատունի նախարարների տոհմը շատ հին ծագումն ունէր։ Նրանք Արշակունեաց թագաւորութեան օրով էլ շատ բարձր դիրք էին վայելում և որդոց որդի թագադիր ասպետի պաշտօն ունէին։

Բագրատունիք բոլոր հայ նախարարներից ամենահարուստն էին թէ իրանց կալուածներով և թէ դրամով։ Արաբական տիրապետութեան ժամանակ նրանց կալուածները այնչափ ընդարձակուել էին, որ համարձակ կարող էին մի ընդարձակ տէրութիւն կազմել։ Նրանք կարողանում էին իրանց հպատակ ժողովրդից մօտ 40,000 զօրք հաւաքել։

Արաբների դէմ ապստամբութեան անյաջող փորձերի ժամանակ, Բագրատունի Սմբատ իշխանը, որ սպարապետի պաշտօն ունէր, արաբների կողմն էր անցել և շատ մատնութիւններ կատարել։ Սակայն արաբները Սմբատին էլ չխնայելով, ուրիշ շատ հայ իշխանների հետ բռնել ու Բաղդատ էին տարել։

Խալիֆը նրանց բոլորին էլ բանտարկել էր, խոս-տանալով ազատ թողնել այն դէպքում միայն, եթէ մահմեդականութիւն կընդունեն։ Ազգին դաւաճանե... Սմբատը սակայն չէր դաւաճանել իր կրօնին և մե-ռել էր բանտում՝ տանջանքների տակ։ Մահից յետո... նա կոչւել է Սմբատ Խոստովանող։

---

## Աշոտ I Բագրատունի Թագաւոր

Սմբատ Խոստովանողի Աշոտ որդին չէ յուսա-հատւում իր հօր եղեռնական մահից։ Նա շարունա-կում է մեծ հաւատարմութիւն ցոյց տալ Խալիֆի... և առատ պարգևներով նրա սիրելին է դառնում։

Աշոտի միջամտութեամբ Բաղդադի բանտու... կենդանի մնացած հայ իշխաններն ազատ են արձակւու... ու հայրենիք վերադառնում։ Այդպիսով Աշոտը հա... իշխաններին ու ազնուականներին էլ սիրելի է դառնում։

Աշոտը ժողովրդի ու երկրի բարեկարգութեա... մասին՝ մեծ հոգատարութիւն է ցոյց տալիս։ Արա-... բական արշաւանքներից քարուքանդ եղած գիւղեր... ու քաղաքները նորոգելով, նա ամեն կերպ աջակցու... է ժողովրդի քայքայւած վիճակը բարելաւելու։

Իր քաղցր վարմունքով ու հաւատարմութիւնո... Աշոտը հետզհետէ այն աստիճան սիրելի է դառնու... Բաղդադի Խալիֆին, որ սա «Իշխանաց Իշխանի» պատւաւոր տիտղոսն է ուղարկում նրան (859 թ.)։

Աշոտն իր դիրքը էլ աւելի ամրացնելու նպատա-կով, խնամիական կապեր է հաստատում երկու գլ-խաւոր հայ նախարարների հետ և իր երկու աղջիկ-ներից մէկը՝ տալիս է կնութեան Սիւնեաց իշխանին, իսկ միւսը՝ Արծրունեաց իշխանին։

Աշոտի «Իշխանաց Իշխան» դառնալուց շատ ժա-
մանակ չանցած, պարսիկները ապստամբում են արաբ-
ների դէմ։ Որպէսզի հայերին թոյլ չըտան Խալիֆին
նելու, նրանք բազմաթիւ զօրքով մտնում են Հա-
տան։ Հայկական զօրքերը Երասխի ափին մի
ակատի ջարդ են տալիս պարսիկներին և փախցնում։
Այս փառաւոր առիթից օգտւելով, հայ իշխան-
ներն ու կաթողիկոսը, Դւինի Ոստիկանի միջոցով,
դրում են Խալիֆին, որ Աշոտին թագաւորեցնէ Հա-
տանի վրայ։

Խալիֆը մտածելով, որ եթէ հայերի ցանկու-
թիւնը չըկատարի, նրանք կարող են միանալ ապըս-
տամբ պարսիկների հետ, համաձայնում է։ Նա չէր
մերժում հայերի խնդիրը մանաւանդ նրա համար,
որ նրանք խոստանում էին շարունակել հաւատարիմ
հարկատու մնալ Բաղդադին։

Շատ ժամանակ չանցած, Խալիֆը թագաւորական
ուր և զգեստներ է ուղարկում Աշոտին, իսկ Գէորգ
թողիկոսն էլ խուռն բազմութեան ներկայութեամբ
ան թագաւոր է օծում (885 թ.)։

Երբ Բիւզանդիայում իմանում են Աշոտի թագա-
ւոր դառնալը, կայսրը շտապում է իր կողմից էլ թագ
արքայավայել ընծաներ ուղարկել հայոց նոր թա-
գաւորին։ Դրանով յոյները մտածում են նոյնպէս
յերի սիրտը շահած լինել, որպէսզի նրանք մշտա-
պէս արաբների կողմնակից չըմնան։

Թագաւոր դառնալուց յետոյ, Աշոտն իրան մայ-
րաքաղաք է ընտրում Ախուրեան գետի ափին գտըն-
վող Բագարան քաղաքը և վերականգնում Արշակու-
նեաց թագաւորութեան ժամանակ եղած բոլոր պա-
շտական ու վարչական կարգերը։ Նա անձամբ շըր-
ջում է իր երկրի զանազան կողմերը և ամեն տեղ

կատարեալ խաղաղութիւն հաստատելուց յետոյ, գո
նում է Կոստանդնուպոլիս՝ յունաց կայսրին տես
թեան։

Կայսեր հետ քաղաքական և առևտրական դա
կապելով, Աշոտը վերադառնում է Հայաստան, ս
կայն ճանապարհին հիւանդանում ու մեռնում է Շի
րակ գաւառում (890 թ.)։

Հայաստանը Աշոտ I-ի յաջորդների օրով

Աշոտի մահից յետոյ Հայաստանը երկար ժամ
նակ նորից կորցնում է ներքին խաղաղութիւնը։ Գ
հակալութեան համար առաջ եկած կռիւները, նախ
րարների ըմբոստացումները և արտաքին թշնամիներ
յարձակումները՝ քայքայում և ուժասպառ են անու
հայ ժողովրդին։

Արշակունեաց թագաւորութեան օրով, Հայա
տանում գահակալութիւնը ժառանգական էր, այսինք
հօր մահից յետոյ թագաւորում էր որդին։ Այդպէ
էին և բոլոր հարևան երկիրները։ Արաբական խալ
ֆայութիւնը սակայն այդ ձևով չէր։ Այնտեղ մեռն
Խալիֆի գահը ժառանգում էր ոչ թէ որդին, ա
տոհմի աւագ անդամը։

Բագրատունիներն էլ ժառանգականութեան այ
նոր ձևն են ընդունում և այդ պատճառով անհաշ
պառակտումներ են սկսում Բագրատունեաց թագա
ւորական տոհմի մէջ։

Այդ բոլոր պառակտումներից օգուտ են քաղու
ոչ միայն Հայաստանի արտաքին թշնամիները, ա
նաև հայ նախարարները։ Նրանք ըմբոստանալով ի
րանց թագաւորի դէմ, ձգտում են առանձին և ան
կախ թագաւորութիւններ հաստատել։

Այսպէս Արծրունիք, Աշոտի յաջորդների դէմ պատամբելով, Վասպուրականում մի անկախ թագաւորութիւն են հիմնում (908 թ.)։ Աւելի ուշ նոյնպէս անկախ հայ փոքրիկ թագաւորութիւններ են հիմնւում Վանանդ գաւառում (968 թ.), Սիւնեաց աշխարհում (970 թ.) և Լոռում (988 թ.)։

Արաբները ոչ միայն չեն արգելում հայ նախարարներին այդպիսի առանձին տէրութիւններ հաստատելու, այլ և ամեն կերպ նպաստում են դրանց։ Այդպիսով նրանք խանգարում էին Բագրատունեաց թագաւորութեան զօրեղանալը և հայոց ոյժերը բաժան-բաժան անելով, անզօր դարձնում լուրջ դիմադրութիւն ցոյց տալու համար։

Բագրատունիների զօրեղանալը ցանկալի չէր արաբներին նաև նրա համար, որ այս հայ թագաւորները էլ արշակունիների նման, միշտ հակւած էին դէպի յոյները, ուստի կարող էին Բիւզանդիայի հետ դաշնակցելով, մեծ պատուհաս լինել Խալիֆաթի գլխին։

Դրա համար էլ արաբները ամեն անգամ, հէնց նկատում էին Բագրատունի թագաւորների մերձեցումը յոյների հետ, իսկոյն ապստամբում էին Հայաստանը և ահագին աւերումն առաջացնում։

---

## Աշոտ III Ողորմած

Աշոտի յաջորդներն երկար ջանքերից յետոյ, երբ վերջապէս համոզւում են, որ անկարող են հայ նախարարների ըմբոստութիւնները զսպել ու մի զօրեղ միակական տէրութիւն ստեղծել, հրաժարւում են այդ մտքից։ Նրանք բաւականանում են իրանց տոհմական

երկիրներով և ամբողջապէս նւիրւում նրանց ծաղ-
կեցնելու և բարեկարգելու գործին։

Եղբայրասպան պատերազմներից քայքայւած հա-
ժողովուրդը այդ ժամանակից շունչ է առնում
սկսում խաղաղ աշխատանքներով զբաղւել։

Այդ խաղաղ աշխատանքի շնորհով, Բագրատու-
նեաց տէրութիւնը խիստ բարգաւաճում է, երկր-
գործութիւնը ծաղկում և առևտուրն ու վաճառակա-
նութիւնը զարգանում են։

Այդ շրջանի թագաւորներից մեծ ուշադրութեա-
արժանի է մանաւանդ Աշոտ III-րդ թագաւորը, որ
իր հեզ բնաւորութեան և կատարած բազմաթիւ բա-
րեգործութիւնների պատճառով, մեր պատմութեան
մէջ յայտնի է Աշոտ Ողորմած անունով։

Աշոտ III-րդի հայրը՝ Աբաս թագաւորը, որ նոյն-
պէս շատ խաղաղասէր ու շինարար մարդ էր, մեռ-
նելուց յետոյ երկու որդի էր թողել—Աշոտ և Մու-
շեղ անունով։

Աբասին յաջորդել էր մեծ որդին Աշոտը, բայ
Մուշեղն ապստամբում է իր եղբօրը դէմ՝ ուզել
ժառանգել հօր գահը։ Երբ Մուշեղին այդ բանը չ
յաջողւում, նա իր կուսակիցների օգնութեամբ մ
առանձին թագաւորութիւն է հիմնում Վանանդ գա-
ւառում, մայրաքաղաք ընտրելով Կարսը (968 թ.)։

Ազգակործան կռիւները երկար չը քորքոքել
համար, Աշոտը ճանաչում է իր եղբօր հիմնած նո
թագաւորութիւնը և լաւ յարաբերութիւններ հաստա-
տում նրա հետ։

Աշոտն իրան մայրաքաղաք է ընտրում Անի քա-
ղաքը և իր ամբողջ ուշադրութիւնը դարձնում է
փոքրիկ տէրութիւնը շէնացնելու ու պայծառացնել
վրայ։

Նա իր հօր՝ Արաս Թագաւորի օրինակին հետե-ելով, շատ կործանուած քաղաքներ ու գիւղեր վերանորոգել է տալիս, բազմաթիւ վանքեր ու եկեղեցիներ է կառուցանում և բարեգործական հաստատու-



Նկար 13. Ղօշավանք

թիւններ հիմնում, ինչպէս օրինակ՝ որբանոցներ, աղքատանոցներ, հիւանդանոցներ, անկելանոցներ։ Ու այդ բոլոր բարեգործական հաստատութիւնները Աշոտն

ապահովեցնում է յատուկ նշանակւած եկամուտներ

Պատմում են, որ Աշոտ Ողորմածը երբէք սեղ
չէր նստում՝ առանց մի քանի աղքատ ու խեղճ հի
ների։

Շինարարական և բարեգործական գործեր
զբաղւելիս, Աշոտ Ողորմածը միևնոյն ժամանակ մ
հոգ է տանում իր երկրի պաշտպանութեան մասի
Այսպէս՝ իր տէրութեան մէջ եղած բերդերի ու ա
րոցների թիւը նա աւելացնում է և մի պատկա
մշտական բանակ կազմում՝ հետևակ ու ձիաւոր
քերից։

Աշոտ Ողորմածի թագաւորութեան օրով
տուն անունով արաբ զօրապետը ապստամբ
Խալիֆի դէմ և Միջագետքն ու Ատրպատականը
ու վրայ անելուց յետոյ, յարձակւում է Հայաստան
վրայ։

Աշոտն իր զօրքով մի լաւ ջարդ է տալիս Հ
տունին։ Սա բռնւում է և Աշոտի հրամանով գլխ
ւում։

Այս դէպքը Խալիֆին մեծ գոհունակութիւն
պատճառում։ Նա Աշոտին շատ թանկագին ընծա
է ուղարկում և Շահի-Արմէն տիտղոսի հետ՝ թագ
տրում նրան՝ գլխին արաբական ձևով չալմա փաթթ
Աշոտ Ողորմածը մեռնում է 26 տարի թագաւո
րելուց յետոյ (977 թ.)։

---

## Անի քաղաքի շինութիւնը

Բագրատունեաց խաղաղասէր ու շինարար թագաւորնե
ամենափայլուն գործերից մէկն էլ եղել է Անի քաղաքի շ
նութիւնը։

Այդ քաղաքը այժմ բոլորովին աւերակ ու անմարդ
բնակ է, բայց նրա աւերակների փառաւոր մնացորդները հ

ցմունք են պատճառում բոլոր այցելուներին։ Այդ ծա-
րդներից դժվար չէ հասկանալ, թե որպիսի մեծ, հարուստ,
ղեցիկ ու անառիկ քաղաք է եղել Անին և թե ինչպիսի
եղ ու փարթամ կյանք են վարել այնտեղ մի ժամանակ
ագրատունյաց թագավորներն ու հայ իշխանները։

Ութերորդ դարում Անին մի փոքրիկ ավան է եղել,
իրակ գավառում, Ախուրյան գետի ափին։

Բագրատունյաց թագավորության հիմնադրի պապը,
նելով այդ գավառը Կամսարականներից, ընտանիքով գնում



Նկար 14. Բագրատունիների Բարձրագույն Խորհրդարանը

ակվում է Անիում։ Դրանից հետո Անին հետզհետե շե-
նում և ընդարձակվում է։

Առաջին անգամ Անին մայրաքաղաք է դառնում Աշոտ
ղորմածի օրով, որից հետո նա սկսում է արագությամբ
ծանալ, բազմամարդ դառնալ և զարդարվել շատ փառա-
որ շենքերով, գեղեցիկ պալատներով և մանավանդ հոյա-
ապ տաճարներով։

Բագրատունիների այդ փառահեղ մայրաքաղաքը շատ

անառիկ դիրք է ունեցել։ Արևելեան և հարաւային կողմե
րից նա պաշտպանւում էր Ախուրեան գետով, որ հոսում
մի շատ խոր ձորի միջով։ Արևմտեան կողմից ընկած է Ծաղ
կաձորը, որը նոյնպէս շատ անմատչելի էր դարձնում քա
ղաքը։ Բնական պաշտպանութիւնից Անին զուրկ էր միմ
այն հիւսիսային կողմից. իսկ այդ կողմումն էլ Բագրատու
նիները շինել էին ուժեղ կրկնակի հսկայական պարիսպներ։

Պարիսպների մեծ մասը մինչև օրս էլ դեռ կանգու
են մնացել, իսկ քաղաքում եղած բազմաթիւ հոյակապ շի



Նկար 15. Անիի պարիսպները

նութիւններից մնացել են միայն մի քանի կիսաւեր եկ
ղեցիներ։

Ենթադրութիւն կայ, թէ այդ եկեղեցիների մեծ մա
շինել է Աշոտ Ողորմածի երկու որդիների՝ Սմբատ II-ի
Գագիկ I-ի օրով, որոնք միմեանց յաջորդելով թագաւոր
են, Աշոտից յետոյ, ամբողջ 43 տարի—Սմբատը 13, ի
Գագիկը 30 տարի։

Յայտնի գիտնական պրոֆեսոր Ն. Մարրի վերջին տ
րիներումս Անիում կատարած պեղումների շնորհով, հո
տակից հանել է Գագիկ I-ի շինել տուած Լուսաւորիչ եկ
ղեցու մնացորդները, որոնցից կարելի է լինում հասկան
թէ որպիսի փառաւոր շինութիւն է եղել այդ եկեղեցի
Նոյն եկեղեցում գտնել է նաև Գագիկի արձանը իր ամբո
մեծութեամբ։

Գագիկի շինել տուած եկեղեցին գտնելուց յետոյ, պրո

արքը ձեռնարկել է Բագրատունիների արքունական պալատի տեղը պեղել, որ գտնվում է Ծաղկաձորի վրայ, քաղաքի կենտրոն. մասում. Պեղումները դեռ վերջացած չեն, բայց ացված յատակագծից պարզ տեսնում է, թէ որքան շքեղ ւ մեծ շինութիւն է եղել այդ պալատը.



Նկար 16. Գագիկ I-ի արձանը

Շատ նշանաւոր ու գեղեցիկ շինութիւն է եղել նաև նիի մատենադարանը.

Անիի ամենանշանաւոր շէնքերի, ինչպէս և հրաշալի այր եկեղեցու շինողը համարւում է Տրդատ ճարտարապետը, որ շատ հռչակաւոր էր իր ժամանակին.

Շինութիւնների մեծ մասը իրանց վրայ կրում են րաբական և բիւզանդական ոճի խառնուրդ.

Պեղումներից գտնուած բոլոր արժեքաւոր իրերը պա
ւում են Անիում, արաբական տիրապետութեան ժամանակ
շինուած մզկիթում, որ այժմ մուզէումի է վերածուած։

Այդ ժամանակաշրջանում քանդակագործութիւնն է
մեծ զարկ է ստացել հայերի մէջ և նա արտայայտուել է
մեծ մասամբ տապանաքարեր ու խաչքարեր քանդակելո



Նկար 17. Անիի մատենադարանի ճակատն ու պատերը։

մէջ, որոնց մնացորդները մինչև այսօր էլ հիացմունք ե
պատճառում շատ գեղարուեստագէտների։

---

## ՍԵԼՋՈՒԿՆԵՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

### Արծրունեաց թագաւորութեան վախճանը

Բագրատունեաց տէրութեան անդորր ու խաղա
վիճակը վերջ է ստանում Աշոտ Ողորմածի որդ
Գագիկ I մահով (1020 թ.)։

Գագիկը երկու որդի ունէր—Յովհաննէս-Սմբատ Աշոտ։ Հօր մահից յետոյ, սրանց մէջ նորից երկատուն վէճեր ու կռիւներ են ծագում գահակալութեան համար։



Նկար 18. քանդակագործ խաչքար

Այդ կռիւները այն ասպիճան սուր կերպարանք ստանում, որ հայ նախարարները դիմում են Պետ-

րոս Գեսրգարձ կաթողիկոսի և վրաց Գէորգի թագ-
ւորի միջնորդութեանը, որպէսզի հաշտեցնեն երկ-
եղբայրներին։

Միջնորդները որոշում են, որ Յովհաննէս-Սըմ-
բատը թագաւորէ Անիի և նրա շրջակաների, իսկ
շոտը Վրաստանի ու Պարսկաստանի սահմանակից եր-
կիրների վրայ։

Վէճը սակայն դրանով չէ վերջանում և Աշոտ
մի քանի անգամ փորձում է գահից զրկել եղբօրն
ինքը միայնակ թագաւորել։

Միշտ այդ եղբայրադաւ կռիւների ժամանակ
Հայաստանի գլխին պայթում է մի նոր փոթորիկ.
Տեղի է ունենում մի ահեղ արշաւանք, նման VII-րդ
դարում տեղի ունեցած արաբական արշաւանքի։

Դա Սելջուկ թուրքերի արշաւանքն էր։

Սելջուկները մի կիսավայրենի ցեղ էին, որ շա-
հին ժամանակից ի վեր ապրում էին Ասիայի խո-
քերում։ VI-րդ դարի սկիզբներում, նրանք նեղուե-
իրանցից աւելի զօրեղ ցեղերի կողմից, մորեխի
ման դուրս են թափւում իրանց բնիկ երկրից և
նում նոր հայրենիք որոնելու։

Հասան անունով մի թուրքի առաջնորդութեամբ
սելջուկները անցնում են Տիգրիս գետը և տակն
վրայ անում Միջագետքը։

Խալիֆաթը այդ ժամանակ ներքին խռովութիւ-
ներից այնքան թուլացած էր, որ անկարող էր
կատաղի բարբարոսներին լուրջ դիմադրութիւն ցո-
տալ։

Հասանին յաջորդում է Տուղրիլ-բէգը։ Սրա
առաջնորդութեամբ սելջուկները յարձակւում են Հ-
յաստանի վրայ և ամեն ինչ իրանց ճանապար-
քանդում, այրում և աւերում են։

Ամենից առաջ նրանք յարձակւում են Վասպու-
րականի Արծրունեաց թագաւորութեան վրայ: Զուր
աշխատում Սենեքերիմ թագաւորը դիմադրութիւն
յց տալ բարբարոսներին: Նրանք յաղթում են հայե-
ն և սոսկալի աւերմունքներ գործելով, անցնում,
ում են Յովհաննէս-Սմբատի երկիրը:

Այստեղ էլ հայերը մեծ ջանք են գործ դնում
ժեղ դիմադրութեամբ փրկել իրանց երկիրը աւեր-
ունքից, բայց դարձեալ չէ յաջողւում:

Սելջուկները, սակայն, չեն մնում Հայաստա-
ում: Նրանք ահագին վնասներ հասցնելուց յետոյ,
ա են քաշւում դէպի Պարսկաստան և արաբներից
անելով այդ ամբողջ երկիրը, վերականգնում են
արսից թագաւորութիւնը: Տուղրիլը նոր թագաւո-
ւթեան սուլթան է հռչակւում:

Սելջուկների այս առաջին արշաւանքից սարսա-
ած և նախատեսելով, որ այդ բարբարոսները դը-
ւնից յետոյ մի փորձանք են դառնալու Հայաստանի
մար, Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը որո-
մ է օր առաջ իր գլխի ճարը տեսնել: Նա դիմում
յունաց կայսրին. առաջարկում է վերցնել Վասպու-
ականը և նրա փոխարէն տալ իրան Սեբաստիա քա-
ղը՝ իր շրջականներով:

Կայսրն ընդունում է այդ առաջարկը և Սենե-
րիմն իր ընտանիքով, բոլոր իշխաններով ու զօր-
վ տեղափոխւում է Սեբաստիա (1021 թ.):

---

## Անիի վաճառումը

Հազիւ էին հայերը սելջուկների սարսափներից
ող շունչ առել, երբ իմանում են, որ յունաց կայս-

րը մեծ զօրքով մօտենում է Բագրատունեաց թագաւորութեան սահմաններին։

Յովհաննէս-Սմբատ թագաւորը բոլորովին չի էլ մտածում դիմադրութիւն ցոյց տալ։ Ընդհակառակը, նա և Պետրոս Գետադարձ կաթողիկոսը՝ սելջուկների գալիք արշաւանքներից սարսափած, և գիտենալով, որ անկարող պիտի լինեն պաշտպանուել, լաւ են համարում իրանց երկիրը յունաց քրիստոնեայ պետութեանը տալ, քան թողնել, որ մահմեդական բարբարոսները տիրեն նրան։

Յովհաննէս-Սմբատը ցանկանում է, սակայն, որ իր տէրութիւնը յոյներին յանձնուի միայն իր մահից յետոյ։ Ոչ մի զաւակ չունենալով և իր եղբօր հետ էլ միշտ թշնամական յարաբերութեան մէջ լինելով, նա ժառանգների մասին հոգալու ոչ մի պատճառ չունէր։

Թագաւորն ու կաթողիկոսը միմեանց հետ այդպէս խորհրդակցելով, կայսրին մի թուղթ են գրում, որով հայոց թագաւորը խոստանում է մահից յետոյ Անին իր շրջակայքով նրան տալ (1023 թ.)։

Կայսրն ուրախացած յետ է քաշւում Հայաստանի սահմանը դեռ չըմտած։

Շատ ժամանակ չանցած կայսրը մեռնում է։ Նրա յաջորդն էլ երկար չի ապրում։ Վերջինս մահուան անկողնու մէջ կանչել է տալիս Կիրակոս անունով մի հայ քահանայի, որ հայոց կաթողիկոսական գործերի ծանօթ մարդ էր ու նրան յանձնում Յովհաննէս-Սմբատի թուղթը։ Կայսրը պատուիրում է նրան, թէ «Տար այս թուղթը, տուր քո թագաւորին և ասա նրան իմ կողմից, որ ես էլ, ինչպէս ամեն մի մահկանացու, յաւիտենականութեան շէմքի վրայ եմ կանգնած ու չեմ ուզում ուրիշի սեփականութիւն

բաւել, թող ուրեմն յետ վերցնի իր թագաւորութիւ-
ը և իր ժառանգին տայ» (1029 թ.)։

Այդ հայ քահանան, սակայն, չէ կատարում մեռ-
ող կայսրի կամքը։ Թուղթն իր մօտ է պահում և
ինգ տարուց յետոյ, տանում ու թանգ գնով ծա-
ում է կայսեր յաջորդ՝ Միքայէլ V-րդին (1034 թ.)։

---

## Նախարարական երկու կուսակցութիւնները

Երբ Յովհաննէս-Սմբատ թագաւորը մեռնում է,
Միքայէլ V կայսրը դեսպաններ է ուղարկում և Ա-
նին իր շրջակայքով հայերից պահանջում։

Այդ ժամանակ Բագրատունեաց թագաւորական
ահը թափուր էր մնացել և տէրութեան գործերը վա-
ում էին նախարարները։ Դրանցից գլխաւորներն էին
եստ Սարգիս Սիւնին և Վահրամ Պահլաւունին։

Վեստ Սարգիսը տէրութեան խնամակալ էր կարգ-
ած և թագաւորական բոլոր գանձերը նրա ձեռքումն
էն գտնւում, իսկ Պահլաւունին՝ զօրքի սպարա-
ետն էր։

Ինչպէս առաջին կրօնական պատերազմի ժամա-
ակ Վասակ Սիւնին և Վարդան Մամիկոնեանը՝ այն-
պէս էլ այժմ Վեստ Սարգիսն ու Վահրամ Պահլաւու-
նին էին երկու հակառակ ուղղութեան մարդիկ։

Վեստ Սարգիսը վստահութիւն չունէր, թէ չա-
փազանց թուլացած Հայաստանը պիտի կարողանայ
երկար պահպանել իր անկախութիւնը։ Նա էլ Յով-
հաննէս-Սմբատ թագաւորի և կաթողիկոսի նման այն
կարծիքին էր, թէ աւելի լաւ է Հայաստանը քրիստո-
նեայ յոյներին յանձնել, քան թողնել, որ սելջուկները
տան տէր դառնան։

Պահլաւունին, ընդհակառակը, խիստ դեմ էր այ
կարծիքին և չէր ցանկանում, որ երկիրը յօժարու-
թեամբ օտար տէրութեան յանձնուի։

Բացի դրանից՝ Պահլաւունին և իր կողմնակիցնե-
րը չէին կամենում, որ տէրութեան խնամակալութիւ-
նը Վեստ Սարգսի ձեռքում երկար մնայ, որը կարո
էր մի օր էլ թագաւոր դառնալ։ Նրանք ուզում էի
Բագրատունեաց բոլոր երկիրների իշխանութիւնը յան
նել Յովհաննէս-Սմբատի եղբօր որդուն՝ Գագիկին, ո
րը 14 տարեկան պատանի էր և միակ օրինաւոր գա
հաժառանգը։

Վահրամի կուսակցութիւնը աւելի զօրեղ լինելո
հայերը մերժում են յունաց կայսրի պահանջը՝ Անի
յանձնել։

Հայերի բացասական պատասխանից զայրացած՝
Միքայէլ կայսրը որոշում է զէնքի ույժով գրաւել Անին։
Նա մի քանի անգամ բազմաթիւ զօրք է ուղարկում
Հայաստան, բայց հայերի զօրեղ դիմադրութեան շնոր
հով, նրանք ջարդւում և յետ են քշւում։

Այդ փառաւոր յաղթութիւններից յետոյ, Վա
րամեանները պատանի Գագիկին բերում են Անի
թագաւոր օծել տալիս, Գագիկ II անունով (1042 թ.)

Վրէժխնդրութիւնից վախեցած՝ Վեստ Սարգի
փախչում, ամրանում է Սուրմառի բերդաքաղաքու
իր հետ տանելով և թագաւորական գանձերը։ Եր
տասարդ թագաւորը զօրքով յարձակւում է նրա վրա
գանձերը յետ խլում և նրան էլ բռնում և բանտա
կում Անիում։ Սակայն Վեստ Սարգիսին յաջողւում
է շուտով ներումն ստանալ թագաւորից և նրա մ
րեմին դառնալով՝ մեծ պատիւների արժանանալ։

---

## Անիի յանձնումը յոյներին

Յոյները Անիին տիրանալու մտքից չեն հրաժարւում։ Միքայէլ V-րդի յաջորդը՝ Կոստանդին Մոնոմախ կայսրը, նորից բանակցութիւններ է սկսում հայերի հետ և պահանջում Անին։ Մերժումն ստանալով, կայսրը նորից մի քանի անգամ բազմաթիւ զօրք է ուղարկում, սակայն հայերը, իրանց երկրի ազատութեան գաղափարով ոգևորուած, այնպիսի կատաղութեամբ են կռւում, որ ամեն անգամ էլ յոյները մեծ ջարդ կրելով յետ են քաշւում։

Մոնոմախ կայսրը, տեսնելով, որ զէնքի ոյժով անհնարին է անառիկ Անին գրաւելը, խորամանկութեան է դիմում։ Նա Գագիկին բարեկամական թուղթ գրում և հրաւիրում նրան Կոստանդնուպօլիս, որպէսզի խաղաղութեան և բարեկամութեան դաշն կապեն։

Երիտասարդ թագաւորը չի ուզում գնալ. բայց Վեստ-Սարգիսն ու Պետրոս Գետադարձ կաթողիկոսը նրան ամեն կերպ համոզում են ընդունել կայսեր հրաւէրը, խոստանալով, որ իրանք հաւատարմութեամբ կը պահպանեն նրա գահը։

Կոստանդնուպօլսում հայոց թագաւորին արքայավայել կերպով ընդունելուց յետոյ, կայսրը նորից պահանջում է, որ Անին իրան յանձնուի։ Բայց երբ Գագիկն մերժումն է ստանում, նա ձերբակալել է տալիս Գագիկին և աքսորում Մարմարա ծովի կղզիներից մէկը։

Երբ այդ դժբախտ լուրն իմանում են նախարարները, խիստ իրարանցումի մէջ են ընկնում։ Նրանցից ոմանք ուզում էին, որ Անին տրւի վրաց թագաւորին, իսկ ոմանք էլ առաջարկում էին տալ՝ մի ուրիշ քրիստոնեայ թագաւորի։

Մինչ նախարարները այդ վէճի մէջ էին, Պետրոս կաթողիկոսը, յունաց կայսրից մի լաւ վարձատրութիւն ստանալով, Անիի բանալիները ուղարկում է Կոստանդնուպոլիս։

Գագիկը լսելով կաթողիկոսի և Վեստ-Սարգսեանների խոստմնազանցութիւնը, յուսահատւում է և հրաժարւում իր թագաւորութիւնից։ Կայսրը Անիի փոխարէն նրան տալիս է Կապադովկիայի Բիզու քաղաքը, ուր Գագիկն ամուսնանում է Սեբաստիայի Դաւիթ թագաւորի աղջկայ հետ։

Անիի բանալիները ստանալով, կայսրը խոշոր զօրք է ուղարկում Հայաստան իր նոր ժառանգութիւնը վերցնելու։ Հայերն այս անգամ էլ անձնատուր չեն լինում. Վահրամեանները զօրքի և ժողովրդի մեծ մասի հետ միացած, որոշում են մինչև վերջին շունչը պաշտպանել իրանց անառիկ մայրաքաղաքը։

Անին պաշարւում է։ Հայերն իրանց վերջին ճիգն էլ թափելով յարձակւում են յոյների վրայ և թէև մի լաւ ջարդ են տալիս, բայց վերջ ի վերջոյ յաղթւում են և յանձնում Անին։

---

## ՍԵԼՋՈՒԿՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Հայաստանին տիրելուց յետոյ, յոյները մեծ անգթութիւններ են գործում։ Կասկածելով, թէ մի գուցէ հայերը նորից համախմբուեն և ապստամբուեն իրանց դէմ, նրանք ցիր ու ցան են անում հայոց զօրքը, ամեն տեսակ հալածանքների են ենթարկում նախարարներին և նշանաւոր քաղաքներում ու բերդերում պահապան զօրքեր են դնում։

Յոյները մինչև իսկ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին էլ բռնում են և Կոստանդնուպոլիս ուղարկում

Երկար չէ տևում սակայն յոյների տիրապետութիւնը Հայաստանում։ Սելջուկները նորից սկսում են րանց վայրենի ասպատակութիւնները և յոյներին մեն տեղից դուրս քշելով, մի կատարեալ սպանդաց են դարձնում հայոց աշխարհը։

Սելջուկների ասպատակութիւնները Հայաստանում տևում են եօթը տարի։ Այդ բարբարոսները ամեն եղ սոսկալի կոտորած անելով, թալանում, քանդում կրակի են մատնում։ Բազմաթիւ հարուստ ու բազամարդ քաղաքներ կատարելապէս հիմնայատակ են. ինում և հողի հետ հաւասարւում։

Այդ վայրագութիւնների հանդէպ՝ յոյները երկար ամանակ անտարբեր էին, սակայն երբ տեսնում ն, որ սելջուկները շատ են մօտենում իրանց մայր րկրի սահմաններին, 60,000 զօրք են ուղարկում րանց դէմ։

Յոյներին միանում են և վրաց թագաւորն ու քանի հայ իշխաններ՝ իրանց զօրքերով, բայց դըանք բոլորն էլ մեծ պարտութիւն են կրում և վրաց ագաւորն էլ գերի է բռնւում։

Դրանից յետոյ Տուղրիլ սուլթանն ինքն անձամբ գալիս Հայաստան և աւելի մեծ կատաղութեամբ սպատակում այն բոլոր տեղերը, որոնք դեռ ազատ ին մնացել։ Շատ քաղաքներ ու գիւղեր աւերելուց անհամար կոտորածներ անելուց յետոյ, սուլթանը րադառնում է Պարսկաստան, տանելով իր հետ ազմաթիւ հայ գերիներ։

Տուղրիլի մահից յետոյ, նրա եղբայր Ալփասլանն գալիս Հայաստան։ Նա իր ամբողջ զօրութեամբ նում է ուղղակի Անիի վրայ, որ դեռ անվնաս էր ացել։

Երկար պայքարումից յետոյ, վերջապէս անառիկ

Անին առնում է։ Կատաղած սելջուկները այստեղ էլ շատ սոսկալի անգթություններ են գործում։ Փառաւոր քաղաքի հոյակապ շէնքերը կրակի ճարակ են դառնում, իրանց փլատակների տակ անթիւ դիակներ ծածկելով (1064 թ.)։

Ամբողջ Մեծ Հայքն այս կերպ սելջուկներից առնուած ու քարուքանդ լինելով, անփոփոխ է մնում միայն Կարսի փոքրիկ հայկական թագաւորութիւնը։

Այդտեղի Գագիկ թագաւորն էլ հասկանալով, որ երկար չը պիտի կարողանայ հանգստութիւն վայելել իր երկիրը յանձնում է բիւզանդական կայսրին, և նրա փոխարէն ստանալով Փոքր Հայքում Ծմնդաւ բերդը, տեղափոխւում է այնտեղ (1065 թ.)։

Այս եղանակով էլ վերջ են ստանում հայկական բոլոր անկախ թագաւորութիւնները։

Հայաստանին տէր դառնալուց յետոյ, սելջուկները մտնում են Փոքր Ասիայի յունական երկիրները, տիրում նրանց մեծ մասին և հաստատւում Իկոնիայում, որ Կոստանդնուպօլսից մի քանի օրւայ ճանապարհ էր։

V

# ՌՈՒԲԻՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

---

## ՀԱՅԵՐԻ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Սելջուկների արշաւանքները խիստ աղետաբեր են լինում Հայաստանի համար։ Բացի անխնայ կոտորածից ու աւերմունքից, այդ արշաւանքները մի անասելի գաղթականութիւն են առաջացնում։ Կենդանի մնացած հայերից շատ շատերը թողնում են իրանց բնիկ հայրենիքն ու գաղթում օտար երկիրներ։*

*Հայերը շատ հին ժամանակներում, հալածւելով պարսիկներից, յոյներից, և արաբներից՝ նոյնպէս ստիպւած են եղել գաղթել օտար երկիրներ։*

*Այդ գաղթականները մեծ մասամբ հաստատւում էին Փոքր Ասիայի բիւզանդական երկիրներում, ուր նրանք շատ աւելի ապահով էին զգում իրանց։*

*Բացի այդ, գաղթականները իրանց բնակութեան համար ընտրում էին ծովեզերեայ տեղեր, որպէսզի հնարաւորութիւն ունենան ընդարձակ առևտրական գործով պարապել։*

*Այդպիսի տեղեր էին Կոստանդնուպօլիսը, Փոքր Ասիայի արևմտեան ծովեզերեայ քաղաքները և մանաւանդ Կիլիկիան՝ իր վաճառաշահ նաւահանգիստներով։*

*Կիլիկիան իր մեղմ ու բարեխառն կլիմայի շնորհով, երկրագործութեան համար էլ մեծ յարմարութիւններ ունէր։ Դեռ Մեծն Տիգրանի ժամանակ այդ երկիրը շատ ծաղկած վիճակի մէջ էր գտնւում։*

XI-րդ դարի վերջերում հայ գաղթականների թիւ-
այնչափ էր մեծացել Կիլիկիայում, որ իրանց բազմութեամբ
կարող էին մրցել տեղացի յոյն և օտար բնակիչների հետ։
Կիլիկիայում հաստատուելով, հայերը նրա զանազան
կողմերում բազմաթիւ վանքեր էին կառուցել, որոնց մէջ
կրօնաւորները կրթութիւն և ուսում էին տալիս հայ երե-
խաներին։

Գաղթական հայ իշխաններն էլ, ժամանակի ընթաց-
քում, Տաւրոսի լեռնաշղթայի վրայ, մի քանի ամուր տե-
ղեր գրաւելով, ամրոցներ ու բերդեր էին շինել և փոքրիկ
իշխանութիւններ հաստատել։

Բիւզանդական կայսրները ոչ միայն դէմ չէին հայ-
կական այդ փոքրիկ իշխանութիւններին, այլ և մինչև իսկ
հովանաւորում էին նրանց, որովհետև դրանք մի տեսակ
պատուարի դեր էին կատարում կայսրութեան համար, մահ-
մեդական ցեղերի յարձակումների ժամանակ։

---

## ՌՈՒԲԻՆԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԾԱԳՈՒՄԸ

Տաւրոսի լեռնաշղթայի վրայ հիմնուած հայկական
փոքր իշխանութիւններից, XI-րդ դարի վերջերում
նշանաւոր է դառնում Ռուբինեան իշխանութիւնը։

Այդ իշխանութեան հիմնադիր Ռուբէնը, որ Բագ-
րատունի Գագիկ II թագաւորի ազգականներից էր,
իր համար բնակութեան տեղ է ընտրում Տաւրոսի
բարձունքները՝ Բարձր բերդի շրջակայքում։

Այդ տեղը թէ շատ անառիկ դիրք ունէր և թէ
խիստ բազմամարդ էր հայ բնակիչներով։

Ռուբէնը օգտուելով այդ երկու հանգամանքից,
շատ կարճ ժամանակով դուրս էր քշում յոյն իշ-
խաններին և իր երկիրն անկախ յայտարարում
(1080 թ.)։

Շուտով մօտակայ հայ իշխանները սկսում են
Ռուբէնի իշխանութիւնը ճանաչել։ Նրանց օգնու-

եամբ նորահաստատ հայկական անկախ իշխանութիւնը հետզհետէ աճում ու զօրեղանում է։

Ռուբէնին յաջորդում է նրա որդին՝ Կոնստանդինը 1095 թ.), որը յոյներից մի քանի ամուր բերդեր գրաւելով՝ հօր թողած ժառանգութիւնը աւելի է ընդարձակում։

Կոնստանդինի օրով եւրոպական ազգերը մի ահագին արշաւանք են կազմակերպում դէպի Երուսաղէմ, Քրիստոսի գերեզմանն ու սուրբ վայրերը մահմեդականների տիրապետութիւնից ազատելու նպատակով։ Եւրոպացիների այդ արշաւանքը կոչւում է Խաչակիրների արշաւանք։

Կոստանդինը յարաբերութեան մէջ է մտնում խաչակիրների հետ. առատ պաշար է ուղարկում նրանց և առաջնորդի դեր կատարում անծանօթ երկրում։

Խաչակիրները, մի քանի պատերազմներից յետոյ, մահմեդականներին քշում են սուրբ վայրերից և երկրին տիրանալով, մի քանի առանձին-առանձին իշխանութիւններ են հաստատում։

Այդ կողմերում հաստատուած եւրոպացի զանազան ազգի իշխանները, ընդհանուր առմամբ կոչւում են Լատին իշխաններ։

Կոստանդինին իր մատուցած ծառայութիւնների համար, Խաչակիր իշխանները Մարկիզի տիտղոս են տալիս, որով էլ աւելի է բարձրանում նրա դիրքը։

Կոստանդինի յաջորդները, շարունակելով իրանց հայր և պապի յանդուգն գործունէութիւնը, հարիւր տարւայ ընթացքում ամբողջ Կիլիկիայի լիակատար տէրն են դառնում և ստիպում յունաց կայսրին՝ բոլորովին հրաժարուել այդ երկրից։

Այդպէս հետզհետէ զօրեղանալով, Ռուբինեան

իշխաններին այն աստիճան մեծ ույժի տէր են դառ-
նում, որ սկսում են համարձակ պատերազմներ մ
ղել թէ յունական՝ արդէն թուլացած կայսրների,
թէ մահմեդական՝ զօրաւոր սուլթանների դէմ։



Նկար 19. Ռուբինեան ձիաւոր զօրք

Հայկական այդ իշխանութիւնը մեծ զօրութե
է հասնում, մանաւանդ Լեւոն II-րդ Ռուբինեան
խանի օրով, որը Կիլիկիայի առաջին հայ թագաւո
է դառնում։

## ԼԵՒՈՆ ՄԵԾԱԳՈՐԾ

Լևոնը նոր էր երկրի իշխանութիւնն ստանձնել (1185 թ.), երբ միմեանց յետևից Կիլիկիայի վրայ են արշաւում Իկոնիայի, Հալէպի և Դամասկոսի սուլթանները։



Նկար 20. Լևոն Մեծագործ

Լևոնն այդ բոլոր յարձակումները մեծ քաջութեամբ յետ է մղում։

Նոյն ժամանակներում Եգիպտոսի սուլթանն (Սալահեդդին) օգուտ քաղելով խաչակիր իշխանների ներքին պառակտումներից, յարձակւում է Պաղեստինի վրայ, դուրս է քշում լատիններին և նորից նուաճում Երուսաղէմն ու սուրբ երկիրը (1187 թ.)։

Եւրոպացիք՝ Գերմանիայի Ֆրիդրիխ Բարբարոս
թագաւորի առաջնորդութեամբ, Խաչակիրների մ
նոր արշաւանք են կազմակերպում և նորից գնու
ռ. երկիրը մահմեդականներից մաքրելու. Կիլիկիայ
սահմաններին մոտենալով, Ֆրիդրիխը Լևոնին դես
պաններ է ուղարկում և նրանից օգնություն խնդ
րում, խոստանալով՝ փոխարէնը Լևոնին թագաւոր
կան թագ ուղարկել։ Լևոնն ուրախութեամբ ընդու
նում է Ֆրիդրիխի առաջարկը և առատ պաշար (



Նկար 21. Սիս

հասցնում Խաչակիրներին։ Քիչ յետոյ ինքն էլ
շքախմբով գնում է Ֆրիդրիխին տեսութեան։ Մ
կայն Լևոնին չէ յաջողւում Գերմանիայի թագա
րին տեսնել, որովհետև այդ միջոցին թագաւորը գ
տում լողանալիս՝ խեղդւել էր։

Այդ անակնկալ մահը թէև մի քանի տարով ա
շացնում է, բայց բոլորովին չի խանգարում Լևո

ագադրութիւնը։ Ֆրիդրիխի յաջորդը, Հռոմի պապի ետ համաձայնութեան գալով, շուտով արքայական ագ և առիւծանշան դրօշ է ուղարկում Լևոնին, իսկ այոց կաթողիկոսն էլ մեծ հանդէսով նրան օծում է իլիկայի թագաւոր (1198 թ.)։

Շուտով Բիւզանդիայի կայսրն էլ Լևոնին թագ ուղարկում և այդպիսով վաւերացնում հայկական որ թագաւորութիւնը։

Թագաւոր դառնալուց յետոյ, Լևոնն իրան մայ-աքաղաք է ընտրում Սիսը և սկսում իր երկրի ական գործերով զբաղուել։ Լատին իշխանների ակին հետևելով, նա թէ իր արքունիքում, թէ ի և թէ այլ կառավարչական գործերի մէջ, նոր ոններ, եւրոպական սովորութիւններ և նրա կաց է մտցնում։

Լևոնն ամեն կերպ աշխատում է, որ իր երկիրն րոպական թագաւորութիւնների ձևով լինի։

Նա իր մօտ է հրաւիրում շատ եւրոպացիներ— նսիացի, իտալացի, գերմանացի ու անգլիացի— րանց պալատական ու զինուորական բարձր պաշ-ներ է յանձնում։

Կիլիկիայի Լևոն առաջին հայ թագաւորը, իբրև րեպաշտ քրիստոնեայ, բազմաթիւ վանքեր է շի-ել տալիս ու դրանց կից բացւած դպրոցների հա-ար եւրոպացի ուսուցիչներ է հրաւիրում, որպէսզի յերի մէջ էլ ուսում ու գիտութիւն տարածւի։

Լևոնը մեծ հոգատարութիւն է ցոյց տալիս նաև պի խեղճերը, թշւառներն ու օտարականները և դ նպատակով էլ հիմնում է շատ հիւանդանոցներ, բանոցներ ու հիւրանոցներ։

Այս բոլորի հետ միասին, Լևոնը մանաւոր ու-

շագրութիւն է դարձնում երկրագործութեան, ար[...]
հեստների և առևտրի զարգացման վրայ։

Նրա օրով Կիլիկիայում խիստ զարգանում է մ[...] նաւանդ վաճառականութիւնը։ Հայոց թագաւորը մ[...]տիկ յարաբերութիւններ է հաստատում՝ առևտր[...] աւելի զարգացած ազգերի հետ և նրանց զանազ[...] արտօնութիւններ տալով, ամեն կերպ նպաստում իր երկրի առևտրի ընդարձակւելուն։

Այսպէս եւրոպական տէրութիւնների հետ կա[...]ւելով, Կիլիկիայի հայկական թագաւորութիւնը հետ[...]հետէ աւելի զօրանում ու հարստանում է։



Նկար 22. Լեոնի դրամը

Իր 34 տարւայ թագաւորութեան ընթացքու[...] Լեոնը մեծ հաջակ է տանում նաև մի շարք յա[...]թական պատերազմներում։ Նա [illegible] է ունենում [...] [illegible] մզկըլու, ինչպէս Հալէպի (Սիրիա) լատին իշխա[...]ների, այնպէս էլ Իկոնիայի և այլ մահմեդական սու[...]թանների դէմ, որոնց բոլորին էլ յաղթելով Կիլիկի[...] ազատ է պահում օտար յարձակումներից։

Իր քաղաքագործութիւնների և երկրի լուսաւոր[...]թեան ու բարգաւաճման համար կատարած գործ[...] պատճառով, Ռուբինեան Լեոն I թագաւորը, մեր պա[...]մութեան մէջ յայտնի է Լեոն Մեծ անունո[...]

Նա մեռել է 1219 թ.։

## Կիլիկիայի թագաւորութիւնը Լեւոն Մեծագործի յաջորդների օրով

Պարսից, արաբացոց և յունաց զօրաւոր ու բըռ-
ակալ դրացիութիւնից ազատուելով, հայերը Կիլիկիա-
ւմ ոչ պակաս զօրաւոր ու բռնակալ եգիպտական
մլուկների հարևան են դառնում։

Մամլուկները առաջ Եգիպտոսի արաբական խա-
ֆների թիկնապահ զօրքն էին, որ կազմուած էին
ապէս ստրուկներից։ Յետոյ, օգտուելով Խալի-
թի թուլութիւնից, նրանք ապստամբել և երկրի
անութիւնը իրանց ձեռքն էին գցել։

Կիլիկիայի հայ թագաւորները, մօտ երկու դար,
ստ ընդհարումներ են ունենում մամլուկ սուլթան-
րի հետ։

Եւրոպացի քրիստոնեայ ազգերը, որոնց վրայ
ւբինեան թագաւորները այնքան մեծ յոյսեր էին
ել, շատ քիչ են օգնում հայերին՝ մամլուկների
մ կռուելու։

Քրիստոնէութիւն ընդունած ազգերի մէջ, դեռ V-դ
րում կրօնական մեծ վէճեր էին սկսել։ Այդ վէճերի
ռանքն այն էր եղել, որ քրիստոնեաները բաժան-
ծ էին երեք գլխաւոր դաւանութիւնների — յունադա-
ններ (յոյները), կաթոլիկներ կամ լատիններ (եւրո-
կան ազգերը) և լուսաւորչականներ (հայերը)։

Դաւանական այդ բաժանումից յետոյ, յոյները
էին աշխատել հայերին իրանց դաւանանքին
ձնելու, սակայն նրանց բոլոր ջանքերը, պարսիկ-
ի և արաբների նման՝ ի զուր էին անցել։ Հայերը
տ հաւատարիմ էին մնացել իրանց պապենական
ղեցու դաւանանքներին։

Կիլիկիայում էլ նոյն ուղղութեամբ լատինները

էին աշխատում, և հէնց այդ ժամանակից է,
հայերի մէջ մուտք է գործում կաթոլիկութիւնը։ Թէ
շատ հայ իշխաններ, թագաւորներ ու նոյն իսկ բարձր
աստիճան հոգևորականներ կաթոլիկութիւն են ընդու
նում, բայց այդ դաւանանքը հայ ժողովրդի մէ
նոյնպէս մեծ ծաւալ չէ ստանում։



Նկար 23. Լևոն V Լուսինեան

Կրօնական աւելութեամբ համակւած եւրոպաց
Կիլիկիայի հայերին չեն օգնում մինչև իսկ այն
մանակ, երբ Ռուբինեան հայկական տոհմը վերջա
և թագաւորական գահը եւրոպացի Լուսինեան տոհ
էր անցել։

Մօտ երկու դար մահմեդական թշնամիների

աքառելուց յետոյ, Կիլիկեան թագաւորութիւնը վեր-
ապէս ուժասպառ ընկնում է Եգիպտոսի մամլուկ
ուլթանների իշխանութեան տակ (1375 թ.)։

Կիլիկիայի հայոց վերջին Լուսինեան Լեւոն V-րդ
ագաւորը գերի է տարւում Եգիպտոս, ուր 7 տարի
անտարկութեան մէջ մնալուց յետոյ, ազատւում և
նում է Եւրոպա։ Նրա բոլոր ջանքերը եւրոպական
օրեղ թագաւորների աջակցութեամբ իր կորցրած
ահը ձեռք բերելու, բոլորովին իզուր են անցնում։



Նկար 24. Լեւոն V Լուսինեանի դամբարանը

Նա յուսահատ մեռնում է Փարիզում (1303 թ.)
թաղւում Սէն-Դընիի թագաւորական գերեզմանա-
անը։

# VI

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐԻ ԱՆԿՈՒՄԻՑ ՅԵՏՈՅ

---

## ՎՐԱՑ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Ամբողջ Հայաստանին ու Փոքր Ասիայի մի մասին տիրելուց յետոյ, սելջուկները մի ընդարձա տէրութիւն են կազմում։

Այդ մեծ տէրութիւնը, սակայն, շատ կարճ կեան է ունենում։ Ալփասլանի որդու մահից յետոյ, սե ջուկների իշխանութիւնը հետզհետէ թուլանում է Արաբ, պարսիկ, հայ և ուրիշ զանազան ազգի իշխա ներ նորից գլուխ են բարձրացնում ու զատ-զատ ի խանութիւններ և մեծ ու փոքր թագաւորութիւնն են հիմնում։

Սելջուկները իրանց իշխանութիւնը պահպանո են միմիայն Կիլիկիայի սահմանակից Իկոնիայու որի սուլթանները միշտ ընդհարումներ էին ունենու Ռուբինեան թագաւորների հետ։

Սելջուկեան իշխանութեան անկումով, Հայա տանը դարձեալ մեծ մասամբ օտարների տիրապե տութեան տակ է ընկնում։ Նրա արևելեան մա միացած էր Պարսկաստանին, ուր թագաւորակ իշխանութիւնը վերստին պարսիկների ձեռքն էր ա

---

յել։ Արևմտեան մասին տէր էին դառել մասամբ Իկոնիայի սուլթանները և մասամբ էլ յոյները։ Հիւսիսից դէպի հարաւ Հայաստանը բաժանուած էր միջանի մահմեդական և հայ՝ մեծ ու փոքր իշխանութիւնների միջև։ Հայերից յայտնի էին Սիւնեաց, Աղւանից, Վասպուրականի, Տարօնի ու Սասունի փոքր թագաւորութիւններն ու իշխանութիւնները, որ սակայն միմեանցից հեռու ընկած և մանաւանդ մահմեդականներով շրջապատուած՝ անկարող էին միանալ և մի զօրաւոր դիրք ստեղծել։

Այդ դրութիւնը շարունակւում է մինչև XII-րդ դարը երբ Հայաստանի հիւսիսային կողմում զօրեղանում է վրաց թագաւորութիւնը։

Վրացիք Գէորգի թագաւորի օրով, երկար պատերազմներ են մղում Դւինի, Անիի և Կարսի՝ մահմեդական իշխանութիւնների դէմ։ Նրանք Հայաստանի այդ մասը մահմեդականներից մաքրում են ու տիրում։

Դրանից յետոյ վրացիք իրանց զէնքը դարձնում են պարսից իշխանութեան դէմ։ Միքանի տարի պատերազմելուց յետոյ, նրանք գրաւում են նաև Հայաստանի արևելեան մասը։

Վրաց ազդեցութիւնը Հայաստանի վրայ զօրեղանում է մանաւանդ Գէորգիի դստեր՝ Թամար թագուհու ժամանակ։ Այդ թագուհին շատ լուսամիտ անձն լինելով, մեծ հոգ է տանում իր բոլոր հպատակների լուսաւորութեան ու բարեկեցութեան մասին։

Թամար թագուհու օրով Վրաստանում կառավարչական բարձր պաշտօններ էին վարում երկու հայազգի իշխաններ—Զաքարիա սպասալար և Իւանէ աթաբէկ։ Դրանք մեծ աջակցութիւն են ցոյց տալիս

Թամար Թագուհուն՝ Հայաստանը մահմեդականներից մաքրելու և երկիրը կառավարելու գործում։

---

## ԹԱԹԱՐՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ

### Ջինգիզ խան

Հայերի հանգիստ ու խաղաղ կեանքը վրաց իշխանութեան ներքոյ տևում է ընդամենը՝ մօտ 50 տարի։

XIII-րդ դարի սկիզբներում, Հայաստանը դարձեալ նոր և շատ աւելի սոսկալի արիւնհեղութիւնների ասպարէզ է դառնում։

Ամեն ինչ աւերող ու կործանող հեղեղի նման իրար յետևից Հայաստան են թափւում մի քանի միմեանցից աւելի բարբարոս և կիսավայրենի ասիական ցեղեր։ Այդ թափառական ցեղերը յայտնի էին՝ Թաթար, Թուրք, Թուրքմէն և այլ անուններով։

Դրանցից Թաթարները թէ ամենից զօրաւորն էի և թէ աւելի հեռուից էին գալիս։

Նրանց բնիկ հայրենիքը Սիբիրիայի և Չինա տանի միջև ընկած լեռնադաշտն էր։ Թաթարներ բազմաթիւ մանր ցեղերի բաժանուած, նահապետա կան կեանք էին վարում և կառավարւում էին իրան ցեղապետներով։ Իրանց ցեղապետներին Թաթարներ կոչում էն Խան։

XIII-րդ դարի սկիզբներում Մոնղոլ Թաթարն րի ցեղապետ Ջինգիզ խանը, որ մի շատ քաջ, փ ռասէր ու պատերազմասէր մարդ էր, բոլոր անջա Թաթարական ցեղերին միացնում և իր իշխանութեա տակ է առնում։

Ջինգիզ խանը տեսնելով, որ Թաթարները սա

տիկ բազմացել և այլևս անկարող են իրանց աղքատ հայրենիքում բարեկեցիկ կեանք վարել, բազմաթիւ ցեղակիցների գլուխն անցած, գնում է նոր, հարուստ ու ընդարձակ երկիրներ գրաւելու։

Կարճ ժամանակի մէջ Չինգիզ խանը, ամեն տեղ սոսկալի կոտորած ու հրդեհ տարածելով, նը-ւաճում է համարեա ամբողջ Ասիան։ Ասիայի բոլոր մեծ ու փոքր թագաւորներն ու իշխանները դաշըն-կից է անում և իրան հպատակեցնում։

Շատ ցեղեր, ինչպէս օրինակ՝ թիւրք, թիւրքմէն և ուրիշներ, Չինգիզ խանի սարսափներից զարհու-րած, թողնում փախչում են իրանց միջին ասիական հայրենիքից։ Սրանք բոլորն էլ թաթարներից ոչ պա-կաս սարսափներ տարածելով, Հայաստանի վրայով անցնում և տարածւում են Փոքր Ասիայի ու Միջա-գետքի զանազան կողմերը։

Չինգիզ խանը նւաճում է նոյնպէս ընդարձակ Պարսկաստանը և դրանից յետոյ, երբ պատրաստւում էր արշաւել Եւրոպա՝ մեռնում է։

---

## Թաթարները Հայաստանում

Չինգիզ խանի մահով թաթարական սոսկալի հեղեղը կանգ չէ առնում։

Նրա յաջորդ խանը հրաման է արձակում իր խառնիճաղանճ բանակին՝ շարունակել Չինգիզ խանի կիսատ թողած աշխարհակալութիւնը։

Թաթարները Չարմաղան անունով կատաղի զօ-րապետի առաջնորդութեամբ մտնում են Հայաստան (1236 թ.) և անասելի արհաւիրքներ տարածում ամեն կողմ։

Հետևեալ ձևով է նկարագրում ժամանակակից

հայ պատմագիրը թաթարների այդ արշաւանքը.—

«Սարսափելի տեսարան էր ներկայացնում այդ մեծագլուխ, անմօրուս, նեղ աչքերով, տափակաքիթ, կարճ ոտներով ու գիլ ձայնով բարբարոսների բազմութիւնը: Տղամարդիկ ձիերի վրայ նստած սրարշաւ գնում էին առջևից և սրով ճանապարհ բաց անում իրանց յետևից սայլերով եկող կանանց և երեխաների համար: Այդ բարբարոսները մորեխի նման ծածկեցին ամբողջ երկիրը, անխնայ կոտորելով ամեն հասակի ու սեռի մարդկանց: Կաթնակեր մանուկներին նրանք քարերին էին խփում, մատաղահաս աղջիկներին յափշտակում էին, իսկ հասակաւորներին սրի անցկացնում: Ոչ մայրերի արտասուքներին էին ողորմում և ոչ ծերերի սպիտակ մազերին խղճում: Հայոց աշխարհը դիակներով ծածկուեց և ոչ ոք չկար որ նրանց թաղէր, որովհետև կենդանի մնացողները փախչում, թագնուում էին բարբարոսներից»:

Այսպէս ամեն տեղ կոտորած ու կրակ սփռելով, թաթարները նուաճում են մէկը միւսի յետևից Հայաստանի բոլոր քաղաքներն ու բերդերը: Զարմաղանը այն քաղաքների բնակիչներին էր միայն խընայում, որոնք յօժարութեամբ հպատակութիւն էին ցոյց տալիս, խոստանալով տարեկան որոշ հարկ վըճարել և թաթարների թշնամիների դէմ պատերազմի գնալ:

Անիի հայ և օտար բնակիչները փորձում են դիմադրութիւն ցոյց տալ: Զայրացած Զարմաղանը պաշարում է Անին, վերցնում է նրան և սոսկալի անգթութիւններ կատարում: Անիի բոլոր տներն ու եկեղեցիները կողոպտուում են, իսկ բնակիչներին թաթարները միմեանց մէջ բաժանելով՝ կամ կոտորում և կամ գերի են տանում:

Կարսեցիք, Անիում կատարուած սարսափներից զրաւած, շտապում են քաղաքի բանալիները Չարմաղանին ուղարկել և հպատակութիւն ցոյց տալ։ Չնայելով դրան, արիւնարբու Թաթարները կարսեցիների հետ նոյն ձևով են վարւում, ինչպէս և անեցիների հետ (1239 Թ.)։

Չարմաղանի մահից յետոյ, նրա յաջորդ Բաչու Նոյավարի առաջնորդութեամբ Թաթարները շարունակում են իրանց արշաւանքը։ Նրանք մտնում են Կարնոյ գաւառը, որ այդ ժամանակ Իկոնիայի սուլթանի տիրապետութեան տակ էր գտնւում։ Սուլթանը փորձում է դիմադրութիւն ցոյց տալ նրանց, բայց չարաչար յաղթւում ու փախչում է։ Թաթարներն անցնում են Ծոփաց աշխարհը, ապատակում աւերում են ամբողջ Վասպուրականն ու Տուրուբերանը և մտնում Միջագէտք, ուր հարուստ ու բազմամարդ քաղաքները Թալանի և կոտորածի են մատնւում (1242 Թ.)։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿԸ ԹԱԹԱՐՆԵՐԻ ՕՐՈՎ

Համարեա թէ բովանդակ Ասիան քար ու քանդ անելուց և իրանց իշխանութեան տակ առնելուց յետոյ, Թաթարական խաները սկսում են իրանց լայնածաւալ տէրութեան վարչական գործերով զբաղուել։ Նրանք ամբողջ երկիրը բազմաթիւ մասերի են բաժանում և ամեն մի մասում մի յատուկ պաշտօնեայ ուղարկում։ Այդ պաշտօնեաների պարտաւորութիւնն էր նրանց յանձնուած երկիրը կառավարել, ժողովրդից հարկ հաւաքել և խանին ուղարկել։

Հայաստանի վրայ կառավարիչ է նշանակւում խանի եղբայրը՝ Հուլաղու անունով։ Սա Հայաստանի

բոլոր բնակիչներին ցուցակագրել է տալիս և տաս[ը]
տարեկանից վեր բոլոր մարդկանց, բացի կանանցի[ց]
ու հոգևորականներից, հարկի տակ է դնում (1254 թ.)։

Թաթարական իշխանության ժամանակ, Հայաստանում եղած հարկահանության մասին հետև[յալ] կերպով են պատմում ժամանակակից պատմիչները.—

«Ով հարկերի ծանրությունից փախչում էր, բռնում և սպանում էր։ Իսկ ով անկարող էր լինում նշանակած հարկը վճարել, պարտքի տեղ նրա ո[րդի]քոցն էին տանում։ Հարկը առնում էր փողով [և] մանաւանդ բերքերով. ամեն մի բնակիչ պարտավո[ր] էր տալ մէկ սպիտակ դրամ, 100 լիտր ցորեն, 5[0] լիտր գինի, 2 լիտր բրինձ, 3 հատ տոպրակ, 2 պարան, մի նետ, մի պայտ։ Բացի դրանից՝ անասուններ ունեցողը պարտավոր էր 20 սպիտակ դրամ վճարել և 20 անասունից մեկը խանին տալ։ Երկ[րի] ծովակները, լճերը և բոլոր հանքերը իշխողների սե[փ]փականությունն էին կազմում. Նրանցից օգտվել ցանկացողները պարտավոր էին նոյնպէս մի որոշ տուր[ք] վճարել»։

Թաթարական այդ ընդարձակ ու լայնատարա[ծ] տէրությունն իր միահեծան իշխանությունը պահպանում է ընդամենը՝ մօտ 100 տարի միայն։

Այդ ժամանակի ընթացքում կիսավայրենի թաթարները, իրանցից աւելի զարգացած պարսիկներ[ից] և արաբներից ազդուելով՝ մահմեդականություն են [ը]դունում։ XIII-րդ դարի կիսումն էլ նրանց ընդարձ[ակ] տէրությունը, արաբականի նման, սկսում է քայքաւել և բազմաթիւ ինքնագլուխ խանությունների բ[ա]ժանուել (1340 թ.)։

Հայաստանի արևմտեան կողմում իշխանությու[նը] Թիւրքմէն ցեղի ձեռքն է անցնում, արևելեան կ[ողմում]

մում՝ պարսիկների տիրապետութիւնն է վերահաստատում, իսկ հարաւում՝ քիւրդ բէկերն են զօրեղանում։

Հայաստանի ներսում էլ մի քանի մեծ ու փոքր իշխանութիւններ են կազմւում, որոնցից ոմանք Բաղդատում նստող Հուլաղուի յաջորդներին հարկատու, իսկ ոմանք էլ բոլորովին անկախ են մնում։

---

## ԻԿՈՆԻԱՅԻ ՍՈՒԼԹԱՆՈՒԹԵԱՆ ՔԱՅՔԱՅՒԵԼԸ ԵՒ ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԾԱԳՈՒՄԸ

Թաթարական տէրութեան անկումից մօտ կէս դար առաջ, քայքայւել ու մաս-մաս էր եղել նաև Իկոնիայի սելջուկեան տէրութիւնը։



Նկար 25. Օսման.

Այնտեղ XIII րդ. դարի սկիզբներում, սկսում է զօրեղանալ մի այլ ասիական ցեղ՝ Թիւրքերը, որոնք իրանց պետութեան հիմնադիր Օսմանի անունով կոչւում են Օսմանցիներ։

Մինչև Թաթարների արշաւանքը Թիւրքերը ապրում էին Միջին Ասիայում (Թիւրքեստանում)։ Չինգիզ խանի արշաւանքի ժամանակ նրանց ցեղապետ Սուլէյմանն իր ընտանիքով ու բազմաթիւ մարդկանցով փախչում է և գալիս հաստատւում Բարձր Հայքում։

Նրա մահից յետոյ, իր Էրթօղրուլ որդին գնում բնակւում է Իկոնիայի սելջուկ սուլթանի երկրում և նրա մօտ ծառայութեան մտնում։ Իր հաւատարմութեան և քաջութեան համար, նա Ալայէդդին սուլթանի սիրելին է դառնում և շատ բարձր դիրքի է հասնում։ Միևնոյն ժամանակ Էրթօղրուլը շատ հարստանում և անհագին կալւածների տէր է դառնում։ Ի... որդին Օսմանը էլ աւելի է ընդարձակում իր հայրենական կալւածները և աւելի ևս զօրեղանում։

Այդ ժամանակ բիւզանդական կայսրութիւնը բ... ւականին թուլացած լինելով, Օսմանը պատերազմ... է յոյների դէմ և մի քանի ամուր քաղաքներ գր... ւում։ Ալայէդդին սուլթանի մահից յետոյ, երբ ս... ջուկեան տէրութիւնը բաժան-բաժան է լինում, Օսմ... իրան ինքնագլուխ թագաւոր է հռչակում և այդ... սով սելջուկեան տէրութեան փլատակների վրայ հի... նում Օսմանեան տէրութիւնը (1300 թ.), որը մի... այսօր էլ գոյութիւն ունի։

---

## ԼԱՆԿԹԱՄՈՒՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

Չինգիզ խանի հիմնած լայնատարած տէրութե...

քայքայումից մոտ կէս դար յետոյ, Հայաստանը մի
նոր աղէտալի թաթարական արշաւանքի է ենթարկ-
ւում։

Ջինգիզ խանի շառաւիղներից մէկը, Լանկթամուր
ամ Թիմուրլէնկ (կաղ Թիմուր) անունով, մտածում
նորից վերականգնել թաթարական տէրութիւնը։
ա Միջին Ասիայի թափառական թաթարներից մի
որ ու ահռելի արշաւանք է կազմակերպում։ Սմըր-
անդ մայրաքաղաքից Լանկթամուրը դուրս գալով,
ում, նուաճում է այն բոլոր ազգերն ու երկիրնե-
ը, որ մի ժամանակ թաթարական տիրապետութեան
տակ էին։

Այս թաթարական արշաւանքը նոյնպէս խիստ
ազետաբեր է լինում այն բոլոր տեղերի համար, ուր
ոտք է դնում Լանկթամուրը։ Պարսկաստանն ու Հընդ-
աստանը ողողւում են արիւնով, մարդիկ անխնայ
ոտորւում և կտրուած գլուխներից բուրգեր են կազ-
ւում։ Մարգաշատ ու հարուստ քաղաքները նորից
ործանւում ու կրակի են մատնւում։

Լանկթամուրը, այսպէս տակն ու վրայ անելով
մբողջ Պարսկաստանը, Հնդկաստանը, Ռուսաստանն
ւ Ասորիքը՝ գալիս մտնում է Հայաստան (1387 թ.)։

Շատ հայեր առաջուց արդէն լսած լինելով Լանկ-
թամուրի կատարած սոսկումները, նախօրօք թողել,
ախել էին լեռներն ու անմատչելի տեղեր։ Սակայն
յդպիսով նրանք չեն փրկւում թաթարական աղէտ-
երից։ Մօտ հինգ տարի շարունակ Լանկթամուրի
առնիճազանճ զօրքը անպատմելի սարսափներ է տա-
ածում Հայաստանի բոլոր կողմերում։ Բազմաթիւ
աղաքներ ու գիւղեր կողոպտւում ու կրակի են մատ-
ւում, բնակիչներին կոտորում կամ գերի են տա-

նում, իսկ կենդանի մնացածներն էլ փախչում, լեռներն են ապաստանում։

Լանկթամուրի զայրոյթին ու կատաղութեան զոհերն եղան մանաւանդ Վան և Արճէշ քաղաքները։

Այս բոլորի հետևանքն այն է լինում, որ երկիրը մի քանի տարի անմշակ մնում է, մարդիկ վար ու ցանքս չեն անում, ուստի և թաթարական արհաւիրքներին հետևում է սոսկալի սովը (1393 թ.)։ Պատմում են, որ այդ սովի ժամանակ, մարդիկ ուտելու ոչինչ չը գտնելով, սկսել են միմեանց միս ուտել. այրը կերել է իր կնոջը, իսկ ծնողները՝ իրանց հարազատ զաւակներին։

Ամբողջ Մեծ Հայքը նուաճելուց յետոյ, Լանկթամուրն անցնում է Փոքր Հայք։ Թաթարների այդտեղ կատարած գազանութիւնները գերազանցում են մինչև այդ ժամանակ բոլոր եղածները։ Պատմում են, որ Սեբաստիա քաղաքն առնելուց և ամբողջովին հիմնայատակ անելուց յետոյ, Լանկթամուրը մարդկանց ու կանանց կապել է տուել ձիերի պոչերից և բաց թողել դաշտի մէջ. ապա մանուկներին էլ ձիերի ոտքերի տակ կոխոտել տուել և մօտ 4,000 հայ զինուոր էլ կենդանի թաղել։ Այդ կենդանի թաղած զինուորների տեղը կոչուել է սև հողեր։

Սեբաստիայից Լանկթամուրը մտնում է Օսմանեան երկրի սահմանները, որն արդէն մի զօրաւոր տէրութիւն էր։

Դրանից առաջ օսմանցիք ոչ միայն Իկոնիայի սուլթանութեան ամբողջ երկիրներին էին տէր դարձել, այլ և նուաճել էին բիւզանդական շատ երկիրներ՝ թէ Փոքր Ասիայում և թէ եւրոպական սահմաններում։

Լանկթամուրի Օսմանեան երկիրը մտած միջոցին

սուլթան Բայազէդը Կոստանդնուպոլսի պաշարումով էր զբաղուած։ Լանկթամուրի գալը լսելուն պէս, Բայազէդը խոյս թողնում է բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքի պաշարումը և գալիս է Լանկթամուրի առաջը կտրելու։ Սակայն Լանկթամուրը յաղթում է, բռնում օսմանեան սուլթանին և փակում երկաթէ վանդակի մէջ։ —

Այդ փառաւոր յաղթութիւնից յետոյ, Լանկթամուրն ահագին աւարով ու բազմաթիւ գերիներով վերադառնում է Սմրղանդ, ուր և շատ ժամանակ չանցած մեռնում է (1405 թ.)։

---

## Հայաստանը Թաթարներից յետոյ

Լանկթամուրի մահից յետոյ, նրա մեծ տէրութիւնը նոյնպիսի արագութեամբ է քայքայւում, ինչպէս որ քայքայւել էր Չինգիզ խանի տէրութիւնը։

Բոլոր նւաճւած ազգերն ու ցեղերը միմիանց յետևից գլուխ են բարձրացնում և նորից անկախութիւն ձեռք բերում։

Այս շրջանում Հայաստանը դարձեալ անվերջ պատերազմների ասպարէզ է դառնում՝ Լանկթամուրի յաջորդների և ապստամբ քիւրդ, թիւրքմէն և այլ ցեղապետների միջև։ Դրանցից ամենից աւելի զօրեղանում է Միջագետքի թիւրքմէն Ուզուն-հասանը, որը պարսից գահը բարձրանալով, Պարսկաստանի ու Հայաստանի միահեծան տէրն է դառնում (1468 թ.)։

Այդ ժամանակից սկսած՝ պատերազմների մի նոր շարք է սկսւում Հայաստանի հողի վրայ, նման այն պատերազմների, որ մի ժամանակ տեղի ունէին պարսից տէրութեան և բիւզանդական կայսրութեան միջև։

Այժմ, սակայն, այլեւս չըկար բիւզանդական կայսրութիւնը։ Օսմանցիք, Մեհեմմէդ II սուլթանի օրով, արդէն գրաւել էին Կոստանդնուպօլիսը (1453 թ.) և իրանց մայրաքաղաքն այնտեղ տեղափոխելով, տէր էին դառել այդ կայսրութեան բոլոր երկիրներին։ Այժմ օսմանցիք էին, որ բռնել էին Բիւզանդիայի տեղը և շարունակում էին նոյն պատերազմները։

Այդ կործանարար պատերազմները փոփոխական բախտով տեւում են աւելի քան երկուսուկէս դար։ Այդ շրջանում Հայաստանը երբեմն պարսից, երբեմն օսմանցոց տիրապետութեան տակ է ընկնում։

Հայ ժողովուրդը այդ պատերազմների ժամանակ նոյնքան նեղութիւններ ու տարապանքներ է կրում, որքան թաթարական և այլ արշաւանքների ժամանակ։ Բացի թալանելուց, կրակի ու սրի ճարակ դառնալուց, հայերը մեծ բազմութեամբ ստիպուած էին մի քանի անգամ, կամովին կամ բռնի կերպով, իրանց հայրենիքը թողնել և օտար երկիրներ գաղթել։ Եւ այդ գաղթականութիւնները աւելի ու աւելի էին նուազեցնում հայ ժողովրդի թիւը, քան բոլոր պատերազմներըն ու կոտորածները։

---

## Շահ Աբաս

Պարսկա-թիւրքական պատերազմների շրջանում տեղի ունեցած գաղթականութիւններից, ամենից նշանաւորը պարսից շահ Աբասի օրով կատարուածն է։

Երբ շահ Աբասը պարսից գահի վրայ է բարձրանում, ամբողջ Հայաստանն արդէն օսմանցիների իշխանութեան տակ էր ընկել։

Օսմանցիք այնպիսի խիստ հալածանքներ են սկսում հայերի դէմ, որ սրանք, ահագին բազմու-

թեամբ գաղթում են զանազան օտար երկիրներ։ Նրանցից շատերը, ինչպէս և Մելքիսեդեկ կաթողիկոսը, անցնում են Պարսկաստան և Աբաս շահի հովանաւորութեան տակ մտնում։

Ինչպէս որ Մեծն Տիգրանը չափազանց մեծ նշանակութիւն էր տալիս յոյն և ուրիշ լուսաւոր ազգերի գաղթականներին, նոյնպիսի նշանակութիւն էլ շահ Աբասն էր տալիս հայ գաղթականներին։ Նա կամենում էր Պարսկաստանի վաճառականութիւնն ու արհեստները հայերի միջոցով զարգացնել։

Այդ պատճառով իր հովանաւորութեանն ապաւինող հայերին՝ նա շատ սիրով է ընդունում և բնակութեան տեղեր է տալիս։

Իրանց յօժար կամքով Պարսկաստան գաղթած հայերի թիւը, սակայն, շատ էլ մեծ չէր, ուստի շահ Աբասը մտածում էր յարմար առիթից օգտւելով աւելի մեծ չափերով իրագործել իր վաղուցւայ նպատակը։

Շատ ժամանակ չանցած, շահ Աբասը, օգուտ քաղելով թէ հայերի և թէ քիւրդ բէկերի դժգոհութիւններից, որոնք նոյնպէս գանգատաւոր էին օսմանցիներից, բազմաթիւ զօրքով յարձակւում է Ատրպատականի վրայ։ Նա գրաւում է Թաւրիզը, մտնում է Հայաստան և տիրում Երևանին։ Այդտեղից շահ Աբասը ասպատակներ է ցրւում ամեն կողմ, որոնք ուր որ հասնում են, ամեն ինչ թալանում ու քանդում են։ Նրանք շահի կարգադրութեամբ բազմաթիւ ժողովուրդ են գերում և Պարսկաստան տեղափոխում։

Իր արշաւանքը շարունակելով, շահ Աբասը հասնում է մինչև Կարս։ Այստեղ նա իմանում է, որ օսմանցիք ահագին պատրաստութեամբ գալիս են իր վրայ։ Չըվստահանալով իր ոյժին, թէ պիտի կարո-

դանայ զօրաւոր թշնամուն դիմադրել, շահ Աբասը որոշում է յետ նահանջել։

## Հայերի գաղթը

Իր նահանջի ժամանակ, շահ Աբասը բազմաթիւ հայ գաղթականներ իր հետ Պարսկաստան է տանում։

Նա Հայաստանի արևելեան զանազան գաւառները զօրագնդեր է ուղարկում, հրամայելով, որ հայ ժողովրդին իրանց ամբողջ ընտանիքներով և ստացւածքներով Պարսկաստան գաղթեցնեն։ Նա խստիւ պատւիրում է իր զօրավարներին, որ գաղթել չցանկացողներին անխնայ սպանեն, իսկ գաղթողների էլ տունն ու տեղը կրակի տան և այրեն։

Այդ եղանակով շահ Աբասը մտածում էր Ատրպատականի սահմանակից երկիրները բոլորովին աւերակ դարձնել, որպէսզի օսմանցիք հնարաւորութիւն չունենան այդ հարուստ ու բարեբեր երկրին մօտենալու և նրան յետ խլելու։

Օսմանցիների արագութեամբ մօտենալու պատճառով, գաղթը շատ շտապ կերպով է կատարւում։ Գաղթողները հազիւ են կարողանում իրանց ունեցածի մի չնչին մասը հետները վերցնել. Մնացած բոլոր հարստութիւնը կրակի են մատնւում։ Օսմանցիների առջևից շտապով յետ նահանջող պարսիկները, հայ գաղթականներին քշում են ոչխարների հօտի նման, իսկ յետ մնացողներին, անխնայ կերպով սպանում ու կոտորում են։

Մանաւանդ սոսկալի է լինում գաղթականների Արաքս գետից անցնելը։ Գետի վրայ կամուրջ չկար, պիտի անցնէին լաստերով։ Օսմանցիք վրայ էին հաս-

նում, ուստի հարկավոր էր շտապել։ Նկատելով այդ, շահ Աբասը հրամայում է լաստերով միայն զորքին փոխադրել, իսկ գաղթականներին ստիպել, որ լողալով անցնեն։

Բազմաթիվ հայեր, մանավանդ կանայք ու երեխաները, որոնք լողալ չգիտեին, զոհ են գնում վարարած Արաքսի ալիքներին։



Նկար 26. Շահ Աբաս

Այդ նույն ժամանակ շահ Աբասը գաղթեցնում է նաև Արաքսի ափին գտնվող հարուստ Ջուղա քաղաքի բնակիչներին։ Պարսիկները Ջուղան էլ են կրակի մատնում և այրում (1605 թ.)։

Բազմաթիվ նեղություններով ու տառապանքներով Պարսկաստան տարված հայ գաղթականներին շահ Աբասը շատ լավ վերաբերմունք է ցույց տալիս։ Նա

նրանց բնակեցնում է իր Սպահան մայրաքաղաքում ու նրա շրջակայքում, իսկ Ջուղայեցիներին՝ յատուկ տեղ է տալիս Սպահանի հարաւային կողմում, ուր նրանք մի նոր քաղաք են հիմնում Նոր-Ջուղա անունով։

Բացի դրանից՝ շահ Աբասն իր տարած հայ գաղթականներին, ինչպէս և Պարսկաստանում ապրող բոլոր հայերին, թէ կրօնի կատարեալ ազատութիւն և թէ ամեն տեսակ արտօնութիւններ է տալիս։ Այդ բոլորի շնորհով հայերը, մանաւանդ Նոր-Ջուղայեցիք, կարճ ժամանակի մէջ նորից շատ հարստանում և բարեկեցիկ վիճակի տէր են դառնում։

## ՂԱՐԱԲԱՂԻ ՄԵԼԻՔՆԵՐԸ

Պարսից տիրապետութեան օրով, Հայաստանը, ինչպէս և ամբողջ Պարսկաստանը, բազմաթիւ մասերի էր բաժանուած, որոնցից ամեն մէկը, Հայաստանի նախկին նախարարութիւնների նման, մի-մի առանձին և կիսանկախ իշխանութիւն էր կազմում։ Պարսկական այդ իշխանութիւնները կոչւում էին խանութիւններ՝ իսկ իշխանները՝ խաներ։

Ամեն մի խան, հայ նախարարների նման, իր երկրի սահմաններում կատարեալ ինքնիշխան էր։ Նա պարտաւոր էր միայն պարսից թագաւորին մի որոշ տուրք վճարել և իր զօրքով պատերազմի ժամանակ նրան օգնել։

Այդ կիսանկախ պարսից խանութիւնների սահմաններում ապրող բոլոր հայերը, սակայն, միևնոյն վիճակի մէջ չէին գտնւում։ Ղարաբաղի (Սիւնեաց և Արցախի նահանգները) հայերը, պարսից Տիրապետութեան տակ ընկնելուց յետոյ, կարողացել էին

իրանց լեռնոտ երկրի շնորհով, գեռ ևս իրանց կիսանկախ դրութիւնը պահպանել։ Նրանք ունէին իրանց հայ իշխանները, որ կոչւում էին մելիքներ։

Ամեն մի հայ մելիք, իր փոքրիկ երկրի սահմաններում, նոյնպիսի ինքնիշխան տէր էր, ինչպէս և պարսիկ խանը՝ իր աւելի ընդարձակ երկրում։

Մելիքն էր կառավարում իր հպատակ ժողովրդին և միջնորդ հանդիսանում սրա և իրանից աւելի մեծ իշխանութիւն ունեցող խանի միջև։ Ինչպէս որ խանն էր պարտաւոր շահին տուրք վճարել և օգնել պատերազմի ժամանակ, այնպէս էլ մելիքը պարտաւոր էր տուրք տալ և օգնել խանին։

Հայ մելիքների իշխանութիւնը ժառանգական էր. հօր մահից յետոյ մելիք էր դառնում անդրանիկ որդին, իսկ միւս եղբայրները կոչւում էին բէկեր։

Ղարաբաղի հայ մելիքութիւնները թւով հինգ էին որոնց բնակիչների ամբողջ թիւը 300,000-ի էր հասնում։ Դրանցից երկու մասը հայեր էին, իսկ մի մասը՝ Թուրքեր կամ պարսիկներ։ Իւրաքանչիւր մելիք իր բերդն ու ամրոցն ունէր, և պէտք եղած ժամանակ նա պաշտպանում էր իր փոքրիկ զօրագունդի օգնութեամբ։

---

## Մելիքների ձգտումները եւ Մեծն Պետրոս

Պարսից խաները, հայ նախարարների նման, համարեա թէ երբէք հաշտ չէին ապրում միմեանց հետ։ Նրանք կամ իրարու դէմ կռւում և կամ մի քանիսը միանալով՝ շահի դէմ էին ապստամբում։

Այդ անվերջ կռիւներն ու արտաքին թշնամիների յարձակումները, XVIII-րդ դարի սկիզբներում

մեծ շփոթություններ էին առաջացրել ամբողջ Պարսկաստանում, որոնց պատճառով պարսից շահի իշխանությունը սաստիկ թուլացել էր։

Ահա հենց այդ թուլությունից ու շփոթություններից կամենում են օգուտ քաղել Ղարաբաղի հայ մելիքները։ Նրանք մտածում են մի քրիստոնեայ տէրութեան օգնութեամբ թօթափել պարսից լուծը և մի անկախ հայկական իշխանութիւն ստեղծել։

Այդ նպատակով նրանք մի գաղտնի դեսպանութիւնի են ուղարկում Եւրոպա։ Դեսպանութեան գլուխն էին Հնդկաստանցի մի հայ՝ Իսրայէլ Օրի և մի վարդապետ՝ Մինաս անունով։

Դեսպանութիւնը մի քանի եւրոպական իշխանների ու թագաւորների հետ տեսակցելուց և օժանդակութեան խոստումներ ստանալուց յետոյ, անցնում է Պետերբուրգ, ուսայց Մեծն Պետրոս կայսեր աջակցութիւնն և խնդրելու (1706 թ.)։

Ռուսաստանը Մեծն Պետրոսի օրով սկսել էր սաստիկ զօրեղանալ ու ընդարձակւել։ Այդ լուսամիտ կայսրն անձամբ ճանապարհորդած լինելով եւրոպական զանազան երկիրներում, տեսել էր, թէ ինչպէս իր երկիրն ու ժողովուրդը սաստիկ յետ են մնացել եւրոպական լուսաւորութիւնից։ Ռուսաստան վերադառնալով, նա սկսել էր բռնի միջոցներով իր երկրի բոլոր հին կարգերն ու սովորութիւնները տապալել և եւրոպական կարգ ու կանոն մտցնել։

Մեծն Պետրոսի ամենամեծ ձգտումներից մէկն էլ այն էր, որ Ռուսաստանը նոյնպէս ծովային հաղորդակցութիւններ ու նաւատորմիղ ունենայ։ Մինչ այդ ժամանակ Ռուսաստանի սահմանները ծովերից դեռ շատ հեռու գտնւելով, ռուսները զուրկ էին մնացել դուրսի աշխարհի հետ հաղորդակցելու հեշտ մի-

*չոյններից։ Դրա համար էլ Ռուսաստանը, մինչև Մեծն Պետրոսի թագավորությունը, մի տեսակ փակված կյանք էր վարում և անկարող՝ օտարների հետ յաճախ շփվելով, արագությամբ առաջադիմել։*

*Իր երկիրը այդ դրությունից դուրս հանելու մըտ-*



*Նկար 27. Մեծն Պետրոս*

*քով, Մեծն Պետրոսը մտածում էր Ռուսաստանի սահմանները այն աստիճան ընդարձակել, որ նա թե հյուսիսից և թե հարավից մոտ լինի ծովերին։ Հյուսիսում արդէն ընդարձակ նվաճումներ կատարելով, նա մոտեցել էր Բալտիկ ծովին և նրա մոտ մի նոր քա-*

ղաք հիմնել՝ Պետերբուրգ անունով։ Այդտեղ էլ նա Մոսկուայից տեղափոխել էր իր գահը։

Սակայն դրանով լրացած չէր Մեծն Պետրոսի ընդարձակ ծրագիրը։ Նա ցանկանում էր հարաւից էլ Սև ու Կասպից ծովերին մօտենալ, որպէսզի այդ կողմերից նոյնպէս Ռուսաստանը արտաքին աշխարհի հետ հաղորդակցութեան միջոցներ ունենայ։

Ահա այդպիսի ծրագիրներով տոգորուած Մեծն Պետրոսին է ներկայանում Ղարաբաղի մելիքների ուղարկած դեսպանութիւնը։

Մեծն Պետրոսը շատ ուրախութեամբ և սիրով է ընդունում հայ դեսպաններին, մտածելով, որ ինքը կարող է օգուտ քաղել այդ հանգամանքից և հայերի օգնութեամբ նուաճել պարսիկներից Կասպից ծովի արևելեան ու հարաւային երկիրները։

Նա ամեն տեսակ խոստումներ է տալիս հայ պատգամաւորներին, և Իսրայէլ Օրիին՝ դեսպանի պատրուակով ուղարկում է Պարսկաստան, այնտեղի գործերի դրութիւնն իմանալու և հայերի ապստամբութիւնը պատրաստելու համար։

Ի. Օրին Պարսկաստանի գործերին մօտիկից ծանոթանալուց և հայ իշխանաւորների հետ տեսակցելուց յետոյ, վերադառնում է Պետերբուրգ ու յայտնում Մեծն Պետրոսին, թէ հայերը պատրաստ են ապստամբութեան և միայն մի նշանի են սպասում։

---

## Դաւիթ բէկ

Այն ժամանակ, երբ դեռ հայ դեսպանները բանակցութեան մէջ էին Մեծն Պետրոսի հետ, Պարսկաստանում մեծ շփոթութիւններ ու խառնակութիւն-

ներ են ընկնում։ Մի կողմից կովկասեան լեռնական-ներն են ասպատակում հայկական նահանգները։

Այդ շփոթութիւնից օգտուելով, Մեծն Պետրո-սը իր զօրքով մտնում է Պարսից տէրութեան սահ-մաններն ու գրաւում Դերբենտը, Բագուն ու Գիլանը։

Ղարաբաղի մելիքները, առիթը շատ յարմար հա-մարելով և վստահանալով ռուսաց կայսրի տուած խոս-տումներին, որոշում են ապստամբութեան դրօշակ բարձրացնել։ Նրանք դիմում են իրանց հայրենակից Դաւիթ բէկին, որ Վրաստանում մեծ անուն էր հա-նել, իբրև քաջ և փոռձառու զօրապետ, և հրաւիրում նրան հայկական շարժման գլուխ կանգնել։

Դաւիթ բէկը մի խումբ կտրիճ հայերի հետ գա-լիս է և սկսում գործել։

Կարճ ժամանակի մէջ Դաւիթ բէկի շուրջն են հաւաքւում, հետզհետէ, աւելի քան մի քանի հազար զինուած հայեր, որոնք իրանց հմուտ հրամանատարի առաջնորդութեամբ, մի շարք փառաւոր յաղթութիւն-ներ են տանում թէ Ղարաբաղը ասպատակող լեռնա-կան ցեղերի և թէ պարսից խաների դէմ։

Դաւիթ բէկն իրան բնակութեան տեղ է ընտրում Ցալիձոր աւանը, ուր մի ամուր բերդ շինելով, այն-տեղից է շարունակում իր պատերազմական գործո-ղութիւնները (1724 թ.)։

Շրջակայ պարսից խաները, Ղարաբաղի հայերի յաջողութիւնները տեսնելով, միանում են և հայերից շատ աւելի մեծ ույժով յարձակւում Հալիձորի վը-րայ, սակայն յաղթւում են և մեծ կորուստով յետ քաշւում։

Այդպէս ամբողջ Սիւնեաց երկիրն ասպատակներից մաքրելով ու խաների զօրութիւնը խորտակելով, Դաւիթ բէկն իր իշխանութիւնն է հաստատում այդ երկրում։

Այդ միջոցին Պարսկաստանի վրա՛յ են յարձակւում նաև օսմանցիք։

Սրանք անարգել առաջ գնալով, հետզհետէ գրաւում են Երևանը, Նախիջևանը, Թաւրիզն ու Համադանը։ Օսմանցիք մի զօրաբաժին էլ ուղարկում են Դաւիթ բէկի վրայ։

Հայերը, մասամբ օսմանցիների զօրութիւնից սարսափած, մասամբ էլ Դաւիթ բէկի իշխանութիւնից դժգոհ, երես են դարձնում նրանից և մինչև իսկ նրա թշնամիների կողմն են անցնում։ Դաւիթ բէկին հաւատարիմ են մնում ընդամենը մօտ 450 հայեր։

Ձգնայելով այդ չնչին ոյժին, Դաւիթ բէկն ու իր կողմնակիցները այնպիսի քաջութեամբ ու հմտութեամբ են կռւում օսմանցիների անհամեմատ աւելի մեծ զօրքի դէմ, որ վերջնական յաղթութիւնը հայերի կողմն է մնում։ Օսմանցիք շիոթւած փախուստի են դիմում։

Երբ պարսից շահը լսում է Դաւիթ բէկի տարած փառաւոր յաղթութիւնները օսմանցիների դէմ, շատ թանկագին ընծաների հետ՝ մի հրովարտակ է ուղարկում, որով հաստատում է նրան Սիւնեաց իշխանութեան մէջ, տալով նրան իշխանաց իշխանի տիտղոսը և իր անունով դրամ կտրելու իրաւունք։ Սակայն Դաւիթ բէկն այդ արտօնութիւնները երկար չէ վայելում և մեռնում է (1728 թ.)։

Դաւիթ բէկի մահից յետոյ, Սիւնեաց երկրի անկախութիւնն էլ հազիւ մէկ տարի է տևում։ Օսմանցիք կրկին անգամ և աւելի մեծ զօրքով յարձակւում են Հալիձորի վրայ, առնում են բերդը և բոլոր բնակիչներին սրի անցկացնում։

Թէ այդ ժամանակ և թէ դրանից առաջ հայերը մի քանի անգամ դեսպանութիւններ են ուղարկում

Պետերբուրգ և ռուսաց կայսրից օգնութիւն խնդրում օսմանցիների դէմ։ Նրանց բոլոր խնդիրները, սակայն, ապարդիւն են անցնում։ Պետրոս Մեծը այդ ժամանակ շատ աւելի կարևոր գործերով զբաղուած, ոչ միայն անկարող էր հայերին օգնել, այլ և իր գրաւած Կասպից ծովեզերեայ երկիրներից յետ էր քաշել իր զօրքը։ Այդ երկիրների գրաւումը նա յետաձգել էր մի ուրիշ աւելի յարմար ժամանակի։

---

## Ռուսական նուաճումները Հայաստանում

Մեծն Պետրոսից ոչ մի օգնութիւն չըստանալը բոլորովին չէ յուսահատեցնում պարսից և օսմանցոց լուծերի տակ տառապող հայերին։ Նրանք Մեծն Պետրոսի յաջորդների օրով էլ շարունակում են բանակցութիւններ վարել և օգնութիւն խնդրել ռուսաց թագուհիքից։

Պետրոսի յաջորդները երկար ժամանակ հնարաւորութիւն չունէին Հայաստանի գործերով զբաղուելու։ Նրանք առայժմ, օգուտ քաղելով հայերի դէպի ռուսները ունեցած մեծ համակրութիւնից, բազմաթիւ հայեր են գաղթեցնում դէպի Ռուսաստան։ Այդ գաղթականներին նրանք ընդարձակ հողեր ու շատ արտօնութիւններ տալով, բնակեցնում են Ռուսաստանի հարաւային մասերում—Նոր Նախիջևան, Ղզլար, Մոզդոկ, Աստրախան և այլն։

XVIII-րդ դարի վերջերին միայն ռուսները մի շարք պատերազմներ են սկսում նախ պարսիկների ապա օսմանցիների դէմ և միմեանց յետևից հետըզհետէ գրաւում ամբողջ Վրաստանն ու Հայաստանի մի քանի նահանգները։

Այսպէս՝ պարսիկների հետ ունեցած վերջին պատերազմով, ռուսները գրաւում և տէր են դառնում Հայաստանի այն մասին, որ գտնւում է Արաքս և Կուր գետերի միջև, այն է՝ Երևանի և Գանձակի նահանգներն ու ամբողջ Ղարաբաղը (1827 թ.)։

Օսմանցիներից էլ նրանք առնում են Ախալցխան և Ախալքալաքը՝ իրանց շրջակայ գիւղերով (1828 թ.) ու Կարսի ընդարձակ շրջանը (1877 թ.)։

Այդպիսով Հայաստանը XIX-րդ դարի մէջ երեք մասի է բաժանւում. Մեծ Հայքի մեծագոյն մասը և ամբողջ Փոքր Հայքը մնում են օսմանցիների տիրապետութեան տակ, Մեծ Հայքի երկրորդ մասը անցնում է ռուսների ձեռքը, իսկ նրա երրորդ և ամենափոքր մասը՝ մնում է պարսիկներին։

Թէ պարսիկների և թէ օսմանցոց հետ եղած բոլոր պատերազմների ժամանակ, հայերը բազմաթիւ ծառայութիւններ ու մեծ աջակցութիւն են ցոյց տալիս ռուսներին։ Բացի այն, որ նրանք ամեն տեղ ռուսաց զօրքերի համար ուղեցոյցների դեր էին կատարում, բազմաթիւ կամաւորներ էլ, մտած ռուսաց բանակի մէջ, անձնւիրաբար կռւում էին իրանց վաղեմի թշնամիների դէմ։

Վերջին ռուս—պարսկական պատերազմի ժամանակ շատ մեծ դեր է կատարել ու մեծ ծառայութիւններ մատուցել ռուսներին՝ այն ժամանակւայ Վրաստանի հայոց առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոս Աշտարակեցին։ Այդ բարձրաստիճան հոգևորականը, ռուսաց բանակի գլխաւոր հրամանատար Պասկևիչի հետ միացած, ձիու վրայ նստած և խաչը ձեռքին առաջնորդում էր հայ կամաւորների զօրագունդը։ Նա շարունակ յորդորում էր հայերին՝ իրանց ձեռքից եկած օգնութիւնը չը խնայել ռուսներին։

Թէ ռուս-պարսկական և թէ ռուս-թրքական պատերազմների միջոցին, ռուսաց բանակում ծառայութեան մէջ էին գտնւում շատ հայ զօրավարներ։ Դրանք իրանց քաջութեան և պատերազմական տաղանդի շնորհով, ռուսաց նշանաւոր զօրավարների շարքն են դասւում։ Բարձրաստիճան այդ հայ զօրավարներն էին՝ իշխաններ Մադաթեան, Լօրիս-Մելիքեան, Շոլկովնիկեան, Լազարեան, Տէր-Ղուկասեան և ուրիշներ։

Հայերի կողմից ռուսներին ցոյց տւած օգնութիւնն ու աջակցութիւնը սաստիկ զրգռում ու կատաղեցնում է թէ պարսիկներին և թէ օսմանցիներին։ Նրանք սկսում են թշնամաբար վերաբերւել հայերին և խիստ հալածանքներ են հանում նրանց դէմ։

Այդ հալածանքներից ազատւելու և քրիստոնեայ ու քաղաքակիրթ Ռուսաստանի տիրապետութեան տակ հանգիստ կեանք վարելու համար, բազմաթիւ հայեր գաղթում են Հայաստանի ռուսական բաժինը։ Այդ գաղթականութիւնների շնորհով ռուսական Հայաստանի հայ բնակչութիւնը հետզհետէ բազմանում է։

Այսպէս 1827 թւականի ռուս-պարսկական պատերազմից յետոյ, Պարսկաստանից ռուսաց սահմանները են գաղթում աւելի քան 40,000 հայեր։ Դրանք բնակութիւն են հաստատում Նախիջևանի և Երևանի գաւառներում։ 1728 թւականի ռուս-թրքական պատերազմից յետոյ, Թիւրքիայից նոյնպէս ռուսական սահմանները են գաղթում 90,000 հայեր, որոնք վերաբնակւում են Ախալցխայի և Ախալքալաքի գաւառներում։ Թիւրքիայից մեծ բազմութիւն էլ գաղթել է 1877 թ. պատերազմից յետոյ, որոնք մեծ մասամբ բնակւել են Կարսի և Երևանի շրջաններում։

---

## ՌՈՒՍԱՀԱՅՔ

Հայերը երեք տարբեր քաղաքակրթութիւն ունեցող ազգերի տիրապետութեան տակ ընկնելուց յետոյ, իրանց բարեկեցութեան, զարգացման ու քաղաքակրթութեան աստիճանով սկսում են հետզհետէ միմեանցից բոլորովին տարբերուել։

Հայ ազգի այդ երեք հատուածներից շատ աւելի բախտաւոր վիճակ են վայելում քաղաքակիրթ Ռուսաստանի բաժնում ապրող հայերը։ Սրանք կեանքի և ստացւածքի ապահովութիւն վայելելով, անձնատուր են լինում խաղաղ աշխատանքի և կարճ ժամանակի մէջ բարեկեցիկ դրութեան են հասնում։ Այդ բանին չափազանց նպաստում է և այն, որ ռուսները Կովկասին, ինչպէս և Անդրկովկասի հայկական նահանգներին տիրանալով՝ հաղորդակցութեան յարմար միջոցներ են հաստատում (հեռագիր, երկաթուղի և խճուղի)։ Այդպիսով ազգաբնակութեանը միջոց է տրւում իր արդիւնաբերութիւնն ու վաճառականութիւնը զարգացնելու։

Հաղորդակցութեան այդ յարմար միջոցների շնորհով, ռուսաց տիրապետութեան օրով, Կովկասի առևտուրն և արդիւնագործութիւնը այնպիսի մեծ չափերի են հասնում, որպիսին երբէք չէր եղել նախորդ դարերում։

Շնորհիւ այն հանգամանքի, որ Կովկասի քաղաքներից ամենից առաջ վրաց նախկին մայրաքաղաք Թիֆլիսն է երկաթուղիով կապւել մայր-Ռուսաստանի հետ, հէնց Թիֆլիսն էլ ամենից շուտ է զարգացել ու բազմամարդ դարձել։ Հայերը, իբրև առևտրական գործերի մէջ խիստ հմուտ ժողովուրդ, շատ վաղ գնահատելով Թիֆլիսի դիրքը, մեծ բազմութեամբ

ղանազան գաւառներից տեղափոխուել ու այնտեղ են հաստատուել։ Թիֆլիսը ամբողջ Կովկասի, ինչպէս և բոլոր ռուսահայերի, թէ առևտրական և թէ մանաւանդ մտաւոր կենտրոնն է դարձել։

Այդ հանգամանքը Ներսէս աշտարակեցին շատ լաւ ըմբռնելով, Թիֆլիսում առաջին անգամ (1824 թ.) հիմնում է մի միջնակարգ դպրոց, որն իր անունով կոչւում է Ներսիսեան հոգևոր դպրոց և որը մինչև այսօր էլ գոյութիւն ունի։

Ներսէսն իր կաթողիկոս դառնալուց յետոյ էլ, մեծ խնամք է ցոյց տալիս թէ ընդհանրապէս հայոց դպրոցների բազմանալու և թէ մասնաւորապէս Ներսիսեան դպրոցի յառաջադիմութեան ու բարեկարգութեան մասին։ Նա հարուստ կալուածներով ապահովում է այդ դպրոցի գոյութիւնը։

Ներսիսեան դպրոցը հիմնուելուց մօտ տաս տարի առաջ, Մոսկւայում բացուել էր մի այլ հայկական ուսումնարան, ուր նոյնպէս մինչև այսօր էլ բազմաթիւ հայ մանուկներ միջնակարգ կրթութիւն են ստանում։ Այդ ուսումնարանն էլ իր հիմնադիր Յովակիմ Լազարեանի անունով՝ կոչւում է Լազարեան ճեմարան։ Աւելի ուշ (1874 թ.), Էջմիածնում, Գէորգ IV կաթողիկոսը հիմնում է մի հոգևոր ճեմարան, որ իր անունով կոչւում է Գէորգեան ճեմարան։

Ռուսահայերի լուսաւորութեանն ու բարգաւաճմանը չափազանց նպաստում են մանաւանդ ռուսաց պետական ուսումնարանները, մամուլն ու գրականութիւնը։

Կովկասն ու Անդրկովկասը նուաճելուց յետոյ, ռուսները այդ երկրի համարեա թէ բոլոր քաղաքներում հետզհետէ մի շարք գիմնազիաներ և այլ միջնակարգ երկու սեռի ուսումնարաններ են հիմնում։

Այդ ուսումնարաններում բազմաթիւ հայ աշակերտ
ներ իրանց կրթութիւնը վերջացնելուց յետոյ, գնու
են Ռուսաստանի համալսարաններն ու այլ բարձրա
գոյն դպրոցները՝ իրանց ուսումը շարունակելու։

Եւրոպական գիտութիւններով օժտուած այդ հա
երիտասարդները հայրենիք են վերադառնում և չա
փազանց մեծ զարկ են տալիս իրանց ժողովրդի ա
ռաջադիմութեանն ու լուսաւորութեան գործին։

Այդ համալսարանական երիտասարդներն են գըլ-
խաւորաբար, որ հիմք են դնում ու զարգացնում ռու-
սահայոց մամուլն ու դրականութիւնը։

Ռուսահայ ականաւոր այլ գրականագէտներն էլ,
որոնք հնարաւորութիւն չեն ունեցել համալսարանա-
կան ուսում ստանալու, ինքնակրթութեամբ են զար-
գանում ռուսական մամուլի ու գրականութեան մի-
ջոցով, որը չափազանց ճոխ ու հարուստ է թէ ինք-
նուրոյն և թէ թարգմանական գրուածքներով։

---

## «Պոլոժենիա»

Երևանեան նահանգին ու Վաղարշապատին տի
րելուց յետոյ, ուր գտնւում է հայոց կաթողիկոսակա
մայր-աթոռը, ռուսաց կառավարութիւնը յատուկ կա
նոններ է մշակում ռուսահայերի եկեղեցական և ա
գուտ ազգային գործերը վարելու համար (1836 թ.)
Այս կանոնադրութիւնը ռուսերէն լեզւով կոչւում
Պոլոժենիա և նրանով որոշւում են կաթողիկոսի իրա
ւունքներն ու նրա յարաբերութիւնները կայսերակա
կառավարութեան հետ։

Պոլոժենիայի համաձայն, հայոց կաթողիկոսներ
իբրև բովանդակ հայերի Հայրապետ, ընտրւում
ամբողջ հայ ազգից ուղարկուած եկեղեցական և աշ

որհական պատգամաւորներից և ապա հաստատում ռուսաց կայսրի կողմից։

Ընտրութիւնը կատարւում է Էջմիածնի տաճարում, ուր հաւաքուած պատգամաւորները ընտրելիների անուանուն ցանկ են կազմում բարձրաստիճան հայ եկեղեցականների միջից և ապա ընտրում երկու կաթողիկոսական թեկնածու։ Առաւելագոյն քուէ ստացող այդ երկու թեկնածուների անունները ներկայացւում են ռուսաց կայսրին, որը նրանցից մէկին կամ միւսին հաստատում է ամենայն հայոց կաթողիկոս։

Նոյն Պօլօժենիայի համաձայն, ամենայն հայոց կաթողիկոսը հանդիսանում է հայոց եկեղեցու բարձրագոյն ներկայացուցիչն և իշխանաւորը. նրան է վերապահուած եկեղեցական կանոնների ու ծէսերի ընթերի կատարման հսկողութիւնը և բոլոր եկեղեցական ու դաւանաբանական գործերի տեսչութիւնը։

Պօլօժենիայի զօրութեամբ Էջմիածնում հաստատւում է նաև բարձրագոյն մի հոգևոր ատեան, որ կոչւում է Սինօդ, որի բոլոր ութ անդամներն էլ հոգևորականներ պէտք է լինեն։ Դրանք նշանակւում են կաթողիկոսի կողմից և հաստատւում կայսրից։ Կայսրը իրաւունք ունի սակայն կաթողիկոսի նշանակածին չհաստատել և առաջարկել մի ուրիշին ընտրելու։

Սինոդի նախագահը թէև կաթողիկոսն է, բայց այդ բարձրագոյն հոգևոր ատեանը ենթարկւում է ներքին գործերի մինիստրութեանը և նրան էլ պատասխանատու է։ Սինոդում կայ և մի ուրիշ՝ յատուկ պաշտօնեայ՝ պրոկուրոր։ Նա նշանակւում է ներքին գործերի մինիստրի կողմից և պարտաւոր է հսկել, որ Սինօդն ու կաթողիկոսը չը շեղուեն պօլօժենիայով իրենց տրուած իրաւունքների սահմաններից։

Բացի զուտ կրօնական ու դատանաքանական խնդիրներից, որոնց վերջնական վճիռը հայոց կաթողիկոսին է վերապահուած, միւս բոլոր եկեղեցական, դպրոցական, կալուածական և այլ գործերի վարչութիւնը Սինօդին է պատկանում։

Ռուսահայերի ամբողջ վիճակը բաժանում է վեց թեմերի, որոնցից իւրաքանչիւրը կառավարւում է կաթողիկոսից նշանակուած և կայսրից հաստատուած թեմակալ առաջնորդների միջոցով։ Իւրաքանչիւր թեմում կայ մի հոգևոր ատեան, որ կոչւում է Կօնսիստորիա և որի նախագահն է թեմական առաջնորդը։

Թեմերը չափազանց մեծ լինելով, բաժանւում են մի քանի վիճակների, որոնցից ամեն մէկն իր յատուկ հոգևոր վարչութիւնն ունի։ Վիճակային վարչութեան նախագահը լինում է առաջնորդական փոխանորդը կամ յաջորդը։

Վիճակային այդ վարչութիւնները ենթարկւում են Կօնսիստորիային, իսկ Կօնսիստորիան էլ Սինօդին, որին ամեն տարի նրանք պարտաւոր են հաշիւ ներկայացնել իրանց գործերի մասին։

---

## ԹՈՒՐՔԱՀԱՅՔ

Բարեկեցութեան ու լուսաւորութեան կողմից Հայաստանի օսմանեան բաժնում ապրող հայութիւնը բոլորովին այլ կացութեան մէջ է գտնւել։

Այդ երկրում հայը, տեղական օրէքի համաձայն, մահմեդականի հաւասար քաղաքացի չէ համարւել, այլ մի «րայա»—հպատակ։ Բայան ոչ միայն մահմեդականի համահաւասար իրաւունքներ չէր վայե-

լում, այլ և նրա ամբողջ ստացուածքն ու կեանքը մահմեդականի սեփականութիւն են ճանաչուել։

Ամեն մի օսմանցի, եթէ մանաւանդ նա պետական պաշտօնեայ էր, կարող էր անպատիժ կերպով յափշտակել հայի ամբողջ կարողութիւնը և նրան կատարեալ սովի մատնել։

Հայաստանի օսմանեան մասում ոչ միայն նոր և յարմար հաղորդակցութեան ճանապարհներ չեն շինուել, այլ և տիրող կառավարութեան կատարեալ անհոգութեան պատճառով, հին ժամանակներում շինուած ճանապարհներն էլ քայքայուել ու անպէտքացել են։ Քանդուել և ոչնչացել են նոյնպէս այն բոլոր ջրանցքները, ջրամբարներն ու անտառները, որոնք մի ժամանակ մեծ ծառայութիւն էին մատուցանում երկրի բերրիութեանը։

Դրա հետեւանքն այն է եղել, որ այդ երկրում մի ժամանակ ծաղկած արդիւնաբերութիւնը, արհեստներն ու վաճառականութիւնը սաստիկ ընկել են, իսկ ժողովուրդն էլ վերջին ծայր աղքատութեան է մատնուել։

Ծայրայեղ աղքատութիւնից, կառավարչական հալածանքներից ու թափառաշրջիկ քիւրդ ցեղերի բարբարոսութիւններից ազատուելու համար, հայերը յաճախ ստիպուել են մեծ բազմութեամբ գաղթել օտար երկիրներ։ Գաղթականութիւնների շնորհով Հայաստանի հայ բնակչութեան թիւը հետզհետէ սաստիկ նուազել է, իսկ գաղթականներն էլ իրանց նոր հայրենիքում, ժամանակի ընթացքում, լուծուել են իրանցից շատ աւելի զարգացած ազգերի մէջ և կորցրել մայրենի լեզուն և ազգութիւնը։

Կրթութեան ու լուսաւորութեան կողմից էլ Թիւրքիան չափազանց յետ է մնացել։

Օսմանցիք թէև Կոստանդնուպոլսում մի համալսարան և մի քանի հատ էլ միջնակարգ ուսումնարաններ ունին, բայց դրանք թէ շատ վատ են դրւած և թէ շատ քիչ են մատչելի քրիստոնեաների համար։

Կանոնաւոր ուսումնարաններից զուրկ են Թիւրքահայերը։ Նրանց մէջ ուսումնարանական գործը, գրականութիւնն ու մամուլը կարողացել են զարգանալ, հայկական գաւառներից հեռու ընկած՝ Կոստանդնուպօլսում և Զմիւռնիայում միայն։

Դեռ շատ հին ժամանակներից այդ կողմերը գաղթած հայերը բաւականին պատկառելի թիւ են կազմել։ Օսմանեան սուլթանները չը վախենալով այդ՝ իրանց բնիկ հայրենիքից կտրւած՝ հայերի ապստամբական ձգտումներից, միշտ աւելի մեղմ աչքով են նայել նրանց վրայ և շատ էլ մեծ հալածանքների չեն ենթարկել։ Բացի դրանից՝ ծովային ամենադիւրաւոր հաղորդակցական միջոցներով կապւած լինելով եւրոպական երկիրների ու ազգերի հետ, այդ հայ գաղթականները կարողացել են համեմատաբար թէ բարւոք վիճակ ունենալ և թէ աւելի կրթւել ու զարգանալ։

Թիւրքահայերի առաջին միջնակարգ դպրոցը, «Ճեմարան ս. Երուսաղիմայ» անունով, հիմնւել է Կոստանդնուպօլսում (1838 թ.)։

Այդ ճեմարանը այժմ գոյութիւն չունի, բայց նրա փոխարէն աւելի ուշ բացւել է «Կեդրոնական» վարժարանը, որը նոյն դերն է կատարում Թիւրքահայերի համար, ինչ դեր կատարում է Ներսիսեան դպրոցը ռուսահայերի համար։

Թիւրքահայերի ամբողջ գրականութիւնն ու մա-

մուլն էլ գլխաւորաբար այդ քաղաքներումն են կենտրոնացած։

Թիւրքահայ երիտասարդները իրանց բարձրագոյն կրթութիւնն ստանում են եւրոպական համալսարաններում։ Սակայն նրանք չեն կարողանում շատ էլ պիտանի լինել հայկական գաւառների համար։ Լաւ ճանապարհների բացակայութիւնն ու երկրի այլ պայմանները հարկադրում են ուսումնաւարտ Հայաստանցի երիտասարդներին անգամ հեռաւոր Կոստանդնուպոլսում հաստատուել և այդպիսով կտրուած մնալ մայր-հայրենիքից։

---

## Ազգային սահմանադրութիւնը

Թէև օսմանցիք կողմնակի կերպով ամեն միջոց գործ են դրել իրանց հպատակ հայերին Իսլամի կրօնին դարձնել, բայց և այնպէս տէրութեան օրէնքներով Թիւրքիայի քրիստոնեաները յայտնի չափով կրօնի ազատութիւն են վայելել։ Հայերին է վերապահուած իրանց կրօնական բոլոր գործերի վարչութիւնը։

Դեռ XV-րդ դարում, օսմանեան Մեհեմմէդ II-րդ սուլթանը մտածում է իր հպատակ հայերին անջատել պարսից իշխանութեան տակ գտնուող կաթողիկոսի ազդեցութիւնից։ Այդ նպատակով նա Բրուսայի առաջնորդ Յովակիմ եպիսկոպոսին Կոստանդնուպոլսի հայոց պատրիարք է նշանակում և իր հպատակ հայերի բոլոր հոգևոր և ազգային գործերի տնօրինութիւնը նրան յանձնում (1461 թ.)։

Այդ ժամանակից ի վեր օսմանեան հայերի ներկայացուցիչն ու հոգևոր պետը պատրիարքներն են հանդիսանում։

Պատրիարքները ընտրւում են Թիւրքահայերի կողմից և ապա հաստատւում սուլթանից։ Պատրիարքները ամենայն հայոց կաթողիկոսին չեն ենթարկւում, բացի զուտ դաւանաբանական խնդիրներից։ Նրանք են համարւում ամբողջ Թիւրքիայի հայկական թեմերի համար ընտրւած թեմական առաջնորդներին։

Մինչև XIX-րդ դարի կէսերը պատրիարքները իրանց իշխանութեան յանձնւած գործերը վարում էին պօլսաբնակ մի քանի հայ ամիրաների մասնակցութեամբ։

Ամիրաներ կոչւում էին նրանք, որոնք մեծ հարստութեան տէր էին և մեծ կապեր ունէին զանազան թիւրք մեծամեծների հետ։ Դրանք հայ ազգի մեծամեծներն էին համարւում։

Այդ հարուստ ամիրաները, ի չարը գործ դնելով իրանց ունեցած դիրքն ու կապերը, երկար ժամանակ իրանց ձեռքում խաղալիք էին դարձրել թէ պատրիարքներին և թէ բոլոր ազգային և եկեղեցական գործերը։ Այդ բանը ահագին խռովութիւններ է առաջացնում ժողովրդի ստորին խաւերում, գլխաւորաբար արհեստաւորների մէջ։ Երկար մաքառումից յետոյ, այս վերջիններին յաջողւում է, վերջապէս, ազգային գործերի վարչութիւնն ամիրաների ձեռքից խլել ու ժողովրդից ընտրւած մարդկանց յանձնել։

Կառավարութեան թոյլտւութեամբ հաստատւում է 140 անձերից բաղկացած մի ժողով (1860 թ.), որը կոչւում է Ազգային ժողով և որը մինչև օրս էլ վարում է Թիւրքահայերի բոլոր եկեղեցական և ազգային գործերը։ Ազգային ժողովը նոյն թւականին իր համար մի կանոնադրութիւն է մշակում, որը քիչ փոփոխութեամբ հաստատւում է օսմանեան կառավարութիւնից։

Տէրութեան կողմից հաստատուած Ազգային ժողովի կանոնադրութիւնը կոչւում է Ազգային Սահմանադրութիւն։

Այդ սահմանադրութեան համաձայն, Ազգային ժողովի 140 անդամներից, որոնք կոչւում են երեսփոխաններ, 20-ը պօլսաբնակ եկեղեցականներ պիտի լինեն, իսկ մնացած 120 աշխարհական երեսփոխաններից՝ 80-ը լինելու են պօլսաբնակ, իսկ 40-ը գաւառներից։

Ազգային ժողովը ընտրւում է 10 տարով, բայց 2 տարին մի անգամ նրա հինգերորդ մասը հեռանում է և նրանց տեղ նորերն են ընտրւում։

Ընդհանուր Ազգային ժողովն իր միջից ընտրում է երկու վարչական մարմիններ, Կրօնական ժողովը, որ բաղկացած է 14 եկեղեցականներից և Քաղաքական ժողովը, որ կազմւած է 20 աշխարհականներից։ Այդ երկու մարմիններն էլ նորոգւում են երկու տարին մի անգամ։

Կրօնական ժողովը վարում է թիւրքահայերի բոլոր կրօնական գործերը, իսկ քաղաքական ժողովի տնօրինութեան են վերապահւած՝ բոլոր կրթական, տնտեսական, բարեգործական ու դատաստանական գործերը։

Թէ Ազգային ժողովի և թէ նրանից ընտրւած կրօնական և Քաղաքական վարչութիւնների նախագահը պատրիարքն է։

Սահմանադրութեան համաձայն, նոյն ձևով ազգային երեսփոխանական ժողովներ գոյութիւն ունեն նոյնպէս և գաւառներում, որոնց նախագահում են թեմական առաջնորդները։

# ՊԱՐՍԿԱՀԱՅՔ

Պարսկահայերի թէ տնտեսական և թէ կրթական վիճակը շատ աւելի վատ կացութեան մէջ է գտընւում։ Այնտեղ էլ հայերը չունին ոչ կեանքի և ոչ գոյքի ապահովութիւն։

Երկրի վերջին ծայր յետամնացութիւնը, կառավարութեան անկազմակերպ վիճակը, պարսիկ խաների և քիւրդ բէկերի կամայական հարստահարութիւնները, պարսկահայերին էլ ստիպել են շարունակ իրանց հայրենիքը թողած՝ ուրիշ երկիրներ գաղթել։

Պարսիկները ոչ միայն համալսարան կամ միջնակարգ դպրոց, այլ և ամենատարրական ուսումնարաններ էլ չունին, որոնցից հայերն էլ կարողանային փոքր ի շատէ օգտուել։ Այդ կողմից հայերը շատ աւելի բարձր են, քան տիրող ժողովուրդը։

Նրանք թէ Թաւրիզում, թէ Թէհրանում և թէ Սպահանում ունեն բարեկարգ երկսեռ դպրոցներ, որոնք թէև հեռու են միջնակարգ դպրոց լինելուց, բայց և այնպէս բաւականին նպաստում են հայ ժողովրդի մէջ կրթութիւն և ուսում տարածելուն։

Պարսկահայերի մէջ դրականութիւնն ու մամուլը համարեա թէ բոլորովին չէ զարգացել։ Պարսկահայ երիտասարդներն իրանց ուսումը շարունակելու համար մտնում են Ներսիսեան դպրոց, Գէորգեան ճեմարան ու ռուսական միջնակարգ ու բարձրագոյն դպրոցները։

Պարսկահայերն էլ յայտնի չափով կրօնի ազատութիւն են վայելում։

Նրանց է վերապահուած իրանց կրօնական ու կրթական բոլոր գործերի տնօրինութիւնը։

Պարսկահայերի ամբողջ վիճակը 2 թեմի է բաժանուած, որոնց թեմական առաջնորդները կամ ամենայն հայոց կաթողիկոսից են նշանակւում և կամ ընտրւում թեմի ժողովրդից և ապա հաստատւում կաթողիկոսից։

---

# ՑԱՆԿ

## ՄԱՍՆ I

### Հին Հայաստանի երկիրն ու ժողովուրդը



## ՄԱՍՆ II

### Մեծն Տիգրան

## ՄԱՍՆ III

### Քրիստոնեայ Հայաստանը



## ՄԱՍՆ VI

### Բագրատունեաց թագաւորութիւն



## ՄԱՍՆ V

### Ռուբինեան թագաւորութիւն



## ՄԱՍՆ VI

### Հայաստանը Բագրատունիների անկումից յետոյ